# ՃԱՇԵՐ ԵՒ ԽՆՃՈՅՔ

## ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

ԳՐԵՑ

Հ. ՎԱՐԴԱՆ Վ. ՀԱՑՈՒՆԻ



ՎԵՆԵՏԻԿ – Ս. ՂԱԶԱՐ

ՌՅԿԱ – 1912

# ՃԱՇԵՐ ԵՒ ԽՆՃՈՅՔ

## ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

# ՃԱՇԵՐ ԵՒ ԽՆՃՈՅՔ

## ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ


ԳՐԵՑ

Հ. ՎԱՐԴԱՆ Վ. ՀԱՑՈՒՆԻ





ՎԵՆԵՏԻԿ – Ս. ՂԱԶԱՐ

ՌՅԿԱ – 1912

# ՃԱՇԵՐ ԵՒ ԽՆՃՈՅՔ

## ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

◁ ○ ▷

Մարդուն անհատական եւ ընկերային կենաց մէջ՝ ամենէն անհրաժեշտ, զուարթ ու հաճելի վայրկեանը եղած է միշտ ճաշի ժամանակը, լինի այդ թագաւորին պալատան, շինականի խրճթին կամ ճգնաւորի խցկան մէջ:

Այդ վայրկեանը միանգամայն հայելին է անհատին կամ ընկերութեան մէջ տիրող ընդհանուր բարոյականութեան աստիճանին եւ կենցաղավարութեան եղանակին, ունենալով ստուար բաժին մը սովորութեանց՝ որոց մէջ կը ցոլանայ ազգի մը նկարագիրը: Այս կողմանէ ուրեմն շատ մեծ է մեր նախնեաց ճաշին ուսումնասիրութեան օգտակարութիւնը, որ պիտի նպաստէ մեր անցեալին պատմական եւ նոյն իսկ լեզուաբանական շահաւէտ լուսաբանութեանց:

Արդարեւ մեր աչաց առջեւ ունենալով արդի հայ գաւառացի բարեկեցիկ եւ նոյն իսկ հարուստ ընտանեաց անպաճոյճ կենցաղը, երբեք ըստ բաւականի չպիտի ըմբռնէինք իսկական իմաստը Եղիշէի «փափկասուն» կամ «փափուկ» մակդրին՝ զոր կու տայ Ե դարու հայ տիկնոջ եւ ազատանւոյն առ հասարակ (174,'67), եւ որոյ նշանակութիւնը շատ ընդարձակ է։ Ոչ ալ պիտի համարձակէինք ուրիշ ազգաց մէջ տիրած եւ պատմութենէն ձաղկուած բարքերը կամ բարոյական կեղտերը նշմարել մեր մէջ։ Անծանօթին այս քողն է զոր պիտի բանամ ես հոս, ուղղելով մեր աչերը դէպ ի նոր ոլորտներ։

Մեր նիւթը կարծուածէն աւելի բարդ է մասնագիտին համար։ Ճաշին հետ սերտիւ կցորդուած են պարենի պահպանութեան, կերակրոց պատրաստութեան ու ճաշելու տեղերն՝ իրենց կազմածներով, որոց մէջ մտնելու ենք՝ զգալու համար նախնեաց սեղանին կարեւորութեան չափը։ Մարդիկ օրուան մէջ ունէին աւելի քան մի ճաշեր, որոնք իրարու չէին նմաներ։ Հարուստն ու աղքատը, աշխարհականն ու վանականը հաւասար կերպով ու չափով կերակուր չէին առնուր։ Սովորականէն շատ տարբեր էին մեծահաց կոչունքներն

ու բարեգործական ճաշերը։ Կենաց զանազան պարագայից եւ տարւոյն այլ եւ այլ սրբազան յիշատակաց մէջ, ուր սընունդն իւր բաժինն ունեցած է միշտ, ճաշի պատրաստութիւնք ու կոչումներն անգամ եւ կերակրոց տեսակները կը զանազանէին իրարմէ։ Վերջապէս օրինական տարբերութիւն մ'ալ կար ուտելի և խորշելի կերակրոց մէջ։

Վերեւ լեզուաբանական տեսակէտն յիշեցի։ Եւ արդարեւ սպասուց եւ կահուց, ուտելեաց եւ այլ նոյնպիսի յատուկ բառեր՝ մեր հին մատենագրութեան մէջ բացատրութեանց չքաւորութենէն շատ անգամ անորոշ մնացած են, եւ մերթ սխալ իսկ իմացուած՝ արդի հայագիտաց ու բառագրոց կողմանէ։ Ապահովագոյն ճանապարհն համարեցայ՝ նախնեաց թարգմանութեանց ձեռքով համեմատել զանոնք օտարազգի համանշերու հետ՝ ուր որ կային, եւ անոնց հնախօսական նկարագրաց մէջ, թէեւ ասոնք միշտ որոշ չեն, որոնել մերոց ալ մերձաւոր սահմանը։ Դժուարին ձեռնարկ մը, եւ ասոր համար ալ թերեւս ոչ անթերի, զոր մասնագիտաց կը մնայ դատել։

Մեր նիւթն ուրեմն կը պահանջէ առանձին ու մտադիր հետազօտութիւն մը,

լինելով միանգամայն դեռ հում, եւ որով կարծեմ մեր արդի բանասերներէ ոչ ոք զբաղած է։ Նոյն ինքն Հ. Ղ. Ինճիճեան իւր եռահատոր Հնախօսութեան մէջ անուշադիր թողած է զայս։ Եւ Հ. Յ. Աւգերեան ի «Բացատր. Ջափուց եւ Կշռոց» կը խօսի մեր քննելի շատ անօթոց մասին, բայց առանց հնագիտական ճշդութեան ու նկարագրի։ Հետեւաբար աշխատութեանս համար ինձ աղբիւր կը մնար, եւրոպականէն զատ, գլխաւորապէս տոհմային հին մատենագրութիւնը, — տպագիր ու գրչագիր, — որոյ ճոխագոյն մասն է ոսկեդարեանը։ Այս վերջին պարագայս նպաստաւոր է մեզ, որ սովորաբար հնէն աւելի հնագոյնով կը հետաքրքրուինք, եւ ծնողին նկարագրին մէջ կ'ախորժինք նկատել նաեւ ծնունդինը։

Վերջին դիտողութիւն մ'ալ։ Հոս եւ առ հասարակ հնախօսական աշխատութեանցս մէջ ինձ չէ կարելի աղբերացս վաւերականութեան խնդրով զբաղիլ, ինչպէս երբեմն պահանջուած է ինձմէ։ Վասն զի այդ պարագային պիտի գործէի երկար եւ անդէպ շեղումներ նիւթէս ու ծանրաբեռնութիւններ, եւ փոխանակ հնախօսութեան՝ մատենագրութիւն պիտի յօրինէի։ Բանասիրութեան այդ մասը չի հաշտուիր

մասնագիտութեան հետ, ու եւրոպացիք ալ չեն ընդունիր զայդ։ Ինձ բաւական է ցուցնել՝ եւ ընթերցողացս տեսնել՝ թէ ծանօթութիւնքս յիրաւի տոհմային են. եւ փոյթ չէ թէ ադոցմէ ոմանց աւանդողներն ո՞յք եղած են իսկապէս եւ ո՞ր թուականին գրած. մանաւանդ երբ մի եւ նոյն տեղեկութիւնք կը զօրանան արդէն վաւերական աղբիւրներէ եւս։



# ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

ՇՏԵՄԱՐԱՆ. — ՄԱՌԱՆ. — ԽՈՀԱԿԵՐՈՑ. — ՏԱՃԱՐ. —
ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ

*Պարենի եւ կերակրոց վերաբերեալ մեր ուզած բոլոր տեղերը տեսնելու համար՝ չենք կարող հին Հայաստանի մէջ որ եւ է տան մը դուռը բախել անխտիր։ Ինչ որ էր «մեծատան» բնակարանը ներքին բաժանմամբք եւ ընդարձակութեամբ, բնական է որ նոյնպէս չպիտի լինէր «աղքատին» յարկը։ Սա՝ «ոչ պէտս ունի բազում շինուածոց, ոչ պէտք են նմա փականք աղխից», կ'ըսէ հեղինակ մը, որոնք յատուկ էին հարստին (Մանդ. 73), ամփոփելու եւ ապահովելու համար անոնց մէջ՝ միւսին զլացուած եւ իրեն շնորհուած բոլոր բարիքները, եւ զետեղելու հոն իւր ձիերն ու եզները։ Իսկ այս ամենին պահպանութիւնն յանձնած էր խածատող շներու, որոց սարսափը, կը յարէ մանրապատում բեմախօսը, կը վարանեցնէր զմու-*

բացիկը՝ մտնելու ողորմութեան համար (52)։ — Զանազանութիւն կար նաեւ ընչեղին այդ «տան» (անդ) եւ ազնուականին «ապարանից» մէջ (Եղիշ. 174. Փրպ. 27)։ Եթէ առաջինն առատութեամբ կը պարծէր, երկրորդն աղոր վրայ կը յաւելուր նաեւ կարգ, արուեստ, շնորհք, ազնուութիւն ու փափկութիւն ։ Հարկաւ մեք պիտի բաղձանք ամենէն յառաջ եւ ամենէն աւելի այս վերջին բնակարանին մէջ թարթափիլ, ինչպէս կը պահանջէ իր նկարագրին ճոխութիւնն ալ, եւ սոսր հետ համեմատութեան մէջ տեսնել այլոց տարբերութիւնը՝ որքան կը ներէ մեզ պատմութիւնը ։



Ա. ՇՏԵՄԱՐԱՆ

1. – Վայրք. — Հո՛ս պէտք է որ այցելենք նախ, կերակրոյ նիւթերուն առաջին եւ իսկական աղբիւրը ։ Աւետարանի մեծատունն ունի «շտեմարանս», որոց մէջ հաւաքած է «զցորեան եւ զամենայն բարութիւնս» (Ղկ. ԺԲ, 18)։ Նոյնպէս կը կոչեն զայս նաեւ Ոսկեբերան (Թղթ. Ա, 127), եւ Ագաթանգեղոս՝ որ կ՚ըսէ՝ թէ «լի են շտեմարանք այսր թագաւորիս» երկնաւորի (376), ինչպէս լի էին Հայոց արքայինը ։

Աւետարանի մէջ իրարմէ կ'որոշուին «շտեմարանք եւ համբարանոցք» (Ղկ. ԺԲ, 24), որոց առաջինն ընդհանուր իմաստ ունի. եւ երկրորդն՝ արմտեաց յատուկ վայրն է, որ կը կոչուի նաեւ համբարք (Մանդ. 111. Բ Օր. ԻԸ, 5), կամ ամբարք (Խոր. 27. Ա Մնց. ԻԸ, 12), նման պրս. ամբար հոմանիշին (Հիւբշ. 178)։ Շտեմարանին հետ համիմաստ է նաեւ մթերանոցք (Խոր. 257) կամ մթերք (Ա Մնց. ԻԸ, 12)։ — Այս օրինակաց մէջ արմատական բառերն իսկապէս պարունակեալ են՝ գործածուած փոխանակ պարունակողի։ Եւ արդարեւ շատ տեղ համբարք՝ պաշարը կը նշանակէ (Փաւս. 129. Բ Մնց. ԺԱ, 11 եւն). ինչպէս եւ «զամբարս ցորենոյ» կամ « զհամբարանոցս համբարօք հանդերձ » (Առբ. 141, 22), որոց հոմանիշ է եւ մթերք (Յոբ, Ի, 21)։

Յիշեալ բոլոր բառից յոգնականաձեւ գործածութիւնը պերճօրէն ցոյց կու տայ միանգամայն եթէ շտեմարանաց եւ եթէ անոնց բովանդակած նիւթոց բազմաւորութիւնը, համաձայն Մանդակունւոյն վերոյիշեալ «բազում շինուածոց»։

2. – Մթերք։ — Բնականապէս կը հետաքրքրէ զմեզ անոր բովանդակութիւնը։ Աւելորդ է ըսել՝ թէ հոս պիտի գտնենք

այնպիսի նիւթեր միայն, որոնք կրնային անապական պահուիլ. եւ ամենէն յառաջ երկրի բերքերը՝ տոհմականք կոչուած (Եզն. 103. Ղկ. ԺԲ, 16. եւն): Ասոնց մէջ ընդարձակագոյն տեղը կը գրաւէին արմտիք (Ծննդ. ԽԱ. 34, եւն) կամ ունդք (Մանդ. 36. Դան. Ա, 12) կամ դեղաճունդք (Ոսկ. Թղթ. Ա, 127, 815) կամ սերմանիք (Ա Կոր. ԺԵ, 37. Ագթ. 482) եւ սերմանք (Ա Թագ. Ը, 15): Այրարատ, «ամենաբոյն» (Փրպ. 22), «արգաւանդ եւ բարի», եւ շարայեան որկորներու բաւական (Խոր. 27), կը զեղուր Հայուն «զանպակասութիւն հացի» (Փրպ. 23): Պատմիչներէս եօթ դար յառաջ արդէն կը տեսնէր ու կը նկարագրէր Քսենոփոն Հայոց փարթամութիւնը. «Անդ կը գտնուէին, կ'ըսէ, ամէն տեսակ պատուական պարեններ, անասունք, ցորեն... եւ ամենազան սերմանիք» (Քսեն. Բ, 90): Հարկաւ Հայաստանի բոլոր գաւառներն ամէն տեսակ տնկագործութեանց յարմար չէին կալող լինել. անոցմէ շատերն իրենց սեպհական բերքերն ունէին Խորենացւոյն Աշխարհագրութեան մէջ: Ասոր կը հետեւի՝ որ ամէն ճոխ Հայու շտեմարանաց մէջ ամէն տեսակ պաշարներ համախմբուած չպիտի գտնուէին: Բայց կրնանք վստահաբար

*ըսել՝ թէ բոլոր այն արմտիք կամ տոհ-մականք, որոնք ուրոյն կոչումներով յի-շուած են մեր մատենագրերէն, կ՚ելնէին նաեւ հայ հողէն ու կը մտնէին հայ ըշ-տեմարանաց մէջ։ Այսպէս մեր շատ հեղի-նակաց ծանօթ են եւ Ագաթանգեղոսէն ի մի հաւաքուած՝ «սերմանիքն օգտակարք մարդկան. որպէս ցորեանն եւ հաճարն եւ գարին եւ կորեակն, գաւարսն եւ ոսպն, ո-լոռն, որիզն եւ դկողն, սիսեռն եւ այլ բազում սերմանիք»* (482)*։ Աստցմէ գա-րին ու կորեակն աւելի անասնոց կերա-կուր էին, եւ ոլոռն աւելի թռչնոց կը տը-րուէր (Գոշ՝ Առկ.* 42, 46)*։ Հոս կար նաեւ արմտեաց ոմանց ալիւրը (Ալաւ. Գ), որոց գործածութիւնը պիտի տեսնենք յետոյ։ Բակլայն թէ ողջ կը գտուէր եւ թէ աղօ-րեօք ջախջախուած (Գոշ,* 44, 46)*։ Մեր նախնիք անտարակոյս կը շտեմարանէին նոյնպէս չոր մրգեր, արմաւ, թուզ (Ագթ.* 479)*, ընկոյզ, նուշ (անդ. Գոշ Առկ.* 18,26)*. չամիչ (Թիւք, Զ,* 3 *եւն. Վաստ.* 133) *կամ չամչեայ (Թագ. Ա, Լ,* 12*. Բ. ԺԶ,* 1)*, զոր Քսենոփոն ալ կը տեսնէր Հայոց քով* (90)*, եւ կաղին (Ես. Զ,* 13*. Փաւս.* 18*. Գոշ՝ Առկ.* 27)*։ Դարձեալ կային հոս համեմիչները, սոխ եւ խստոր (Թիւք, ԺԱ,* 5*. Գոշ՝ Առկ.* 54–5)*, անանուխ (Մատթ. ԻԳ,*

23. Վաստ. 169), չաման (Մտթ. ԻԳ, 23. Գող՝ Առկ. 49), պղպեղ ապխտակ ու սեւ (Դաւ. 169. Վաստ. 121), եւ այլ շատեր՝ յայտնիք հին մատենագրութեան մէջ, որոց մանր թուարկութեամբ չէի ուզեր հոս երկրորդ Հայբուսակ մը կամ Վաստակոց Գիրք մը կազմել: — Բայց չենք կարող առանձինն ուշ չդարձնել հանրածանօթ աղին, որ սովորաբար «յերկրէ» կ'ելնէր (Ցճխ. 83), իրեն բնական շտեմարան ունենալով բարձր Հայոց մէջ (Խոր. 607). եւ կը բաժնուէր «ընտանի աղ եւ կողբացի» (Վաստ. 99, 106), վերջինս՝ ոսկեդարու լեզուին համեմիշ Եզնկայ ծննդավայրէն. եւ որ ծանօթ է արդէն Է դարէն ալ, ուր Եզր կթղ. Հերակղ կայսերէն ընդունեցաւ «պարգեւս զաղն Կողբայ» (Սեբ. 159): Շտեմարանի մէջ պահուած աղը կը լինէր «գուինձ», այն է հատորաձեւ, կամ «լեսած» (Ալաւ. Գ): Հոս պատրաստ էր դարձեալ ժեղրը (Խոր. 608), գազպէն կամ գազապէն՝ որ կ'իջնէր ի Տուրուբերան (անդ) եւ ի Տարօն (Ջեն. 49): Կթեղէնները՝ կոգի (Ծննդ. ԺԸ, 8) կամ իւղ (Ես. Է, 15, 22), որ է կարագը. սեր (Մծբ. 371. Ալաւ. Բ), պանիր (Ցոբ. Ժ, 10. Որբ. 335) կամ մածունակ (Ա Թագ. ԺԷ, 18), եւ մածուն՝ որ իւր անունն Յունաց ալ տուած էր ըստ Մագխ-

տրոսի (ի Հյկզ.)։ Անշուշտ նաեւ ապուխտ մսոյ կամ թռչնոց (Թիւք, ԺԱ, 32), եւ աղծեալ կամ ապխտեալ ձկան (Քրոն. Ա, 130)։ Վերջապէս՝ գէթ ազնուականի ամբարանոցին մէջ պիտի գտնուէր ճերճ ալ, արդիւնքը հանրածանօթ « ձիթենւոյն » (Եզն. 207. Ագթ. 479), որ եթէ հին ժամանակներն հազիւ Ուտի գաւառին մէջ կը բուսնէր (Խոր. 610), — ըստ որում Շնորհալին կ'ըսէր Ալեքսի՝ թէ «ի Հայաստանեայց աշխարհն ոչ են ձիթենիք վասն ցրտութեան օդոցն», եւ թէ մեռոնն անգամ կը պատրաստէին «ի բուսաբեր ձիթոց՝ զոր շուշմայ (կնճիթ) անուանեն» (Ընդհ. 62), — սակայն անտարակոյս Հայաստան ունէր անոր ներածութիւնը, եւ յետոյ ծառն ալ բազմացուց իր հողին վրայ. այսպէս Ժ դարուն Տաթեւի շրջակայքն արդէն ունէին «ձիթենիս» (Որբ. 185). եւ շատերը կը մշակէին «բուրաստանս ձիթենեաց» (Յհ. կթղ. 250)։ Բայց յայտնի է՝ թէ երկու տեսակ իւղերն ալ կը մտնէին հայ կերակրոց մէջ (Կիր. 75, 171. Հայբուս. 321). մանաւանդ թէ երեք տեսակ. ձիթենւոյն, կնճթին եւ կտաւատին (Գոշ՝ Առկ. 44)։ Եւ գիտենք՝ որ ի հնուց «զեղոչին» Հայոց «հնձանք գինւոյ եւ իւղոյ» (Սահ. 111)։

3. — Կարասիք։ — Ցիշեալ ամէն պա-
շարները բնականապէս կը պահուէին ի-
րենց յարմար անօթոց մէջ. փայտեղէնք
կամ տախտակեայ՝ չոր նիւթոց համար,
եւ կաւեղէնք՝ խոնաւներուն։ Չեմ ուզեր
երեւակայութեան հարցնել անոնց թիւը
կամ ձեւերը, կամ այժմեանէն հինը գուշա-
կել. հնախօսութիւնն այդ ոճը չի ընդունիր։
Միակ աղբիւրը զոր ունինք այս մասին՝
Վաստակոց գիրքն է. որ թէեւ թարգմա-
նութիւն ԺԲ–ԺԳ դարու, եւ այդ շրջա-
նէն առաջնորդ կը լինի Հայոց, բայց հա-
մոզուած եմ՝ որ իւր ցուցած հնարքներն
յառաջագոյն ալ ընդհանուր էին բոլոր ա-
րեւելեայց։

Արդ՝ ցորենը կը շտեմարանէին «հորո-
ճի» մէջ (Վաստ. 30), որ է հին «հորբ»
(Ելք, ԻԱ, 33), փորուած գետինը եւ ա-
րուեստական շաղախով յատակը ծեփուած
(Վաստ.)։ Հրեայք ալ ունէին այդպիսի
«գուբ՝» խփով հանդերձ (Բ Թագ. ԺԷ, 18),
հոմանիշ ասոր. գուբքա՝ փոս բառին (Հիւբշ.
302)։ — «Երկայն հորի» մէջ կը կախէին
նուռն եւ այլ մրգեր (Վաստ. 135)։—
«Կարասի» մէջ կը պահէին խնձոր, դամոն
(134, '5)։ — «Ճառայից» մէջ՝ հապալաս,
չոր·թուզ ու ձէթ (136, '7, 116)։ —
«Բղուղի» մէջ՝ դալար թուզ (137)։ —

«Պռստուկի» մէջ՝ նուռն ու թուզ (135, '7)։ Եւ որ եւ է «կաւեայ ամանս» կը գործածուէր շագանակի պահպանութեան (136)։ — Այս անօթոց ձեւերը պիտի տեսնենք յաջորդ գլխոյն մէջ, որով այս տեղ աւելորդ է կանգ առնուլ։



## Բ. ՄԱՌԱՆ

1. – Վայրը։ — Զատ էր նախորդէն՝ գինւոյ պահպանութեան տեղին, որուն յատուկ էր մառան կոչումը, ինչպէս յայտնի է Փաւստոսի օրինակէն՝ «զմառանս գինւոյն» (108)։ Ոսկեբերան ըսելով՝ որ անապատականաց քով չկային «ոչ շտեմարանք և մառանք» (Թղթ. Ա. 127), նոյնպէս կ'որոշէ զատոնք իրարմէ։ Եւ Վաստակոց գրոց մէջ «մառանը» գինւոյ պահարան է միշտ (87,91 եւն), եւ շինելի «ի միջաշաւիղ տեղ ի ջեր եւ ի ցուրտ», եւ «ի բարձր տեղ» (87)։ Փաւստոսի յոգնակի ձեւէն միանգամայն յայտնի է՝ որ բազում այգիներու տէարք մէկ մառանէ աւելի ունէին։

2. – Գինիք։ — Սովորաբար բաւական գաղափար չունինք հին հայ մառանաց հարստութեան մասին, որ արդարեւ մեր

*երեւակայութեննէն վեր է։ Զայն լաւագոյնս ըմբռնելու համար՝ նկատելու ենք Հայոց այգեգործութեան ընդարձակութիւնը։ Սարաբոն իւր օրերէն կը տեսնէր զՀայաստան եւ ուրիշ անդրեփրատեան գաւառները՝ «գրեթէ ամենուրեք ծածկուած որթերով, եւ սքանչելի որթերը, կ'ըսէ, կուտան պատուականագոյն գինիները» (Սար. Գ, 248)։ Նոյնպէս Քսենոփոն կը գտնէր իւր ասպնջական Հայոց քով «անուշահոտ ըսքանչելի հին գինիներ» (Բ, 90)։*

*Այրարատ իւր բազմապիսի բարեաց մէջ ունէր նաեւ «զանպակասութիւն գինւոյ» (Փրպ. 23)։ Հռչակաւոր էր մեր գաւառաց մէջ Գողթն, որ իւր անսովոր առատութեամբ ժառանգած էր «գինաւէտ» մակդիրը (Խոր. 58, 609)։ Կը հաւատամ թէ մեր պատմահայրը հին Երուանդակերտի շուրջ դեռ իւր օրով ալ կը տեսնէր «զբազմութիւն այգեստանոյ՝ իբր զարտեւանաց խիտ եւ գեղեցիկ ծիր, որոյ հիւսիսային կողմանն դիր կարակնաձեւ՝ արդարեւ գեղաւոր կուսից յօնից զարեւանդաց համեմատ» (119)․ աղու բանաստեղծութիւն՝ զոր կարծես այդ այգիներու բերքն իսկ ներշնչած է իւր ծերացած մօքի թելերուն։ Կը յիշուի նաեւ Վաղարշապատի մօտ գըտուած «այգեստանին», որ ապաւէն ե-*

*ղան Ս. Հռիփսիմեանց* (Ագթ. 123). *եւ Եղիշէ ականատես էր մեր Ե դարու բոլոր տեկնանց «գիներբեր այգեաց»* (174)։ *Որթաբուծութեան այս մեծ ջանքը կը տեւէ միշտ. Ներսէս կթղ. Շինող՝ որ Է դարուն Զուարթնոց չքնաղ դաստակերտը կառոյց, չմոռցաւ անոր շուրջը սփռել «այգիս եւ ծառաստունկս»* (Սեբ. 186)։ *Պատահմամբ կը յիշուի Ժ դարուն՝ Դունի մերձաւոր ընդարձակ «այգեստանին», բաժնուած «ի փողոցս»* (Որբ. 138). *եւ Թովմայի յաւելուածն ուշադրութեամբ ցոյց կու տայ Ոշտունեաց գաւառը, որ Գագկայ հոգածութեամբ՝ «այգեւէտ բազմութեամբք յոյժ վայելչացեալ զարդարի»* (Արծ. 327)։ *Խաղաղութեան որ եւ է միջոցի մը մէջ Հայոց առաջին գործը կը լինէր «տնկել այգիս»* (Յհ. կթղ. 250)։ *Եւ հայ ժողովուրդը մեծ աղմկով ու երգերով կը կատարէր իւր այգեկութը* (Լաստ. 40)։

*Նկատելով ուրեմն այգեգործութեան այս մեծ խնամքը, դիւրաւ կրնանք ըմբռնել մեծին Ներսեսի մառանաց նկարագիրը Փաւստոսէ, որ կ՚ըսէ՝ թէ անոր բացակայութեան իւր բարեխրտ տեղապահը խաղ՝ «սպառէր թափէր զամենայն... մառանս գինւոյն, եւ զկարաս ամենայն մառանացն տայր բաշխել աղքատաց»* (108)։

Գինւոյ այս հեղեղը կը բղխէր հայրապե-տական լայնածաւալ կալուածներէն, որ ընչաքաղց ազնուականաց ոմանց աչքը կը ծակէին (Փաւս. 114)· Թէեւ ասոնց սե-ղաններուն վրայ նուազ յորդութիւն չպի-տի տեսնենք մեք յետոյ։

Նախ քան Վաստակոց գրոց երեւումն Հայոց մէջ, որ գինեգործութեան ընդար-ձակ դասեր տուաւ անոնց (34–133), ինչ-պէս կը պատրաստէին անոնք գինին՝ յայտ-նի չէ։ Չեմ ըսեր նիւթական կոխելն «հըն-ձանի» մէջ ոտներով՝ – զոր կը կատարէին արք եւ երբեմն կանայք ալ (անդ, 85. Ալաւ. ՀԲ), մանաւանդ փայտեղէն կամ քարեղէն «նաւի» մէջ, ինչպէս կը կոչէ-ին Նաւակաձեւ տաշտը (Ալաւ. Է), – այլ արուեստն իսկ։ Բայց յայտնի է՝ թէ գինւոյն տրուած այդ կարեւորութիւնը պի-տի ուսուցանէր անոնց ճարտար պատրաս-տութիւն մ՚ալ, զոր կրնանք արդիւնքէն գուշակել։ Եւ արդարեւ Ագաթանգեղոս շատ լաւ կը ճանաչէ «զըմպելի քաղցր եւ անոյշ գինի» (376), կամ «զանուշահոտու-թիւն բաժակօքն քաղցրութեանց» (374). եւ Օձնեցւոյն շրթները կը հպէին այլաբա-նօրէն — յայտնի թէ իրապէս ալ — «ի ծաղկահոտ գինի» (2)։ Ասոնց մէջ ակներեւ է անուշաբոյր եւ անուշահամ իւղոց խառ-

նուրդը, որ ահա իր յարգը կը պահէ դա-
րերու շրջանին մէջ։

Բաց ի խաղողոյ գինիէն՝ նախնեաց
Թարգմանութիւնք կ՚աւանդեն մեզ օղի կամ
ցքի ըսուած ըմպելին, հոմանիշ յն. σίκεραին
(Ղկ. Ա, 15. Ղեւտ. Ժ, 9 եւն), որ կը
շինուէր կիտրոնէ եւ ուրիշ նիւթերէ։ Զոր
օրինակ մարգարէն ըստ Ոսկեբերանի՝ «ցքի՝
որ յամբրութեան (արմաւ) առնէին եւ ի պէտս
գինւոյ փոխէին՝ զայն կոչէ» (Եսա. 53)։
Երկու հայեցի կոչմունք եթէ ուղղակի զայդ
ցուցնեն եւ եթէ զայդպիսիս, զոնէ կը հա-
մոզեն զմեզ՝ թէ մեր քով ալ կային ա-
րուեստական ըմպելիք, թէեւ ոչ շատ յա-
ճախեալ։ Քսենոփոն արդէն կը տեսնէր ի
Հայաստան նաեւ «գինի ի գարւոյ» (Բ, 94),
որուն չենք հանդիպիր մեր մատենագրու-
թեան մէջ։ Մանազկերտացւոյն կանոնաց
մէջ ալ կը յիշուին «օղի եւ մեղրօղի եւ ամ-
քրաւօղի» (Մնզ. Ե)։ Եւ Վաստակոց գիր-
քը կ՚ուսուցանէ՝ օշնդրէ, վարդէ, մկնա-
խէ, հապալասէ, սերկեւլէ, մեղրախառն
եւ այլ գինիներ պատրաստելու արուեստը
(118–23). ինչպէս նաեւ քացախագործու-
թիւնը գինիէ եւ ուրիշ նիւթերէ (124–5)։

3. — Կարասիք։ — Սառանի մէջ գոր-
ծածուածներէն ինձ ծանօթ են հետեւեալ-
ները, որոցմէ ոմանք եթէ սահմանուած

*չէին միշտ մառանին մէջ մնալու, բայց անոր հետ սերտ աղերս ունէին։*

*Կարաս։ Գինւոյն առաջին եւ մեծագոյն ընդունարանն եղած է հնուց ի վեր, ինչպէս կ'իմացուի Փաւստոսի բացատրութենէն, «զկարասս ամենայն մառանացն»* (108)*․ եւ Ալաւկայ որդւոյն քաջածանօթ է դեռ «կարաս գինով» կամ «կարաս ծեփեալ գինոյ»․ որ եթէ պղծուի՝ «կոտորեսցեն», կ'ըսէ* (ԺԶ, Գ)*, ցուցնելով թէ խեցեղէն էր այն նման այժմուս, կամ «ի բրուտի փռնէն» ելած* (Վաստ. 89)*, ինչպէս էր միւս ազգաց քով ալ։ Միջին դարուն նաեւ գուբ կոչուած է․ «լցան գուբք գինւոյ»* (Յհ. կթղ. 250)*․ եւ Յուսփայ ասպատակները «խորտակեալ* (էին) *զգուբս գինւոյ» Սիւնեցւոց* (Որբ. 141)*։ — Հոմանիշ յն.* πίθος*ի* (Առկ. ԻԳ, 27)*, Յունաց եւ Հռովմայեցւոց մէջ՝ էր խոշոր, ստուարափոր, անպարանոց եւ լայնշի բերանով, նեղ ու տափարակ յատակով* (Դար. Բ, 333)*, ինչպէս է ցարդ Հայաստանի մէջ ալ։ Ընդ հակառակն Վաստակոց գիրքն անոր վիզ կու տայ․ «Օծ զկարասին շրթն ի ներքուստ մինչեւ ի բերանն»* (116)*։ Բայց եւ սա լայն է միշտ, այնպէս որ իւր մէջ ճառայ մը կրնար մտնել* (Նոյն, 117)*։ Եւ իւր այս մեծութեան պատճառաւ մեր իշխանք եր-*

բեմն «զանձ բազում ի կարաս թաքու-ցեալ՝ ի գետնափոր տան» կը ծածկէին հարստահարողաց երեսէն (Արծ. 125)։ — Կարասով կը պահէին քացախն ալ (Վաստ. 125)։

Կարասձագ։ Բնականապէս նախորդին փոքրն էր, որ կրնար բովանդակել մինչեւ «տասն լիտր», եւ կը գործածուէր նոյն-պէս գինի պահելու (Նոյն, 114)։ Սա կը մնայ դեռ Մշոյ մէջ՝ կարասի ձագ կամ խռպոզ կոչմամբ։

Ճառայ։ Ստէպ յիշուած է Վաստակոց գրքէն (102,'14,'37)․ եւ կը նկարագրուի բեկանելի, որով եւ կաւեղէն (Նոյն, 107)։ Ունէր շլճի (117)․ բերանը բաւական լայն, միրգը «ճղերոմն» հանդերձ ընդունելու չափ (136)․ իսկ հասակով այնքան՝ որ կարասի մէջ կրնար մտնել (117)։ Սա եւս գինւոյ ընդունարան էր, եւ մնացած է տակաւին ու ձռայ կը կոչուի Մշոյ մէջ, զուցէ եւ այլուր․ ձեւով երկայն է, փո-րաւոր, եւ կանթեր ունի պարանոցին ուղ-ղութեամբ։ — Ճառայ արաբ․ բառ է։

Կաճոյր։ Շապուհ Հայաստանէն բերել կու տայ ուղտի երկու բեռն հող եւ «կա-ճոյր մի ջուր», զոր կը «ցանեն» բերած հողին վրայ (Փաւս. 166)․ ուրեմն անօ-թիս ընդունած ջուրը սակաւ էր։ Արդ կըր-

նանք երեւակայել զայն՝ սովորականէն մեծ սափոր մը, հաւանօրէն մետաղեայ՝ յարմար հեռաւոր անձնաս տեղափոխութեանց։ Ջրոյ այս անօթը հարկաւ գինւոյ ալ կը ծառայէր մի եւ նոյն նպատակաւ։

Սափոր։ Ս. Գրոց մէջ կը զուգադրի յունարէն զանազան բառերու[1]. եւ աւելի տեղ ὑδρίαին[2], որ իսկապէս բակոյկն է՝ ինչպէս պիտի տեսնենք (աստ, Դ, 4, Բ). մինչդեռ սափորն համազօր է ἀμφορεύςին, եւ հայ կոչմանց տարբերութիւնն իսկ կը պահանջէ որ այդպէս լինի։ Ըստ արեւմտեան հին ձեւերու՝ սափորի փորն աւելի ամփոփ է քան թակուկին, պարանոցը նեղ, երկու մանեկանման կանթեր, եւ պատուանդանաւոր կամ սեպաձեւ ստորոտով (Դար. Ա, 248). մինչդեռ ասորական օրինակի մը մէջ ձուաձեւ է, աւելի լայն պարանոցով, եւ երկու նոյնպիսի կանթերով (Վիգ. Ա, 521)։ — «Խեցեղէն սափոր» կը կոչէ Եղիշէ (195), ցուցնելով անոր սովորական նիւթը. եւ այս պատճառաւ ալ դիւրաբեկ էր նաեւ Հրէից քով (Դատ.

1. Ելք, ԻԶ, 33. Թագ. Ա, Ա, 24. Գ, Ե, 11. Է, 38. Ես. Ե, 10. Եզեկ. ԽԵ, 14 (կրկին). եօթ տարբեր բառեր։

2. Ծննդ. ԻԴ, 16. եւն. Դատ. Է, 16. Թագ. Գ, ԺԷ, 12. ԺԸ, 34։

Է, 20. Ժող. ԺԲ, 6). ուր շռայլ Բիւզանդացիք ունէին մինչեւ անգամ «զսափորս ոսկիս» (Ոսկ. Թղթ. Ա, 603). եւ այս վերջինս հարկաւ սեղանի յատուկ էր քան մառանի։ Իսկ Հրեայք՝ ինչպէս եւ ուրիշներ՝ կը գործածէին զայն գինի եւ իւղ տանելու կամ տալու այլոց (Թագ. Ա, Ա, 24. Գ, Ե, 11), եւ աղբիւրէն ջուր կրելու (Ծննդ. ԻԴ, 14 եւն)։ Ըստ Արիստոտելի՝ «զգինին ունի սափորն» նաեւ իբրեւ չափ (Դաւ. 408)։ Հարկաւ մեր քով ալ մի եւ նոյն ծառայութեանց յատուկ էր։ — Սափորի եւ ուրիշ անօթոց կանթերը նմանութեամբ «ունկունք» կը կոչուէին (Վարք Հրց. ի Հյկզ.)։

Կուժ։ Նախորդին փոքրն էր եւ աւելի դիւրատար, Ս. Գրոց մէջ գործածուած պէսպէս յոյն բառերու դէմ, որոցմէ նմանագոյնն է թերեւս ὑδρίσκη, սափորիկ (Դ Թագ. Բ, 20)։ Կը շինուէր «ի կաւոյ» (Երմ. ԺԹ, 1), եւ պաշտօն ունէր չափաւոր ջուր բերելու աղբիւրէն կամ տանելու հեռի տեղ (Թագ. Ա, ԻՁ, 11. Գ, ԺԹ, 6. Դ, Բ, 20)։ Ձեւը զանազան էր արեւելեայց մէջ (Վիգ. Բ, 1135). եւ մեր քով նոյն էր անշուշտ Պատարագի ժամանոցին հետ՝ որ կուժ մ'էր, եւ այսպէս ալ կոչուած է՝ «զկուժս գինւոյն՝» Ս.

նանք երեւակայել զայն՝ սովորականէն մեծ սափոր մը, հաւանօրէն մետաղեայ՝ յարմար հեռաւոր անձնաս տեղափոխութեանց։ Ջրոյ այս անօթը հարկաւ գինւոյ ալ կը ծառայէր մի եւ նոյն նպատակաւ։

Սափոր։ Ս. Գրոց մէջ կը զուգադրի յունարէն զանազան բառերու[1]. եւ աւելի ստէպ ὑδρία ին[2], որ իսկապէս թակոյկն է՝ ինչպէս պիտի տեսնենք (տես, Դ, 4, Բ). մինչդեռ սափորն համազօր է ἀμφορεύς ին, եւ հայ կոչմանց տարբերութիւնն իսկ կը պահանջէ որ այդպէս լինի։ Ըստ արեւմտեան հին ձեւերու՝ սափորի փորն աւելի ամփոփ է քան թակուկին, պարանոցը նեղ, երկու մանեկանման կանթեր, եւ պատուանդանաւոր կամ սեպաձեւ ստորոտով (Դար. Ա, 248). մինչդեռ ասորական օրինակի մը մէջ ձուաձեւ է, աւելի լայն պարանոցով, եւ երկու նոյնպիսի կանթերով (Վիգ. Ա, 521)։ — «Խեցեղէն սափոր» կը կոչէ Եղիշէ (195), ցուցնելով անոր սովորական նիւթը. եւ այս պատճառաւ ալ դիւրաբեկ էր նաեւ Հրէից քով (Դատ.

1. Ելք, ԻԶ, 33. Թագ. Ա, Ա, 24. Գ, Ե, 11. Է, 38. Եր. Ե, 10. Եզեկ. ԽԵ, 14 (կրկին). եօթ տարբեր բառեր։

2. Ծննդ. ԻԴ, 16. եւն. Դատ. Է, 16. Թագ. Գ, ԺԷ, 12. ԺԸ, 34։

է, 20. Ժող. ԺԲ, 6). ուր շռայլ Բիւզանդացիք ունէին մինչեւ անգամ «զսափորս ոսկիս» (Ոսկ. Թղթ. Ա, 603). եւ այս վերջինս հարկաւ սեղանի յատուկ էր քան մառանի։ Իսկ Հրեայք՝ ինչպէս եւ ուրիշներ՝ կը գործածէին զայն գինի եւ իւղ տանելու կամ տալու այլոց (Թագ. Ա, Ա, 24. Գ, Ե, 11), եւ աղբիւրէն ջուր կրելու (Ծննդ. ԻԴ, 14 եւն)։ Ըստ Արիստոտելի՝ «զգինին ունի սափորն» նաեւ իբրեւ չափ (Դաւ. 408)։ Հարկաւ մեր քով ալ մի եւ նոյն ծառայութեանց յատուկ էր։—Սափորի եւ ուրիշ անօթոց կանթերը նմանութեամբ «ունկունք» կը կոչուէին (Վարք Հրց. ի Հյկզ.)։

Կուժ։ Նախորդին փոքրն էր եւ աւելի դիւրատար, Ս. Գրոց մէջ գործածուած պէսպէս յոյն բառերու դէմ, որոցմէ նմանագոյնն է թերեւս ὑδρίσκη, սափորիկ (Դ Թագ. Բ, 20)։ Կը շինուէր «ի կաւոյ» (Երմ. ԺԹ, 1), եւ պաշտօն ունէր չափաւոր ջուր բերելու աղբիւրէն կամ տանելու հեռի տեղ (Թագ. Ա, ԻԶ, 11. Գ, ԺԹ, 6. Դ, Բ, 20)։ Ձեւը զանազան էր արեւելեայց մէջ (Վիգ. Բ, 1135). եւ մեր քով նոյն էր անշուշտ Պատարագի ժամանոցին հետ՝ որ կուժ մ'էր, եւ այսպէս ալ կոչուած է՝ «զկուժս գինւոյն՝» Ս.

Ղազարու 1365 թուականի մաշտոցէն (Եպսկօրհնէք) եւ Մխիթար Սասնեցիէն (Սաս. Ձ)։ Բարեբախտաբար ասոր ձեւը կը տեսնենք հին հայ գրչագրաց խորաններու վերեւ, սկւոյն հետ միասին։ Լամբրոնացւոյն աւետարանին մէջ (ի Ս. Ղազար), գրուած 1193ին, գծուած է այն՝ լայնափոր ու ցած, կարճ եւ լայն պարանոցով, կոնաձեւ պատուանդանով եւ երկու զարդարուն կանթերով։ Համակ ոսկի է՝ եկեղեցւոյ պատկանելուն համար, եւ կիտուածապատ։ Պիծակ Սարգսի աւետարանին մէջ, 1331ին, կայ նոյնը. պարանոցն աւելի երկայն, բերանը վզէն լայնագոյն. ծորակ մ'ալ ունի, մի կանթ, եւ կոնաձեւ պատուանդանին վերեւ գնդաձեւ է։ Յայտնի է՝ թէ հասարակ կժերու կազմերն ալ ասոցմէ հեռի չպիտի լինէին։

Փարչ։ Փոքրիկ «նեղաբերան» կուժ, որով Վաստակոց գիրքը գինին փորձել կու տայ (97, 98). եւ զոր միջին դարուն կը գործածէին ըստ սոյն Դամասկացւոյ՝ նաեւ Պատարագի գինին եկեղեցի տանելու. «փարչ սակաւ գինեաւ» (Լոյս, 1906, 475)։ Անաւարզեցին ալ կ'ըսէ՝ թէ «փարչ մի ջրոյ ի նշխարն խառնեն» (Անաւ.)։ Այս վկայութեանց մէջ արդէն շատ յայտնի է անօթիս ամենաչափաւոր ընդունակութիւնը։

*Տիկ։ Անասնոց մորթն ամբողջութեամբ հանուած, կը գործածուէր Հրէից մէջ՝ փոխադրութեան եւ պահպանութեան ջրոյ (Ծննդ. ԻԱ, 14), կաթի (Դատ. Դ, 29), եւ մանաւանդ գինւոյ (Յես. Թ, 4. Ա Թագ. ԺԶ, 20. Մատ. Թ, 17)։ Նոյնը կար ուրիշ ազգաց ու մեր քով ալ շատ հնէն։ Հայերը «տկաւ» ջուր կը բերէին՝ զԼուսաւորիչ տանջելու համար (Ագաթ. 95), ու գինի կը պահէին «ի տիկ» (Ալաւ. Է)։ Մեք այս վերջին պարագայն միջին դարէն վեր ալ տեսնելու ենք։*

*Հաղաղակ։ Բնիկ հայ բառ, ուստի եւ սպաս, նախորդին մէկ տեսակն էր, մորթէ շինուած պարկաձեւ նեղաբերան փոքր ու թեթեւ անօթ, եւ հոմանիշ յն.* ἀσκοπυτίνη *բառին, որով ճանապարհորդը չափաւոր գինի կ'առնուր միասին՝ իւր գործածութեան համար (Յդթ. Ժ, 5)։*

*Դդում։ Կարծեմ աղքատութիւնն իսկ գինւոյ սպաս ըրած էր զայս, յիշուած Մխիթ. Ապարանեցիէն՝ այսպէս. «Գինի ի դդմոյ եւ ի տկոյ եւ ի կարասոյ առեալ» (ի Հյկզ.)։ Յայտնի է՝ թէ յարակից զոյգ անօթոց պէս գինւոյ պահարան էր. բայց հաւանօրէն կը գործածուէր նաեւ գինւոյ փոխադրութեան անօթէ անօթ։*

*Հանապ։ Յիշուած է Վաստակոց գրքէն՝*

գինեգործութեան համար. կը պատուիրէ ընտիր գինիէ լեցնել «սակաւ յապակի հանապ, եւ դիր, կ'ըսէ, ի կարասն ի վերայ գինւոյն, այնպէս որ զերդ նաւ վերագայ» (116)։ Գաղ. hanap (բաժակ) բառն է, ծագած գերմաներենէ եւ անցած արաբերենի, որմէ մեք ալ առած ենք։ Բարսղի մեկնիչը հոմանիշ կը համարի զայս տաշտի. «տաշտ՝ հանապ» (Լծ. Բրս. Գ), զոր կը հաստատէ Փիլոնի լուծման մէջ ալ՝ ըսելով. «տաշտն հանապ է[1]» (Լծ. Փիլ. Հես.)։ Տաշտին ձեւը, զոր պիտի տեսնենք աւելի ուշ (Դ, 4, Բ), կ'երեւի Վաստակոց սա խօսքին մէջ եւս, «զերդ նաւ վերագայ»։ Նոյն գիրքն անոր ընդունակութեան չափն ալ կու տայ՝ սոյն բացատրութեամբ. «կիսակոժ մի լնուս կամ հանապ մի» (43). ուրեմն երկուքը մէկ կամ գրեթէ մէկ չափ էին։

Ջագար։ Ծանօթ է մեր մէջ Դ դարէն իսկ, իբր հեղուկ նիւթերը նեղաբերան անօթոց մէջ փոխադրելու գործի. եւ այս պաշտօնով Լուսաւորչի տանջանարան եղաւ (Ագթ. 95)։ Անշուշտ զգալի տարբերութիւն ունեցած չէ այժմեան ձեւէն։ Եւ

1. Այդ վկայութիւնքն ազնուօրէն ծանօթացուց ինձ Տէր Ն. Բիւզանդացի։

բնական է որ առաւելապէս մառանին մէջ գործածուէր։

Պարզուտ։ Անօթ մը դասական լեզուի մէջ (Երմ. ԾԲ, 19), միջին դարուն կը նշանակէր գինի կամ քացախ զտելու սպաս (Վաստ. 98,105,’15)։ Ամէն պարզուտ հաւասար չէր. առատ գինին կը քամէին «զամբիղով եւ չուխայով» (Նոյն, 104), երկրորդն առաջնոյն մէջ դրած. իսկ սակաւը՝ «պարզուտին» մէջ աւազ դնելով (Նոյն, 98,114), եւ որ քան միւսը փոքր կը թուի։

Ջովլի։ Պարզուտին մէկ տեսակն էր՝ ձարէ կամ երկաթեայ ցանցէ շինուած։ Մզելու համար գինին՝ սպասս կը դնէին կարասին բերանը։ Բայց երկար բուն մ՚ալ ունենալու է, որով կ՚իջեցնէին մինչեւ յատակն իսկ (Նոյն, 93)։

Դմբիչ։ Այսպէս կոչուած (Նոյն, 113, ’25), եւ կամ «թնբոց» (107) կամ «խառնիչ» (105), կը նշանակէր գաւազան մը՝ որով կը հարէին գինին՝ բարուքելու համար զայն, եւ ծայրը կապելով ըստ հաճոյս բուսոց խրձիկ մը՝ որ իւր համը գինւոյն կը հաղորդէր։ Այս գործին դեռ կը մնայ Հայաստանի մէջ։

Դրգալ։ Կը գործածուէր իբրեւ չափ՝ գինւոյ մէջ դեղեր ձգելու համար (Նոյն,

108,՚9)։ *Այս սպասին դարձեալ պիտի հանդիպինք իւր աւելի կարեւոր տեղւոյն մէջ* (Գ, 4, Ա)։

*

## Գ. ԽՈՀԱԿԵՐՈՑ

1. – *Վայրը*։ — *Նախորդներէն աւելի մերձաւոր ճաշարանին նիւթապէս եւ բարոյապէս, իւր դասական կոչումն էր «խոհակերոց»* (Եզեկ. ԽԶ, 23. Եփրեմ ի Հյկզ.), *եւ ստորինը՝ «խոհանոց»* (Վարք Հրց. ի Հյկզ.), *առաջինը պաշտօնէն* (խոհակեր) *եւ երկրորդը կերակրէն* (խահ) *ածանցուած։ Իւր ընդարձակութիւնն համեմատական էր տան ճոխութեան հետ. սակայն հարկ չկայ յատուկ ձեւ մը փնտռել տեղւոյս, այլ տեսնենք իւր յօրինուածը կամ մասունքը՝ որոց մէջ իսկ կը կայանայ իւր էութիւնը։*

*Կրակարան*։ *Այսպէս կոչուած է այն մասն՝ որոյ վրայ կերակուր կ՚եփէին, հոմանիշ յն.* ἐσχάραι (Առկ. ԻԶ, 21. Երմ. ԼԶ, 22,23) *կամ* πυρεῖονի (Ղեւ, ԻԷ, 3)։ *Անոր ձեւերը բազմակերպ էին ուրիշ ազգաց մէջ։ Սակայն հռովմէականներէն պարզագոյնն՝ որով գուցէ հայկականին եւս*

աւելի նմանողն էր քառակուսի տփի ձեւով, որոյ մէկ կողին վրայ կար հնոցին դռնակը, եւ վերին երեսին բոլորակ ծակ մը՝ որոյ վրայ կը հանգչէր անօթը։ Այս ծակը կըրնար եւ մեկէ աւելի լինել ըստ կարեւորութեան խոհանոցին. եւ այն ժամանակ կրակարանին ձեւն ալ կը փոխուէր (Դար. Բ, 1195–6)։ Յովհ. կաթողիկոս կը պահէ տակաւին «կրակարան» կոչումը (329)։ Բայց իւրմէ երկու դար վերջ կը գտնենք ակուռք մը, յիշուած նախ Ալաւկայ որդիէն՝ այսպէս. մուկն «թէ ի թոնդրուք կամ մերձ առ ակուռք գտանիցի, անվնաս են նոքա եւ այլ ամանքն որ ի վերայ իցեն» (Գ)։ Ակութին «ի վերայ» եփելու աման կը դնեն. ուրեմն սա դեռ ծանօթ կրակարանն է։ Իւր ձեւն ալ կը նշմարուի այդ վկայութեան մէջ. մուկը կրնայ գտուիլ «մերձ առ ակութ», մինչ դեռ թոնդրուքին մէ՛ջն իսկ կ՚ընկնի. ուրեմն ակութը բարձր էր գետնէն՝ ուր մուկը դժուարաւ կրնար ելնել։ Ակուռքին կը յաջորդէ բուրայ կոչումը. եւ Վարդան այդ երկուքն ալ կը համեմատէ ἐσχάρα (կասկարայք) բառին առաջին նշանակութեան (կրակարանի) հետ, ըսելով. «Կասկար՝ է ակուռ որ բուրայ ասի» (Վրդ. Ղեւտ. ԼԳ). կամ «Մտանելով (գորտերն) ի թոնիր եւ ի բուրայս,

(այն է) յակուբ որ ասի ի Հայս» (անդ, ԺԹ)։

**Թոնիր**։ Լծորդ պրս. տանուրին՝ որ է փուռն, թոնիր (Հիւբշ. 155), եւ հոմանիշ յն. κλίβανοςին, նպատակ ունէր պարզապէս հաց ու կարկանդակ եփելու թէ Հրէից մէջ (Ղեւտ. Բ, 4. ԻԶ, 26) եւ թէ արեւմտեայց (Դար. Ա, 1247)։ Նոյն վախճանին կը գործածէին զայն նաեւ Հայք, ըստ որում Ալաւկայ որդին յայտնապէս կ'ըսէ՝ թէ անոր մէջ «հաց» կ'եփէին (Գ), եւ ըստ Վաստակոց գրոց՝ թուզ ալ կը չորացնէին (137)։ Սա արեւմտեայց քով շարժական ու ձեւով զանազան (Դար. անդ), մեր մէջ հաւանօրէն նման էր այժմեանին. այս ինքն փորուած գետնի մէջ, աղիւսեայ բոլորակ որմով։ Այս պատճառաւ ալ Ալաւկայ որդին մինչդեռ պղծեալ խեցեղինաց համար կը գրէ՝ թէ «խորտակեսցեն» կամ «կոտորեսցեն», թոնիրն ըստ պարագային «քակեսցի ի հիմանց» կամ «մի՛ քակեսցի», կ'ըսէ, «զի անհնարին (ծանր) է պատրաստութիւնն» (Գ)։

**Թոնդրուք**։ Տեսանք արդէն Ալաւկայ որդւոյն վերոյիշեալ օրինակին մէջ. թոնրին պէս գետնափոր հնոց մը, որոյ էութիւնն ու պաշտօնը գուշակելի է յարակից բացատրութենէն. «եւ այլ ամանքն

որ ի վերայ իցեն» անոր (Գ)։ Ուրեմն սա եւս եփոց մ՚էր, եւ կրնայ նոյն լինել փոքրիկ թոնրին հետ, որ ցարդ կ՚երեւի ի Հայս՝ «թոնրիկ» կամ «թոնրուկ» կոչմամբ, ինչպէս իմացած եմ։ Կանոնագրիս խորութենէն, զոր կը դնէ ատոր եւ մեծին մէջ, ըսելով՝ որ եթէ անասուն սատակի թոնրին մէջ, սա կը պղծուի եւ պէտք է քակել, իսկ թոնդրուքը մի եւ նոյն պարագային մէջ գտնելով՝ «անվնաս» կը մնայ, կը հետեւի թէ վերջինս միւսին պէս կերակրոց հետ ուղղակի շփման մէջ չէր՝ իւր անմաքրութեամբ զանոնք պղծելու համար. այլ կրակարան էր միայն, եւ իւր վրայ կը դրուէին անօթները, ինչպէս է մինչեւ ցարդ Հայաստանի մէջ։

2. – Կահք։ — Ասոցմէ յառաջ պիտի բերեմ այնչափ՝ որչափ աւանդեր է մեզ հին մատենագրութիւնը, որ ընաւ դիտաւորութիւն ունեցած չէ մեր հին խոհանոցին մանրամասն նկարագիրը տալ մեզ։ Ահա ուրեմն իւր յիշածները։

Ունելիք։ Անմիջական օժանդակն էր վերոյիշեալ կրակարանաց, հուր կամ խանձող մը բռնելու՝ հանելու կամ դնելու համար։ Համարմատ յն. λαβίς բառին հետ, յոգնակի ձեւով գործածուած է ոչ միայն ուր բնագիրն ալ նոյնպէս էր (Ելք, Լէ, 24.

*Թիւք*, Դ, 9), *այլ եւ երբ սա եզակի էր* (Ես. Ջ, 6)։ *Այս պարագայն կարծեմ արդիւնք է գործւոյս կազմութեան, որ ունէր կրկին բազկներ՝ նման աքցանի, կամ մէկ ծայրէն յարած իրարու* (Դար. Բ, 1240)։

*Ակիշ*։ *Յիշուած միջին դարուն* (Վաստ. 213), *եւ այս անուամբ դեռ մնացած ի Հայաստան, է ճանկաւոր գործի մը, կրականը կամ թոնիրը խառնելու սահմանուած՝ ինչպէս այժմ եւ անցելոյն մէջ։ Եւ տաքացնելով՝ — ուրեմն յառաջ ալ երկաթեայ էր՝ — կը գործածուէր ուրիշ ծառայութեանց եւս* (անդ)։

*Կասկարայք*։ *Հոմանիշ* ἐσχάρα*ին* (Ղեւտ. Բ, 7. Բ Մնց. Դ, 11) *ըստ երկրորդ նշանակութեան* (Վիգ. Գ, 350–1), *եւ թարգմանող ուրիշ երկու բառերու եւս*[1] (Ղեւտ. ԺԱ, 35. Բ Մնց. Դ, 16), *լծորդ է ասոր. կասկրա բառին՝* (*որ է սակառ. Հիւբշ.* 306), *զոր Մնացորդաց առաջին թարգմանութիւնը կը կոչէ հրաւանեղ* (Հին Մնց. Բ, Դ, 16), *իբրեւ աւանդող հրոյ։ Իւր ձեւն յայտնի է արեւմտեայց քով՝ երկաթեայ զուգահեռական եւ մերթ խաչաձեւ ձողե-*

1. *Այդոնց իմաստով կ՚ըսէ Վարդան.* «*կասկար է* (*կամ իմանալի է նաեւ*) *պտտուկ պղնձի՝ յորժամ այնու կազմիցի*» (*անդ*, Ա). *եւ զոր կը կրկնէ Տաթեւացին ալ.* «*Կասկարայ՝ է պտտուկ պղնձի*» (*Հրց.* 357)։

*րով ու չորս ցած ոտներով (Դար. Ա, 1556–7). եւ ըստ Ս. Գրոց՝ իւր վրայ կը դրուէր ուրիշ անօթ, եւ կամ միս կը խորովուէր։ Այս է ըստ իս բնիկ ու միակ իմաստը հայ «կասկարայից», յայտնի նաեւ յոգնակի ձեւէն՝ ձողերուն պատճառաւ, եւ Ոսկեբերանի սա բացատրութենէն՝ թէ «Ոչ ոք ի զօրականաց արկ զմեզ ի խարոյկ եւ կացոյց ի վերայ կասկարայից» (Թղթ. Բ, 439). ակնարկութիւն ծանօթ կասկարային՝ որ վկայից տանջանարան եղաւ։ Այս գործին սովորաբար կը զետեղուէր կրակարանին կամ թոնդրուքին բերանը։*

*Կաթսայ։ Կը գրուի նաեւ կատսայ (Վեցոր. 79,80), եւ ծագած է ասոր. կադսա (ի յն. κάδος) հոմանիշէն (Հիւբշ. 306)։ Խոհանոցի անօթոց մեծագոյնն էր եւ պղնձեղէն, որով միս կ'եփէին (Բ Մնաց. ԼԵ, 13. Ա Եզր, Ա, 12, եւն)։ Ս. Գրոց մէջ կը զուգադիպի յուն. զանազան բառից, որոց ձեւերը դիւրին չէ ճշդել։ Բայց Վիգուրու յառաջ կը բերէ եգիպտական խոհանոցի պատկերներ (Բ, 1147), որոց մէջ կը գտնենք շատ անօթներ։ Հոն կան եւ կաթսայք, որոց լայնութիւնն աւելի է քան խորութիւնը. ունին հարթ ու թեթեւակի դէպ ի ներս շեղած կողեր, փոքր ինչ գոգաւոր յատակ, եւ երիզանման շուրթն։*

Այս է արդէն արեւելեան արդի ձեւն ալ։ — Բնականապէս կար նաեւ «խուփն կատսայիցն» (Վեցօր. 80), զոր վերագրելու ենք ուրիշ անօթոց ալ, համեմատ նաեւ արդի սովորութեան։

Սան։ Նախորդին փոքրը, եւ ըստ հընչման զուգադիպութեան՝ կարծես անոր սանը կամ աշակերտը, — զի բառս օտար ծագումն անծանօթ է, — ունէր մի եւ նոյն պաշտօնն ալ (Թագ. Ա, Բ, 15. Բ, ԺԷ, 28. Մնաց. Բ, ԼԵ, 13. եւն), յայտնի նաեւ Վեցօրէից սա բացատրութեան մէջ. «Զկատսայս եւ զսանս լի ջրով եռացեալս ի հրատի» (79)։ Ձեւով եւս նոյնպէս է նախայիշեալ եգիպտական քանդակաց մէջ, բայց խորութիւնը հաւասար լայնութեան, այս ինքն համեմատ այժմենին. մինչդեռ արեւմտեայց մէջ իւր հոմանիշը λέβης (ըստ Ս. Գրոց) էր տափարակ գնդաձեւ, եւ չորս արուեստական կանթերով (Դար. Գ, 1000). թէեւ եգիպտականաց մէջ այս ձեւն ալ կայ։

Պոյտն։ Այսպէս գրուած է սովորաբար (Թիւք, ԺԱ, 8. Դատ. Զ, 19. եւն), եւ տեղ մը նաեւ «պտունս» (Ոսկ. Թղթ. Ա, 603), որ պուտն եզակի մը կ'ենթադրէ։ Հոմանիշ է յն. χύτραին, որ էր խեցեղէն կամ մետաղեայ, գնդաձեւ, բերանը

*փորէն աւելի կամ նուազ անձուկ, եւ ստորոտը՝ նեղ ու տափարակ ծայր մ'իբրեւ պատուանդան* (*Դար.* Դ, 171)։ *Նոյնպէս է եգիպտական խոհանոցին մէջ ալ* (*Վիգ.* Բ, 1147)։ *Կար նաեւ երկայնաձեւն ու խորը* (*Դար. անդ*), *որ փոքր ի շատէ նման է արդի հայ պոյտին, մինչ դեռ առաջին ձեւն ալ կը մնայ տակաւին հայ անօթոց մէջ։ Ըստ Ս. Գրոց նկան ու միս կ'եփէին անով, եւ արգանակ կը տանէին այլուր. եւ ըստ Հարանց վարուց ոսպ ալ կ'եփէին* (Ա, 568)։ *Նոյն պաշտօնն ունէր եւ Հայոց քով, ինչպէս յայտնի է Աշտարակեցւոյն կանոնաց մէկ ակնարկութենէն* (ԻԸ), *եւ Ալաւկայ որդւոյն յայտնի վկայութենէն, «զապուրն (կերակուր) հանդերձ պուտովն»* (Գ)։ *Բայց մետաղեայն կը գործածուէր ուրիշ ծառայութեանց եւս. զոր օրինակ «երկաթի պուտամբք» կապար կը հալեցնէին* (*Ագթ.* 100)։ — *Միջին դարուն դեռ կը յիշուի ռամկացած անուամբ, «ի պուտուկս» կամ «պուտուկ պղնձի»* (*Վրդ. Ղեւտ.* ԺԹ, Ա), *վերջինս կրկնուած նաեւ Տաթեւացիէն* (*սատ*, 36)*. եւ շատ ստէպ Վաստակոց գրքէն ալ՝ «պուտուկ» կամ «պտուկ» ձեւով* (102 — 104), *կամ «կաւէ պուտուկ»* (220)*. եւ կը ծառայէր միշտ եփելու* (102,'4,'8,'20)։

*Կծիծ*։ Ասոր կը հանդիպինք միջին դարուն. եւ էր փոքրիկ անօթ՝ մանր բաներ եփելու կամ ջեռուցանելու (Վաստ. 206)։ Ճգնաւորի մը վզէն՝ տանջելու համար կը կախեն «աղբով լի կծիծս» (Վարք Հրց. ի Հյկզ.), այն է մեկէ աւելի, որ նշան է թէ մանր էին։ Կծուծ անուամբ դեռ ծանօթ է ամանիկս ի Հայս, լայնաբերան, երկայնաձեւ, գրեթէ հարթ կողերով։

*Մսահան*։ Էր խոշոր պատառաքաղ մը, երեքժանի Հրէից մէջ (Ա Թագ. Բ, 13. Ա Մնց. ԻԸ, 17), եւ արեւմտեայց քով նոյնպէս, եւ կամ երկժանի (Դար. Բ, 1424)։ Իւր պաշտօնն յայտնի է հայ անուան մէջ,—համարմատ յն. κρεάγραին,— որ է միս հանող կաթսայէն կամ սանէն։ Տարակոյս չկայ՝ թէ մեր նախնիք ալ պէտք ունէին այս սպասին եւ կը գործածէին ուրիշ ազգաց պէս։

*Շերեփ*։ Մեծ եւ երկայնաբուն դգալ, յիշուած միջին դարուն, եւ որ գուցէ իւր անունն իսկ տուած է Ժ դարուն ապրող Թադէոս ակէացւոյ հօր «Շերեփայ» (Արծ. 264,'90)։ — Կը ծառայէր ոչ միայն կերակրները խառնելու, այլ եւ իբրեւ չափ՝ անոնց մէջ ձգելի հեղուկներու. ինչպէս «շերեփ մի ջուր», կամ «երկու եւ երեք շերեփ իւղ» (Ոսկեփոր ի Հյկզ.)։ Նմա-

նապէս «շերեփով» կը ժողովէին կերակրոց փրփուրը (Վաստ. 103)։

*Տապակ*։ Մետաղեայ անօթ՝ յայտնի Խորենացւոյն (87), Ս. Գրոց (Ղեւտ. Բ, 5. Բ Թագ. Ջ, 19. ԺԳ, 9) եւ այլոց։ Արեւմտեայց քով ձուաձեւ էր, տափարակ ու ծանծաղ յատակով, եւ երկար բունով մը (Գար. Գ, 1077. Վիգ. Գ, 477)։ Հրեայք կը գործածէին զայն խմորեղէն եփելու, եւ ըստ Հարանց վարուց նաեւ ձուկն (Հյկզ.)։ Նոյն պաշտօնը կը մատուցանէր մեր քով ալ. որով զեղծանելով Արտաշէս, հրամայեց զԿրիւսոս «ճանել յերկաթեղէն տապակ» (Խոր. 87)։

*Շամփուր*։ Երկաթեայ ծանօթ նուրբ եւ սրածայր ձողը, զոր կը գտնենք նախ Մնացորդաց հնագոյն թարգմանութեան մէջ (Ա, ԻԸ, 16. Բ, Դ, 11). եւ յետոյ յիշուած Խորենացիէն, որոյ համեմատ Սմբատ ջեռուցանելով «շամփուր երկաթի ի միս խորովեալ», յորում շատ յայտնի է գործւոյս պաշտօնը, կը բոլորէ ու կը պսակէ մատնիչ Մերուժանայ գլուխը (227)։

*Տաշտ*։ Ծագած պրս. տաշտ՝ կոնք բառէն (Հիւբշ. 251), էր փայտեղէն բոլորշի գոգաւոր անօթ մը, որուն կը հանդիպինք եգիպտական խոհանոցի կահուց մէջ (Վիգ. Բ, 1147), եւ զոր Ալաւկայ որդին

կը տեսնէր Հայոց քով ալ (Դ)։ Սա չի բացայայտեր նպատակը, բայց բնականապէս կը գործածուէր խմոր շաղելու եւ այլ յայտնի ծառայութեանց։

Սանդ։ Պինդ նիւթեր մանրելու կամ փոշիացնելու յատուկ գործի, այսպէս կոչուած Նոննոսէ, Կաղանկայտուացիէն եւ Լամբրոնացիէն (Հյկգ.), եւ տեղ մը նաեւ «անկան» (Թուք, ԺԱ, 8)։ Արեւմտեայց քով կը լինէր սովորաբար գոգաւոր ու խոր, զանազան մեծութեամբ ու պէսպէս նիւթերէ՝ նպատակին համեմատ (Դար. Գ, 2008 –9)․ իսկ եգիպտական քանդակաց մէջ կոնաձեւ է, դէպ ի վեր լայնագոյն, եւ շրթանց մօտ երկու մանեկաձեւ կանթերով (Վիգ. Բ, 1147)։ — Ուն[illegible] տափանը, «սանդխոռն» (Ակ. [illegible] կա լոկ «տոռն» կոչուած (Լմբր. [illegible] հ սարակօրէն երկայն ձողա[illegible] ւասար թանձրութեամբ՝ բ[illegible] եւ արեւմտեայց։

Թափուր։ Ցիշ[illegible] է (Դ), զոր Հայկա[illegible] բար՝ «փայտեղ[illegible] բատ որում, [illegible] տանի մէջ ցա[illegible] տաձեւ բոլոր[illegible] հաց եւ նմա[illegible]

*Սակառի եւ Զամբիռ*։ Երկրորդը պարսկերէնէ ծագած, եւ համանիշք յն. κόφινοςի եւ σπυρίςի, տեսակներ էին զանազան նիւթերէ հիւսուած սակառներու, որոց ձեւերը կը տարբերէին թէ իրարմէ եւ թէ իրենց մէջ՝ արեւմտեայց (Դար. Ա, 1497. Դ, 1446–7) եւ արեւելեայց քով (Վիգ. Բ, 962–3)։ Այս պատճառաւ անշուշտ κόφινος մեր մէջ «որր» ալ թարգմանուած ու կոչուած է (Սղմ. Ձ, 7. Խոր. 214), իբրեւ հայ երրորդ ձեւ մը, հաւանօրէն որթի ոստերէ հիւսուած, ուսկից է եւ «որթաւոր» ածանցը (Ոսկ. Թղթ. Ա, 782)։ Ասոնք սահմանուած էին պէտ-
[illegible], ծառայութեանց, յորս եւ ուտելեաց
[illegible]կադրութեան (Դար. անդ)։ Հրեայք ա-
[illegible]ց մ[illegible]ւեցնէին իրենց հացերը (Մտթ.
[illegible] 37, եւն)։ Հարկաւ այս բա-
[illegible] անուանց հետ կային մեր
[illegible]էջ եւս՝ հացեփեաց թոնրին
[illegible]ղէն կրելու եւ այլն. եւ ար-
[illegible]ն» կը յիշուի ուրիշ գործա-
[illegible] (Ագթ. 96), եւ «զամբի-
[illegible]մառանին մէջ (անդ, 31)։
[illegible] կը համարի՝ թէ «զամբիղքն
[illegible] քան զսակառին» (Մտթ.

*Քուրձ*։ Մին աղած մորթէ

կը տեսնէր Հայոց քով ալ (Դ)։ Սա չէ բացայայտեր նպատակը, բայց ընականապէս կը գործածուէր խմոր շաղելու եւ այլ յայտնի ծառայութեանց։

**Սանդ**։ Պինդ նիւթեր մանրելու կամ փոշիացնելու յատուկ գործի, այսպէս կոչուած Նոննոսէ, Կաղանկայտուացիէն եւ Լամբրոնացիէն (Հյկզ.), եւ տեղ մը նաեւ «սանկան» (Թիւք, ԺԱ, 8)։ Արեւմտեայց քով կը լինէր սովորաբար գոգաւոր ու խոր, զանազան մեծութեամբ ու պէսպէս նիւթերէ՝ նպատակին համեմատ (Դար. Գ, 2008–9)․ իսկ եգիպտական քանդակաց մէջ կոնաձեւ է, դէպ ի վեր լայնագոյն, եւ շրթանց մօտ երկու մանեկաձեւ կանթերով (Վիգ. Բ, 1147)։ — Ունէր իւր տափանը, «սանդիտոռն» (Առկ. Գ, 31) կամ լոկ «տոռն» կոչուած (Լմբր. ի Հյկզ.), հասարակօրէն երկայն ձողաձեւ եւ անհաւասար թանձրութեամբ՝ ըստ եգիպտացւոց եւ արեւմտեայց։

**Թափուր**։ Յիշուած է Ալաւկայ որդիէն (Դ), զոր Հայկազեանը կը մեկնէ անորոշաբար՝ «փայտեղէն ափսէ, սկուտեղ, տաշտ», ըստ որում, ինչպէս կ՚իմանամ, Հայաստանի մէջ ցարդ «տեփուր» կը կոչուի տաշտաձեւ բոլորակ ու ծանծաղ անօթ մը, որով հաց եւ նման նիւթեր կը տանին ի սեղան։

**Սակառի եւ Զամբիղ։** Երկրորդը պարսկերէնէ ծագած, եւ համանիշք յն. κόφινοςի եւ σπυρίςի, տեսակներ էին զանազան նիւթերէ հիւսուած սակառներու, որոց ձեւերը կը տարբերէին թէ իրարմէ եւ թէ իրենց մէջ՝ արեւմտեայց (Դար. Ա, 1497. Դ, 1446–7) եւ արեւելեայց քով (Վիգ. Բ, 962–3)։ Այս պատճառաւ անշուշտ κόφινος մեր մէջ «որք» ալ թարգմանուած ու կոչուած է (Սղմ. Ձ, 7. Խոր. 214), իբրեւ հայ երրորդ ձեւ մը, հաւանօրէն որթի ոստերէ հիւսուած, ուսկից է եւ «որթաւոր» ածանցը (Ոսկ. Թղթ. Ա, 782)։ Ասոնք սահմանուած էին պէսպէս ծառայութեանց, յորս եւ ուտելեաց փոխադրութեան (Դար. անդ)։ Հրեայք անոնց մէջ կը լեցնէին իրենց հացերը (Մտթ. ԺԴ, 20. ԺԵ, 37, եւն)։ Հարկաւ այս ըսպասներն հայ անուանց հետ կային մեր խոհանոցին մէջ եւս՝ հացեփեաց թոնրին քով, բանջարեղէն կրելու եւ այլն. եւ արդէն «սակառին» կը յիշուի ուրիշ գործածութեամբ ալ (Ագթ. 96), եւ «զամբիղը» տեսանք մառանին մէջ (աստ, 31)։ Յհ. Եզնկացին կը համարի՝ թէ «զամբիղքն մեծագոյնք էին քան զսակառսն» (Մտթ. 342)։

**Մորքաղ եւ Քուրձ։** Մին աղած մորթէ

*եւ միւսը խարազէ շինուած պարկեր, որոց մէջ կը դնէին Հայք՝ ձուկ, հաց ու միրգ եւ ուրիշ ամէն ուտելիք* (*Ալաւ.* Դ)։ *Քուրձ բառով թարգմանուած է նաեւ Յունաց* σάκκος*ը* (*Ծննդ.* ԽԲ, 25,35), *որ նոյնպէս մազեղէն էր ու զանազան մեծութեամբ* (*Դար.* Դ, 932)։ *Դարձեալ «քուրձ» բառին եւ ասորածին «պայուսակ» հոմանիշին վերածուած է* μάρσιππος*ը* (*Ծննդ.* ԽԲ, 27, 28. *Միք.* Զ, 11), *որ կը համարուի կաշեայ կամ մազեղէն ու վզէն կախելի, պաշարի եւ ուրիշ ծառայութեանց յատուկ* (*Դար.* Գ, 1623)։ *Հայերենի մէջ կան քըրձին երկու հոմանիշեր եւս՝ «մախաղ» եւ «պարկ», որոնք կը թարգմանեն* πήρα *բառը* (*Յդթ.* Ժ, 5. *Ղկ.* Ժ, 4. *Մտթ.* Ժ, 10) *որ նախորդ յունարենին գրեթէ նման կը նկարագրուի եւ պարենի սեպհական* (*Դար.* Դ, 386)։ — *Ասոնց սահմանը բաւական յայտնի է Ս. Գրոց յիշեալ տեղեաց մէջ իսկ. Յակոբայ որդիքը քրձերով ցորեն կը բառնան իշոց վրայ եւ կը տանին իրենց երկիրը. ուրեմն այդ ամանը խոշոր էր։ Յուդիթ պաշար կը դնէ մախաղին մէջ եւ աղախնոյն ձեռքը կու տայ. Դաւիթ ալ ունէր իւր «հովուական մախաղն»* (*Ա Թագ.* ԺԷ, 40). *եւ Յիսուս կ'արգելուր աշակերտաց մախաղ կամ պարկ տանիլ ճանա-*

պարհին՝ պարենի համար։ Ասոնք ուրեմն փոքր էին նոյնպէս եւ Հայոց քով, եւ հոմանշեր՝ քան իրարմէ տարբեր ձեւեր, ըստ որում երկուքն ալ նոյն յուն. բառին եւ ենթակային համար ըսուած են Աւետարանաց մէջ։

Մաղ։ Այսպէս Ս. Գրոց (Սիր. ԻԷ, 5) եւ «մաղել» (Ես. ԻԹ, 5. Ոսկ. Թղթ. Բ, 562) կամ «մաղաքախութիւն» (Մանդ. 193) ձեւերու մէջ, կոչուած է նաեւ «Ըքոյր» (Վեցօր. 181). հաւանօրէն եւ խարբալ (աս. արբալա, արաբ. ղիրբալ), որմէ կը ծագի «խարբալել» (Ղկ. ԻԲ, 31. Եզն. 181). եւ «խախալ» (Ոսկեփոր ի Հյկզ.), ուսկից է հին «խախալել» բայը (Սիր. ԻԷ, 5)։ Այս կոչմունք եթէ գաւառական բարբառոց արդիւնք չէին՝ գէթ մասամբ, ապա կը նշանակէին մաղին՝ որ է ալիւրը զտող գործւոյն՝ նրբութեան եւ մեծութեան զանազան աստիճանները։ Եւ ես անհրաժեշտ կը կարծեմ գործւոյս ալ ներկայութիւնը հայ խոհանոցին մէջ, պէսպէս խմորեղինաց պատրաստութեան համար՝ զոր պիտի տեսնենք։

Աղի կոճ, կամ լոկ կոճ կը կոչուի Վաստակոց գրոց մէջ՝ աղ դնելու անօթը (121, '6), զոր Ալաւկայ որդին պարզապէս աղի «ամաճ» կ'անուանէ (գ)։ Գուցէ կը ծա-

գի յն. χῶνοςէն, եւ այն ժամանակ կոնաձեւ համարելի է։ Սակայն իր գոյութիւնն աւելի հին է. Թ դարուն Ստեփանոս Նահատակը «կոնն ի ռամկաց սովորական խօսից անուանէր», կ'ըսէ պատմութիւնը (Ցհ. կԹդ. 166). եւ արդեօք անօթիս նմանութեամբ տրուած մակդիր մը չէ՞ր այդ։

Խոհանոցին համար ալ կը գործածուէին՝ իբրեւ ջրոյ անօթներ՝ նաեւ կաճոյրը, սափորն ու կուժը, զորս տեսանք մառանին մէջ (տես, 25–7)։

Հոս չենք կենար դիտելու համար կերակրները, որոնք գուցէ մեր այցելութեան պահուն դեռ չկան կամ անպատրաստ են։ Զասոնք աւելի ուշով պիտի զննենք խընճոյից ժամանակ կամ երբ սեղանի վրայ բերուին։



## Դ. ՏԱՃԱՐ

1. — Վայրը ։ — Բնականապէս նախորդներէն աւելի ազնիւ եւ ուշագրաւ է ճաշավայրը. եւ նախ իր անունն իսկ, որոյ ներքեւ ծածկուած է նոյն ինքն տեղւոյն նկարագիրը։ Ճաշարան թէեւ հին, հա-

գիւ երբեք գործածուած է մեր մատենա-
գրերէն. զոր օրինակ Աղեքսանդրի Պատ-
մութեան մէջ (27)։ Անոր սովորական կո-
չումն էր տաճար. բառ մը՝ որ դասական
լեզուին մէջ սեպհական էր որ եւ իցէ ըն-
դարձակ տեղւոյ եւս՝ ուր բնակութիւն կամ
հաւաքմունք կը լինէին։ Ուստի այսպէս
կոչուեր են՝ ապարանք կամ մեծամեծ
տներ (Սղմ. խԴ, 9. Դան. Ա, 4. Պտմ.
Աղ. 99. Արծ. 300), համաձայն եւ հո-
մանիշ պլս. տաճար բառին (Հիւբշ. 251).
եւ անոնց մէջ ընդարձակ սենեակներ (Պտմ.
Աղ. 155. Արծ. 328), կամ ժողովոյ սը-
րահներ (Ա Մակ. ԺԲ, 3). եկեղեցւոյ Ներ-
քինը բեմէն դուրս՝ ուր ժողովուրդը կը խըմ-
բուէր (Օձն. 134,'40. Լմբր. Պոր. 146),
եւ փոխաբերաբար ամբողջ սրբավայրը
(Փաւս. 48. Ագթ. 577). Նմանապէս հրէա-
կան աղօթատեղին (Գ Թագ. Զ, 15,17),
եւ երբեմն հեթանոսաց մեհեանն ալ (Վկայ.
Ա, 1,26,27,546)։ Արդ՝ ճաշի տաճարն
եւս՝ աւելի հայեցի առմամբ՝ ցոյց կու
տայ մեզ տան մէջ ընդարձակ սրահ մը,
որ յատկացուած էր ընտանեօք ու բարե-
կամօք ի միասին կերակրուելու. եւ որ
կոչուած է նաեւ տեղի բազմականաց (Փաւս.
48), դահլիճ (Խոր. 250), խրախճանարան
(Նար. 202) կամ խրախարան (Որբ. Ի

Հյկզ.), եւ ընթրակերոց (Փիլ. ճոք. 30), վերջինս Հեսեան ճգնաւորաց ճաշարանին համար ըսուած։

Ամէն բնակարան չէր կարող այդպիսի «տաճար» մ'ունենալ. բայց ամէն տնակ կրնար համեստ «ճաշարանի» մը վերածել, գէթ ուտելու պահուն միայն, իւր որ եւ է յարմար մէկ անկիւնը։ Այս զանազանութիւնը մեծապէս զգալի կը լինի, երբ նկատենք որ «տաճարի» յիշատակութիւնը կապուած է միշտ մեծակառոյց շինուածոց հետ, ինչպէս էին հայ ազատանւոյն բնակարանք, «տունք ցանկալիք, բարձրաձեղունք եւ մեծամեծք» (Լաստ. 35). եւ այդ բառով կը կոչուին ճաշարանք Արշակայ, Պապի (Փաւս. 67,204) եւ առ հասարակ արքունեաց (Ագթ. 376), Յազկերտի (Եղիշ. 17), Արտագերց մեծ ամրոցին, սըրբոյն Ներսեսի եւ Աշտիշատու հայրապետանոցին (Փաւս. 171,77,48), Սիւնեցի Վասակայ, հայ տիկնանց (Եղիշ. 52,174) եւ ուրիշ ազնուականաց (Մամ. 24). ինչպէս նաեւ Ս. Գրոց (Մակ. Ա, ժԶ, 16. Գ, Դ, 13. Ե, 8) եւ այլ թարգմանութեանց մէջ։ Հայոց արքունեացը մանաւանդ այնչափ ընդարձակ էր, որ անոր մինչեւ «ինն հարիւր» հոգի բովանդակելը կը յիշուի (Փաւս. 67)։ Տաճարն իւր կարեւորու-

թեան համեմատ՝ պալատան շքեղագոյն մասերէն մին էր մեր քով ալ, ինչպէս կը նկարագրուի Պարսից Արտաշէս թագաւորին (Եսթ. Ա, 6)։ Եւ արդարեւ Գագիկ արքայ Արծրունի՝ Ռշտունեաց իւր ամրոցին մէջ շինեց «տաճարս... հրաշալիս պատկերակերպս» (Արծ. 328), որոց մին ալ հարկաւ ճաշին յատուկ էր։ Նոյնպէս Եզնկացին Յովհան կը ճանաչէ «զթագաւորաբնակ ոսկեզօծ տաճարս զարմանալի» (Ներբ. 139), որ կարծես Ռուբինեան արքունեացն են։

Սակայն բացօթեայ վայրերուն մէջ, ինչպէս ի բանակին, ճաշարանը կը պատրաստուէր «խորանի» կամ վրանի մը մէջ, ինչպէս Տերենտին էր՝ ուր հրաւիրուած էր Պապ (Փաւս. 232)· զի մեր թագաւորք ալ բանակին մէջ վրանաբնակ էին եւ ունէին իրենց «խորանն արքունի» (Նոյն, 118)։ Այսպէս Տրդատ Երիզայի գիւղին մէջ, ուր բանակովն եկած էր ի պատիւ Անահտայ, «եմուտ ի խորան անդր եւ յընթրիս բազմեցաւ» (Ագթ. 49)։ Փիլոնի մեկնչէն կ'իմանանք՝ թէ ժամանակի Հայոց շատ հաճելի էին նաեւ բացօթեայ գինարբութիւնք «ի մարգ կամ ի բուրաստանք», ուր կը հրաւիրէին զիրար (Լծ. Հես.)։

2. – Սեղան։ — Տաճարին գլխաւոր կա-

րասին սա է, որ հազիւ ներս մտած՝ կը գրաւէ մեր ուշը։ Այդպէս էր իւր սովորական կոչումն ալ (Մանդ. 205. Եղիշ. 132. Մեսր. 32, 39), զոր Ստ. Օրբելեան կ'ախորժի կոչել յունարէն ձայնով «զտրապէզն մարմնաւոր սեղանոյն» (230), խօսելով վանականաց մասին։ Աստ իսկական ձեւին որ եւ է նշմար չեմ գտած երիցագոյն դարերէն։ Բայց կրնանք երեւակայել զայն լայն ու քառակուսի, ինչպէս էր յառաջագոյն Յունաց եւ Հռովմայեցւոց քով (Դար. Ա. 1273–4,'78), եւ կամ բոլորակ՝ ինչպէս եղաւ հռովմ. կայսերութեան շրջանին (անդ, 1279)։ Անոր ընդհանուր՝ բայց կարեւոր գաղափար մը կու տայ մեզ Մանդակունին, երբ խօսելով ագապի մասին, ուր հարուստ եւ աղքատ միասին կը ճաշէին, կ'ըսէ. «Նոքա մեծարանօք ի վեր, եւ Քրիստոս (այս ինքն աղքատք) արհամարհանօք ի խոնարհ. Նոքա պատուով ի բազմականի, եւ Քրիստոս արհամարհանօք առ պատուհանդանի» (61)։ Այս տեղ ուրեմն ազնուականաց սեղանն ու բազմոցը բարձր են, մինչդեռ աղքատները գետնի վըրայ կը նստին, եւ ուր յայտնի է երկու դասակարգաց առտնին սեղանոց ալ տարբերութիւնը։ Ոսկեբերանի աղքատներն եւս բազմական չունէին (Թղթ. Ա, 530)։ Գալով

նիւթին, արեւմտեայց մէջ քարեղէն կամ փայտեղէն էր։ Բայց անտեսելու չենք՝ որ մեզ դրացի եւ անշուշտ մեր բարուց ալ կցորդ Աղուանից արքունի ճաշարանին մէջ կը յիշուին «երկուս արծաթի մեծագոյն սեղանս», որոց վրայ կը հաւաքէին խորտիկներէն՝ յետոյ աղքատաց բաշխելու համար (Կաղ. 47)։

Այն տաճարաց մէջ՝ ուր շատ բազմութիւն կը հաւաքուէր, ինչպէս արքունականը, եւ յաճախ աշխարհականք ու եկեղեցականք խառն, չէր կարելի բոլորն ամփոփել մի միայն սեղանի շուրջ, որ անհեթեթ մեծութեամբ պիտի գրաւէր ամբողջ սրահը, եւ դեռ չպիտի բաւէր։ Հետեւաբար զանազան սեղաններ կային, որով Մանդակունին «սեղանք» կը կոչէ (59)․ եւ Մեսրոբ անոցմէ կը թուէ Արշակայ օրով «ինն» լոկ եկեղեցականաց յատուկ (39)։ Արդէն նոյնպէս էր Հռովմայեցւոց քով ալ, ուր մինչեւ տասն սեղան յիշուած կայ (Դար. Ա, 1279)։

Հռովմացիք կայսերութեան շրջանին սովոր էին սեղանը ծածկել ազնիւ օթոցով մը (Դար. Ա, 1280)։ Նոյնը չե՞նք կարող եւ մեր քով տեսնել, երբ եկեղեցւոյ «սեղանն» ալ միշտ ունէր իւր թանկագին ծածկոյթը, «հանդերձ» կամ «զգեստ» կոչուած

(Աշտ. Ը. Օձն. 140)։ Սոյն ենթադրութիւնս հաւանականութեան կը տանի Մխ. Ապարանեցւոյ տրտունջն անոնց դէմ՝ որ «գծածկոց սեղանոյն (եկեղեցւոյ) եւ զկահից սրբութեանցն ածեն ի գործ ընտանեաց» (Խե, իէ)։ Եւ ի՞նչ բանի կրնային գործածել զայն տան մէջ՝ քան թէ համանման ծառայութեան կերակրոյ սեղանին վրայ. եւ զոր չպիտի առնուին՝ եթէ այդպիսի ծածկոյթ մը սովորական չըլլինէր նաեւ ճաշի սեղանին։

3. — Բազմական։ — Այսպէս կ՚անուանէ Մանդակունին ազնուականաց նստարանը (61), որուն կը ձայնակցին նաեւ ուրիշներ (Ոսկ. Մտթ. Բ, 67. Խոր. 142. Փաւս. 207. Պտմ. Աղ. 100), որոցմէ Փաւստոս կը կոչէ նաեւ «բազմակալ» (67)։ Անոր գետնէն բարձրութիւնը տեսանք Մանդակունւոյն վկայութեան մէջ, զոր կը հաստատէ Եղիշէ եւս, կոչելով տիկնանցը «բարձրազարդ տաճարաց» (174), որոյ մէջ զգալի է թէ շքեղութիւնը եւ թէ առաւելութիւնը սովորական աթոռոց հասակէն։

Գալով ուրիշ հանգամանաց, Յունաց ու Հռովմայեցւոց մէջ մերթ միապաղաղ ու կիսաբոլոր է այն, եւ մերթ քառակուսի՝ եւ երեք միահար երեսներէ ձեւացած, բաց թողլով մէկ երեսը՝ ծառայութեան համար։

Եւ կը լինէին շարժական կամ հաստատուն (Դար. Ա, 1269—80)։ Քառակուսւոյն օրինակն եւ ինքս տեսայ Նշանաւոր Պոմպէի քաղաքին աւերակաց մէջ՝ 1907ի այցելութեանս։ Կիսաբոլոր ձեւը դեռ կը պահէին Բիւզանդացիք. «զբազմականն որ կակուղ անկողնեօք յօրինեալ շուրջանակի ակումբն բոլորակ կարակնեալ», կ'ըսէ Ոսկեբերան (Թղթ. Ա, 530)։ Իսկ մե՞ր քով։ Յիշուած կը գտնենք թէ միաւորը, եւ թէ բազմաւորը։ Առաջինը՝ երբ կը խօսուի Պարսից վրայ. զոր օրինակ՝ Յազկերտ «զիւրաքանչիւր տեղիս շնորհէր նոցա ըզբազմականին» (Եղիշ. 17)։ Եւ Նիւշապհոյ մոգպետին սեղանին շուրջ կ'ըսուի «ունել զգլուխ բազմականին» կամ «զիւրաքանչիւր տեղի բազմականիդ», կամ «ի գլուխ բազմականիս մերոյ» (Նոյն, 132-3). ուր բազմականը միշտ եզակի է թուով։ Բայց նոյն տեղ կ'ըսէ նաեւ «ի բազմականացն անդ» (134). զոր եթէ հեղինակին կամ գրչաց անուշադրութեան արդիւնք կարծենք, Պարսից բազմականը միապաղաղ պիտի համարինք։ Իսկ ուր կը խօսուի հայ տաճարաց մասին, Նստարանք միշտ յոգնակի են. ինչպէս «բազմականացն կարգելոց» (Փաւս. 67), կամ «ի բազմականացն», որոցմէ իւրաքանչիւր կոչնական

իրենն ունի. «յիւրն քարշեաց ի բազմականն» (Խոր. 142). ուրեմն տարբեր արեւմտեայց անջատ՝ բայց դեռ երեք հոգւոյ յատուկ նստարաններէն ալ (Դար. Ա, 1278–9)։ Այս պատճառաւ Թագաւորի սեղանին շուրջ եւս զատ է միւսներէն «արքունական գահոյքն» (Փաւս. 216). եւ որ առանձին ուշադրութեամբ մը պարսկերէն «տախտ» բառով կը կոչուի՝ երբ Պարսից արքային սեպհական է (Նոյն, 124, '68). թէեւ այս բառ երբեմն մեր մէջ ալ գործածուէր[1] (Սահ. Կան. 112)։

Արծրունի Դերենկան տաճարին մէջ կը տեսնենք «բազմերանգ բազմականս ոսկեզարդ գահոյիցն» (Արծ. 301), ուր կան երկու կարասիք. մին՝ «ոսկեզարդ գահոյք», որ իրենց պերճութեամբ կը լրացնեն ազնուական հին նստարանաց նկարագիրը. եւ յատկացուցիչ են «բազմերանգ բազմականաց», որ կը նշանակեն՝ իմաստի միջնադարեան փոխանակութեամբ մը՝ ծանօթ նստարանաց կամ գահոյից վրայ դրուած բարձերը[2], – փոխան բիւզանդական, կամ յոյն եւ հռովմէական անկողնոց (Դար. Ա, 1278),

1. Վաստակոց գրոց մէջ կը նշանակէ մահիճ (80)։
2. Այդպէս կը կոչուէին ուրիշ նստելու բարձեր եւս նոյն շրջանի միւս մատենագրաց կողմանէ, ինչպէս Յհ. Կթղ. 265. Որբ. 208, եւ այլն։

— որոնք ահա «բազմերանգ» են, կամ «նըրկարակերպ» ոստայնանկուած հայ կանանցմէ. մանաւանդ որդան կարմրով (Յհ. Կթղ. 265,'50)։ Աստղիկ կը պատմէ Աշոտ Ողորմածի համար՝ թէ մահուան ժամանակ «զկապուտ զարդուցն եւ զբազմականացն եւ որմոց տայր կարօտելոց» (181). ուր «բազմականք» դարձեալ բարձերն են, զորս «կարօտեալք» կրնային գործածել՝ բայց գահոյքներն անշուշտ ոչ։

Բարձերը բազմականաց չափ հին են. մեր նախարարք «բարձիւք (այս է հնագոյն կոչումն՝) առաջի արքային... բազմէին» (Փաւս. 67)։ Պատուոյ նշան էր նկարէն ու հարուստ բարձերու վրայ նստիլը, յատուկ թագաւորաց, իշխանաց եւ հայրապետաց անգամ. որով այս բառը փոխաբերաբար նշանակեց նաեւ պատիւ կամ իշխանութիւն։ Ասոնք սեղանին շուրջ թուով հաւասար էին հրաւիրելոց. որով Արշակայ տաճարին մէջ կային «ինն հարիւր բարձ» ըստ Փաւստոսի (67), կամ «բարձս չորեքարիւր» ըստ Մեսրոպայ (32, 39)։ Հոս բարձը գործածուած է փոխան ամբողջ բազմականին։ — Ոսկեբերանի թարգմանիչն իւր կողմանէ եւ բնագրէն անկախօրէն կը յաւելու տեղ մը՝ «տապաստակս եւ բարձս բազումս» ազնուականաց

*ճաշարանին մէջ (Մտթ. Բ, 69), բնականապէս սեպհականք հայ սեղանին, որոց առաջինք կը թուին ազնիւ սփռոցներ (տապաստ արկանելիք) բազմականին վրայ ձգուած, նման հռովմէական ճոխ պաստառաց՝ որ նոյն պաշտօնը կը վարէին (Դար. Ա, 1280), եւ որոց կը պատահինք Դ դարուն Կապադովկիոյ մէջ եւս. «վերարկուք երեւելիք ոսկեթելք» (Նիւս. Հյր. ԺԲ)։ Իսկ տապաստակաց վրայ կը դրուէին «բարձերը»։*

*Փաւստոս՝ խոնարհամիտ Ս. Ներսեսի բազմոցին պարզութիւնը ցոյց տալ կ'ուզէ, երբ կ'ըսէ՝ թէ աղքատներն «ընդ նմա եւ ի նորա ակըմբի դարմանէին բազմեալք» (77)։ «Ակումբ» Ս. Գրոց մէջ մորթի հետ ալ գործածուած է թարգմանչէն, «զակումբն մաշկեայ՝» փոխան բնագրին միակ «մաշկ» բառին (Յդթ. ԺԲ, 15). եւ կարծել կու տայ՝ թէ Փաւստոսի օրինակին մէջ ալ հոմանիշ է տապաստակին, բայց աւելի անշուք. եւ նման բարձին՝ փոխաբերաբար կը նշանակէ հոն բազմոցն ինքնին կամ բազմոցն ալ միասին։*

*Շատ բնական է՝ որ նաեւ ռամիկը, որ գետնի վրայ նստած կը ճաշէր (աստ, 50), իւր ներքեւ ունենար նոյնպէս տոհմային պարզունակ ակումբը, որով բարձն ու տա-*

*պաստակը սեպհականութիւն միայն ազնուական դասակարգին։*

4. – *Սպասք։ — Ասոնք թէ թուով եւ թէ որակով պէտք զանազանէին հարկաւ ազնուականին ու ռամիկին քով։ Եղիշէի սա ճոխ բացատրութիւնը տիկնանց մասին՝ «սպասք երախանաց նոցա»* (174), *չպիտի կարենանք կրկնել հասարակ դասուն կամ կղերին համար։ Մխ. Գոշ իւրաքանչիւր դասակարգին համեմատ կը ճանաչէ Հայոց մէջ «անօթս ոսկեղէնս եւ արծաթեղէնս, փայտեղէնս եւ քարեղէնս եւ այլ այսպիսիս՝» որոց մէջ կերակուր կը դնէին* (*Առկ.* 130)։ *Աղուանից լուսաւորչածնունդ հայրապետին գերեզմանին մէջ գտուեցաւ «ապակի մի՝ նորին Գրիգորիսի ըմպելի»* (*Կաղ.* 59). *եւ Շիրակացւոյն մէկ վկայութեան մէջ կը պատահինք՝ «գինւոյ արկանելոյ յապակիս»* (*Աւգ.* 31)։ *Մինչեւ հոս կը հանի պարզ դասուն սպասուց ազնուութիւնը, ինչպէս Ոսկեբերան ալ սովորական կը համարի «յաղքատացն սեղան... բաժակս եւ զայլ ինչ անօթս յապակեաց եւ կամ յեւս նուազագունեաց»* (*Թղթ. Ա,* 529)։

*Սակայն հայ ազատանւոյն սեղանին վրայ պէտք կարենանք տեսնել աւելի ընտիրները, ինչպէս կը գուշակուի անոնց*

«սուրբ սկտեղք» բացատրութենէն (Եղիշ. 173), որ արտաքին մաքրութենէն աւելի՝ նիւթին որակը ցոյց կու տայ։ Աղոնց ազնուութեան սահմանը մինչեւ արծաթ իմանալի է մետաղներուն մէջ. վասն զի ոսկեղէնք՝ թագաւորին եւ կամ անորմէ առանձնապէս պատուեալ իշխանաց միայն սեպհական էին հին ժամանակները։ Եւ իրաւամբ կը յիշէ Մանդակունին «զբաժակն ոսկի՝ զոր թագաւորի իսկ մատուցանեմք ի սպաս եւ ի սեղան» (205), եւ ոչ այլոց։ Նաեւ Մանուէլ Մամիկոնեան՝ իբրեւ խնամակալ Հայոց գահուն՝ Պարսից արքայէն ընդունեցաւ «թագաւորական» պատիւներ, որոց մէջ էր եւ «ոսկի սպաս տաճարին» (Փաւս. 246)։ Արշակ Բ իրաւունք կու տայ իւր երկրորդին Արգամայ՝ եւ Սմբատայ իւր բարերարին՝ «ոսկի» կամ «ոսկեղէն» սպասներ գործածելու (Խոր. 124)։ Եւ Խոսրով արքայ Պարսից՝ Սմբատ մարզպանին «զամենայն անօթս մատռուակացն առաքէ նմա ոսկի» (Սեբ. 102)։ Նիւթի այս խտրութիւնն ուրեմն օրինական եւ յայտնի է մեր նախնեաց մէջ, եւ Մանուէլի ու Սմբատայ օրինակէն հետեւցնելով՝ նաեւ Պարսից, ինչպէս եւ Ասորւոց ալ (Ա. Մակ. ԺԱ, 58). ուր ընդ հակառակն Բիւզանդացի ազնուականաց «ամենայն սպասքն» կը

նկարագրութիւն «յարծարոյ եւ յոսկւոյ» անխտիր (Ոսկ. Թղթ. Ա, 530)։ Ոսկեղենի սեփականութիւնը սակայն չեմ կարծեր՝ թէ մեր մէջ Արշակունեաց շրջանէն յայսկոյս շատ երկար տեւած լինի։ ԺԲ դարուն Ալաւկայ որդւոյն կողմանէ արդէն կը յիշուին անխտրութեամբ մը՝ փայտեղէն եւ խեցեղէն անօթոց հետ նաեւ «երկաթեղէնքն եւ պղնձեղէնք, արծաթեղէնք եւ ոսկեղէնք՝» իբրեւ հասարակաց գործածականք (Դ). «ոսկեղէնքն» ալ հարկաւ յատուկ հայ մեծատանց, բայց ոչ լոկ թագաւորաց։ Արշակունեաց կարգերն յաւերժութեան սահմանուած չէին անշուշտ։

Գանք առանձնաբար նկատել իւրաքանչիւր սպաս, որոնք ճաշի պատճառաւ կամ ճաշի ժամանակ կը բերուէին ի սեղան։ Ասոնք կը բաժնուէին՝ մաս մը կերակրոց յատուկ, մաս մ'ալ ըմպելեաց։

Ա. – Կերակրոց սպասներն էին։

Տարգալ։ Ծանօթ է մեր քով հեթանոսական շրջանէն, եւ կը յիշուի այս անուամբ Արգամայ ու Սմբատայ գործածած սպասուց մէջ. «տարգալ ունել ոսկի» (Խոր. 124)։ Ասոր կը հանդիպինք Ս. Սահակայ կանոնաց մէջ ալ՝ «դղրգալ» ձեւով՝ ի շարս վախճանեալ տանուտեարց կահերուն (112)։ Զայս փոքր ի շատէ նման կ'ենթադրենք

այժմեանին, ինչպէս կը տեսնենք Յունաց ու Հռովմայեցւոց քով ալ (Դար. Ա, 1266)։ Եւ բնականապէս կը ծառայէր հեղուկ կերակրոց ճաշակման։

Պատառաքաղ։ Երկրորդն էր Արգամայ եւ Սմբատայ սպասուց (Խոր. 124), յիշուած մէկ բառով. եւ այնու որ «ոսկի» է, եւ դասուած սեղանի ուրիշ կարասեաց մէջ, բնաւ տարակոյս չկայ՝ թէ յատուկ էր ուտելոյ մսեղէն եւ այլ պինդ կերակրներ։ Սա Յունաց եւ Հռովմայեցւոց քով գրեթէ արդի ձեւն ունէր, եւ կը լինէր երկժանի կամ եռաժանի (Դար. Բ, 1424)։ —Նիւսացւոյն Թարգմանութեանց մէջ կը գտնենք պատառաքաղին ուրիշ հոմանիշ մ՚ալ, «զարծաթեղէն մանկաղն[1]» (Ժող.Ը), յն. περόνηին դէմ, որ էր ծակող սրածայր ձողիկ մը (Շենկլ, Աղեքս.), ուստի մսին մէջ վարսելի։ Հայերէն բառդ անունը կրնայ սեպհական լինել մեզ ալ՝ կապադովկացւոց այդ սպասին հետ միասին։

Դանակ։ Երրորդ կարեւորն էր սեղանի վրայ՝ որով Արշակ «միրգ» եւ «ամիճ» կը կտրէր (Փաւս. 208). եւ որ կը ծառայէր նաեւ «զհաց» եւ «զայլ եւս կերակուրս»

1. Առաջին անգամ հրատարակուած Տէր Ն. Բիւզանդացիէն ի Բազմ. ԻԴ, 371։

կտրելու ըստ Սարգիս մեկնչի (70)․ այս ինքն ճիշդ ինչպէս այժմ կը գործածենք մեք զայն։ Վիգուրու եգիպտական դանակի մը ձեւը կու տայ՝ յար եւ նման մեր արդի սեղանոյն արուեստական կտրոցաց (Բ, 1097)։

Արեւմտեան հնախօսք, ինչպէս Սայլիոյ եւ Կ․ Մ․ նկատելով պատառաքաղին նուազ յիշատակութիւնն Յունաց եւ Հռովմայեցւոց մէջ, անոր գործածութիւնը բացառիկ բան մը կը կարծեն, եւ թէ անոնք հին ժամանակ ու միջին դարուն սովոր էին մատներով բռնել կերակուրը՝ նման ուրիշ արեւելեայց (Դար․ Բ, 1424․ Ա, 1274, ’80)։ Լրսետր պատառաքաղն ու դանակն անձանօթ կը համարի նաեւ հրէական սեղանին վրայ (Վիգ․ Ե, 1047)։ Տեսնելով Հայոց այժմեան սովորոյթը, մեք ալ նոյնպէս պիտի խորհէինք այդ երկու սպասուց մասին, եթէ չլինէին վերոյիշեալ ներքին վկայութիւնք։ Իրաւ է՝ թէ ադոնք մեծամեծաց համար ըսուած են․ բայց դիտելի է՝ որ դժուարաւ կրնար լինել այդպիսի հիմնական տարբերութիւն մ՚ազնուականին ու ռամկին միջեւ։ Եւ եթէ Խորենացւոյն վկայութեան մէջ «ոսկին» առիթ կու տայ յիշելու զանոնք, չի հետեւիր՝ թէ նոյներն աւելի պարզ նիւթերէ չկային

նաեւ սուկ քաղաքացւոյն սեղանին վրայ, ուսկից յետոյ թուրք ազդեցութիւնը վըտարած լինի։

Պնակ։ Առաջինն էր կերակրի անօթոց մէջ, բախտաւոր դիպուածով մը Ս. Սահակայ կանոններէն յիշուած դրգալին հետ, «մինչեւ ցպնակ եւ ցդրգալ» (112), որպէս զի անաշխատ հասկանանք՝ թէ սա գըլխաւորապէս ապուրի յատուկ էր այն ժամանակէն։ Նոյն էր եւ նոյն բառով թարգմանուած է նաեւ յն. πίναξ (Ղկ. ԺԱ,39. Ոսկ. Թղթ. Ա, 230), որոյ ձեւն էր բոլորշի՝ գոգաւոր ու տափարակ, առանց խոտոր շրթներու, խեցեղէն կամ մետաղեայ, եւ սահմանուած նաեւ մսեղէն կերակրոց (Դար. Ա, 971–2)։ Խորենացին արդարեւ նոյն նկարագիրը կը դնէ հետեւեալ բացատրութեան մէջ. «պնակաձեւ փոսել ըզմէջսն» սահմանաքարից (134)։

Սկաւառակ։ Ս. Գրոց մէջ կը հանդիպի չորս յոյն բառերու[1], եւ առաւելապէս τρυβλίονի[2], որ բառագրոց մէջ հոմանիշ կը համարուի նախորդին (Շէնկլ, Ալեքս.), եւ յատուկ համեմախառն մսեղինաց (Դար. Գ, 337)։ Բայց մեր երկու բառերն՝ ան-

1. Նեեմ. Է, 70. Բ Եզր, Ա, 10. Մտթ. ԻԳ, 25։
2. Գ Թագ. Է, 50. Մտթ. ԻԶ, 23. Մրկ. ԺԴ, 20։

նման են, եւ անշուշտ անօթներն ալ տար֊
բեր իրարմէ։ Յուդա իր ձեռն Յիսուսի հետ
«մխեաց ի սկուտեղն» (Մատթ. ԻԶ, 23).
ուրեմն հասարակաց ուտելի եւ ըստ իս
պնակէն մեծ էր այն։ Դարձեալ ըստ Յով֊
հաննու՝ Յիսուս ինքնին «թացեալ զպա֊
տառն՝» կու տայ մատնչին (ԺԳ, 26). ու֊
րեմն սկուտեղին մէջ ջրախառն կերա֊
կուր մը կար, որով խոր ալ էր։ Այս վեր֊
ջին պարագայիս եւ ընդհանուր ձեւին հա֊
մար, զոր Շիրակացին կը սահմանէ «բո֊
լորակ եւ խոր» (Աւգ. 28), դիտելի է՝ որ
նմանութեամբ նոյնպէս կը կոչուէր մարդ֊
կային գանկին վերին գմբեթաձեւ մասն
ալ. «զսկուտեղն գլխոյն» (Փաւս. 233),
կամ «յոսկերէ սկուտեղին» (Խոր. 173)։
Իսկ նիւթը զանազան էր. Բիւզանդացիք
ունէին մինչեւ անգամ «սկուտեղս ոսկիս»
(Ոսկ. Թղթ. Ա, 603)։

Ափսէ։ Ծագած է յն. ἀψίς բառէն, որ
կը նշանակէր գոգացեալ իրեր, ինչպէս
գմբէթ, լուացման կոնք (Դար. Ա, 11–2),
բոլորակ պնակ (Աղեքս.) եւ այլն։ Գոր֊
ծածուած է փիլոնի թարգմանչէն (Ծոց.
19), նշանակութեամբ իւրմէ հեռի բառի
մը դէմ, ῥυτός, որ կոնաձեւ ըմպանակ մ'էր՝
լայնութիւնը դէպ ի վեր (Շենկլ)։ Բայց ա֊
ւելի հին կտակարանին մէջ՝ իբրեւ Տա֊

ճարի սպաս, τρυβλίον (Թիւք, Դ, 7) եւ φιάλη (Դ Թագ. ԻԵ, 15. Ա Եզր, Բ, 13) մեզ ծանօթ բառից դէմ, որ հոմանիշ են հայ «ըսկաւառակի» եւ «տաշտի»։ Τρυβλίον մեր մէջ «կոնք» ալ թարգմանուած կայ (Թիւք, Է, 13)։ Իսկ այս երրեակ համեմատութեան կամ լծորդութեան մէջ յայտնի է ափսէին բոլորակութիւնն ու գոգաւոր խորութիւնը։ Եւ նկատելով որ Թուոց «ափսէք» (Դ, 7) եւ Գ Թագ. «սկաւառակք» (Ե, 50) մի եւ նոյն յն. բառի թարգմանութիւնն են եւ Տաճարին մի եւ նոյն սպասը կը ցուցնեն, կը փորձուիմ զափսէն եկամուտ պարզ հոմանիշ մը նկատել սկաւառակին, քան առանձին անօթ մը։

Սկուտղ։ Այսպէս է դասական սակաւածանօթ ու կանոնաւոր ձեւը, «զսկուտղն» (Ոսկ. Թղթ. Ա, 852), զոր ես անխտիր տեսնել կ'ախորժիմ ոսկեդարու սկտեղ (սեռ. տր.), սկտեղք եւ սկտեղք հոլովոց մէջ ալ, եւ զոր ստորին հայերէնն ուղ. «սկուտեղ» կամ «սկտեղ» կ'ընէ (Հյկզ.)։ Ձայնով լծորդ է յն. σκυτάλη (թիթեղն) կամ լտ. scutella (խոր պնակ) բառից։ Սակայն թարգմանութեանց մէջ կը հանդիպի վերոյիշեալ πίναξին (Մտթ. ԺԴ, 8. Մրկ. Զ, 25. Ոսկ. Թղթ. Ա, 852)։ Բայց մեր քով բաւական տարբեր էր իսկական պնակէն՝ իւր

թեթեւ խորութեամբ,՛ ըստ որում կը գործածուէր միայն պինդ կերակրոց, ինչպէս էին «խորտիկք՝» որ «սկտեղը» ի սեղան կը բերուէին (Ոսկ. Մատթ. Ա, 688. Թղթ. Ա, 852)։ Նոյն պատճառաւ Մկրտչին գըլուխն ալ բերուեցաւ «ի վերայ սկտեղ». եւ «ի վերայ», ըստ որում «ի մէջ» ըսուելու չափ խորութիւն չունէր։ Գր. Արշարունւոյ այլաբանական բացատրութեամբ՝ միրգն ալ սաով ի սեղան կը բերուէր. «ԶՔրիստոսի փրկութեանն պտուղս, կ'ըսէ առ Վահան Կամսարական, զոր կարգեցի (ի) սկտեղ պատմութեան բանիս, ընծայելով ի սեղան քաջախորհուրդ իմաստութեանդ քո» (Ա)։ Միով բանիւ՝ «սկտեղք» հայ տաճարին ամենէն սովորական սպասներն էին (Եղիշէ. 173)—Սկուտղ՝ ձեւին կոչումն էր եւ ոչ մեծութեան, որ կրնար զանազան լինել։ Այսպէս Ս. Սահակայ Տեսլեան մէջ կայ «սկտեղ մի մեծ արծաթի» իբր եկեղեցական սպաս, որոյ «ի վերայ» դրուած էր «Նափորտ մի բեհեզեայ ծալեալ» (49). ուրեմն հոս ալ խոր չէր այն ու պէտք չէր լինել։ Եւ «մեծ» էր, որով կը տարբերէր կերակրոյ յատուկ փոքրերէն։ Անօթիս բոլորակութեան համար Փիլոն արեւու անիւը «սկուտղ» կ'անուանէ (Մն. 598)։ Մի եւ նոյն պատճառաւ՝

ոմանք երկիրս ալ «սկտեղ» (δίσκος) նմանեցուցին (Վեցօր. 181)։ Վերջապէս Եղիշէի «սկտեղք» յոգնակին նշան է անոնց բազմաւորութեան մի եւ նոյն սեղանի վրայ, այս ինքն ճաշողաց թուոյն համեմատ. վասն զի պատմիչը նոյն տեղ եզակի ձայնով կը խօսի՝ երբ նիւթը բազմաւոր չէ. «չանկաւ օշնան ի ձեռս... եւ ոչ մատուցաւ իւղ»։ — Նոյն սպասս կը գործածուէր եւս գինւոյ տաշտը կոչնականաց մատուցանելու. եւ այն ժամանակ կը կոչուէր «բաժակալ[1] սկուտղ» (Փաւս. 233), կամ լոկ «բաժակակալ» (Եղիշ. 171)։ Եւ իբրեւ ծաղկանց անօթ դրուելով սեղանին վրայ, կը դառնար «ծաղկակալ սկուտղ» (Խոր. 142)։

*Մաղզմայ*։ Մին ս. սեղանոյն նուիրանոցներէն, եւ այսպէս կոչուած ԺԱ դարու հնագոյն մաշտոցէն եւ յայլոց որ ի Ս. Ղազար, ինչպէս եւ Լամբրոնացիէն (Պտր. 84), կը համարիմ թէ նոյնպէս էր Ե դարուն ալ, որով Մնացորդաց առաջին թարգմանութիւնը կը թուէ զայն Տաճարի նուիրական սպասուց մէջ, «մաղզմայից սակոցն» (Ա, ԻԸ, 17), ուր նշմարելի է ս.

1. Այդպէս ըստ բոլորագիր ու նոտրագիր երկու օրինակաց Վենետկոյ, եւ «բաժկալ՝» ըստ երկու նոտրագրոց. չորսն ալ անթուական են։

անօթին սուրբ անուն մ'ալ տալու ջանքը։ Բայց բառս թարգմանչաց օրով այդ նշանակութեան հետ այնքան խստիւ կապուած չէր տակաւին, որով Ոսկեբերանի թարգմանիչը Պատարագի նոյն սպասը կրնար կոչել նաեւ «զսկտեղսն» (Թղթ.Ա.703)· եւ ընդ հակառակն Սիրաքայ թարգմանիչը կ'ըսէ, «մի՛ ճեպեր ի մաղազմի նորա», այս ինքն կերակրոյ անօթին (ԼԴ, 17. Թէեւ յն. է դարձեալ τρυβλίον, սկաւառակ)։ Այս համեմատութենէն կը հետեւի՝ թէ «մաղզմայն» նոյն կամ գրեթէ նոյն էր «սկտեղին» հետ, եւ անոր պէս բոլորշի ու շատ տափարակ, ինչպէս կը տեսնենք անոր եկեղեցական հին արեւմտեան ձեւերուն մէջ (Մարտ. 587–8)։ – Ուշագրաւ է Աղուանից Վաչական արքայի ըրածը, որ «ոսկեղէն մաղազմայս[1] բերեալ», անոնց մէջ ս. Գրիգորիսի նշխարներն «անոյշ գինով հրամայէր լուանալ» (Կաղ. 59)։ Աղոնք արդեօք եկեղեցւոյ սպասականնե՞րն էին, զորս կը գործածէր ի յարգանս վըկային, թէ իւր տաճարէն բերաւ։

1. Այսպէս ըստ Ս. Ղազարու օրինակին՝ որ բոլորագրէ մը գաղափարուած է. նոյն մատենադարանին Գ. Ճառընտիրը կը կարդայ «մաղզմայս». եւ Կաղանկայտուացւոյն Էմինեան տպ. «մողոզմայս»։

**Խաճ**։ Ուտելեաց վերջին սպասն էր, լծորդ պրս. խաճ բառին՝ որ է սեղան (Գ. Դպ.), եւ հոմանիշ յն. κάνεον‑ի (Ծննդ. Խ, 16. Ելք. ԻԹ, 3, եւն), որ կը նշանակէր պրտուեղէն սակառ մը՝ բոլորշի, լայն ու ծանծաղ (Դար. Ա, 892), եւ որ նշմարելի է եգիպտական քանդակաց մէջ ալ, աւելի փոքր ու խոր (Վիգ. Բ, 1147)։ Ս. Գրոց մէջ կը գործածուի խմորեղինաց։ Մեր յատուկ կոչումէն եւս հետեւցնելու չե՞նք՝ թէ աղանդերը սոյն անօթով ի սեղան կը բերուէր՝ գէթ հին ժամանակ, որուն յաջորդած լինի սկուտղը (տես, 65)։

**Բ. — Ըմպելեաց սպասներն էին**։

**Նուագ**։ Ծանօթ ոսկեդարու լեզուին մէջ, եւ իբր բնիկ հայեցի՝ գործածուած յատկապէս ինքնագիր մատենագրաց ու մերթ քիչ մ'ազատ թարգմանութեանց մէջ եւս[1], հաւանօրէն հոմանիշ էր միջին եւ նոր հայերէն «գաւաթին», եւ սեպհական ըմպելեաց, եւ յատկապէս գինւոյ։ Արգամ ու Սմբատ իրաւունք ունէին «ոսկեղինօք ըմպել նուագօք» (Խոր. 124). եւ Սմբատ Բագրատունի նուիրեց Յուսփայ գեղեցիկ «նուագս» (Յհ. կթղ. 250)։ Մեք այս անօթին գոր-

1. Մակ. Ա, ԺԱ, 58. Բ, Գ, 39. ուր յն. է χρύσωμα, այս ինքն որ եւ է «ոսկեղէն» սպաս։

ծածուլթեան դեռ պիտի հանդիպինք յետոյ։ Գալով ձեւին, թէ բնագրաց եւ թէ թարգմանութեանց մէջ անորոշ է այն։ Բայց հին ըմպանակներն երեք հիմնական ձեւեր ունէին. խոր, տաշտաձեւ կամ պատուանդանաւոր։ Վերջին երկուքս պիտի տեսնենք ուրիշ անուանց ներքեւ. ուրեմն մեր «Նուագին» պատկերն՝ հակառակ Հայկազեանի «Նուագակաձեւ դաշխուրան» յարմարական բացատրութեան՝ որոնելու ենք առաջնոյն մէջ։ Այս ինքն երկայնաձեւ, վարէն դէպ ի վեր աստիճանաբար լայնացած, եւ տափարակ յատակով, ինչպէս կը տեսնենք հռովմէական սեղանի մը վրայ եւս (Դար. Ա, 1278). եւ կամ ստորին մասը գնդաձեւ եւ վերինը բաժականման ու լայնաշուրթն՝ աորականաց պէս (Վիգ. Բ, 1077). թէև մանրամասնութեանց մէջ մերը կրնար շեղիլ օտարներէն, պահելով անոնց ընդհանուր գծերը միայն։ Սոյն սպասն է որ միջին դարուն «կրդայ» կը կոչուէր, եւ էր հասարակ ըմպանակ գինւոյ (Վաստ. 119,'20. Լծ. Պհ. Բ). ըստ որում դեռ գաւառաց մէջ կը պահէ նոյն անունն ու պարզ ձեւը՝ կանթերով հանդերձ։

Տաշտ։ Նախորդին պէս քաջածանօթ դասական լեզուին մէջ, զոր միջին դարը պրս. բառով թաս ալ կը կոչէր (Հրց. 359)։

Հոմանիշ է յն. φιάλην (Ա Մակ. Ա, 23. Առկ. ԻԳ, 31. Ոսկ. Մոթ. Ա, 146), որ կը նըշանակէ կիսագնդաձեւ տափարակ բաժակ մը, առանց կանթից ու պատուանդանի, ինչպէս կը տեսնենք արեւմտեան ու եգիպտական հնութեանց մէջ (Դար. Դ, 434. Վիգ. Բ, 1075). եւ այս պատճառաւ կը հանգչի «ի մատունս» (Փաւս. 233. Ագթ. 376) կամ «ի ծայրս մատանց» (Նար. 75)։ Բոլոր հին ազգաց քով կը հանդիպինք ասոր։ Շապուհ կոչնոց ժամանակ իւր առջեւ կը դնէր «զտաշտ» որոյ վրայ նկարել տուած էր զքաջն Մուշեղ, ի վարձ անոր ասպետական վարման իւր կանանց հետ (Փաւս. 190)։ Տերենտի ընթրեաց մէջ Պապ արքայն «ունէր զտաշտ ոսկի» ուսկից կ՚ըմպէր հանդարտօրէն (Նոյն, 233). Նշան՝ թէ բաւական առատ էր ընդունակութիւնը։ Միջին դարուն Հայոց մէջ կը յիշուին աւելի խոշորներ, «տաշտ մեծամեծ» (Լծ. ՊՀ. Գ), որ սակայն մեզ յատուկ եւ կամ նորութիւն մը չէր. Աղեքսանդրի պատմութեան մէջ ծանօթ են արղէն ոսկեղէն եւ արծաթեղէն այնպիսի տաշտեր, «յորմէ կարիցէ այր ուժեղ զգաստ արբենալ» (116)։

Սկահ։ Կը հանդիպինք ասոր լոկ մովսիսական աշտանակի նկարագրին մէջ, որոյ ստեղանց ծայրերը կային «սկահքն»

*կամ «սկահաձեւք», զուգադիր յն. κρατήρին* (*Ելք*, ԻԵ, 31,33 *եւն*). *եւ էին ձիթոյ ընդունարանք՝ կիսագնդաձեւ ու խոր, ինչպէս կը տեսնենք աշտանակին հին քանդակաց մէջ* (*Վիգ.* Բ, 554)։ *Յունարէնն առաջին իմաստով կը նշանակէր խառնարան, որ էր ընդունարան մը՝ զանազան մեծութեամբ ու ձեւերով, որոյ մէջ Հրեայք եւ ուրիշ արեւելեայք, Յոյնք եւ Հռովմայեցիք գինին կը բարեխառնէին ջրով, եւ այնպէս ճաշարան կը բերէին* (*Դար.* Ա, 1552–6)։ *Մեր նախնիք գինին զուտ կ'ըմպէին, ինչպէս ցոյց պիտի տամ իր կարգին. հետեւաբար այդպիսի անօթ մ'ալ չունէին. անոր համար ստիպուեր են՝ ուր որ բնագրին իմաստը պահանջեր է՝ յունարէնը նիւթապէս թարգմանել «խառնելի»* (*Ելք*, ԻԴ, 6. *Առկ.* Թ, 2 *եւն*), *կամ «խառնարան*[1]*»* (*Բրս. Արբ. Նիւս. Հյր.* ԺԲ), *կամ «խառնոց»* (*Փիլ. Մն.* 491–2)։ *Այս անօթին հետ ունեցած նմանութենէն՝ մի եւ նոյն անուամբ կոչեր են Եօթանասունք աշտանակին բաժակներն ալ։ Մեր թարգմանիչք ընդ հակառակն հոս կը շեղին*

1. *Պաւղ. Տարօնացին Ս. Գրոց ազդեցութեան ներքեւ ըսելով Հայոց համար՝ թէ «զգինեբրուացն կազմեն խառնարանս»* (*Վերլծ.*), *կ'իմանայ գինւոյ ընդհանուր անօթները։*

խառնարանի գաղափարէն, ու ընիկ բառով մը կը կոչեն «սկահք», որ սակայն դարձեալ նմանութեամբ ըսուած է, ինչպէս կ'երեւի իր միւս «սկահաձեւ» հոմանիշէն։ Այս պատճառաւ Փիլոնի թարգմանիչն ալ սոյն բառին հետ չկապուելով՝ փոխան անոր «թակոյկ» կը գործածէ Ս. Գրոց մի եւ նոյն վկայութեան մէջ (Մն. 520)։ Հետեւաբար մեր քով կար ըսկահ կոչուած անօթ մը՝ մովսիսական աշտանակին բաժակաց նմանող. կամ թէ վերոյիշեալ «տաշտին» աւելի խորը, որով եւ լծորդ է՝ ձայնով ու բաժակին ձեւով՝ սկին կոչուած ըմպանակին, զոր պիտի տեսնենք։

Դաշխուրան։ Սկահին մեծը կը համարիմ, հանդիպած յն. λεχάνη բառին, որով՝ այն է «դաշխուրանաւ զօրաւորաց՝» Յայտէլ կաթ կը ջամբէ Սիսարայի (Դատ. Ե, 25)։ Թարգմանիչը նոյն յունական բառը յայտնի խորութեամբ մը «կոնք» կ'անուանէ՝ երբ կը խօսուի լուացման անօթոյ մասին (անդ, Զ, 38. եւն)։ Ուրեմն «դաշխուրանն» ալ Հայոց յատուկ ըմպանակ մ'էր կոնքանման ու կոնքէն տարբեր. եւ համանօրէն իր արմատն է պրս. տաշտ—խուրան, ուտելոյ տաշտ։ Կ'երեւի թէ ագնուականաց տաճարէն ներս չէր մտներ, այլ Յայելի «խորանին» պէս խորանարնակ

հայ բանակին մէջ, իբրեւ զինուորաց կամ «զօրաւորաց» հասարակաց՝ ուստի եւ մեծ ըմպելի. Թէեւ այս պարագայս չի ժխտեր անօթոյս շինականաց կողմանէ գործածութիւնն ալ։

**Նաւակ**։ Փիլոնի հայ թարգմանիչը կը գործածէ զայս իւր կողմանէ (եթէ սակայն նուագ պէտք չէ կարդալ) բնագրին θηρίκλεια բառին դէմ (Ծոց. 19), որ կը նշանակէր «սեւ կաւէ մեծ բաժակ» յանուն հնարողին Թերիկղեսի (Աղեքս.)։ Արդեօք հայ թարգմանիչը կը ճանաչէ՞ր այդ ըմպանակին ձեւն՝ անծանօթ ինձ, եւ ըստ այնմ նաւակ կոչեց, թէ ըստ կամս գործածեց այս անունն՝ առնելով տոհմային նաւակաձեւ բաժակէ մը, չեմ գիտեր։ Բայց այս յայտնի է՝ որ նաւու նմանութիւնն ու կոչումն օտար չէր մեր սպասներէն, ինչպէս տեսանք մառանի մէջ (աստ, 22)։

**Բաժակ**։ Ե դարու թարգմանութեանց մէջ կը գտնենք զայս յն. ποτήριον (ըմպանակ՝ πιεῖν ըմպել բայէն) եւ լատինական calix (յն. κύλιξ) բառից դէմ,[1] որոց երկրորդը մանաւանդ յայտնի է հեթանոսութեան մէջ (Դար. Ա, 850-1), քրիստոնէ-

1. Ծննդ. Խ, 11, 13, 21. Բ Թագ. ԺԲ, 3. Սղմ. Ժ, 7. Մատթ. Ժ, 48 եւն։

ական շրջանին (Կարր. Բ, 1595–1650), եւ եգիպտացւոց (Վիգ. Բ, 1076), ունենալով տաշտաձեւ կամ նաւաձեւ ընդունարան մը, եւ աւելի կամ պակաս բարձր պատուանդան մը։ Ասոր ներկայութիւնը մեր սեղանին վրայ՝ յիշուած է Մանդակունիէն. «զբաժակն ոսկի՝ զոր Թագաւորի իսկ մատուցանեմք» (205)։ Ոսկեբերանի թարգմանիչը տեղ մը բնագրին միակ φιάλη (տաշտ) բառին փոխան գործածելով կրկին, «զբաժակս եւ զտաշտս» (Մտթ. Ա, 146), կը զգացնէ՝ թէ այդոնք իրարմէ զատ էին ձեւով, ու միասին կը գտնուէին հայ սեղանին վրայ։ Ասոր հակառակ՝ բաժակը փոխաբերաբար կը գործածուի երբեմն տաշտին տեղ (Փաւս. 233. Ագթ. 376)։

Մեք «սկիհ» կամ «սկի[1]» մ'ալ ունինք, Ս. Գրոց մէջ գործածուած յն. κόνδυ եւ σπονδεῖον բառից դէմ (Ծննդ. ԽԴ, 2, 5. Ա Մակ. Ա, 23), որոց առաջնոյն ձեւն անորոշ է (Դար. Ա, 1440). եւ երկրորդը նոյնպէս անստոյգ, պարզապէս նուիրանոց կը նշանակէ ըստ տառին։ Ասոնց սկիհ թարգմանելուն նպատակը կայ. առաջնոյն Յովսէփ «հմայելով հմայէր», եւ երկրորդն

1. Հմմտ. պրս. սիկի՝ որ է գինի. կամ յն. χρυσῷ σκύφει, «ոսկեղէն անօթով» (Դիոն Կասիոս, ԾԷ, 14)։

Երուսաղեմի տաճարին յատուկ էր։ Հետեւաբար ատոնց նուիրականութիւնը ցուցընելու համար՝ թարգմանիչք զանոնք փոխեր են սկւոյ, որ Ե դարուն արդէն Պատարագի սպաս եղած էր, բայց ձեւով նոյն էր «բաժակին» հետ,—ինչպէս վերջնոյս հոմանիշ արեւմտեան calixն ու մեր բըկիճը նոյն էին սրբազան նշանակութեամբ, —որոյ համար սկիհը բաժակ ալ կոչուած է շատ անգամ (Փաւս. 225· Ոսկ. Մտթ. Ա, 657· Թղթ. Ա, 703)։ Ջեւոց միութեան ուրիշ նշան մ'է սկւոյն յիշատակութիւնը Ե դարու խնճոյից մէջ· որոյ համար Ս. Սահակայ կանոնք կը յանդիմանէին այն քահանայքը՝ որ եկեղեցւոյ «զսկիհն ի գինըմպելիս յանօթս (փոխ) տան զինուորաց» (93)։ Այս փոխատուութիւնը դժուարաւ կրնար պատահիլ՝ եթէ անօթս ընտանի չըլինէր նաեւ կերակրոյ սեղանին։ Բաժակը կամ սկիհը բախտաւոր դիպուածով մը կ'երեւի դեռ Աղթամարայ եկեղեցւոյն քանդակաց մէջ՝ Ժ դարէն, յորում Գագիկ արքայ նստած է գինարբութեան, ի ձեռին բռնած յիշեալ անօթը, լայն ու խոր ընդունարանով, նեղ բունով, ու պատուանդանով, ըստ հրատարակութեան նոյն քանդակին (Ազգ. Հնդ. Ի, 197)։

Պատմաճակ։ Այս ալ յիշուած է երկու

տեղ. մին փիլոնի թարգմանչէն՝ այսպէս. «ըմպիկք եւ պատժաճակք» (Ծոց. 19), ուր բնագիրն է լոկ մի բառ, κύλιξ, բաժակին կամ սկւոյն ծանօթ համանիշը։ Միւս վը֊կայութիւնն է Մնացորդաց հնագոյն թարգ֊մանութեան մէջ, կատարուած ասորի բը֊նագրէն, որոյ «տաշտք» բառին դէմ հայը դրած է չորս, «տաշտքն եւ պատժաճակքն եւ բաժակքն եւ ճաշակքն» (Բ, Դ, 22)։ Հոս ուրեմն «պատժանակը» զատ սպաս մ'է «տաշտէն» ու «բաժակէն». եւ հե֊տեւաբար Հայոց յատուկ առանձին ձեւ մը։ փիլոնի հայ մեկնիչը սոյն անօթիս անուան արտաքին ձեւը եւ իւր ժամանակի սովո֊րոյթ մ'իրարու հետ զուգելով, հետեւեալ բացատրութիւնը կու տայ. «պատժաճակն մեծ մայծրայ է, որ առաջի դնեն՝ թէ կամ խմես կամ ի բաց գնա. որպէս պատիժ (իբր արմատ պատժանակին) զայն համտու֊ցանեն, զոր տօսղաքան ասեն» (Լծ.Հես.)։ Բայց այս յարմարական մեկնութիւնն զմեզ չի գոհացըներ։ Գուցէ ոսկեդարեան այդ «պատժանակը» նոյն է հայ «նուագին» հետ.զի ակներեւ է՝ որ Մնացորդաց թարգ֊մանիչը շեղելով բնագրէն, ուզած է Հայոց ըմպանակաց թուարկութիւնն ընել, որոց մէջ սակայն կը պակասի ամենահասարակ «նուագը»։

*Պտեակ*։ *Գործածուած է Նիւսացւոյն թարգմանչէն՝* ξυτόν *բառին դէմ* (*Նիւս.Հյր.* ժԲ), *զոր Աղեքսանդր կը մեկնէ եղջերաձեւ ըմպանակ*։ *Արդեօք հայ անունը ճիշդ զայդ կը նշանակէր, թէ աղոր մերձաւոր կամ հեռաւոր ձեւով սպաս մը, կարելի չէ ճշդել*։ *Հայ մեկնիչը սահմանելով՝* «*պտեկըս* (*այլ հին օր. պտեակս*) *փոքրիկ աման՝ որ ի խառնոցէն զգինոյն հանէ տեսանեն*» (*Լծ. Հյր.* ժԲ), *չի պարզեր, այլ աւելի կը մթագնէ, առոր տալով ճաշակին պաշտօնը*։

*Տօղտօքան*։ *Լծորդ պրս. տուրկեանի բառին, որ է՝* «*լի զաւաթն ... զոր ի վախճանի խրախուսթեան ի սէր իրերաց ըմպեն*» (*Գ. Գպ.*)։ *Ցիշուած է միջին դարուն, եւ համեմատաբար աւելի որոշ է իր նըկարագիրը մեր քով*։ *Փիլոնի մեկնիչը Բարսղի լուծման մէջ կը յիշէ զայն, գըրելով* «*տօղտաքան*», *եւ սահմանելով* «*մեծ աման*», *ուսկից շատերը կ'ըմպէին՝ ձեռքէ ձեռք անցնելով.* «*յիրեարս խմեն*» (*Լծ. Պհ. գ*)։ *Անօթս աւելի կանուխ՝* ժԲ *դարուն ծանօթ է Լամբրոնացւոյն ալ, որ կ'ըսէ.* «*Խմեմք զանկակեայ տօղտօքանով*», *ակնարկելով անեցի գինեսէր վարդապետին սովորութեան* (*Լմբ.Թղթ.*241)։ «*Զանկակեայ*» *ածականին մէջ ակներեւ է ա-*

նօթիս ձեւը, զոր Նիւսացւոյն մեկնիչն աւելի կը մանրամասնէ, յիշելով «զդօստաքանն» եւ ըսելով. «բոլոր է զինչ բոկեղըն, եւ մէջն փոր» կամ «փորոք» (Լծ. Հյր. ժԲ)։ Ամփոփելով, բոլորշի եւ գոգախոր էր՝ նման զանգակի։

Յիշեալ անօթոց յարմարական կամ բայց շինուած հոմանիշերն ալ կան. ինչպէս «ըմպելի» (Եսթ. Ա, 7. Կաղ. 59), «ըմպիկ» (Փիլ. Ճառ. 19), «ըմբոց» (Կաղ. 126), «ըմպակ», «ըմբակ» (Յհ. կթղ. 200, '30) կամ «ըմպանակ» (Պտմ. Աղ. 101. Նար. 75, 173), եւ «ապակի՝» նիւթէն ծագած (սատ, 57), որոնք անշուշտ առանձին սպասներ չէին ցուցներ։ — Այս կարգէն է «սարկարանն» ալ (Եմես. 164), անորոշ իմաստով, զոր Հայկազեանը կը կարծէ «խառնարան, բաժակ մեծ, Նուիրանոց»։ Բայց ինձ ծագած կը թուի պրս. սերկիրանէն (սեր՝[1] գլուխ, եւ կիրան՝ ծանր), որ է գլխագարութիւն ի գինւոյ (Գ. Դպ.)։ Որով հա՞յ «սարկարանը» փոխաբերաբար կը նշանակէր — գուցէ հին պարսկերենի մէջ ալ — որ եւ է մեծ ըմպանակ՝ որմէ կարելի էր արբենալ, նման մեր տեսած խոշոր

1. Համեմատել հայ. սար, գլուխ լերանց. որով գուցէ հին պարսիկն ալ «սար» եւ «սարկարան» կը հնչէր։

*տաշտերուն* (*անդ*, 70), *եւ որ զգալի է Սեբերիանոսի բացատրութեան մէջ եւս. «Այդչափ զսարկաւագս աստուածեղէն բանիւն քամեցէք, եւ յետ արբեցուրեանն ծարաւի էք»։*

*Թակոյկ։ Հոմանիշ պրս. տակոկին* (*Հբշ.* 153), *էր ընդունարան գինւոյ՝ որով ըմպելին կը փոխադրէին մառանէն ճաշարան, եւ անտի կը լեցնէին բաժակները։ Պարսից Արտաշէս արքայի տաճարին մէջ կային «թակոյք եւ ըմպելիք Թագաւորին ոսկեղէնք եւ արծաթեղէնք»* (*Եսթ. Ա*, 7)*։ Ոսկեբերանի արբեցողը «թակոյսս ըղձանայ»* (*Մատթ. Բ*, 18), *եւ մեր դրացի Ագուանից Վաչական Թագաւորի ճաշարանին մէջ՝ սովորականներէն զատ կար եւ առանձին «թակոյկ մի յարքունի սպասէն՝ լցեալ արքայի ըմպելի գինի», աղքատաց համար* (*Կաղ.* 47)*։ Որով յայտնի է՝ թէ հայ տաճարին եւս սեպհական էր այն, ըսել տալու համար Բարսղի հայ մեկնչին, «թակոյկս՝ որ զանապակն ունի»* (*Լծ. Պհ. գ*)*։ Ս. Գրոց մէջ մեր «թակոյկը» կը զուգադրի զանազան յոյն բառից։ Ասով թարգմանուած է* κρατήρ (*Երգ, է*, 2*. Նիւս. Երան. Դ*), *զի մեք չունէինք «խառնարան»* (*անդ*, 71), *այլ փոխանակ առոր՝ թակոյկը կը գործածէինք։ Ասով թարգմանուած է եւ* ὑδρία,

«թակոյկք կճեայք վեց» (Յհ. Բ, 6), զոր իսկական հոմանիշը կը կարծեմ մեր անօթին։ Սա արեւմտեաց մէջ, եւ համոզուած եմ թէ մեր քով ալ, էր մեծ սափոր մը լայնշի, պարանոցաւոր ու լայնաշուրթն, երկու կարճ ականջանման կանթերով փորին վրայ, եւ փոքր պատուանդան մ'ըստորոտը (Դար. Գ, 319–21), թէեւ միակ ձեւը չէր այս։ Ըստ յիշեալ վկայութեանց՝ նիւթով ու թուով զանազան էր թակոյկը տաճարին մէջ։—Միջին դարուն՝ Հայք «թակուկով» ջուր ալ կը բերէին աղբիւրէն, կ'ըսէ Լամբրոնացին (ի Հյկզ.)։ Եւ արդէն իւր անունը ռամկացած՝ «թղուղ» կ'ըսուէր, լինելով «քարեայ» կամ «ապակեայ» ըստ այլ եւ այլ ծառայութեանց (Վաստ. 102, '37)։ Եւ ցարդ նոյն կոչումն ու ձեւն ունի Հայաստանի մէջ։

Ճաշակ։ Հոմանիշ է առաւելապէս յն. κύαθοςին, զոր եւ կը թարգմանէ (Եւք. Իե, 29. Թիւք, Դ, 7. Երմ. ԾԲ, 19)։ Աղեքսանդր զայս «ըմպելոյ բաժակ» իմացաւ։ Շենկլ ճշդագոյնս համարեցաւ «փոքրիկ անօթ՝ որով գինին խառնարանէն բաժակին կ'անցնէին»։ Դարեմբերգ, ձայնակից սոր, անօթին ձեւն ալ կու տայ, որ է գոգաձեւ՝ նման շերեփի, կամ կնգղաձեւ, ունելով երկար բուն մը՝ մխուելու համար

թակուկին մէջ (Ա, 1675–7)։ Ունէր ընդունակութեան որոշ չափ մը, համեմատ Փիլոնի՝ թէ Մովսիսի սեղանին «ճաշակքն (նշանակ էին) խրախճանութեան, որովք անապակն չափի» (Մն. 518). կամ ըստ Շիրակացւոյն՝ թէ «կիւաթոս չափ է գինւոյ արկանելոյ յապակիս»։ Եւ հոս է որ մեր համարողն ի վեր կը հանէ հայ «ճաշակին» իմաստն ալ, ըսելով՝ թէ նոյն կիւաթոսը «գինեհան է երկայնադաստակ որպէս զձաշակ (մեր), վասն ի խորութենէ կարասւոյ զգինին հանելոյ», կամ «ձաշակ՝ որով զգինին հանեն» (Աւգ. 31–2)։ Այս էր ուրեմն հայ ճաշակին ձեւն ու պաշտօնը. զոր եթէ ուշ դնենք՝ կը տեսնենք իւր անուան մէջ իսկ, այն է մէկ արբմամբ համտեսելու յատուկ. եւ որ նոյնպէս կը մնայ դեռ ի Հայաստան։

Առատակ։ Երկու անգամ յիշուած է Բարսղի թարգմանչէն, յն. χρουνόςի դէմ՝ որ կը նշանակէ աղբիւր, ծորակ կամ ցայտ ջրոյ (Աղեքս.)։ Եւ հոս նմանութեամբ տրուած է ծորակաւոր անօթի մը, որ ունէր «արծաթեղէն խողովակ» մ'ըստ ճառախօսին, — որով ինքն ալ նոյն մետաղէն էր, — ուսկից մատռուակը գինին կը հոսեցնէր կոչնականին տաշտին մէջ. եւ այդ խողովակն յատուկ բառով «սկըն-

*ձափող[1]» կը կոչուի Թարգմանչէն (Բրս. Արբ.)։ Բեմբասացը կը յաւելու՝ թէ այս անօթը սեղանին վրայ կը լինէր «ըստ թուոյ բազմեցելոցն». ուրեմն չափաւոր էր մեծութեամբ, բաւական մէկ անձի։ Համոզուած եմ՝ թէ մեք ալ ունեցած ենք այս անօթս հայ անուանը հետ. եւ ասոր ապացոյց կրնայ համարուիլ Նիւսացւոյն Թարգմանչին վարմունքն ալ, որ սեղանի անօթոց մէջ «տաշտակ» բառով կը թարգմանէ բնագրին* ἀμφορεύς*ը (Երան. Դ), համազօր «սափորին», որպէս զի զուցէ վերջինս մառանին մէջ մնայ (աստ, 26). եւ տաշտակը՝ տաճարին։*

*Նգոյր։ Արդէն ծանօթ մեզ «Նքոյր[2]»*

1. *Յոյնը «կոր խողովակ». որով ճառիս հայ մեկնիչը կը սխալի՝ երբ կ'ըսէ. «սկնջափողքն՝ նեղբերան աման է, կթղա կամ շիշ»։ – Նոյն ինքն մթութեան մէջ կը խարխափէ տաշտակի մասին ալ, տեղ մը մեկնելով զայն «կթխայն կամ քսխտին արծաթի կամ ապակի, կամ փարչեր». եւ այլուր՝ «տաշտակն. լծ. արծաթի քսեստն է կամ շիշ նեղբերան» (Լծ. Պհ. Գ). եւ դարձեալ՝ «երկայն եւ բարակավիզ խմելիք է» (Լծ. Երան. Դ)։*

2. *Այդպէս ըստ նոտրագիր օրինակին Վենետկոյ, զոր Վեցօրէից լուծողը կը գրէ սեռ. «Եկորի՝» ըստ 1314ի օրինակին, եւ «Եգորի» ըստ միւս հնին, եւ կը մեկնէ վրիպակաւ «երեքանկիւնի իրք» (Լծ. Վեց. Թ)։ «Նգոյր» կը գրեն Նիւսացւոյն 1317ի եւ նոտր օրինակ մը, եւ ասոր լուծման 1314ի եւ անթուական հին օրինակ մը։ Լուծողը խաբուելով յոյն բնագրին մէջ ասոր յարակից «եռոտանի» բառէն, կ'ըսէ. «Նգոյր՝ զերեքոտանի սեղանն ասէ» (Լծ. Երան. Դ). կամ «Նգոյրս՝ ոտներով սեղան» (Լծ. Հյր. ԺԲ)։*

ձեւով ու մաղի իմաստով՝ ըստ λικνοειδής (մաղաձեւ) բնագրին Բարսղի (սատ, 45), Նիւսացւոյն թարգմանութեան մէջ երկիցս կը զուգադիպի πλυνέςին (Հյր. ԺԲ. Երան. Դ), որ կը նշանակէ լուացման անօթ (Ճենկլ) կամ կոնք (Աղեքս.)։ Ճիշդ վերջինս է հայ թարգմանչին նգոյրը՝ դասուած սեղանի սովորական սպասուց մէջ. եւ իւր այդ յարմարական կոչմամբ կը յիշեցնէ ինձ աւանդապահ Ասիոյ եւ Հայոց մէջ ալ դեռ մնացած ձեռք լուալու այն կոնքը՝ որ իւր ներսն ունի մաղանման ծակոտկէն խուփ մը, որոյ միջէն ջուրն յատակը կ'իջնէ։ Նմանութեամբ է ուրեմն ասոր «Նգոյր» անունը. նմանութիւն՝ որ հայ թարգմանութեան յատուկ լինելովը՝ հին Հայոց մէջ իսկ ենթադրել կու տայ այդ կոչումն ու սպասին գործածութիւնը։ Մեծութեամբ ու ձեւով կը զանազանէր «կոնքէն», որոյ ներսը դատարկ, ջուրը մէջը կը լեցնէին եւ ոտք կը լուային (Յովհ. ԺԳ, 5). եւ որոյ պաշտօնը կը վարէր երբեմն «տաշտըն» ալ (Վարք Հրց. ի Հյկզ.)։ — Նգոյրը կը յիշուի դեռ միջին դարերուն, բայց ուրիշ եկամուտ անուններով. զոր օրինակ կիլիկեան Թագաւորօրհնէից մէջ, թարգմանուած Լամբրոնացիէն, կը գտնենք «ըզդաշտիշտն եւ զդապրիկն, թէ ոսկի եւ

*թէ արծաթի»* (*Սիս.* 475), *ուր դաշտիշոն՝ մեր անօթն է։ ԺԴ դարուն Ջահկեցւոց մաշտոցը կու տայ մեզ ուրիշ բառ մը. «Չշոնիոն եւ զքսխտինն եւ զդաստառակն»* (*Հյկզ.*), *ուր շոնիտ՝ աղաւաղն է յն.* χέρνιβον*ի, որ է կոնք լուացման ձեռաց* (*Աղեքս.*)*։ Կիլիկեան Եպիսկոպոսօրհնէքը կը շրջէ այս բառին իմաստն ու քիչ մը ձեւն ալ, եւ կ'ըսէ. «զշոնիձան ջրով եւ զպացինս լուացման»* (*Մշտ.* 1365*ի ի Ս. Ղազար*)*. պացին՝ գղ.* bassin *կամ կոնքն է, անոր համար «լուացման» յատուկ. իսկ շոնիձը լի է «ջրով». ուրեմն սա ջրոյ կուժն է հոս։ Այս զանազան կոչումները ձեւերու զանազանութիւնը չէ որ կը ստեղծէ, այլ ինչպէս կը տեսնուի, այդ շրջանին Հայոց մէջ թափանցող ցեղերու լեզուաց ազդեցութիւնը։*

*Տաշտագուրան։ Գրուած է նախայիշեալ* χέρνιβον*ի դէմ* (*Նիւս. Հյր. ժԲ*)*, զոր եւ Շենկըլ կը մեկնէ լուացման կոնք. եւ Աղեքսանդր՝ նաեւ «անօթ քաւչական ջրոյ»։ Ըստ որում հոդ իւր յարակից նզոյրն է կոնք, ես կ'ախորժիմ տաշտագուրանով լուացման ջրոյ մետաղեայ կուժն իմանալ։ Սովորութիւն էր Հայոց՝ «ջուր ի ձեռս արկանել»* (*Եղիշ.* 173. *Ցհ. կթզ.* 214)*. որով կոնքին հետ կարեւոր էր կուժն ալ։*

Ուստի հայ մեկնիչը սխալմամբ կը սահմանէ, «տաշտագուրանս (միւս հին օր. տաշտակուրանս՝) անօթ որ զղօստաքանն խըմեն» (Լծ. Հյր. ԺԲ)։ Անօթիս անունը պարսկերէն կը հնչէ, եւ ըստ որում բարդ՝ կցորդութիւն մը ցոյց կու տայ իւր արմատ «տաշտին» կամ կոնքին հետ։ Արդէն կայ պրս. քիւրկ, որ է զունդ, եւ քիւրազ՝ նեղաբերան կուժ (Գ. Դպ.), երկուքն ալ մօտ մեր անօթի ձայնին ու ձեւին։—Այսր հոմանշեր են վերոյիշեալ միջնադարեան վկայութեանց մէջ նշանակուած դաստրիկը, հաւանօրէն կազմուած պարսկահայ դաստ (ձեռն) եւ պրս. խպրիզ (ջրկուժ) արմատներէն, այս ինքն ձեռք լուալու կուժ. — քսիստիկը, որ է հին քսեստը, ξέστης (Եզեկ. ԽԶ, 5 եւն).—եւ չռնիձը զոր տեսանք։ Անօթիս տոհմային շատ հին ձեւեր անծանօթ են ինձ։ Բայց հանդիպած եմ անոր նկարի մը՝ Ս. Ղազարու մէկ Ճառականին մէջ, գրուած 1578ին, աւագ հինգշաբաթու կանոնին քով՝ ի խորհուրդ Ոտնալուային. եւ է այսպէս։ Յատակը լայն՝ գոգաւոր, եւ դէպ ի վեր կը նրբանայ մինչեւ երկայնաձիգ պարանոցը. գօտեակ մը պարանոցին շուրջ, եւ գօտի մը փորին վըրայ, ուսկից զարդարուն կանթ մը կը բարձրանայ մինչեւ բերանը. եւ գօտւոյն

վերեւ կոցանման ծորակ մը՝ ուսկից ջուր կը հոսի։ Ամբողջ անօթը կիտուածազարդ է։

Բնականապէս մեր մտքէն չի անցնիր յիշեալ բոլոր սպասները, զորս տեսանք ազնուականին կամ մեծատան տաճարին մէջ, երթալ որոնել նաեւ ռամկին կամ աղքատին սեղանին վրայ։ Սա հարկաւ պիտի շատանար՝ անոցմէ անհրաժեշտ կտոր֊ներով, առանց փնտռելու անոնց բազմա֊զանութիւնն ու գեղեցկութիւնը։



## Ե. ԸՆԴՀԱՆՈՒՐ ՏԵՍՈՒԹԻՒՆ

Յառաջ չգնացած մեր նկարագրին մէջ՝ կարեւոր է հոս քանի մը խորհրդածութիւն։

1. — Կանուխ հարազատութիւնը։ — Նախ֊կին չորս գլխոց մէջ՝ մեր թուած կահե֊րըն ու սպասներ, — որոցմէ կրնան թերեւս դեռ անյիշատակ մնացած լինել նախնեաց մատենագրութենէն, կամ վրիպած ուշա֊դրութենէս, — ամենամեծ մասամբ յիշուած գտանք ազգային հեղինակաց կամ թարգ֊մանութեանց մէջ միանգամայն, եւ չենք տարակուսիր՝ թէ մեր նախնիք իրապէս ալ ունէին զանոնք։ Իսկ զոմանս հանե֊ցինք լոկ թարգմանուած երկերէ, որոց

տոհմային կոչմունք՝ թելադրեցին մեզ ա-
սոնց ձեւերն ալ տեսնել մեր մէջ. ուր այս
համարձակութիւնը չպիտի ունենայինք,
եթէ այդ անուանք օտարաձայն եւ կամ
այլալեզու բնագրաց ազդեցութեամբ յե-
րիւրուած բարդ բառեր լինէին: Արդէն բո-
լորովին օտար բառեր, ինչպէս տոմաւն, կամ-
փառակ եւն, դուրս թողի մեր կահուց դա-
սէն ու նկարագրէն: Բայց բնիկ կոչում
մը բնիկ իր մ'ալ կ'ենթադրէ, թէեւ ո-
մանց առիթը ներկայացած չլինի ինքնա-
գրութեանց մէջ յիշուելու: Միանգամայն
թարգմանութեանց առաջնորդութեամբ՝ մեր
մերկ բառից զգեցուցինք յաճախ օտարաց
ձեւերը: — Արդեօք անմոլա՞ր էր մեր այս
ձեռնարկը. արդեօք հայ անուանք եւ բա-
պասք երբեմն լոկ մերձաւոր նմանութեամբ
դրուած չե՞ն յունականաց դէմ, որոց ճըշ-
գրիտ պատկերը չկարենան լինել՝ գէթ
արուեստական նըբութեանց մէջ: Կարելի
է, չեմ ժխտեր. բայց մոռնալու չենք՝ որ
յոյն քաղաքակրթութեան ազդեցութիւնը
շատ զգալի էր Արշակունեաց շրջանին՝
թէ հայ ազնուականութեան, ինչպէս պի-
տի տեսնենք մասամբ հետագայ նկարա-
գրութեանց մէջ, եւ թէ մեր դրացի Պար-
սից բարուց վրայ. եւ այդ ազդեցութիւնը
բնականապէս պիտի տարածուէր նաեւ

սպասուց կամ կարասեաց թուոյն եւ ձեւոց վրայ միանգամայն։

2. — Հոմանիշք։ — Տագնապալից պարագայ մ'է բանասիրաց համար՝ հոմանըշութիւնն իրարու ժամանակակից եւ մանաւանդ արմատական շատ բառերու, եւ բազմանշութիւնը մէկ բառի, ոչ միայն ընդհանուր լեզուին, այլ յատկապէս մեր խնդրոյն մէջ ալ, ինչպէս տեսանք եւ զգացինք։ Իբր սկզբունք կրնանք ըսել՝ թէ այդ երկու հանգամանք եւս իրապէս կան մեր լեզուին մէջ. սակայն զգուշութեամբ ընտրելի է զանոնք։

Գալով առաջնոյն, չափազանց է բոլոր հոմանշից մէջ անվրէպ զանազանութիւն մը փնտռել, եւ կամ անոր հակառակ՝ բոլորը նոյնացնել իմաստով։ Բայց կային ժամանակակից բառից մէջ իրական հոմանշեր, որոնք արդիւնք էին կամ գաւառական խօսից տարբերութեան, կամ լեզուական յեղաշրջութեան, որով բառ մը՝ որ պիտի մեռնէր, կամ առտնին գործածութենէն պիտի փոխադրուէր սրբավայրին մէջ (ինչպէս մաղձայ եւ սկիհ), եւ ուրիշ մը՝ որ անոր պիտի յաջորդէր նոյն ենթակային վրայ, եւ կամ տոհմային եւ իշխեցող լեզուի մը հոմանիշք՝ իրարու կը հանդիպէին, եւ լծակցաբար կը

*ցուցնէին կամ կը թարգմանէին զայն։ Ասոր պտուղ են՝ գահոյք — տախտ (աստ, 54), կանկերայք—հրաւանդ* (36), *սանդ—անկան* (42)*. մախաղ—պարկ* (44), *քուրձ—պայուսակ (անդ), մաղ—նքոյր—խախալ* (45), *բաժակ—սկիհ* (73–5), *սկաւառակ—ափսէ* (62–4), *սկուտղ—մաղզմայ* (64–7) *համանիշ զոյգերը, եւ ուրիշ շատեր՝ որոնք զգալի են մանաւանդ Մնացորդաց երկու թարգմանութեանց մէջ։ Դարերու յաջորդութիւնն յետոյ դիւրաւ պիտի բազմապատկէր զանոնք, զոր օրինակ՝ կրակարանին համանիշ տալով ակուրը կամ բուրայն* (33–4), *կարասին՝ գուբը* (24)*. բակոյկին՝ բղուղը* (80) *եւ այլն։*

*Համանշութեան ուրիշ պարագայ մ՚ալ կայ թարգմանութեանց մէջ, ուր յունարէն մի եւ նոյն բառը երկու հայ բառով կը թարգմանուի. զոր օրինակ՝* ὑδρία *սափոր եւ բակոյկ (աստ,* 26,79)*.* κρατήρ *սկահ եւ բակոյկ (աստ,* 71,79)*.* χαλκεῖον *կամ* λέβης *կաթսայ եւ սան (Գ Թագ. Բ,* 13*. Ա Եզր, Ա,* 12*. Ա Թագ. Բ,* 15*. Ժող. Է,* 7)*.* χύτρα *պոյտն եւ կաթսայ (աստ,* 38*. Բ Մնց. Դ,* 11)*.* λεκάνη *դաշխուրան եւ կոնք (աստ,* 72)*.* φιάλη *տաշտ եւ ափսէ (աստ,* 70, 64)*.* πίναξ *պնակ եւ սկուտղ (աստ,* 62, 64)*։ Ինչպէս մեկնել այս պարագան։*

Տեսանք իւրաքանչիւր նկարագրէն՝ թէ այդ գոյգերն իրարու համանիշ չեն բնաւ մեր քով։ Անտեղի է ենթադրել համանըշութիւն մը նոյն իսկ երկրորդական նըշանակութեամբ ալ՝ որ չկան։ Այս տեղ ընդ հակառակն կայ թարգմանութեան մէկ գաղտնիքը, որ սրատես աչաց միայն նըշմարելի է։ Իմ համեմատական խուզարկութիւնքս ուկեղարու թարգմանութեանց մէջ՝ լիուլի փաստերով ցոյց տուին ինծ, որ մեր նախնիք ոչ միայն բնագրաց յեզուճ են հայացուցեր, այլ յաճախ իմաստներն ալ։ Չեն շատացած բառին դէմ դընել ճիշդ անոր հայ համանիշը. այլ շատ անգամ այնպիսի բա՛ռեր են գործածեր, որով հայ ընթերցողին կենցաղին մերձեցնէին բնագրին ընթերցուածը, եւ ընտանի ձեւով մը ներկայացնէին զայն անոր։ Այն պարագային մէջ, ուր Հայը «սափոր» մը կը գործածէր, թարգմանիչը զա՛յս դըրեր է ὑδρίαին դէմ, թէեւ սա աւելի «թակոյկ» նշանակէր. եւ վերջինս դրեր է իբեն յարմար տեղւոյն մէջ միայն։ Հայերը χρατήρ (խառնարան) չունէին. ուրեմն ուր որ անհրաժեշտ չէր յայտնի ընել այդ բառին իմաստը, զայն թարգմաներ են տարբեր բառերով, զոր օրինակ «թակոյկ»։ Տեսեր են՝ որ Հայոց «սկահը» լա-

ւագոյնս կը բացատրէր մովսիսական աշտանակին կանթեղաց ձեւը՝ քան նոյն յունակազմ եւ յունական «խառնարանը». ուստի «սկահն» են դրեր։ Այսպէս վարուեր են, ինչպէս վայել էր քաջ թարգմանչաց, բոլոր միւս բառից հետ ալ։ Եւ երբեմն աւելի համարձակութեամբ՝ իմաստներ իսկ փոփոխեր կամ յաւելեր են՝ հայացնելու գաղափարով, ինչպէս տեսանք տեղ տեղ (տես, 55, 71–2), եւ դեռ պիտի տեսնենք աւելի կարեւորներն յառաջիկային։ Վերջապէս ասով կը մեկնուի ճարտարագոյն թարգմանչաց շատ տեղ իրարմէ տարաձայնութիւնն ալ. զի բնագրէ հեռացումն իրարմէ եւս պիտի հեռացնէր զանոնք։ Ուրեմն վերոյիշեալ օրինակաց մէջ մէկ յունարենի զուգադիր կրկին հայ բառերն որ եւ է կերպով հոմանիշ չեն իրարու։

3. — *Բազմանիշք*։ — Ասոնք ալ կային մեր լեզուին մէջ. զոր օրինակ՝ տաշտ բառը կը նշակէր երկու տարբեր սպասներ (տես, 41, 69). նոյնպէս եւ ճգոյրը (45, 83)։ Եւ եթէ ասոնց մէջ ձեւի մերձաւոր կամ հեռաւոր նմանութիւն մը կայ, հայերէնն ունի շատ բազմանշեր՝ որոց իմաստից մէջ որ եւ է աղերս չի տեսնուիր. ինչպէս «գայլ», որ կը նշանակէ գազանն

ու ցռկակալ. «մուկն՝» անասնիկն ու նեարդը. «ակն՝» աչք, քար եւ աղբիւր, եւ այլն։

Մեր քննած բառերէն կային եւ ոմանք, որ նոյն դարու թարգմանութեանց մէջ, իրենց ստոյգ հոմանշերէն զատ՝ որոց հետ համեմատեցինք նախորդ գլխոց մէջ, կը զուգադրին յունարէն այլ եւ այլ բառից. զոր օրինակ՝ կասկարայք՝ երեք բառի (աստ, 36). կարսայ՝ չորսի (Դ Թագ. ԻԵ, 14. Բ Մնց. ԼԵ, 13. Ա Եզր, Ա, 12. Ժող. Է, 7). սան՝ երեքի (Թագ. Ա, Բ, 13. Բ, ԺԷ, 28. Բ Մնց. ԼԵ, 13). սկիհ՝ երկուքի (աստ, 74). բակոյկ՝ երեքի (աստ, 79. Եսթ. Ա, 7). ճաշակ՝ երեքի (Ելք, ԻԵ, 29. Ղեւտ. ԺԴ. 10. Զաք. Դ, 12). սկաւառակ՝ չորսի (աստ, 62). ափսէ՝ երեքի (աստ, 63–4). կուժ՝ չորսի (Թագ. Ա, ԻԶ, 11. Գ, ԺԹ, 6. Դ, Բ, 20. Երմ. ԺԹ, 1). սափոր՝ ութի (աստ, 26), ուսկից միայն վեց համրելով հանդերձ՝ Հ. Յ. Աւգերեան կը դիտէ. «Յայտ է ի թարգմանութեանց աստի՝ թէ նշանակութիւն բառիս սափոր՝ ընդարձակ է յոյժ ի մեզ» (Զափ. 162)։ Ըստ Հայկազեան բառագրոց՝ այս պարագայիս մէջ գտուած բառերը միշտ քանի մ'իմաստ ունին, այնպէս որ շատերն իրարու կը նմանին ու կը շփոթուին։

Բայց ես՝ հասկանալու կամ մեկնելու այդ ոճն անտեղի կը գտնեմ։ Նախնիք ընդ հակառակն այդ թարգմանութեանց մէջ հետեւեր են նոյնպէս հայացնելու դրութեան, զոր նկատեցինք։ Տեսեր են՝ զոր օրինակ՝ որ Հրեայն երբեմն կասկարայով կը խորովէ եւ երբեմն ոտանաւոր պոյտով (աստ, 36). վերջինս անծանօթ լինելով Հայոց, իրենք առաջնով միայն թարգմաներ են, ոչ թէ կասկարային պոյտի իմաստն ալ են տուեր։ Տեսեր են՝ որ մեր «սափորի» յոյն հոմանշերէն ոմանք երրայեցերէնէ են առնուեր, եւ իրենց ձեւերը կորսուեր դարերու շրջանին մէջ. ուրիշներ՝ բնիկ յունարէն՝ հայ սպասուց մէջ չունէին համապատասխանող զանազան ձեւեր կամ իսկական հոմանշեր։ Ուստի այդ բոլորը պարզեր ու վերածեր են մեկի, սափորի, ոչ թէ ասոր ութ կերպարանք են զգեցուցեր[1]։ Զի չէր կարող մէկ բառըն ի բնէ այդքան նշանակութիւն ունենալ Հայոց մէջ, եւ ոչ ալ թարգմանչին ձեռքով զանոնք ի նորոյ իւր վրայ առնուլ օտարներէն։ Տեսեր են՝ որ κοτύλη

1. Դիտելի է՝ որ արդէն հոմանշութիւնք եւ անորոշութիւնք առ հասարակ յունարէն անուանց մէջ ալ շատ կային, մանաւանդ սպասուց եւ անօթոց վերաբերեալք, ինչպէս կը խոստովանին եւրոպացի քաջ հնախօսք իսկ։

թէ գաւաթիկ կը նշանակէ եւ թէ հեղկի չափ մը (Դար. Ա, 1549). եւ երկրորդ իմաստով անոր հանդիպելուն (Ղեւտ. ԺԴ, 10), զայն թարգմաներ են իրենց ընտանի «ճաշակ» բառով (աստ, 80), որ նոյնպէս չափ էր։ Բայց ասով «ճաշակը» չի կրնար յունարենին գաւաթի իմաստն ալ ունենալ, ինչպէս կը կարծեն Հայկազեանն եւ Հիւբշման (187), ոչ ալ «սափոր եւ անօթ իւղոյ» ըստ Աւգերեանի (121)։ Եւ որովհետեւ ἐπαρυστρίς, կանթեղի մէջ ձէթ դնելու սպաս (Աղեքս.), անօթէ անօթ հեղուկ փոխադրելու գործողութեան մէջ պաշտօնակից էր մեր «ճաշակին», զայն ալ ասով են թարգմաներ (Զաք. Դ, 12). բայց ասով հայ սպասը ձեւով չի նոյնանար յունականին հետ։ Եւ ոչ մեր «տաշտը», համազօր φιάληին (աստ, 70), Ս. Բարսղի ψυκτήρն ալ թարգմանելով (Բրս. Արբ.), որ էր թակուկանման անօթ մը՝ գինին զովացնելու սահմանուած (Դար. Դ, 750), աստ եւս հոմանիշ կը լինի։ Այս բոլոր օրինակաց մէջ, կ՚ըսեմ, հայ բառերը նոր իմաստներով չեն զարդարուած։ Վասն զի եթէ այդպէս լինէր, հայ ժողովուրդը պիտի կարօտէր օտար բնագրաց համեմատութեամբ ճանաչելու հայերենին նորամուտ նշանակութիւնքը, որ անկարելի էր.

որով պիտի պահէր իրեն ընտանի իմաստը միայն, թողլով նորերը թարգմանչին ուղեղին մէջ։ Ոչ, թարգմանութեանց մէջ հայ բառերը նոր իմաստներ չեն զգեցեր, այլ՝ այսպէս ըսեմ՝ տան յոյն բնակիչն ելեր եւ հայն է մտեր, ոչ թէ հայն եկեր է բնակակցելու յոյնին հետ ու կազմելու հայ—հոռոմ ընտանիք մը։ Այս է իմ համոզումս, եւ կարծեմ՝ թէ այս ուղղութեամբ կարդացուելու են նախնեաց թարգմանութիւնք, եւ շինուելու են բառարանք։

Այդ հայացնելու դրութենէն ուրիշ կարեւոր հետեւութիւն մ'ալ հանելու ենք։ Այս ինքն է՝ թէ կահուց, անօթոց եւ ըսպասուց այն ծառայութիւնքը, որ կը յիշատակուին թարգմանեալ գործերու մէջ, եւ տոհմային մատենագրութենէն յիշուելու առիթը չէ ներկայացեր, սովորաբար Հայոց կենցաղին մէջ ալ կային, որով թարգմանիչք հարկ չեն տեսեր զանոնք եւս փոխելու կամ հայացնելու։ Սովորաբար՝ կ'ըսեմ, որպէս զի զատենք Ս. Գրոց մէջ անոցմէ ոմանց յատուկ դիրքը կրօնական պաշտամանց մէջ եւ այլուր։

4. — Փոփոխումն սպասուց եւ կոչմանց։ — Մեր թուած կահերէն մեծագոյն մասն՝ հանուած ոսկեղարու հայ կամ հայացած մատենագրութենէն, հարկաւ ժամանակա-

կից ալ էին իրարու․ կ՚ուզեմ ըսել տոհմային ընիկ կամ եկամուտ կոչումներն ու սպասուց ձեւերը, եւ նոյն ինքն Հայոց մէջ, թէեւ ադոնք ուրիշ ազգերու շատ աւելի հին սպասները թարգմանեն։

Ադոցմէ ոմանք Ե դարէն վերջ այլ եւս անծանօթ կը մնան․ ինչպէս կաճոյր (սստ, 25), ճաղաղակ (29), սկաճ (70), դաշխուրան (72), պատմաճակ (75), պանակ (77) եւ այլն։ Ի՞նչ եղան ասոնք․ արդեօք ընկա՞ն սովորութենէ՝ իրենց անուններով հանդերձ՝ Հայաստանի վրայ տիրող ցեղերու յաջորդական ազդեցութեան ներքեւ։

Ընդ հակառակն մեծ մաս մը շարունակեց պահել միշտ իւր գոյութիւնը՝ հին անուանակոչութեամբ միասին․ ինչպէս կարաս (սստ, 24), կուժ (27), բոճիր (34), կաթսայ (37․ Նար․ 161), սան (38․ Մագ․ 214), պոյան (38), տապակ եւ շամփուր (41․ Մագ․ 214), պայուսակ (44․ Յհ․ կթղ․ 143) եւ այլն, որոնք կամ յայտնապէս յիշատակուած են նաեւ միջին դարերուն, եւ կամ անյիշատակ մնալով հանդերձ՝ մինչեւ մեր օրերն հասեր են։ Եթէ ասոնք ըստ էութեան անփոփոխ մնացած են ձեւով, չենք կրնար նոյնը հաստատել նաեւ մանրամասնութեանց նկատմամբ․ զի ահա կժին կրկին ձեւեր տեսանք իրարու շատ

մօտ իսկ (աստ, 28)։ Արտաքին ազդեցութիւնք, տեղական սովորոյթք եւ արուեստաւորին ձեռքն անգամ կրնային զանազանութիւններ մուծանել անոնց վրայ։

Երբեմն սպասներն նոյն կը մնան, բայց ժամանակը կամ օտար ազդեցութիւնը կը յեղաշրջեն անոնց կոչումները՝ գլխովին նոր կամ օտար ձայներով. այսպէս՝ կրակարանը կը դառնայ ակուր (աստ, 33). նուագը՝ կթղայ (69, յն. κοτύληէն կամ լտ. cotylaէն). «տաշտն՝ բաս» (Վրդ. Թիւ. ԺԱ. աստ, 69) կամ հանապ (աստ, 29. Սիս. 472, '86). նզոյրը՝ դաշտիշոն եւ շանիտ (աստ, 84). տաշտագուրանը՝ դաստրիկ, քսխտին եւ շանիճ (85)։

Կը պատահի՝ որ կոչումներն աղաւաղին միայն՝ անփոփոխ մնացած սպասուց վրայ. ինչպէս հին տարգալը կը լինի դըրգալ (աստ, 59,31) եւ դգալ՝ կիլիկեան Թագաւորօրհնէից մէջ (Սիս. 475). մաղըզմայն՝ մաղզմայ եւ մաղզմի (աստ, 67). կաւկարայք՝ կաւկար (36). պոյտն՝ պուտուկ կամ պտուկ (39)։

Մերթ հին կոչումները մնալով՝ ենթակայն կը փոխուի. զոր օրինակ՝ պարզուտը Ե դարուն ճրագարանին մէջ իւղ դնելու անօթ, միջին դարուն մզիչ է (աստ, 31). խանը երբեմն անօթ (68), յետոյ կը փո-

*խէ իւր նշանակութիւնը (Հյկզ.)։*

*Սպասներ ալ տեսանք՝ որոնք անյիշատակ նախկին դարերուն, յետոյ երեւան կու գան. ինչպէս կարաւանձագ (աստ, 25), փարչ (28), պարգուտ (31), դմբիչ (31), թոնդրուք (34), կձիձ (40), չերեփ (40)։ Ասոնք այդ շրջանէն յառաջ չկայի՞ն Հայոց մէջ եւ նո՞ր հնարուեցան կամ մտան արտաքուստ։ Չենք կարող համարձակ պատասխանել։ Անյիշատակութիւնը միշտ նշան չէ չգոյութեան. զի շատ անգամ առիթն է որ յիշել կու տայ իր մը, եւ ոչ թէ գոյութիւնը։ Բայց աղոր հակառակ շատ դիւրաւ պիտի սխալինք՝ բոլոր այդ սպասներն հանելով մինչեւ Ժ դար։ Այս կէտը ճշդել՝ ժամանակի գործն է։*

*Միջնադարեան սպասներէն կան ոմանք՝ որ օտար կոչումներ ալ ունին. ինչպէս ձառայ (աստ, 25). տօզտօքան (77). թափուր (42), պրս. թէֆուրէն՝ որ կը նշանակէ ընդհանուր «անօթք քարեղէն կամ փայտեղէն» (Գ. Դպ.). չովլի (աստ, 31), պրս. չավլիէն, որ է ցորենի ծղօտէ հիւսուած սկաւառակ (նոյն). ակիշ (աստ, 36), պրս. ակիյշէն, որ է կախեալ կամ երկայնեալ (նոյն)։ Կրնանք աւելի համարձակօրէն նորամուտ համարել ասոնց ձեւերն անուանց հետ։*

Նախկին չորս գլխոց մէջ կոչումներու բազմութիւն մը հաշուեցինք մեք։ Արդեօք այդ բոլորն ուրոյն անօթոց անուններ էին. արդեօք գէթ ոմանք գրչագրաց սխալագրութեան պտուղ չե՞ն։ Այս կասկածը կարելի է այն փոքրաթիւ անուանց նկատմամբ՝ որոց մի միայն վկայութիւն կայ։ Բայց մեր տեսած անուանակոչութիւնք մեծագոյն մասամբ մեկէ աւելի վկայութիւն ունէին զանազան մատենագրաց եւ մեկնչաց քով. որով դժուարին է երկբայիլ անոնց ստուգութեան մասին. թէեւ անկարելի չէ որ երբեմն մէկ սխալն ընդհանրանար։

5. — Նորագիւտ անօթներ։ — Ա. — Անի՝ ուս. Ն. Մառի աշխատութեամբ շատ բան արտադրեց իւր հնութիւններէն, որոնք բնականապէս իւր գոյութենէն աւելի հին չեն կարող լինել։ Ռուսուցչապետն 1910ին կայս. Հնախօս. Ընկերութեան առջեւ անոնց մասին զեկուցում մը կարդաց, որոյ համառօտութիւնն հրատարակեցաւ անցած տարի Արարատ հանդիսի մէջ, թարգմանութեամբ Յ. Ա. Ե.։ Բաղձալի էր հրատարակութիւնն հնութեանց ձեւերուն իսկ, տեսնելու համար անոնց աղերսը մեր պատմական նկարագրութեանց հետ։ Կրնանք սակայն այժմէն խորհիլ՝ թէ արաբական

տիրապետութիւնը՝ որ կը բաժնէ մեր հինը միջին դարէն, դժուարաւ թոյլ պիտի տայ՝ երկրորդով գուշակել առաջինը, Արշակունեաց շրջանը, որ յոյն ազդեցութեան ենթարկուած էր։ Եւ մենք պիտի մաղթենք ասոր ալ Անւոյ բախտը։ Բայց եւ Բագրատունեաց գործն հաւասարապէս պատուական է մեզ, ու մասն մեր ազգային հին կենաց. եւ ես պիտի համառօտեմ հոս՝ ինչ որ կը պատկանի մեր նիւթին։

«Կան, կ'ըսէ տեղեկատուն, կաւեղէնների ամէն տեսակները, սովորական կաւեղէններից մինչեւ շքեղ յախճապակին» (Արրտ. 660)։ «Հասարակ կաւէ ամանների մէջ առանձին հետաքրքրական են զարդարուն մեծ կարասները, նկարէն զօտիներով, որոնք ներկայացնում են երկրաչափական գծեր կամ կենդանական տեսարաններ։.. Զարմանալի են յախճապակեայ ամաններն իրանց թափանցիկ կողերով եւ ուռուցիկ ու խոր գծած նկարներով. եւ ճենապակից ամաններն՝ իրանց հարուստ եւ բազմազան ոսկեզօծ ու բազմերանգ նըկարներով...։ Բեկորներից երեւում է՝ որ սոոմանների մեծագոյն մասը թափովի է, եւ աչքի են ընկնում թափման—որ հինգ տեսակից աւելի է — բարձր կատարելութեամբ, նոյնպէս եւ գեղարուեստօրէն կա-

*տարուած լինելովն ու ներկերի պայծառութեամբ»։ Սովորականներէն կ'որոշուին «ձուաձեւ ամանները», որ ունին «շատ նեղ շրթունք եւ հաստ պատեր (կողեր), ծածկուած բազմազան մանր ուռուցիկ զարդարանքներով», որ հաւանօրէն «արդուզարդի սրուակներ» են։ «Անւոյ թանգարանում մետաղի ամանների նմանորդներ էլ կան. օրինակ՝ արոյրէ սափոր, արոյրէ ձուլածոյ ափսէ՝ հետաքրքրական զարդաքանդակներով, պղնձէ սկաւառակ, արծաթէ գաւաթներ եւն» (անդ, 660–1)։*

*Ասոցմէ ոմանց ձեւերն ալ հրատարակեց ուս. Մառ. ինչպէս յախճապակեայ տաշտաձեւ բաժակ մը՝ որոյ յատակը նկարուած է մարդագլուխ թռչուն մը՝ նման գրչագրաց մէջ երեւածին (Տրք. Գ, 55). գեղեցիկ կարաս մը (անդ, 125), եւ ուրիշ անօթոց խմբակ մը (Ա, 10)։*

*Այդ շրջանի անօթներն այնքան ճարտարութեամբ կը շինուին, որ ազնուականք անոցմէ երբեմն իրարու կը նուիրեն իսկ։ «Աւադիկ առաքեցի քեզ, կը գրէ Մագիստրոս առ Գրիգոր եպս. Մոկաց, գոշ գեղեցիկ, գերունակեալ յենթակայէն, ճախարակեալ մանուածոյ» (88)։*

*Հարկաւ Արշակունեաց շրջանի անօթներն ալ զուրկ չէին այդպիսի նուրբ քան-*

դակներէ, ինչպէս էին յունականք իսկ։ Փաւստոսի այն խօսքը՝ թէ Շապուհ «ետ նկարել զտաշտ՝ ի պատկեր զՄուշեղ ներ-մակաւն» (190), յայտնի նշան է՝ թէ պատ-մըչիս լաւ ծանօթ էին այդպիսի նկարէն անօթներ, զոր գուցէ Պարսկաստանէն ա-ւելի Հայաստանի մէջ կը տեսնէր նա։

Բ. — Նուազ հետաքրքրական չեն նաեւ այն ամաններն ու սպասներ, որոնք Հայաս-տանեայց նախապատմական համարուած գերեզմաններէն կը հանուին՝ ջանիւք հայ եւ օտարազգի հնախուզից։ Ասոնց ձեւե-րու կարեւոր հաւաքածոյ մը հրատարա-կեց Մորգան՝ իր աշխատութեան մէջ (Ա, 142–57)։ Միաբանակից Հ. Գար. Վ. Նահապետեան՝ Բազմավէպի մէջ (ՃԵ, 89) ծանօթացուց նոյնպէս իր պեղած գերեզմանի մ'անօթոց ձեւերը։ Սակայն եւ ոչ այդ ատաղձը կը ծառայէ մեզ՝ Ար-շակունեաց կամ միջին շրջանի ուսումնա-սիրութեան համար, թէեւ հեռաւոր աղերս մը տեսնուի անոնց ու մեր նկարագրու-թեանց մէջ։ Պտուղը ժամանակով պիտի հասնի։

## ՑԱՒԵԼՈՒԱԾ

*Քանի մը բառեր պիտի լրացնեն հոս մեր յիշատակած կահուց ցուցակը, եւ են հետեւեալները։*

*Քանդուկ։ Շտեմարանի անօթներէն էր, ծագած պրս. քէնտուքէն, որ կը մեկնուի կարասի նման մեծ աման՝ արմտեաց պահարան (Գ. Դպ.)։ Եւ արդարեւ հայ կոչումն ալ նոյն պաշտօնն ունէր՝ ըստ Խորենացւոյն, թէ ի Բիւթանիա սպիտակ հող մանրելով՝ կը ցանեն «ի քանդուկս ի վերայ ցորենոյ», որպէս զի ճճի չուտէ* (600)։

*Խաւեակ։ Եսայեայ վկայութեան մէջ՝ թէ «Եղիցի անդ սափոր մի»* (Ե, 10), *Ոսկեբերանի թարգմանիչը կ'ըսէ՝ «խաւեակ մի»* (*Ոսկ. Ես.* 52)։ *Բնագիրն է երկու տեղւոյն մէջ ալ* κεράμιον, *որ է ըստ տառին կաւեղէն. եւ «խաւեակն» եթէ յատուկ անօթ մը չէ, գուցէ կարդալու է կաւեակ կամ խեցեակ։*

*Կոտիճ։ Պապ՝ Ս. Ներսէսի «անապակ մատուցանէր... դեղ մահու ընդ կոտիճն խառնեալ»* (*Փաւս.* 216)։ *Հայկազեանն*

դակներէ, ինչպէս էին յունականք իսկ։ Փաւստոսի այն խօսքը՝ թէ Շապուհ «ետ նկարել զտաշտ՝ ի պատկեր զՄուշեղ ճերմակաւն» (190), յայտնի նշան է՝ թէ պատմըչիս լաւ ծանօթ էին այդպիսի նկարէն անօթներ, զոր գուցէ Պարսկաստանէն աւելի Հայաստանի մէջ կը տեսնէր նա։

Բ. — Նուազ հետաքրքրական չեն նաեւ այն ամաններն ու սպասներ, որոնք Հայաստանեայց նախապատմական համարուած գերեզմաններէն կը հանուին՝ ջանիւք հայ եւ օտարազգի հնախուզից։ Ասոնց ձեւերու կարեւոր հաւաքածոյ մը հրատարակեց Մորգան՝ իւր աշխատութեան մէջ (Ա, 142–57)։ Միաբանակից Հ. Գար. Վ. Նահապետեան՝ Բազմավէպի մէջ (ԾԵ, 89) ծանօթացուց նոյնպէս իւր պեղած գերեզմանի մ՚անօթոց ձեւերը։ Սակայն եւ ոչ այդ տապաղձը կը ծառայէ մեզ՝ Արշակունեաց կամ միջին շրջանի ուսումնասիրութեան համար, թէեւ հեռաւոր աղերս մը տեսնուի աղոնց ու մեր նկարագրութեանց մէջ։ Պտուղը ժամանակով պիտի հասնի։

## ՑԱՒԵԼՈՒԱԾ

Քանի մը բառեր պիտի լրացնեն հոս մեր յիշատակած կահուց ցուցակը, եւ են հետեւեալները։

Քանդուկ։ Շտեմարանի անօթներէն էր, ծագած պրս. քէնտուքէն, որ կը մեկնուի կարասի նման մեծ աման՝ արմտեաց պահարան (Գ. Դպ.)։ Եւ արդարեւ հայ կոչումն ալ նոյն պաշտօնն ունէր՝ ըստ Խորենացւոյն, թէ ի Բիւթանիա սպիտակ հող մանրելով՝ կը ցանեն «ի քանդուկս ի վերայ ցորենոյ», որպէս զի ճճի չուտէ (600)։

Խաւեակ։ Եսայեայ վկայութեան մէջ՝ թէ «Եղիցի անդ սափոր մի» (Ե, 10), Ոսկեբերանի թարգմանիչը կ'ըսէ՝ «խաւեակ մի» (Ոսկ. Ես. 52)։ Բնագիրն է երկու տեղւոյն մէջ ալ κεράμιον, որ է ըստ տառին կաւեղէն. եւ «խաւեակն» եթէ յատուկ անօթ մը չէ, գուցէ կարդալու է կաւեակ կամ խեցեակ։

Կոտիճ։ Պատ՝ Ս. Ներսեսի «անապակ մատուցանէր... ղեղ մահու ընդ կոտիճն խառնեալ» (Փաւս. 216)։ Հայկազեանն

աստր լծորդ կը կարծէ «յն. κότινος, որ է հաստ խաղողոյ կամ չամչի»։ Բայց այդ մեկնութիւնը տեղի չունի հոս. կայ արդէն ըմպելին, «անապակ». եւ թոյնը կը խառնուի «ընդ կոտինղն», որ բնականապէս ըմպանակն է. եւ յայտնի չէ՝ կոչո՞ւմն է միայն առանձին, թէ ձեւն ալ։

Մայծրայ։ Այս բառը տեսանք Փիլոնի մեկնչին վկայութեան մէջ. «պատժանակն՝ մեծ մայծրայ է... զոր տօսղաքան ասեն» (աստ, 76)։ Տօսղաքանի ձեւն յայտնի է (աստ, 77). ուրեմն «մայծրայն» ալ ընդհանուր կոչումն էր նոյն կարգի անօթոց, որ կրնային լինել «մեծ» կամ փոքր։

Շմբրոց։ Ոսկեբերանի քով կը կարդանք. «Հնգամարտիկքն... զշմբրոցն լնուն աւազով եւ առնուն ըստ անձին» (Մոթ. Ա, 510)։ Բնագիրն է θύλαξ, որ է պարկ, եւ հաւանօրէն հոմանիշ մեզ ծանօթ համանուն սպասին (աստ, 44)։

Գահաւորակ։ Հոմանիշ մ'է կասկարայից (ապտ, 36), դրուած մի եւ նոյն յունարէն բառին դէմ՝ մովսիսական սեղանոյն կրակարանին բերանը. «գահաւորակ վանդակակերպ պղնձի» (Ելք, Իէ, 4)։ Յայտնի է՝ թէ հայերէնը նմանութեամբ ըսուած է, իբրեւ նստարան սանին։

Գահ։ Արքունի տաճարին բազմականք սովորաբար գահ կը կոչուին. ինչպէս՝ «մեծամեծքն յիւրաքանչիւր գահոյս» (Փաւս. 67)։ Վարդան կ'ըսէր իւր զինակցաց՝ թէ ոմանք քան զինք «գահու ի վեր (էին) ըստ հայրենի պատուոյն» (Եղիշ. 85)։ Եւ «զգահն երկրորդական» կ'անուանէ Խորենացին բարձր իշխանի մը բազմականը (124)։ Նոյն բառն է տիկնանց «բարձրագահք» բարդին մէջ ալ (անդ, 52)։ Միջին դարուն զայս փոխանակեց գահոյքը, որ հին ժամանակ թագաւորին միայն սեպհական էր (անդ, 54)։ — Գահ՝ կը ծագի պրս. մի եւ նոյն բառէն եւ համանշէն (Հիւբշ. 125)։

---

# ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

## ՃԱՇ ԵՒ ԸՆԹՐԻՔ. — ԿՈՉՈՒՆՔ. — ԲԱՐՈՑԱԿԱՆԸ

Վայրերու եւ կահուց անկենդան նկարագրէն՝ անցնի՛նք տեսնել անոնց աշխոյժ ու գործունեայ վիճակը, որ աւելի հետաքրքրական է։ Նկատենք մեր նախնիքը հաւաքուած իրենց ճաշարանին մէջ, եւ բազմած՝ ընտանեօք կամ բարեկամօք՝ իրենց սեղանին շուրջ։ Տեսնենք անոնց պաշտած «զծուխ ծխանի», եւ անոր ներքեւ ճարճատող բոցին վրայէն դէպ ի ճաշարան փոխադրուած համեղաճաշակ կերակուրները. «զվազելն եղանց եւ զվազելն եղջերուաց» մեր որսասէր ազատաց առջեւ, եւ բերուիլն ի խոհանոց, թէ «նաւասարդի առաւօտուն» (Մագ. 87) եւ թէ լուր օրերու երեկոյին՝ որոնք հաւասարապէս հրապուրիչ են մեզ։ Եւ քննութեան բնական կարգով՝ հանդիսականէն յառաջ հետազօտելու ենք հանապազօրեայն, կոչունքէն յառաջ պարզ ճաշը։

## Ա. ՃԱՇ ԵՒ ԸՆԹՐԻՔ

1. — *Բաժանումն։* — *Ցերեկի երրեակ բաժանմանց թուով, որ են առաւօտ՝ միջօրէ եւ երեկոյ, արեւմտեայց մէջ նոյն պահերու հետ կապուած էին երեք կերակուր՝ զանազան կոչումներով* (*Դար. Ա,* 1272)։ *Մեր քով վերջին երկուքը ծանօթ, իսկ առաւօտու ճաշիկն անյիշատակ կը մնայ. որովհետեւ շատ աննշան էր այդ հապճեպ եւ անկանոն սնունդը, եւ զուրկ որ եւ է հանդիսաւորութենէ։ Այս պատճառաւ պատմութիւնը որ եւ իցէ կարեւոր դէպք չէ կապած անոր հետ, որով զայն յիշելու առիթ ունենար։ Մեք իրաւունք ունինք նոյն իսկ կասկածելու նախաճաշի գոյութեան վրայ մեր մէջ, երբ նկատենք որ Հրէից եւ ուրիշ արեւելեայց ալ սովորական չէր արդէն առաւօտուն ճաշ ուտել* (*Վիգ. Ե,* 1046)։ *Տեսնենք ուրեմն միւս կերակրները։*

2. — *Ճաշ։* — *Ա. Սա ծագած է պրս. ճէշնէն* (*Գ. Դպ.*), *եւ արմատն է մեր ճաշել կամ ճաշակել բայից, որոնք կը նշանակեն ուտել, եւ երկրորդը՝ նաեւ ըմ-*

պել։ Հետեւաբար նախնեաց «ճաշն» ալ առաջին իմաստով կը ցուցնէր որ եւ է ժամու հաց։ Մանդակունին (129) եւ Ոսկերերան (Մատթ. Բ, 67) «ճաշ» կը կոչեն անապատի ժողովրդեան կերակուրը, որ կատարուեցաւ երբ «օրն տարաժամեալ» էր (Մատթ. ԺԴ, 15)։ Երկրորդը նոյնպէս «ճաշ» կ'անուանէ վանականաց ընթրիքը (Մատթ. Բ, 71. Թղթ. Ա, 127)։ Աղեքսանդրի պատմութիւնը «ճաշ» մը կը յիշէ՝ կատարուած «ընդ լինել տասն ժամ», եւ ուրիշ մը՝ «ի մետասան ժամ» (140,'41)։ Նեեմեայ մէջ «ճաշ» մը կայ՝ որ թարգմանութիւնն է յն. սեղանին (Ե, 17), եւ Եսթերի երկու «ճաշն» յն. գինարբուաց տեղ գրուած է (Զ, 14, Է, 7)։ Մեսրոպ՝ «ի ժամ ճաշոյն» Արշակայ բացատրութեամբ՝ կ'իմանայ անոր օրական բոլոր հացկերոյթները (32, 39)։

Բ. Սակայն «ճաշն» իւր աւելի ամփոփ իմաստով կը նշանակէր միջօրէի կերակուրը, եւ իրաւամբ կ'ըսէ Տաթեւացին՝ թէ «կերակուրն մինչ ի Զ ժամն՝ ճաշ կոչի» (Հրց. 656)։ Այս մտօք Ս. Գրոց մէջ ալ կան շատ օրինակներ, (Հռթ. Բ, 14. Տոբ. Բ, 1. Դան. ԺԴ, 13 եւն). եւ տեղ մը նաեւ այս յայտնի զանազանութիւնը. «Յորժամ առնիցես ճաշ կամ ընթ-

թրխ» (Ղկ. ԺԴ, 12)։ Արդ՝ Տաթեւացւոյն յիշեալ խօսքն առնելու ենք նոյն իսկ տոհմային սովորութեան մասին, որ արդարեւ շատ հին է։ Մեծն Ներսէս՝ Հայր մարդպետի, որ ցերեկ հիւր եկած էր իրեն, «հրաման տայր... ճաշ պատրաստել» (Փաւս. 114)։ Նոյնպէս Խադ օր մը «ըղնէր ճաշ» անակնկալ հիւրոց, որոնք ուտելէ վերջ մեկնեցան լուսով (նոյն, 108)։ Գայլ Վահան հրամայեց «ճաշ առնել» Միհրանայ, եւ ցերեկ էր (Մամ. 24)։ Եւ Կիրակոս «ճաշ» կ՚անուանէ նոյն պահուն տրուած կերակուր մը (147)։

Գ. Թէ որպիսի՛ էր Հայոց սովորական ճաշը, յօրինուածն ու եղանակը, ոչինչ կայ գրուած մեր մատենագրութեան մէջ։ Ցիշեալ չորս օրինակներն ալ հացկերոյթներ են, որոց մասին առանձին պիտի խօսինք, եւ ոչ պարզ ճաշեր։ Այսքան սակայն կըրնանք ըսել՝ որ հասարակ ճաշն որ եւ է ուշադիր պատրաստութենէ եւ կարեւորութենէ զուրկ էր, ըստ որում աննշան կ՚անցնէր այն ուրիշ ազգաց քով ալ (Դար. Ա, 1272)։ Զբաղանաց ու ցրման այդ ժամուն՝ ափ յափոյ եւ ուր որ պատահէր՝ կը փութային գոհացնել ստամոքսը, վերստին իրենց գործին ձեռնարկելու համար։

3. — *Ընթրիք։* — Ա. *Այսպէս կը կոչուէր երեկոյեան հացը, որով կը վարին* Ս. Գրոց *թարգմանիչք* (Տոբ. Ը, 1. Առկ. ԻԳ, 1. Դան. Ա, 16). *մերթ ասով փոխանակելով նոյն իսկ բնագրին «գիներբուքը»* (Ծննդ. ԺԹ, 3) *կամ «ոգեհացը»* (Բ Թագ. Գ, 35), *երբ ասոնք երեկոյին կատարուած են։ Նոյնպէս կը կոչէ Ոսկեբերանի թարգմանը* (Մատթ. Բ, 67), *մանաւանդ սա զանազանութեան մէջ. «ճաշք զճաշս մղիցեն, եւ ընթրիք զընթրեօք անցանիցեն»* (*անդ*, 66)։ *Վերջապէս մեր պատմչաց քով ալ բոլոր յետմիջօրեայ կերակուրք «ընթրիք» են* (Փաւս. 168, 204, '7, '16, '32, '36. Խոր. 141. Փրպ. 27, 267 *եւն*), *Տաթեւացւոյն ըսածին պէս՝ թէ «Անտի (Ջ ժամէն) յառաջ ընթրիս» կոչի* (Հրց. 656)։

Բ. *Վերջին բացատրութեանդ մէջ յայտնի ժամ մը չկայ, թէեւ այլուր ասոր ակնարկութիւնք պակաս չեն. զոր օրինակ՝ Փաւստոս կը յիշէ Շապհոյ կոչունքն՝ «իբրեւ երեկոյ եղեւ, ժամ ընթրեաց թագաւորին»* (168). *եւ աւելի կ'որոշէ Պապայ մէկ ընթրիքն՝ «յինն ժամ աւուրն»* (204)։ *Իրաւ է՝ թէ չէ կարելի խստօրէն համարել զայս իբր միակ ժամ. բայց նկատելով՝ որ վանականք ալ սոյն ժամուն կ'ընթրէին, ինչպէս պիտի տեսնենք յետոյ, կա-*

ըսել է զայս կարծել իբր հասարակաց աւելի սովորականը։

Ընթրիքն օրուան ճաշերուն մէջ կարեւորագոյնն էր թէ մեր եւ թէ ուրիշ ազգաց քով (Դար. Ա, 1272)։ Երեկոյի գործադուլը բնականապէս իրարու մօտ կը հաւաքէր ցրուած ընտանիքը սեղանին շուրջ, եւ դիւրութիւն կ'ընծայէր զուարթօրէն ու խնամուած կերակրով մ'ուրախանալ համախումբ։ Թէ մեր մէջ ի՞նչպէս էր սովորական ընթրեաց հանդերձանքը, դարձեալ կը լռէ պատմութիւնը՝ որոյ ուշը կը գրաւեն փայլուն տեսարանները միայն, եւ կը թողու մեզ աւելի գուշակել քան տեսնել։

Գ. Աղօթք։ Աստով կը սկսէր ու կ'աւարտէր որ եւ է ճաշ, ինչպէս սովորութիւն էր Հրէից քով (Մատթ. ԺԴ, 19. ԻԶ, 30. Գործ. ԻԷ, 35), եւ որ քրիստոնէից ալ անցաւ, Տերտուղիանոսի ըսածին պէս՝ թէ «կը նստինք ի սեղան յետ աղօթելու առ Աստուած», եւ թէ «ճաշը կ'աւարտի աղօթիւք՝ որով սկսաւ» (Մարտ. 698)։ Հայք նոյնը բարեպաշտօրէն ընդունեցան. Ս. Շուշանիկ իւր ցաւոց մէջ «սակաւ ինչ ճաշակեալ կերակուր եւ ըմպելի», երբ աւարտեց, «յարուցեալ՝» այս ինքն կանգնած՝ «գոհանայր զՏեառնէ» (Սոփ. Թ, 16)։ Այս սովորոյթը մնաց միշտ, որով Ցհ.

Եզնկացին կը յիշեցնէ՝ թէ «ի ժամ հացին աղօթիւք պարտ է գոհանալ զԱստուծոյ, որ տուեալ է եւ պատրաստեալ է զկերակուրն» (Խրտ. ԺԳ)։ Մեք այս աղօթքը պիտի տեսնենք դեռ ուրիշ ճաշերու վրայ եւս տարբեր ձեւով։

Դ. Ճաշ[1], հաց[2], կերակուր[3], ուտելի[4] կամ ուտեստ[5], ռոճիկ[6], պարէն[7], պաս[8], եւ աղապէտ կամ աղպէտ[9], այլ եւ այլ կոչումներն էին սովորական սննդեան, որ բնականապէս կը զանազանէր ըստ դասակարգի եւ կարողութեան։ Ազնուականացը պիտի կարենանք երեւակայել փափուկ եւ համեղ, դատելով անոնց կոչնոց նկարագրէն՝ զոր պիտի տեսնենք յաջորդ գլխին։ Հայ տիկնայք՝ որ «ի մանկութենէ իւրեանց սնեալ էին ուղղովք զուարակաց եւ ամճովք էրէոց» (Եղիշ. 174), յայտնի է՝ թէ աղոնք եւ այդպիսիք էին անոնց համապազօրեայ ուտեստը։ Ի՞նչ բանի սահմանուած էին անոնց եւ մեծատանց շտեմարանի ու մառանի մթերքը զոր տեսանք (տես, 13

1. Տես վերեւ, 108։ — 2. Փաւս. 52, 226. Եղիշ. 132. Սահ. 113. Փրպ. 532. Ս. Գիրք ստէպ։ — 3. Եղիշ. 132. Մանդ. 154. Դատ. ԺԴ, 14. Մտթ. Գ. 4, եւն։ — 4. Խոր. 96։ — 5. Փաւս. 129։ — 6. Փաւս. 84. Եղիշ. 52. Փրպ. 267. Քրոն. Ա, 33. Պամ. Ագ. 163։ — 7. Ագթ. 123։ — 8. Փաւս. 114. Աւա. Գ։ — 9. Խոսրով ի Հյկզ. Վաստ. 7։

–7, 19–23), եթէ ոչ պարարտացնելու անոնց սեղանն ու քիմքը: — Այս ճաշերուն կ՚ընկերէին ինչ ինչ արարողութիւնք եւս, որոց նկարագիրը կը պահեմ կոչնոց, որպէս զի ամբողջութեամբ տեսնենք հոն, եւ խուսափենք կրկնութենէ:

Այլուր ակնարկեցինք մեր երկրին բարեբերութեան, հռչակեալ օտարաց մէջ անգամ (աստ, 14): Բայց Հայաստան անշուշտ միայն ազատին չէր ժպտեր. այլ անոր համբարները լեցնող վաստակաւէր մշակին եւս կը շնորհէր՝ «կանամբք, արամբք եւ ընտանեօք՝ զանպակասութիւն հացի եւ գինւոյ» (Փրպ. 23), եւ նա իւր չափաւոր տան մէջ ալ իւր քրտանց արդեամբք կը հանդերձէր իրեն բարեքիկ սեղան մը: Այս բաւական չէ. նաեւ Այրարատոյ «գետոյն գնացք՝ բազմակերպ ձրկամբք մեծամեծօք եւ փոքումբք» կը ծառայէին նախ «յագուրդ որովայնից ժրացելոցն եւ անվեհեր ջանացողացն» (նոյն, 25): Կարնոյ մօրերուն մէջ եւս կային «անբաւութիւնք ձկանց եւ զանազան հաւուց ճարակաւորաց, յորոց ի ձուոց միայն կերակրեալ լինէին բնակիչքն», կ՚ըսէ պատմիչը. Թող դաշտաց մէջ սփռած «զթանձրութիւն խոտոց եւ զքաջաբերութիւն սերմանաւոր պտղոց» (Խոր. 256): Բագրա-

*տունեաց շրջանին ալ դեռ Հայոց «շտեմարանք զեղեալք» են. «հօտք արօտականք ծաղկաւէտք խայտացեալք,... դաշտք պարարտութեամբ լցեալ,... հովիտք բազմացուցեալ ցորեան»* (*ՑՀ. կԹղ.* 326)։ *Եւ ուրիշ մը զՀայաստան կը նկարագրէ՝ «աշխարհ... իբրեւ զդրախտ... կանաչազեղ, տերեւալից, պտղաբեր, գեղեցկաշուք եւ երջանիկ»։ Հոն կը լսուէր «ձայն ուրախութեան ի կութս այգեաց» եւ «բարեբանութիւն առ կոխողս հնձանի»* (*Լաստ.* 40), *որոց յաջորդող ճաշերն ալ բնական էր որ պատարուն լինէին առատութեամբ ու ցնծութեամբ։*

*Այդ բարիքները սակայն ամէն աշխատաւորի եւ կամ արուեստաւորի տան մէջ չէին կրնար համախմբուիլ։ Այլ ինչպէս այսօր, հին ժամանակ ալ կային ուտելու շատ նիւթոց հասարակաց հայթայթիչներ կամ վաճառորդներ, որոցմէ ժողովուրդը կը գնէր դրամով իւր պիտոյքը։ Այսպէս կը յիշուին յատուկ «հացարարոցք»* (*Ա Մնց. ԺԶ*, 3) *կամ «հասարակաց» հացագործներ* (*Եղիշ.* 173)։ *«Սպանդանոցք»* (*Ա Կոր. Ժ*, 25) *կամ «մսավաճառանոցք»* (*Եզն.* 284) *եւ «մսագործք»* (*Վրդ. ի Հյկզ.*)։ *«Կրպակաւորք» գինւոյ* (*Ասող.* 238) *կամ «գինեվաճառք»* (*Սրգ.* 825)։ *Շրջուն «կաղամբա-*

վաճառք» (Փաւս. 55), կամ «քանչարավաճառք», եւ վերջապէս «ամենավաճառք» (Ոսկ. Թղթ. Ա, 666)։ Չափաւորապէս շահող ռամկին սեղանն ուրեմն այս վաճառականաց տուած նիւթերով կը զարդարուէր։ Եւ ոչ անշուշտ ռամկին սեղանը միայն։ — Ոչ միայն կերակրոյ նիւթոց, այլ ասոցմէ պատրաստուած եւ եփուած ուտելեաց վաճառորդներ, կամ արդի ոճով՝ հասարակաց ճաշարաններ ալ կային Հայոց մէջ, գէթ միջին դարուն, ուր կը յաճախէին ընտանիքէ զուրկ եւ կամ հեռի մնացած մարդիկ։ Այս կարեւոր տեղեկութիւնը մեզ տուողն է Լամբրոնացին՝ հետագայ տողերով. «Որ ի վաճառարանս[1] մտանէ, տեսանէ զզանազան համադամս կերակրոցն եւ ըմպելեացն, եւ ինքն ծարաւի եւ սովեալ, ոչ ինչ օգտի ի տեսութենէն՝» եթէ չճաշակէ (Պտր. 260)։

Ո՛րքան բաղձալի էր գիտնալ ժողովրդական կերակրոց այն տեսակները, որ կը շինուէին բաղադրութեամբ ուտելի նիւթոց։ Կարծեմ թէ դժուարին է անոնց անուններն անգամ որոնել մեր մատենագրութեան մէջ։ Դիպուածի արդիւնք է Տա-

1. Այդպէս ըստ 1306ի, 1332ի եւն օրինակաց Ս. Ղազարու, զոր տպագիրը սխալմամբ «ի վաճառականս» կը գրէ։

րօնացւոյն քով յիշուիլը ճշդելի կերակրոյ մը, երբ յոյն քահանայից անարժանաբար մատուցած խորհրդոյն համար կ'ըսէ. «Թուրքին դդմաձն՝ լաւ է քան զայն պատարագն» (Թէոփ.). Եւ որ զուցէ Հայոց ալ էր։ Բայց ազնուականաց սնունդն աւելի որոշ է, զոր պիտի տեսնենք իւր կարգին։

Ե. Սակայն դրամին հակառակ երեսն ալ կայ։ Լեռնցի շինականին սեղանը զուրկ էր դաշտայնոց զանազանութենէն, եւ շատ ժուժկալ ու չոր, մանաւանդ թէ կիսավայրենի բան մը, դատելով՝ զոր օրինակ՝ Սասնեցւոց սովորութենէն, որոնք ըստ Արծրունոյն՝ «զպէտս կերակրոցն վճարեն ի սերմանց ինչ, առաւել ի կորեակ կոչեցեալ սերմանէն, զոր ոմանք ի սով ժամանակի հաց անուանեն» (134)։ Վերջինս իմանալի է՝ թէ ուրիշներ ալ սովի առթիւ անկից հաց կը շինէին։ Եւ արդարեւ ասոր օրինակներ շատ ունինք։ Ե դարու աքսորական նախարարաց փափկակեր ընտանիքները չքաւորութեան մատնուած, «փոխանակ նաշհոյ կորեակ ուտէին, կ'ըսէ Փարպեցին, եւ փոխանակ պարզ գինւոյ՝ ջուր չափով ըմպէին» (331). կամ ըստ Եղիշէի՝ «խոտաքուտ կենօք իբրեւ զվայ-

1. Պրս. «բիւրմանճ. է տեսակ իմն կերակրոյ» (Գ. Դպ.)։

րենիս ընդունէին զկերակուրն» (174)։ Վարդանանց պատերազմէն վերջ լեռներն ապաստանող քաղաքացիք նոյնպէս «համբերէին խոտաբուտ կերակրոցն» (նոյն, 107)։ Եւ Յուսփայ ի Դուին գերած ազնուազգի տիկնայք «չուր անգամ եւ աշտոռն հաց ոչ գտանէին ցյազ», կ'ըսէ ուրիշ մը (Որբ. 140)։ — Ի՞նչ կրնար լինել ուրեմն սովորական աղքատին սնունդն ալ, եթէ ոչ նոյնպէս «հաց աշտոռն՝» որ է չոր (Ոսկ. Մտթ. Ա, 693, Որբ. 116). եւ փոխանակ գինւոյ՝ «դիւրագին ջրովն զնոյն պէտս ծարաւոյն վճարէ», կ'ըսէ Մանդակունին (74)։ Այսպէս՝ լեռնականին ճաշակի եւ զարգացման աղքատութիւնը, եւ կիրթ քաղաքացւոյն վերահաս դրամական չքաւորութիւնը՝ մի եւ նոյն արդիւնքը կուտան սեղանին վրայ։ Եւ կ'երեւի՝ թէ այդ երկու պարագայք միանգամայն կային Սասնեցւոց քով, որոնք ոչ միայն «լի աշխատութեամբ եւ սաստիկ տառապանօք» կը ճարէին իրենց ապրուստը, այլ եւ էին «գազանաբարոյք, արիւնարբուք», ցրուած անտառաց ու փապարաց մէջ եւ լերանց կատարները, առանց ընկերական կենաց ու կազմակերպութեան (Արծ. 134)։

րօնացւոյն քով յիշուիլը ճշդելի կերակրոյ մը, երբ յոյն քահանայից անարժանաբար մատուցած խորհրդոյն համար կ՚ըսէ. «Թուրքին դդմաճն[1] լաւ է քան զայն պատարագն» (Թէոփ.). եւ որ գուցէ Հայոց ալ էր։ Բայց ազնուականաց սնունդն աւելի որոշ է, զոր պիտի տեսնենք իւր կարգին։

Ե. Սակայն դրամին հակառակ երեսն ալ կայ։ Լեռնցի շինականին սեղանը զուրկ էր դաշտայնոց զանազանութենէն, եւ շատ ժուժկալ ու չոր, մանաւանդ թէ կիսավայրենի բան մը, դատելով՝ զոր օրինակ՝ Սասնեցւոց սովորութենէն, որոնք ըստ Արծրունոյն՝ «զպէտս կերակրոցն վճարեն ի սերմանց ինչ, առաւել ի կորեակ կոչեցեալ սերմանէն, զոր ոմանք ի սով ժամանակի հաց անուանեն» (134)։ Վերջինս իմանալի է՝ թէ ուրիշներ ալ սովի ատթիւ անկից հաց կը շինէին։ Եւ արդարեւ ասոր օրինակներ շատ ունինք։ Ե դարու աքսորական նախարարաց փափկակեր ընտանիքները չքաւորութեան մատնուած, «փոխանակ նաշհոյ կորեակ ուտէին, կ՚ըսէ Փարպեցին, եւ փոխանակ պարզ գինւոյ՝ ջուր չափով ըմպէին» (331). կամ ըստ Եղիշէի՝ «խոտաքուտ կենօք իբրեւ զվայ-

1. Պրս. «թիւրմաճ. է տեսակ իմն կերակրոյ» (Գ. Դպ.)։

րենիս ընդունէին զկերակուրն» (174)։ Վարդանանց պատերազմէն վերջ լեռներն ապաստանող քաղաքացիք նոյնպէս «համբերէին խոտաբուտ կերակրոցն» (Նոյն, 107)։ Եւ Յուսիկ ի Դուրն գերած ազնուազգի տիկնայք «ջուր անգամ եւ աշտոռն հաց ոչ գտանէին ցյագ», կ'ըսէ ուրիշ մը (Որբ. 140)։ — Ի՞նչ կրնար լինել ուրեմն սովորական աղքատին անունդն ալ, եթէ ոչ նոյնպէս «հաց աշտոռն» որ է չոր (Ոսկ. Մատթ. Ա, 693, Որբ. 116). եւ փոխանակ գինւոյ՝ «դիւրագին ջրովն զնոյն պէտս ծարաւոյն վճարէ», կ'ըսէ Մանդակունին (74)։ Այսպէս՝ լեռնականին ճաշակի եւ զարգացման աղքատութիւնը, եւ կիրթ քաղաքացւոյն վերահաս դրամական չքաւորութիւնը՝ մի եւ նոյն արդիւնքը կու տան սեղանին վրայ։ Եւ կ'երեւի՝ թէ այդ երկու պարագայք միանգամայն կային Սասնեցւոց քով, որոնք ոչ միայն «լի աշխատութեամբ եւ սաստիկ տառապանօք» կը ճարէին իրենց ապրուստը, այլ եւ էին «գազանաբարոյք, արիւնարբուք», ցրուած անտառաց ու փապարաց մէջ եւ լերանց կատարները, առանց ընկերական կենաց ու կազմակերպութեան (Արծ. 134)։



## Բ. ԿՈՉՈՒՆՔ

*Այս հանդիսական ճաշը շատ տարբեր էր սովորականներէն՝ անուամբ, ձեւով, ճոխութեամբ, կերողաց թուով, եւ ամէն բանով, զոր պէտք է որ մեծ խնամով հետազօտենք. վասն զի՝ աւելորդ է ըսել՝ մեր ուսումնասիրութեան նշանաւորագոյն մասերէն մին է այս։*

1. — *Կարեւորութիւնը*։ — *Ահագին էր կոչնոց դերը մեր անցեալ պատմութեան մէջ, մանաւանդ Արշակունեաց շրջանին։ Հայ կենաց բոլոր պարագայից մէջ խառնուած էր այն։ Հոն էր՝ որ առաւելապէս կը սոնքար ու կը շողշողար հայ աւագորեարն՝ իւր ազնուապետական դասակարգութեան ցուցադրութեամբ արքունի սեղանին շուրջ* (*Փաւս*. 66–7. *Մեսր*. 32–9). *եւ որուն ուրիշ ոչ մէկ առթիւ այնչափ ուշ չեն դարձներ մեր պատմիչք։ Կոչնոց մէջ կը լինէին սիրոյ եւ պատուոյ մեծամեծ ցոյցերը՝ թագապսակ գլուխներու* (*Փաւս*. 124) *եւ առ հասարակ այլոց միջեւ* (*Եղիշ*. 132–3)*։ Հացկերութեանց ձեռքով քաղաքական պետեր իրենց կուսակցաց*

համակրութիւնը վառ կը պահէին իրենց հետ (նոյն, 52, 88)։ Ազնուականաց ներքին բարեկամութեան կապն էր ճաշը (նոյն, 174), ինչպէս նաեւ ամէն մեծատանց. Նիւսացւոյն հայ մեկնչին բանծին պէս՝ թէ «Սովոր են մարդիկ որ կարգաւ զմիմեանս պատուեն իւրաքանչիւր յընչից իւրոց» (Լծ. Հյր. ժԴ)։

Աստվ կը վերջանային միշտ ազատաց որսորդութիւնք ալ (Փրպ. 26–7. Խոր. 209)։ Ցարգելի հիւրերն ասով կը մեծարուէին (Փաւս. 114), եւ կամ որսով ու ճաշով հանդերձ (նոյն, 51. Խոր. 249)։ Սոյնպէս կը պատուէին հայրապետը՝ երբ հովուական այցելութեան կ'երթար տեղ մը (Հյպտ. 195)։ Անրաժան էր այն հասարակաց հոգեւոր ուրախութեան առիթներէ եւս, ինչպէս էր նորակառոյց եկեղեցեաց նաւակատիքը (Կիր. 147)։ Նոյն ինքն գլխաւոր մասը կը կազմէր ընտանեկան ներքին հանդիսից ալ, որ կը լինէին ծննդեան եւ անուանակոչութեան, նկրտութեան, հարսանեաց եւ այլ առիթներով, զորս առանձին պիտի տեսնենք։ Ճաշ կը տրուէր նաեւ քրիստոնէական բարեգործութեան եւ հոգւոց հանգստեան համար, զորս նոյնպէս պիտի տեսնենք իրենց կարգին։ Քաղաքական մեծամեծ դաւերն

*եւ ոճիրներն անգամ սեղանի հետ կապուած էին։ Հուսկ ապա՝ խնճոյքը քաղաքական ասպարիզէ վտարուած հայ կնոջ կը շը- նորհէր կարեւոր դիրք մ'ընկերութեան մէջ։*

2. — *Յորջորջմունք։ — Շատ զանազան էին անոնք, եւ իրենց մէջ կ'ամփոփէին հանդիսին սահմանն իսկ։ Կ'ըսուէր* **կոչունք**[1] *կամ* **ընդունելութիւն**[2], *եւ միջնադարեան ռամկերենով՝* **հրաւէնք**[3], *ըստ որում անոր կը հրաւիրուէին բազմութիւն արտաքին ան- ձանց։* **Խնճոյք** *կամ* **խնջոյք**[4] *եւ* **երախան**[5], *որ կը նշանակէին հրաւիրելոց ժողովն իսկ՝ փոխանակ հանդիսին։* **Հացկերոյթ**[6] *կամ* **հացկերութիւն**[7], **հաց մեծ** *կամ* **հաց մեծապէս**[8], **ճաշ մեծ**[9], **ընթրիք մեծ**[10] *կամ* **մեծապէս ըն- թրիք**,[11] *եւ* **հացընթրիք**[12], *որոց մէջ կայ ու- տելեաց առատութեան գաղափարը՝ որ կը բաժնէ զայս սովորական ճաշերէն։* **Գի- ներբուք** *կամ* **գինարբուք**[13], **գինարբուցք**[14] ,**գի-**

1. Մանդ. 59, 60, 62. Եսթ. Ա, 3. Յդթ. Զ, 20. Ղկ. ԺԴ, 8 եւն։ — 2. Մանդ. 59-62. Ղկ. Ե, 29. ԺԴ, 13։ — 3. Գող Ալկ. 137։ — 4. Ոսկ. Մաթ. Ա, 686,'94. Թդթ. Ա, 660. Գ Մակ. Զ, 22. Խոր. 250։ — 5. Եղիշ. 174. Գաւ.165-6. Տար. վերլծ. Մագ. 213։ — 6. Պամ. Աղ. 114. Փիլ. Ճառ. 22, 64. Խոսր. ի Հյկզ։ — 7. Փիլ. Ճառ. 25. Պամ. Աղ. եւ Պիտ. ի Հյկզ։ — 8. Փաւս. 232։ — 9. Կիր. 147։ — 10. Փաւս. 236։ — 11. Փրպ. 517։ — 12. Մամբ. 74. — 13. Մանդ. 128,'35. Խոր. 204. Պամ. Աղ. 100. Եսթ. Ի, 1. Յդթ. ԺԴ, 2. Առկ. ԻԴ, 30։ — 14. Նար. 517.

ճարպութիւն[1], գինըմպելիք[2], գինըմպուք[3] կամ գինըմպութիւն[4], ըստ որում գինին խնճոյից գլխաւոր տարրերէն մին էր։ Սեղան ալ կոչուած է[5], պարունակողը փոխանակ պարունակելոյն. եւ բազմականք[6], նստարանքը՝ փոխանակ անոնց վրայ հաւաքուած բազմութեան։ Վերջապէս խրախոռճք[7], խրախութիւն[8], խրախճանք[9], խրախճանութիւն[10] կամ ուրախութիւն,[11] որոնք յայտարար են այն տեղ տիրող անսովոր ու մեծ զուարթութեան։ Եւ այս անուանց շղթային մէջ մեր նախնիք կը հիւսեն հանդիսին ներբողն ու քերթուածը՝ զոր կը ներշնչէ պատկերին հրապոյրը։

3. — Կոչնատէր։ — Խնջոյից զանազան յորջորջմանց համեմատ՝ այլ եւ այլ կոչումներ ունէր հրաւիրողն ալ։ Այդպէս կոչնատէր (Դաւ. 166. Ղկ. ԺԴ, 12, յն. կոչող), կամ կոչեցի (Ոսկ. Թղթ. Ա, 532. 702),

1. Ընդհ. 42. Ուռ. 86։ — 2. Ոսկ. Մտթ. Ա, 692. Սաղ. 93, 98։ — 3. Ոսկ. Մտթ. Ա, 692։ — 4. Լմբր. եւ Կանոնք ի Հյկզ։ — 5. Մանդ. 74, 154. Փրպ. 161. Ոսկ. Թղթ. Ա, 126, 531. Գ Թագ. ԺԸ, 19. Սիր. Ջ, 10։ — 6. Փաւս. 51. Ագթ. 375։ — 7. Գ Մակ. Է, 9. Եփր. Գ, 131։ — 8. Եղիշ. 173. Պամ. Աղ. 114. Ոսկ. Մտթ. Ա, 684, '87, '89. Թղթ. Ա, 532, '34. Եմես. 136, '64. Ծննդ. ԻՋ, 30, եւն։ — 9. Մանդ. 154. Սիր. Դ, 28, Ես. ԻԴ, 7. Երմ. Է, 34։ — 10. Յճխ. 182. Խոր. 30, 80, 249. Բարուք, Դ, 34. Փիլ. Ճոք. 19։ — 11. Փաւս. 67, 124. Եմես. 164. Խոր. 250. Սեբ. 72։

հացտու (Փիլ. Ճռք. 20, 64), եւ տէր խը-
րախութեան (Ոսկ. Մտթ. Ա, 686)։ Բնա-
կանապէս մեր հանդիսին մէջ կոչնատէրը
կարեւորագոյն դէմքն է, եւ պէտք է որ
յառաջ զինքը տեսնենք։

Հացկերոյթ կու տային, նախ թագա-
ւորը։ Պատմութեան մէջ, արքունի կոչ-
նոց ընդհանուր յիշատակութենէն զատ
(Փաւս. 67. Մեսր. 32), ծանօթ են քանի
մը յատուկ ճաշեր եւս. ինչպէս Տիրանայ,
Արշակայ, Պապայ կրկին, եւ Վարազդատայ
տուածները նախարարաց կամ հիւրոց
(Փաւս. 51, 67, 204, '16, '36). Աշոտ
Բագրատունւոյ բարեգործական կերակրը-
ները (Ասող. 180) եւ այլն։ Բայց արքու-
նական կոչունք անխտիր եւ այնքան յա-
ճախեալ չէին հին ժամանակ, լինելով ա-
ւելի պաշտօնական քան մտերմական, ինչ-
պէս ի դէպ էր։ Եւ համոզուած եմ՝ թէ
Խորենացին իւր դարու սովորոյթն ինքնին
կը վերագրէ Վաղարշակայ, երբ կ'ըսէ՝
թէ «ժամս որոշէ... խրախճանութեանց եւ
զբօսանաց» (80). եւ կամ գոնէ իւր դա-
րուն համար եւս կրնար կրկնել զայս։

Աւելի ստէպ կը հրաւիրէին զիրար նա-
խարարք, որոցմէ յանուանէ կը յիշուին՝
սիւնեցի երկու իշխանաց՝ Բակուրի (Խոր.
141) եւ Վասակայ (Եղիշ. 52), խաչենոյ

Հասան իշխանին (Կիր. 147), եւ առ հա-
սարակ ամենուն տուած ճաշերը՝ որոց
ակնարկեցինք վերեւ։ Եւ որ եւ է տա-
նուտէր ալ խնճոյք կու տար վերոյիշեալ
դիպուածոց մէջ։

Ազնուազգի տիկնայք եւս, որոնք մեր
տոհմային հին բարուց մէջ աւելի ազատ
էին՝ քան մահմետական տիրապետութեան
ներքեւ այլափոխուած արդի գաւառացի
հայուհին, ունէին իրենց «երախանքը»,
եւ ուղղակի անոնց կողմանէ կը հրաւի-
րուէին «պատուականք յարանց ի տա-
ճարս նոցա», զոր Եղիշէ կը պատմէ իր-
րեւ շատ սովորական բան մը (174)։ Եւ
միակ վկայութիւնը չէ այս. Արտագերք
ամրոցին մէջ պաշտպանող զօրականքն
ալ՝ «առաջի տիկնոջն փառանձեմայ ու-
տէին եւ ըմպէին եւ ուրախ լինէին», ա-
նոր հետ միասին նստելով «ի տաճարին»
(Փաւս. 171)։ Նաեւ արծրունի տիկինն
Մարիամ՝ ուխտի երթալով Գլակայ սըր-
բավայրը, իւր սպասաւորաց հրամայեց
«ճաշ առնել» տեղւոյն վանականաց. եւ
«յորժամ ճաշակեցին», տիկինն յայտնեց
իւր ուրախութիւնը եւ հայցեց անոնց օրհ-
նութիւնը (Մամ. 11). ուսկից հաւանական
կը թուի՝ թէ ինքն ալ ճաշակից էր ա-
նոնց։ Եսթերայ պատմութենէն գիտենք՝

որ այրեր հրաւիրելու նոյն ազատութիւնը կը վայելէին եւ հին Պարսից տիկնայք (Եսթ. Ա, Ե, Է)։

Վերջապէս հայրապետն ալ, որ հոգեւոր իշխանութենէն զատ՝ քաղաքականապէս եւս բարձր դիրք մ'ունէր միշտ, ճոխ սեղաններ կու տար երբեմն ազնուականաց։ Մեծն Ներսէս՝ Հայր մարդպետի պատրաստեց «ըստ նմա արժանի աւագօրէն սպաս» (Փաւս. 114)։ Եւ իւր անուանի գթասիրութեամբ՝ «տաճար իւր եւ սեղան զօր հանապազ աղքատաց եւ օտարաց էր եւ հիւրոց» (նոյն, 77)։

4. — Ժամ կոչնոց։ — Ա. Եթէ պարզ քաղաքացւոյն կամ շինականին կարեւոր կերակրոյն յարմարագոյն ժամն երեկոյեանն էր (տես, 110–1), նոյնը բացարձակօրէն չենք կարող ըսել ազնուականին համար, որ միւսին պէս հարկադրուած չէր ցերեկըն ի բուն աշխատելու։ Ուստի իրեն համար անխտիր եւ դիւրաւ «յօրինին ճաշք եւ ընթրիք» միանգամայն, ինչպէս իրաւամբ կ'ըսէ Մանդակունին (72)։ Զայս երբեմն պարագայն ալ կը պահանջէր։ Զոր օրինակ՝ Ս. Ներսեսի խնճոյքը ցերեկին էր, զի հիւրն այդ պահուն եկած էր։ Եւ Խաչենոյ իշխանին տուածն էր «ճաշ մեծ», զի պատահեցաւ յետ Գանձասարայ եկե֊

ղեցւոյն ցերեկեայ օրհնութեան (Կիր. 147)։

Սակայն ազնուականք ալ խնճոյից համար սովորաբար կը նախադասէին երեկոյն, որոյ ետեւ կային երկար եւ անզբաղ ժամեր վայելից, սկսելով՝ ինչպէս Պապայ մէկ կոչնոց համար ըսինք՝ «յինն ժամ աւուրն» (աստ, 110)։ Եւ արդարեւ պատմական երախանաց մեծագոյն մասն այդ պահուն կը յիշուին, եւ ընթրիք կը կոչուին. ինչպէս Տրդատայ (Ագթ. 46) եւ Արշակայ կերածը (Փաւս. 207), Պապայ երկու (նոյն, 204, '16), Վարազդատայ (նոյն, 236), Բակուրի (Խոր. 141), եւ առ հասարակ բոլոր նախարարաց խընճոյքները (Փրպ. 27)։ Նոյնպէս էին Պարսից Շապուհ արքային տուածն առ Արշակ (Փաւս. 168), Նիխորայ առ Վահան (Փրպ. 517), Յունաց Տերենտ զօրավարին առ Պապ (Փաւս. 232), եւ ընդհանրապէս բոլոր միւս ազգացը (աստ, 111)։ Արքայութեան վայելքն անգամ այս պահուս աւելի յարգի կը համարէին Հայք, եւ Վարդանանց առաջնորդներն «յորդորէին զամենեսեան յերկնաւոր ընթրիսն» (Փրպ. 208), փոխանակ աւետարանական «ճաշին» (Ղկ. ԺԴ, 15)։ Թէեւ ասոր մէջ կարելի է առակին «ընթրեաց» խորհուրդն ալ նշմարել (անդ, 16–24)։

Բ. Հետաքրքրական էր նաեւ տեւողութիւնը։ Ս. Սահակայ կանոնաց սա բացատրութիւնը՝ թէ «զկես գիշերին թերեւս արբեցութեան պարապիցէք» (123), շատ պերճախօս է եւ անկարօտ մեկնութեան։ Վասակայ խրախունքը կը տեւեն նոյնպէս «մաշելով զերկայնութիւն գիշերացն» (Եղիշ. 52), ուր «մաշելը» ցոյց կու տայ մեծ մասին սպառումը սեղանին շուրջ, ինչպէս կը լինէր Հռովմայեցւոց մէջ ալ (Դար. Ա, 1277)։ Ուրեմն շատ բնական էր՝ որ կոչնականք հարկադրէին ելնել երբեմն տաճարէն՝ «ի ճեմիշն երթալոյ պատճառաւ» (Փաւս. 237)։ Բայց մեր նկարագրին համար դեռ կանուխ է այս պարագային։

5. – Հրաւէր։ — Ամէն ազնուական «առդուրս» իւր տան պատրաստ ունէր միշտ «Նուիրակ» կոչուած պաշտօնեայ մը, սովորաբար զինուոր, որոյ գործն էր՛ վազել ուր որ տէրն հրամայէր (Եղիշ. 174. Փրպ. 518, '20)։ Ասոր պաշտօնն էր նաեւ հացկերութի առթիւ երթալ «կոչել» զանոնք՝ զորս կոչնատէրը պատուել կ'ուզէր, ինչպէս կը պատմէ Եղիշէ տիկնանց մասին (174)։ Գայլ Վահան եւս ճաշի կոչելու համար զՄիհրան պարսիկ մարզպանը, հրամայեց «ծառայից իւրոց՝» որ

երթան հրաւիրեն զայն (Մամ. 24)։ Հրէից քով նոյնպէս «ծառայք» էին հրաւէր տանողները (Առկ. Թ, 3. Մտթ. ԻԲ, 3)։

6. — Խափանումն կոչնոց։ — Պարագայ մ'է որ կրնար երբեմն պատահիլ։ Երբ խնճոյքը կը տրուէր ի պատիւ բարձրաստիճան անձի մը, եւ սա կ'արգիլուէր գալու, թէեւ ուրիշ հրաւիրեալք ալ լինէին, կը խափանուէր ճաշը։ Ասով կ'երեւի թէ մեծարուած կը լինէր աւագ կոչնականին անձը, որպէս թէ առանց իրեն ուրախութիւն չկար։ Գայլ Վահանայ յիշեալ կոչնոց չկրցաւ գալ Միհրան՝ «խօթութեան» պատճառաւ։ Վահան, որ այդ առթիւ պիտի դառնէր Պարսից, ծպտեալ ու «դանապան եղեալ, եւ զիշխանսն (Պարսից) որ գային՝ դարձուցանէր ասելով. Հայոց մարզպանն չկարաց գալ ի ճաշն»։ Այս էր ուրեմն խափանման պարզ ձեւը։ Իսկ անոնք կը մեկնին անվրդով. եւ ի զուր եկած չլինելու համար, հոն մօտերը «ժողովեալ ի տաճար մի՝ ընդ գինի մտին», կ'ըսէ պատմիչը (Մամ. 24)։

7. — Ցաձարին մէջ։ — Հրաւիրեալք դեռ չհասած՝ կանխենք ակնարկ մը ձգել ճաշարանի հանդերձանաց վրայ՝ որոնք կը զանազանին սովորականէն. զի հոս կը պահանջուէր «մեծ պատրաստութիւն առ-

նել», ինչպէս իրաւացի կերպով կը դիտէ Փաւստոս ճաշի մ'առթիւ (236)։

Ա. Սեղաններր դրուած են արդէն հը֊րաւիրեալց չափով, ու ծածկուած ընտիր սփռոցներով (անդ, 51)։ Եւ անոնց շուրջ բազմականք, կամ ազնուական տանարաց մէջ բարձրագահք, գահոյք կամ գահք (անդ, 52–4, 105), որ Ռուբինեանց օրով կը փոխուին «ականակապ բազմականաց» (Լմր. Պտր. 459) կամ թիկնաթոռոց՝ ըստ հին պատկերաց (Սխ. 481) եւ համեմատ ժա֊մանակի եւրոպական սովորութեան, դեռ նոր բերուած ու շարուած են հրաւիրե֊լոց թուով, ինչպէս յայտնի է «արկանել բազմականս» (Փաւս. 207, 168. Ագթ. 53) կամ «կարգել բազմականս» (Փաւս. 67) բացատրութենէն։ Եւ կը փայլին ի֊րենց շքեղութեամբ, ոսկեշող երանգով, շող֊շողուն քարերով, եւ իրենց վրայ ձգուած գունազեղ տա պատուակոք ու բարձերով (անդ, 55–6)։ Սպասներն՝ ոսկեղէն կամ արծա֊թեղէն՝ զորս թուեցինք (անդ, 57–67), հաւանօրէն պատրաստ են արդէն մասամբ՝ մեկուսի դրուած յատուկ սեղանոց վրայ (անդ, 51), ինչպէս են տարգալները, պա֊տառաքաղները, դանակները, պնակներն ու սկտեղները. եւ մասամբ ներս պիտի բերուին իրենց կարգին։

Բ. Կերակրոյ սեղանոց վրայ կը հանգչէին նաեւ զանազան «ծաղկակալ սկտեղք» (Խոր. 142), որոնք գլխաւոր զարդը կը կազմէին՝ թէ Յունաց (Բրս. Արբ.) եւ թէ Հայոց մէջ. պարագայ մը՝ զոր կը հաստատէ Ագաթանգեղոս եւս, այլաբանօրէն ըսելով մարդկային մտաց համար՝ թէ «ծաղիկք լինին՝ զի ի սկտեղս պատուականս թագաւորին ելանիցեն» (485)։ Հայ տիկնայք ունէին յատուկ «բուրաստանք ծաղկոցաց» (Եղիշ. 174), զորս կը խնամէին մեծ հոգածութեամբ, հարկաւ անոցմէ հայթհայթելով սեղանի փնջերն ալ։ Մեր պատմահօր եւս ծանօթ էր «ծաղկոցաց եւ հոտաբանաց կազմութիւն» մ'Երուանդակերտի տներուն շուրջ (Խոր. 119)։ Եւ Աշոտ արքայ առանձին սէր մ'ունէր «ի բուրաստանս» (Յհ. կթղ. 176)։ Արդ՝ եթէ ուշադրութեամբ նայինք սեղանի սկտեղաց, անոնց մէջ տարւոյն եղանակին համեմատ պիտի կարենանք որոշել իրենց գունով ու բուրով՝ մեր նախնեաց ծանօթ ծաղկները. «վարդն եւ շուշանն եւ ասպազան եւ յասմիկն, անխարն եւ սմնակն, ներգիսն եւ շամպղիտակն եւ մեղրուկն, հօրոտն եւ մուրոտն եւ մանիշակն, եւ այլն ամենայն համասպրամն ծաղկանցն» (Ագթ. 480)։ Այսոցմէ ոմանք ծանօթ են նաեւ Մխ. Գոշի

(Առկ. 30, 34, 36), որոյ դարուն ճոխ տներու մէջ աւելի գործածական էին մըրտի եւ վարդ (անդ, 28)։

Գ. Գրիգոր վրդ. ուրիշ կարեւոր մանրամասնութիւն մ'ալ կու տայ մեզ՝ որ այլուստ անծանօթ է։ Նկարագրելով մեռնող մեծատան անցած խրախճանքը՝ կը ձայնարկէ. «Ո՞ւր ծխանելիքն անուշահոտք. ո՞ւր են խունկն եւ ո՞ւր են ծխանելիքն» (Ողբ)։ Ուրեմն այդ անուշահոտութիւնք կ'այրէին խնկանոցաց վրայ, եւ տաճարին օդը կ'ողողէին հեշտութեամբ. ինչպէս Դ դարուն կապադովկացիք ալ կը գործածէին ճաշարանի մէջ «բուրուառս» (Նիւս. Հյր. ԺԲ) կամ «խունկս» (Բրս. Արբ.)։

Դ. Եւ որովհետեւ երեկոյ է եւ խաւարը վերահաս, պէտք էր նաեւ լուսաւորել ճաշատեղին։ Առ այս անտարակոյս պիտի գտնենք հոն «ձրագ մի», որ սովորական էր «ի մեծի տան (հարկաւ հայ ազնուականին՝) ի մէջ ձեղուան եւ յատակին լուցեալ», եւ զոր Եզնիկ կը համեմատէ արեգական հետ (14,158), աղով հասկացընելով մեզ՝ թէ այդ «ճրագ» կոչածը պայծառ ջահ մ'էր, որով միայն պիտի կարենար «լուսատու լինել տան ի գիշերի» (158)։ Եւ այդքան պայծառ լինելու համար՝ անշուշտ ստեղնաւոր էր, որոյ նը-

մանութեամբ կարծես Խորենացին զառաւօտը կը նկարագրէ «բազմաստեղն լուսով» (309)։ Այսպիսի ջահեր աւելի ծանօթ են միջին դարուն։ Բայց Դ դարէն իսկ Լուսաւորիչ Հռիփսիմեանց վկայարանները կը զարդարէ «ոսկի եւ արծաթ կանթեղամբք լուցելովք եւ շապտերօք վառելովք եւ աշտանակօք բորբոքելովք» (570)։ Լաւ, մեք մոռնալու չենք՝ որ Հայրապետը զանոնք Կեսարիոյ եկեղեցիներէն չբերաւ, ուր տակաւին ձեռնադրուելու չէր գնացած, այլ փոխ առաւ Հայոց աշխարհիկ կեանքէն իսկ, ազնուականաց տաճարներէն փոխադրելով տէրունական տաճարին մէջ։ Այսպէս ըրած էին ուրիշ եկեղեցիներ եւս. Նիւսացւոյն հայրենակիցք իրենց ճաշասրահին մէջ կը վառէին «աշտանակս» (Նիւս. Հյր. ԺԲ)։ Եւ դեռ Ը դարուն Վահան Կամսարական իւր ճգնարան աշտարակը կը պայծառացնէր լուսով «շապտերաց եւ կանթեղաց ի գիշերի» (Արշ. ԼԴ)։

Հետաքրքրական է Անւոյ պեղումներէն ելած կիսաբեկ կանթեղ մը, յատուկ տներու լուսաւորութեան, եւ որոյ պատկերը հրատարակեց Մառ։ Կաւեղէն է, գլանաձեւ ու լայնշի։ Կողին վրայ ունի ձուաձեւ ծակեր, զորս կը կիսեն վերէն վար ձգուած կանթեր, անշուշտ լարերու համար։ Վերին

երեսին վրայ կան չորս տաշտաձեւ պատուանդանաւոր ճրագներ, որոցմէ ստորոտն ալ շարուած կան շուրջանակի եւ իրարու կից (Տրք. Գ, 79)։ Այս կաւեղէն ու պարզ սպասը սակայն ռամիկ տներու սեպհական կը թուի։

Իսկ մեր այդ ճրագաց իւրաքանչիւրին մէջ կը վառի «պատրոյգ» մը, դրուած «իւղի» կամ «ձիթոյ» մէջ (Եղիշ. 195. Նար. 247), զոր կը մզէին կտաւատէ, կնճթէ կամ ընկուզէ (Գոշ՝ Առկ. 44, 50)։

8. — Սպասաւորք։ — Այս պահուս ժիր գործունէութիւն մը կ'երեւի տան մէջ։ Բոլոր պաշտօնեայք, որոց թիւն անշուշտ կախումն ունէր ճաշարանի կարեւորութենէն եւ հրաւիրելոց բազմութենէն, հետամուտ են իւրաքանչիւր ծառայութեան։ Սեղանապարդարք[1] կամ սեղանայօրէնք[2] իրենք իսկ կը պատրաստեն ու կը զարդարեն տաճարը։ — Հացեփեացք[3], կամ ազնուականաց քով յատուկ «հացարարք որոշեալ ի պէտս սպասու ըստ ազատաց կարգի[4]», արդէն հանած են թոնրէն իրենց քաղցրաբոյր հացերը (տես, 34), եւ ամփոփած սակառներու եւ կամ զամբիղնե-

1. Ոսկ. Թղթ. Ա, 532, 816։ — 2. Ոսկ. Մտթ. Բ, 69։ — 3. Ա Թագ. Ը, 13։ — 4. Եղիշ. 173. Տար. Վերլծ։ Հռովմայեցի ազնուականք ալ ունէին սեպհական հացարարներ, խոհակերներ ու ծաղարարներ (Դար. Ա, 1277)։

րու մէջ (43)։ — Խոհակերք[1] կամ խորտակարարք[2], որոնք Ս. Գրոց մէջ համանշաբար կը թարգմանեն մի եւ նոյն յն. բառը, եւ կը կոչուին նաեւ խահամոքք կամ ամոքարարք[3], պաշտօն ունենալով «զհամադամս խորտկացն պատրաստել»[4], ինչպէս եւ ամձաքերք[5], ծաղարարք[6], գուցէ եւ պղակուճոտրագործք[7], որոնք իրենց շինած ուտեստներէն նաեւ իրենց կոչումը կ'առնուն, զբաղած են խոհանոցին մէջ՝ կրակարանին ու թոնդրուքին (32, 34) վրայ զետեղուած կաթսայից, սաներու, պոյտերու, կճիճներու (37–40), կասկարայից (36), տապակաց ու շամփրներու շուրջ (41), որոնք ծածկուած են հեշտաբոյր ճենճերով ու գոլորշով. եւ ըստ պիտոյից՝ ունելիք, ակիշ, շերեփ կամ մսահան ի ձեռին (35–6, 40), կը գործեն անդադար։ Մէկ կողմ մաղը կը շարժի տաշտին վրայ (41, 45). միւս կողմ սանդը կը դընդէ իւր տոռին հարուածոց ներքեւ (42)։ — Ճտեմարանապետք[8] կամ ճտեմարանապա-

1. Ա. Թագ. Թ, 23. Ոսկ. Մտթ. Բ, 69. Թղթ. Ա, 532, 601, 816։ — 2. Յճխ. 40. Ա. Թագ. Ը, 13։ — 3. Փիլ. Ճոք. 15, 20։ — 4. Տար. Վերլծ։ — 5. Ոսկ. Մտթ. Բ, 69. Թղթ. Ա, 532։ — 6. Ոսկ. Մտթ. Բ, 69. Թղթ. Ա, 601, ուր յն. բնագիրը չունի։ — 7. Ոսկ. Մտթ. Բ, 69. առաջին արմատով ու կազմութեամբ նոյն է յունարենի հետ։ — 8. Հյպտ. 147. գնգնք. ի Հյկզ։

*հրն*[1] *անոնց կը հայթհայթէ ինչ որ կարեւոր է։ Ինչ ինչ նիւթեր ալ հարկաւ հասարակաց վաճառանոցներէ կը բերուին* (114–5) *սակառով, քրձով կամ մորթաղով* (43–5)։ — *«Կէսք զգինեբրուացն կազմեն խառնարանս»*[2] *մառանին մէջ, գինին մեծ եւ կամ* փոքր կարասներէն* (24–5) *փոխադրելով թակոյկներու* (79) *կամ գուցէ եւ առասատակաց մէջ* (81), *եւ պատրաստելով ըմպանակներն հրաւիրելոց չափով։ Արշակունի արքունեաց մէջ ասոնց ի պաշտօնէ գլուխ էր Գնունեաց տէրը, որ տակառապետ կը կոչուէր, եւ «պատրաստէր զըմպելիսն արքայի յընտիր եւ համեղ գինեաց»*[3]*։ Միջին դարուն այս պաշտօնեայն գինեպետ ալ կոչուած է*[4]*։*

*Սպասաւորաց ուրիշ մաս մ'ալ զարդարուած կոկուած*[5]*, կը սպասեն ծառայելու սեղանին վրայ՝ երբ հացկերոյթը սկսի. կամ ինչպէս Տարօնացին կ'ըսէ, «միայն բաւականանան զնոցուն պատ-*

1. Խոսր. ի Հյկզ։ — 2. Տար. Վերլծ։ — 3. Խոր. 76, 93։ «Տակառապետ՝» շինուած է պրս. տագառ (թակոյկ) արմատէն, կամ ուղղակի տագառպատ բարդէ մը (Հիւբշ. 251). եւ ի Ծննդ. Խ, 1–23, Պօմ. Ազ. 177, եւն գործածուած է փոխան յն. «մատռուակապետի»։ — 4. Գոշ՝ Առկ. 9. Լծ. Պհ. գ։ — 5. Ասոնց պաշտօնակիցք շատ շքեղ կը նկարագրուին Փիլոնէ (Ձոք. 19–20). եւ ի Բիւզանդիոն էին նոյնպէս «զարդարեալք յազգի ազգի հանդերձս» (Ոսկ. Թղթ. Ա, 530)։

*րաստեալսն մատուցանել յերախանս բագմելոցն» (Վերլծ.)։ Արքունի տաճարին մէջ՝ յետ Նախարարաց կարգին կը յիշատակէ Փաւստոս «զոտնկայս գործակալութեանն սպասու» (67), որոնք կը թուին՝ ոչ հասարակ սպասաւորներ, այլ պատուաւոր պաշտօնեայք։ Եւ արդարեւ Դրաստամատ, որ Արշակայ արքունեաց առաջին ու բարձըր պաշտօնատարն էր, Անյուշ բերդին մէջ իւր արքային կերակրոյ պահուն «կայր յոտն» եւ կը ծառայէր անոր (Փաւս. 208). եւ չեմ կարծեր՝ թէ առ ի չգոյէ ուրիշ սպասաւորի կ՚ընէր զայս. զի հոն ներկայ էին ուրիշ մարդիկ ալ, եւ նոյն իսկ սպասաւորներ, որոնք «եղին առաջի նորա միրգ» եւ այլն։*

*Այդ ոտնկայ պաշտօնէից մէջ կարեւորագոյնն են «մատռուակք», որոց դիրքն ուրիշներէ բարձր էր։ Ագաթանգեղոսի քով՝ Ցիսուս «թագաւորի ... մատռուակք արբուցիչք», որ են առաքեալք (376), անտարակոյս. Հայոց արքային համանուն պաշտօնէից հետ համեմատուած են։ Անոնց այս գերակշռութիւնը միայն մեր մէջ չէր. Պարսից Խոսրով թագաւորը մեր Սըմբատ մարզպանի որդին մեծարելու համար՝ «կարգէր ի մատռուակութեան՝ պաշտել զգինի անձին արքայի» (Սեբ. 106)։ Եւ հա-*

ւանօրէն Գնունի տակառապետին եւ գործակցաց պաշտօնը մինչեւ սեղանն ալ կը հանէր. զի միջին դարուն մատռուակներն իսկ կը լեցնեն ու կը պատրաստեն գինւոյ թակոյկները (Նար. 342). եւ փարաւոնի եւ Աղեքսանդրի տակառապետները միանգամայն մատռուակ են (Ծննդ. Խ, 11. Պտմ. Աղ. 172-2)։ — Պաշտօնեայ՝ Մնացորդաց առաջին թարգմանչէն կը կոչուի նաեւ ջերաճապարիշտ (Բ, Թ, 4), այս ինքն ջերանի ծառայող, ուր երկրորդ թարգմանութիւնը մատռուակ կ'ըսէ ուրիշ մատենագրաց հետ (Պտմ. Աղ. 100, եւն)։

Մեր աշխարհի անշքագոյն շրջանին անգամ, ինչպէս էր Տաթեւացւոյն դարը, տակաւին «բազում աշխատողք գոն կերակրոցն եւ ըմպելեացն, յայնմ օրէ՝ որք սերմանեն եւ հնձեն եւ եփեն եւ պատրաստեն ի սեղանն» (Քրզ. ամր. 348). եւ անոնց մէջ յանուանէ կը յիշուի դեռ հին «մատռուակն յոտն կացեալ» (անդ, 349)։ Գրիգոր վարդապետին ալ՝ որ միջնադարեան գրիչ մ'է, ծանօթ են տակաւին «յոտնկացութիւն ծառայից եւ սպասաւորութիւն սպասաւորաց՝» մեծատանց ճաշարանաց մէջ (Ոգբ)։

Եթէ խնճոյից սպասաւորք այլեր են՝ գործոյն ծանրութեան եւ կոչնականաց սե-

ուին համեմատ, ընդ հակառակն ընտանեկան առանձին ճաշերուն կանայք կը կատարեն նոյն գործը։ Ողիմպի՝ Արշակայ կինը, կ'ըսէ Փաւստոս, «զհիւրոց նաժշտացն կերակուրս արարեալ եւ կամ զնոցին պարզեալ զինի ճաշակէր» (123)․ «զհիւրոց՝» զգուշանալու համար թունաւորուելէ իւր ոսոխին կողմանէ․ եւ «նաժշտացն՝» ըստ որում անոնց գործն էր այդ, ոչ թէ ծառայից։ Արդարեւ ԺԲ դարուն ալ դեռ «յաղախնաց» կը պատրաստուէին կերակուրք՝ տան «տիկնոջ» հսկողութեամբ (Ալաւ. Գ)։ — Բայց ծառայութեանց մէջ կան այնպիսիք՝ որ հին ժամանակներէն ընդհանրապէս կանանց յատուկ կը թուին։ Աշտարակեցւոյն մէկ կանոնը կը պատուիրէ, «մի՛ ամենեւին՝ որպէս լուաք՝ հացարար և կովկիթ և խնոցհար ի վանս տանել կին մարդ» (ԼԴ)։ Եթէ «հացարար» կանայք մինչեւ մենաստանները կը մտնէին, կը հետեւի՝ որ իրենց սովորական էր այդ գործըն աշխարհիկ դասուն մէջ ալ։

9․ —Կոչնականք։ — Հետզհետէ կը հաւաքուին հրաւիրեալք[1] կամ կոչեցեալք[2], որոնք երբ նստին՝ պիտի լինին կոչնականք[3] կամ

1. Մտթ. իբ, 4. Ղկ. ժդ, 17։ — 2. Դաւ. 165–7։ — 3. Թագ. Ա, թ, 13. Գ, ա, 49. Ոսկ. Մտթ. Ա, 460,'61. Թղթ. Ա, 530, '34, 664

*սեղանորդք[1] կամ բազմականք[2], եւ համաքարար՝ բազմական[3] կամ ակումբ բազմականի[4]. իսկ իրարու նկատմամբ պիտի լինին տաճարակիցք[5], բազմականակիցք[6] կամ բազմակիցք[7], բարձակիցք[8], սեղանակիցք[9], հացակիցք կամ հացկիցք[10], ուրախակիցք[11], եւ յն. կազմութեամբ նաեւ զոյգըմպակիցք[12]։ Այս կոչումները կը ծագին ճաշարանի եւ ասոր կահուց ու խնճոյից ծանօթ անուններէն։*

*Հրաւիրելոց թիւն որոշ չէ. բայց թէ թիւն եւ թէ որակն համեմատական է միշտ կոչողի աստիճանին ու կարողութեան։ Արշակայ տաճարն իւր արքայավայել ընդարձակութեամբ կը հիւրընկալէր ամբողջ նախարարութիւնը, «ինն հարիւր» հոգի՝ ըստ Փաւստոսի* (67)*. կամ «չորեքարիւր» ըստ Մեսրոբայ* (38–9)*, որ միշտ պատկառելի թիւ մ՚է։ Պապայ ընթրեաց կը մասնակցէին նոյնպէս «ամենայն մեծամեծ նախարարքն Հայոց»* (*Փաւս.* 217)։

1. Ոսկ. Մտթ. Բ, 71։ — 2. Ագթ. 375. Մանդ. 59, 135. Ոսկ. Մտթ. Բ, 685, ’89, ’90, ’92. Թղթ. Ա, 532. Գ Թագ. ա, 41, եւն։ — 3. Փաւս. 48, 171։ — 4. Եղիշ. 133։ — 5. Փաւս. 48. Գ Մակ. ե, 13։ — 6. Փաւս. 48. — 7. Ոսկ. Թղթ. Ա, 531։ — 8. Խոր. 142. Մտթ. ԺԴ, 9. Ղկ. ԺԴ, 10։ — 9. Ոսկ. Մտթ. Ա, 459, 696. Թղթ. Ա, 531. Վեցօր. 85։ — 10. Սիրաք, Թ, 22. Պտմ. Աղ. 156, ’72։ — 11. Փաւս. 48։ — 12. Բրս. Արբ։

Եւ Վարազդատ իւր ճաշին կը կոչէ «զա֊մենայն աւագս պատուականս եւ զմեծա֊մեծս» (նոյն, 236)։ Այս օրինակաց մէջ կարեւոր պարագայ մը կայ. արքային ճա֊շին ներկայ են լոկ ազնուականք, եւ ա֊նոցմէ եւս «նահապետք մեծամեծք եւ տա֊նուտէարք» միայն (նոյն, 67). այնպէս որ բացակայ են անկից անոնց զաւակները, որ «սեպուհք» կը կոչուէին։ — Դասա֊կարգի նոյն խտրականութիւնը զգալի է իշխանական կոչնոց մէջ ալ. տիկնանց տա֊ճարները կը մտնեն լոկ «պատուականք յարանց» (Եղիշ. 174), եւ ոչ թէ խառ֊նիխուռն ամէն դասակարգէ միասին։

Թէ արդեօք Թագաւորը մեր իշխանաց խնճոյից կ'երթա՞ր, բաւական վկայութիւն չեմ գտած։ Հին աւանդութենէ յիշուած է արդարեւ՝ «ճաշ գործել Արգաւանայ ի պա֊տիւ Արտաշիսի», եւ արքային երթալը (Խոր. 58, 129)։ Բայց այս դէպքը վի֊պական է. եւ տիրող սովորութեան մ'ա֊ւելի ապահով գրաւականը պիտի լինէր, եթէ ունենայինք գոնէ պատմական ուրիշ օրինակ մ'ալ։ Ընդ հակառակն օտար իշ֊խանաց հրաւիրման երթալն յայտնի է. զոր օրինակ՝ Տիրան ընթրիք տուաւ եւ փոխարէնն ընդունեցաւ Ատրպատականի Վարազ Շապուհ մարզպանէն. եւ Պապ

գնաց Յունաց Տերենտ զօրավարին կոչնոց (Փաւս. 51-2, 232)· թէեւ ադոնք երկու մեծ տէրութեանց ներկայացուցիչներ էին, եւ ոչ հասարակ եւ կամ հպատակ իշխաններ։

Եկեղեցականք ալ անպակաս են աւագաց հացկերոյթներէն։ Պապ «արար ընթրիս» յատկապէս Ներսեսի, — դաւաճան ընթրիքը, — որուն ի պատիւ՝ մասնակից էր եւ Նախարարութիւնը (Փաւս. 217)։ Եթէ Մեսրոպայ տեղեկութիւնը պատմական է՝ եւ ոչ ենթադրական, Արշակայ խնճոյից մէջ կը մտնէին միշտ նաեւ «եկեղեցականք՝ դասս ինն» (39)։ Բայց հայրապետին յաճախակի ներկայութիւնն արքունի սեղանին՝ զգալի է ուրիշ պարագայէ մ՚ալ, զոր պիտի տեսնենք քիչ վերջ։ Հաւանօրէն այս սովորութեան վրայ հիմնած է Մխ. Գոշ իւր մէկ կանոնը՝ թէ «ի սեղան թագաւորի բայց ի հայրապետէ մի՛ ոք կերիցէ, եւ յորժամ նա կամեսցի» (Դատ. 305)· այս ինքն՝ հայրապետն յիրաւանց կը մասնակցի, եւ ուրիշներ՝ արքային թոյլտուութեամբ միայն։ Խաչենոյ իշխանին ճաշին կային աւագ եկեղեցականաց հետ «եօթն հարիւր» երիցունք (Կիր. 147), թէեւ պարագային՝ եկեղեցւոյ նաւակատեաց՝ պահանջն էր այդ։

Իսկ ընդհանրապէս հայ քահանայն շատ հաւատարմութեամբ ի գլուխ կը բազմի իւր հօտի սեղաններուն՝ անոր ամէն ուրախութեանց առթիւ (Օձն. 11)։ Միանգամայն պատուէր ունէր՝ ճաշին ամբողջ տեւողութեան չսպասել։ Շնորհալին կը հրամայէր՝ հարսանեաց մէջ «մինչ յերիս միայն արբումն բաժակի յառնել վաղվաղակի ի սեղանոյ անտի» (Ընդհ. 42). եւ զոր կը կրկնէ Մովսէս Եզնկացին ալ. «Քահանայք ի հացկերոյթս գինեբբուաց մի՛ յամեսցեն. եթէ ի հարսանիս, եթէ ի կնունքն, եւ թէ յայլ ինչ խրախութեան մըձլիս» (արբ. մեճլիս՝ ժողով, կոչունք). այլ «ուտէ ի սեղանոյն եւ ելցէ» (Խրատ)։ Թէ որքան կը պահէին այս հրամանը՝ պիտի տեսնենք յետոյ։

Շատ դիտելի պարագայ մ'է կանանց բացակայութիւնը բոլոր պատմական հացկերոյթներէն։ Անոնք թէեւ խնճոյք կու տան այր մարդոց (սստ, 123), բայց իրենք չեն երթար անոնց ճաշերուն. չեմ ըսեր առանձինն, այլ եւ ոչ իրենց արանց հետ։ Անոր համար Եղիշէի տիկնայց սեղաններուն շուրջ կը տեսնուին «պատուականք յարանց» միայն, եւ կանայք ոչ (174)։ Կանացի ազատութիւնը մինչեւ հոդ չի հասնիր։ Թերեւս անպատեհ կը համարուէր

հայ ամօթխած սեռին ներկայութիւնը տըգեղ տեսարանաց՝ որոց հանդիսատես պիտի լինինք հոս։ Սակայն կը մասնակցին իրենց ամուսնաց տուած խնճոյից. այսպէս՝ Բակուրի կոչնոց ներկայ էր իւր հարճը Նազենիկ (Խոր. 141). եւ Վասգենի ընթրեաց մէջ կը բազմի տիկինն Շուշանիկ (Սոփ. Թ, 26–27)։ Ընդ հակառակն հռովմայեցի կանայք համարձակ կը սեղանակցին արանց (Դար. Ա, 1272, '78). իսկ հելլենուհիք ոչ բնաւ (անդ, 1273)։ Բիւզանդացի տիկնայք չեն յիշուիր սեղանի վրայ (Ոսկ. Թղթ. Ա, 529–31, '34), մինչդեռ կեսարացի արք, կանայք եւ աղջըկունք անգամ խառն կը նստին (Բրս. Պհ.), եւ որոց հետեւող կը թուին անտիոքուհիք ալ (Ոսկ. Մտթ. Բ, 15–6)։ Հաւանական է՝ թէ մեր տիկնայք իսկ կը հրաւիրէին զիրար, ինչպէս հին Պարսից մէջ, ուր Աստինէ «արար կոչունս կանանց» առանձին (Եսթ. Ա, 9), եւ որոյ օրինակը մեր քով ալ պիտի տեսնենք յետոյ հոգեհանգստեան առթիւ։

Այդ պարագայն է ըստ իս՝ որ ծնունդ տուած է հուչակաւոր վիպերգութեան, թէ «Տենչայ Սաթինիկ տիկին տենչանս՝ զարտախուր խաւարտ եւ զտից խաւարծի ի բարձիցն Արգաւանայ» (Խոր. 58), եւ որ

պատճառ եղաւ քրտնաթոր, մերթ անհաճ եւ կամ արդի մտածութեանց վրայ հիմնուած մեկնութեանց ու քմածին սրբագրութեանց։ Բայց հնախօսութեամբ կարելի է աւելի բնականօրէն մեկնել զայն։ Այդ տենչալեաց մէջ շատ յայտնի են, նոյն ինքն հին մատենագրութեան զանազան օրինակներէն ալ (տես Հյկզ.), խաչարտ ու խաչարծի արմատակիցները, որոց առաջինն է ուտելի փափուկ բոյս, եւ երկրորդը տընկոց կակուղ մասն. իսկ յարակից արտախուր եւ տից, ուղիղք կամ ուղղելիք, անծանօթ բացայայտիչներ են յայտնապէս։ Արդ՝ Սաթինիկ կը տենչար ուտել զադոնք, որ ժամանակի յարգի տունկերը կը թուին, նստած իւր սիրական Արգաւանայ սեղանին շուրջ դրուած «բարձից» վրայ, զորս մեք շատ լաւ կը ճանաչենք արդէն (աստ, 55)։ ուր բարձն հոմանիշ է սեղանի, ինչպէս էր բազմականն ալ (աստ, 121), եւ խաչարտն ու խաչարծին՝ ամբողջ կերակրոց։ Միով բանիւ՝ Սաթինիկ կ'ուզէր մասնակցիլ սիրելւոյն փառաւոր խընճոյից, որ ուրիշ կերպ չէր կարելի՝ բայց եթէ դառնալով անոր կինը։ Հետեւաբար ճաշով այս վերջնոյս կը բաղձար, կամ բաղձալ կու տայ վիպասանը։

Եթէ հայ աւագանին եւ յաճախ եկե-

ղեցականութիւնն ալ կ'ախորժին բարձր դասու որեարէն շրջապատուած տեսնել իրենց սեղանները, անոնց հակառակ՝ կային եւ քրիստոնէական գթասիրութեան ժառանգորդ վսեմ հոգիներ, որոնք նախամեծար կը համարէին մարդկութեան տառապեալ մասն հաւաքել իրենց շուրջ, կերակրել ու սփոփել զանոնք։ Այսպէս էր ճշմարտապէս մեծն Ներսէս, որոյ համար կ'ըսէ պատմիչը՝ թէ «կաղք եւ կոյրք եւ մարմնահարք, խուլք եւ հաշմեալք եւ ցանկանեալք եւ կարօտեալք՝ ընդ նմա եւ ի նորա ակմբի դարմանէին բազմեալք». եւ «գիւր տաճարն առանց նոցա ոչ առնէր» (Փաւս. 77)։ Որքան աւելի վեհ էր սոյն այս օրինակս յանձին թագապսակ գլխոյ մը, ինչպէս էր Աշոտ Ողորմած, որ «զգոնջացեալսն եւ զկաղսն եւ զկոյրսն հաւաքէր առ ինքն, կ'ըսէ պատմիչը, բարձակից ինքեան ունելով ի խրախճանութիւնս» (Ասող. 180)։

Կային մարդիկ ալ՝ որոց սեղանակցութենէն կը խորշէին բարեպաշտ Հայերը։ Այսպէս էին նախ՝ ուրացողք։ Վարդանանք երբ առ երեսս տկարացած հաւատոց մէջ՝ դարձան Պարսկաստանէն, «ոչ ոք, կ'ըսէ պատմիչը, հաւանէր ընդ նոսա կամակից լինել սեղանոյ, ոչ կին, ոչ որդի, ոչ

ազատ, ոչ ծառայ ոք եւ ոչ սպասաւորք» (Փրպ. 161)։ Նմանապէս Մամիկ. Վահանայ ժամանակակից ուրացողայ հետ «կրսեր շինականք մարդիկ աշխարհին Հայոց հաց գարշէին ուտել ընդ նոսա... զի մի պղծիցին զուցէ ըստ հրամանի օրինաց մերոց» (Նոյն, 532). ըստ որում առաքելական պատուէր էր՝ զերծ քրիստոնէից հետ «եւ հաց մի՛ ուտել» (Ա Կոր. Ե, 11)։ Հաւանօրէն Հայոց այս զգացումն յարգելու համար էր՝ որ Նիխորոյ առ Վահան տուած կոչնոց պահուն՝ «զուխտանենզսն ի Հայոց եւ զուրացողսն հանին արտաքոյ ընթրեացն ամօթալիցս» (Փրպ. 517)։ Մանդակունին. նոյնը սաստկապէս կը պահանջէր՝ Պաւղոսի հրամանին ամբողջ սահմանին մէջ, միանգամայն զգացնելով՝ թէ իւր ուզած չափով չէր յարգուեր նոյն օրէնքը։ «Անխտիր, կ՚ըսէ, ընդ թշնամիս (Աստուծոյ), ընդ շունս եւ ընդ գողս եւ ընդ պոռնիկս եւ ընդ ագահս եւ ընդ յափշտակողս ուտեմք» (151)։ Եւ ուրիշ տեղ մը կը յարէ՝ թէ «անճոռնիք եւ ապականիչ են կերակուրք ամենայն անօրինաց եւ ապըստամբողաց յԱստուծոյ» (154)։ Վաղարշապատու ժողովին կանոնք ունին նաեւ հետեւեալը. «Որք երթան ի տունս ճերաճուաց, ուտեն եւ ըմպեն անխտիր», ե-

րեք տարի պիտի ապաշխարեն (կան. Դ). անշուշտ չափազանց պահանջ՝ ուսկից Առաքեալն անգամ կը զգուշանար (Ա Կոր. Ե, 10)։ Դունայ Բ ժողովը կը պատուիրէ Նեստորականաց հետ եւս չհաղորդիլ, «մի՛ ի կերակուրս, մի՛ յըմպելիս» (Թղթ. 76)։ Եւ Տարօնացին նոյնը կը պահանջէ Թոնդրակեցւոց մասին, ըսելով. «Ոչ է արժան... հաղորդել ընդ նոսա հացիւ» (Թէոփ. 260)։ Վերջապէս մեր մէջ յանուն Ս. Բարսղի ծանօթ կանոններն ալ կ'արգելուն սեղանակցիլ անհաւատից եւ անօրինաց հետ (ձիբ, ձճգ)։

10. — Լուացումն եւ զարդարանք։ — Թէ կոչնատէր եւ թէ հրաւիրեալք ճաշէ յառաջ կարեւոր պատրաստութիւն մ'ունէին, որ երեք մասի կը բաժնուէր։

Ա. Լուացումն, որ կրկին էր, ամբողջական ու մասնական։ Առաջինը բնականապէս իւրաքանչիւրն իւր տան մէջ կը կատարէր կանխաւ, օգնականութեամբ ծառայից։ Այսպէս Դրաստամատ Արշակայ ճաշ դնելէ յառաջ՝ անձամբ «լուաց զգլուխ նորա եւ լոգացոյց զանձն նորա» (Փաւս. 207), ինչ որ միայն բազմամեայ բանտարգելութեան պահանջը չէր, այլ եւ սովորութեան, որ ծանօթ էր Յունաց, Հռովմայեցւոց (Դար. Ա, 1272, '77), եւ ասոնց բարուց

հետեւող ուրիշ ազգաց ալ (Փի․ Ծոց․ 19)։ Կարծեմ թէ այս ամբողջական լուացումն իսկ կ՚իմանայ Մանդակունին, երբ կ՚ըսէ արանց համար՝ թէ խնճոյքէն յառաջ հոգածութեամբ մը «փութան ի լուանալ» (34)։ — Այս գործն երբեմն ըստ պահանջելոյ հարկին կը կատարուէր նոյն իսկ կոչնատիրոջ տանը մէջ։ Խադ ընդունելով իւր եզանց գողերը, «հրաման տայր լուանալ զանձն նոցա, եւ դնէր ճաշ առաջի նոցա» (Փաւս․ 108)։ Նաեւ մեծն Ներսէս՝ խոնարհութեան բարձրագոյն օրինակաւ՝ իւր կերակրած աղքատները նախ «իւրովք ձեռօքն լուանայր զամենեսեան» (Նոյն, 77)։ Բայց դիտելի է՝ որ այս երկուքն ալ եկեղեցական են, եւ իրենց ըրածն աշխարհականաց եւս վերագրելի չէ։ Ոսկեբերան նոյնը կը թելադրէր նաեւ Բիւզանդացի ազնուականաց, ըսելով․ «Եթէ աղտեղի եւ գարշելի՞ է (աղքատը)․ նախ լուա եւ ապա տանիցիս ի սեղան քո» (Թղթ․ Ա, 529)։

Կաղանկայտուացին երկրորդ ձեւ մ՚ալ կ՚աւանդէ։ Աղուան անապատական մը հիւր կ՚երթայ համազգի մենաստանի մը․ եւ եղբարք «լուացեալ զոտս (նորա՛) ճաշակէր» (55)։ Յունական (Դար․ Ա, 1274), հրէական (Ղկ․ Է, 44) եւ նոյն իսկ յիսուս-

աւանդ սովորոյթ (Յհ. ծԳ, 5), որ կը պահուէր ընդհանուր վանքրու մէջ, եւ հաւանօրէն Հայոց ալ։ — Կար մասնական ուրիշ լուացում մ'ալ՝ զոր պիտի տեսնենք սեղանի վրայ։

Բ. Առնին լուացման կը յաջորդէր օծումը։ Հայաստան՝ եւ առաւելապէս Այրարատ՝ կ'ընձեռէր «զզանազանումն իւղարուխ սերմանցն» (Փրպ. 23), որոց քաղցրաբոյր հեղուկը մզելով՝ կ'ամփոփէին շիշ[1] (Մտթ. ԻԶ, 7, եւն. Եզն. 105) կամ սրուակ (Յղթ. Ժ, 5) կամ կաւշարայ (Ոսկ. Թղթ. Ա, 603, 781) կոչուած ապակեայ կամ այլ նիւթերէ փոքրիկ սրուձեւ անօթոց մէջ (Դար. Ա, 176–7). եւ աղօցմով կ'օծուէին մեր տիկնայք (Եղիշ. 173. Փրպ. 332)։ Ասոր իսկական նպատակն էր՝ «ի զուարթութիւն խրախուսթեան» (Եղիշ. անդ). այս ինքն իրենց այդ անոյշ բոյրերով հեշտացնել կոչնականաց զգայուն հոտոտելիքը։ Միջին դարու պճնասէր հայուհիք սովոր էին նաեւ իրենց վրազէն «ծրարս խնկոց» կախել, զոր «տաշխ» կը կոչէին (Վնկ. Հրց.), անշուշտ ատաշխէն ծագած։ Եւ կամ «ի լանջս» կը պահէին որ եւ է «նիւթ անուշահոտութեան»,

1. Պրս. շիշա բառէն (Հիւբշ. 214)։

ինչպէս մեր ԺԲ դարու առակողն ընել կու տայ յոպոպին (Գոշ՝ Առկ. 125). որով Եզնկացին ալ այլաբանօրէն կ'ուզէ՝ «անծորելի ծաղիկս ի ծոցս բանիս թաքուցանելով՝» հրապուրել իր ունկնդիրքը (Յհ. Եզկ. Ներբ. 90)։

Բայց այրերն ալ կանանց հաւասար մրցակից էին սոյն պչրանաց մէջ. զի ըստ Մանդակունւոյն՝ բոլոր կոչնականք իսկ սովոր էին «յօծանել» (34). եւ անոնց կ'ուղղէ մարգարէական յանդիմանութիւնը՝ թէ «վա՜յ որ ըմպեն զինի յարբենալ, եւ առոյշ իւղով օծանին» (136)։ Դրաստամատի հոգածութեանց մէջ էր յետ լուացման «օծանել» զԱրշակ (Փաւս. 207). եւ Ս. Ներսէս իր հրաւիրած աղքատաց անգամ զանց չէր ըներ այս խնամքը (Նոյն, 77), անշուշտ պատուասիրութեան մէջ զանոնք հարստներէն չխտրելու փափուկ մտածութեամբ. զի այլուստ գիտենք՝ որ օծումն անհաշտ էր չքաւորութեան վիճակին հետ (սատ, 153)։ Դարեր կ'անցնին, եւ հին սովորոյթը կը տեւէ տակաւին. «Ո՞ւր են իւղքն անուշից», կը հարցնէր Գրիգոր վրդ. մեռնող մեծատան (Ողբ)։ — Իսկ օծումը կրկին էր ըստ Նարեկացւոյն. մին «ի մարմին», որ կը լինէր անշուշտ յետ լուացման, եւ միւսն «ի հանդերձս՝» զանոնք

զգենլէ վերջ, ինչպէս բնական է խորհիլ, որով բոյրն աւելի թարմ կը լինէր։ Վերջապէս այս ընդհանուր օծումը միայն Հայոց յատուկ չէր, այլ Յունաց, Հռովմայեցւոց (Դար. Ա, 1272, '73), Հրէից (Ամովս, Զ, 6. Ղկ. Է, 46), Կեսարացւոց (Բրս. Արք.) եւ ուրիշ ազգերու եւս։

Գ. Կարգը կու գար հագուստի պերճանաց։ Տիկնայք նախ իրենց սովորական պճնասիրութեամբ «յարմարէին սանդրով զհեր գլխոյ իւրեանց» (Փրպ. 332). յարդարանք՝ զոր այր մարդիկ եւս հարկադրուած էին ընել իրենց երկար վարսից, զորս կը «հիւսէին» իբրեւ մասն պաճուճանաց (Մանդ. 43)։ — Բնական էր՝ որ շքեղութեան ու պատուոյ ցուցադրութեան այսպիսի հանդիսի մը մէջ հրաւիրեալք հագնէին իրենց լաւագոյն զգեստները։ Արդարեւ Դրաստամատ իւր արքային «ազոյց պատմուճան ազնիւ» (Փաւս. 207), որ ազատաց հանդիսական հանդերձն էր։ Եւ Անյուշի նոյն կալանաւորին փառաց օրերուն՝ բոլոր նախարարք անոր ընթրեաց մէջ կը բազմէին «պատիւ ի գլուխ» (Նոյն, 67), զոր ես երիզաձեւ թանկագին վարսակալը կ'իմանամ։ Սա կ'ենթադրէ միւս զարդարանքներն ալ։ Ըստ այսմ՝ Վասակ Սիւնեաց տէրն երթալու համար «յընթրիս»

Ցազկերտի, «ըստ առաջին կարգի օրինացն արքունի, կ'ըսէ Եղիշէ, արկանէր զպատուական հանդերձն զոր ունէր ի թագաւորէն. կապէր եւ զպատիւ վարսին եւ զխոյրն ոսկեղէն դնէր ի վերայ, եւ զկըտանակուռ ձոյլ ոսկի կամարն ընդելուզեալ մարգարտով եւ ակամբք պատուականօք ընդ մէջ իւր ածէր, եւ զգինդսն յականջսըն, եւ զգումարտակն ի պարանոցին, զսամոյրսն զթիկամբն» (117)։ Եւ ոչ մէկ շրջանին մեծատանց կողմանէ անխնամ թողուած չէ «հանդերձիցն գեղեցկութիւն» (Գր. Վրդ. Ողբ), ժամանակն ինչ ձեւ ալ տուած լինէր անոնց տարազին, զոր պիտի ցոյց տամ ուրիշ հատորի մը մէջ։

Անոնց զարդարանաց շատ կարեւոր մասն էին՝ մանաւանդ երիցագոյն դարերուն՝ զէնքերը, որոց մին կամ միւսն ըստ դիպաց յիշուած կը գտնենք։ Զոր օրինակ Պապ՝ Տերենտի եւ Բատ սահառունի՝ Վարազդատայ խնճոյից մէջ «զսրանն յազդեր» ունէին, որ է դաշոյնը (Փաւս. 233,'37)։ Գնէլ անձեւացի՝ Տերենտի նոյն ընթրեաց մէջ գործածեց «զիւր սուսերն» (Նոյն, 233)։ Դղակ մարդպետ՝ արքունի կոչնոյ պահուն կախած էր երեք զէնք. «զքուրն եւ զսուսերն... եւ զսրանն» (Նոյն, 204)։ Եւ Խոսրով գարդմանացի՝ Շապհոյ

ճաշին մէջ կը կրէր «զվաղակաւորն», որ է սուրը (Խոր. 250)։ Երբ Պարսից Խոս-րովու խորանին առջև մամիկոնեան Մու-շեղի (Է դարու քաջին) կ'առաջարկէին հա-նել զէնքերն ու կամարն՝ որմէ կախուած էին անոնք, մերժեց՝ ըսելով. «Լուծի՞ց զկամարս եւ զգօտիս յանձնէ իմմէ, զոր ոչ երբեք լուծեալ է իմ ի տան իմում յու-րախութեան» (Սեբ. 72). զատոնք հանելը՝ կը նշանակէր զէնքերն իսկ հանել։

Աղքատներն անգամ՝ զորս կը հրաւի-րէր Ս. Ներսէս, փոխան իրենց պատա-ռատուն գրգլեկաց՝ «պատէր», կ'ըսէ Փաւ-ստոս (77), զոր ես կը հասկնամ՝ թէ չափաւոր զգեստ մը կը հագցնէր, որպէս զի խնճոյից հանդերձանքը կատարեալ լի-նէր նոյն իսկ այդ թշուառ դասուն վը-րայ։ Նոյնը նաեւ բիւզանդացի ազնուա-կանաց, որ իրենց հանդերձից բովանդակ պերճութեամբ կը նստէին հացկերութի, կը խրատէր Ոսկեբերան՝ ըսելով. «Փո-խեա և տուր սուրբ պատմուճան» (Թղթ. Ա, 529)։

Գ. Գիտելի է սակայն՝ որ Եղիշէի օրով չքաւորութեան մատնուած տիկնայք հրա-ժարելով իրենց սովորական խնճոյքներէն, անոնց յարակից յարդարանքներն ալ մէկ կողմ թողած էին, նոյն իսկ եւ զանոնք՝

որ կրնային առանց ծախուց կատարուիլ։ Ուստի չունէին ոչ միայն զանազանութիւն կամ ազնուութիւն հանդերձից, այլ եւ ոչ լուացումն օճառով, ոչ օծումն (Եղիշ. 173), ոչ սանդրումն վարսից (Փրպ. 332), եւ այլն։ Ասկից երկու հետեւութիւն կ'ել֊նէ. մին՝ թէ այդ զարդարանքները լոկ կոչնոց հետ կապուած էին, եւ ոչ սովո֊րական կերակրոց։ Երկրորդ՝ թէ գեղջուկ դասակարգն ալ՝ իւր սեպհական անփոու֊թութեամբ առ փափկասիրութիւն՝ զանց կ'ընէր զաղոնք իւր ուրախութեանց մէջ։ Առո՞վ կրնար Եղիշէ աղոնց հետ համեմա֊տել յիշեալ տիկնայց վիճակն՝ ըսելով. «Իբրեւ մարդք՝ որ վշտամբերք լեալ իցեն անդստին ի շինական սովորութեանցն, տանջելով վարեալ զկեանս աշխարհիս» (173)։

11. – Ժամանոամն։ — Մեր տոհմիկ հրաւիրեալք հագուած կոկուած՝ կը հաս֊նին մօտէն կամ հեռիէն։ Խնճոյից, այս կարեւոր հանդիսին՝ մասնակցելու համար որ եւ է հեռաւորութիւն չկայ անոնց։ Մեր նախարարք գաւառէ գաւառ կը վազեն, եւ Վասակ Հայաստանէն մինչեւ ի Վրր֊կան կը փութայ Յազկերտի կոչնոց. թէեւ առ այդ ուրիշ անկնկալութիւններ ալ ու֊նէր նա։ Ու բնական էր՝ որ այդ երկար

ճանապարհը կտրէր «երիվարով» (Փրպ. 226). մինչդեռ բնակութեամբ մերձաւորք հետիոտն կու գան ու կը դառնան, ինչպէս ըրին Տրդատ բագրատունի Բակուրի ընթրեաց, եւ Խոսրով գարդմանացի՝ Շապհոյ խնճոյից, անոնց բնակած քաղաքին մէջ ունենալով իրենց առժամանակեայ հիւրանոց «վանքը» կամ «տունը» (Խոր. 142, 250)։

Մեր նախարարք միայնակ չեն գար ճաշին. անոնց աստիճանն ու շուքը կը պահանջէ՝ որ իրենց հետեւի ծառայից խումբ մ'ալ՝ աւելի կամ նուազ թուով։ Այսպէս Վասակ՝ «բազմամբոխ գնդաւ գայր յարքունիս» (Եղիշ. 118), ինչպէս պատշաճ էր Հայոց մարզպանի մը։ Եւ եթէ այդպէս կ'երթայ Յազկերտի կոչնոց, նոյն պերճութիւնն աւելի եւս պիտի ցուցնէր անշուշտ իր հայ իշխանակցաց հրաւիրմանց առթիւ։ Հոս ալ կայ նմանութիւնն օտար բարքերու. ժամանակի բիւզանդացի ազնուական կոչնականաց նոյն ոճով կ'ընկերեն իրենց ստրուկները (Ոսկ. Թղթ. Ա, 534), որոնք հին Հելլենաց մէջ ալ կ'երթան ու կը ծառայեն եւս իրենց տերանց (Դար. Ա, 1274)։

Հիւրերն երբ կը հասնին կոչնատէր իշխանին ամրոցին կամ պալատան առջեւ,

անոր երկաթամած կամ փայտեղէն «հաստահեղոյս բեւեռապինդ» (Արծ. 330) ըստուար դուռն իսկոյն կը շաչէ ու կը ճռնչէ «պահապանին» բանալեաց ներքեւ,՝ կը բացուի (Մամ. 24), եւ մեր շքեղ բուրումնաւէտ հրաւիրեալք ներս կը մտնեն։

12. *Ընդունելութիւն*։ — Հայ բարուց մէջ, ինչպէս եւ այլոց, սովորական էր հեռագնաց եկւորաց «ընդ առաջ» երթալ. ինչպէս երբ հայրապետք ձեռնադրութեամբ կը դառնային Կեսարիայէն (Ագթ. 615. Փաւս. 30, 73), կամ գաւառի մ'այցելութեան կ'երթային (Որբ. 53), կամ երբ Ս. Մեսրոպ նորագիւտ տառերով կը դառնար (Կոր. 11), կամ Վահան կու գար Պարսկաստանէն (Փրպ. 539)։ Կրնանք ուրեմն ենթադրել՝ որ կոչնատէրն ալ իր տան մէջ ընդ առաջ կ'ելնէր նորեկ հիւրոց։ Եւ բնական է որ ողջունէին զիրար սովորական բանաձեւերով, հրաւիրեալն ըսելով ընթրատուին՝ «Ողջոյն ընդ քեզ» (Յհ. ի, 19, 21[1]. Քրզ. ամր. 739), կամ «Ողջ եր»[2], յարելով անշուշտ «պատուոյն անունն» ալ, զոր օրինակ՝ «Սիւնեաց տէր»

1. Յն. «խաղաղութիւն ձեզ»։ — 2. «Ողջ եր, վարդապետ», կամ «Ողջ եր, Թագաւոր Հրէից». յն. Ուրախացիր (Մտթ. իզ, 49. իէ, 29)։ Յոգն. «Ողջ էք». յն. Ուրախացէք (Մտթ. իզ, 49)։

(Փրպ. 227)։ Եւ կոչնատէրը կը պատասխանէր. «Բարի եկիր, սիրելի բարեկամ», կամ յոգնակի ձեւով՝ եթէ եկաւորք աւելի էին (Փաւս. 101)։ Համոզուած եմ՝ թէ ողջունիս կը յաջորդէր գրկախառն համբոյրը, որ նոյնպէս սովորական էր ամէն հանդիպմանց, եւ ճիշդ այդ ձեւով, Հայոց (Փրպ. 384, 540. Կիր. 237), Պարսից (Փրպ. 504), Հրէից[1], Երուսաղեմացւոց (Կաղ. 72) եւ ուրիշ արեւելեայց, եւ որ Ասիայէն անցած էր ի Յունաստան եւ ի Հռովմ ալ (Դար. Դ, 1059)։

Հաւանական է՝ թէ հրաւիրեալք դեռ ճաշարան չմտած՝ կը հաւաքուէին ուրիշ սրահի մը մէջ, սպասելով բոլոր կոչնականաց գալստեան։ Այսպէս Վասակ արքունիքն երթալուն՝ «եհաս եւ նստաւ (նախ) ի ներքին դահլիճսն՝ որ էր հրապարակ մեծամեծացն», այս ինքն ժողովատեղի, եւ ուր իրեն պէս կը սպասէին «ամենայն մեծամեծքն» (Եղիշ. 118)։ Ասոնք իրարու հանդիպելուն՝ հարկաւ զիրար եւս կ՚ողջունէին մի եւ նոյն ձեւով։

Իսկ այն պահուն՝ ուր տաճարը պիտի մտնէին, տեղի կ՚ունենար այս քաղաքավարական ձեւակերպութիւնը։ Կոչնատէրն

1. Յուդա ողջունեց զՅիսուս և իսկոյն «համբուրեաց ընդ նմա» (Մտթ. ԻԶ, 49)։

*հիւրերը ներս կը հրաւիրէր անձամբ, եւ անոնք կ'ընդդիմանային, թերեւս պատճառելով՝ թէ անօթի չեն, ճաշելու չեն եկած, այլ տանուտէրը տեսնելու. կամ թէ ներս մտնելու կարգը վերջինոյս կամ այլոց թողլով։ Իսկ ընթրատուն թախանձանօք կը ստիպէր ու ներս կը տանէր։ Այս պարագայն կ'աւանդէ մեզ Մանդակունին, երբ կը պահանջէ՝ որ ագապի կոչուին լոկ աղքատները՝ փոխանակ մեծատանց. եւ կը յարէ՝ թէ «զնոսա միայն մո՛յծ աղաչանօք»* (59, 60)։

13. – ***Թեթեւացումն հանդերձից*** ։ — *Մեր ազնուականք զգեստուց այն ծանրաբեռնութեամբ որով եկան՝ սեղան չեն նըստիր, այլ անոցմէ աւելորդը կամ նեղիչը կը հանեն՝ որպէս զի կարենան հանգիստ ճաշել, ինչպէս կ'ընէին Հռովմայեցիք ալ* (*Դար.* *Ա*, 1281)։

*Նախ՝ ամենուն գլուխը բաց պիտի ըլնէր. անոր համար արքունի կամ ազնուական կոչնոց մէջ կը հանուին թագ եւ որ եւ է գլխանոց, մնալով միայն «պատուվարսին» կամ վարսակալը՝ զոր տեսանք այլուր* (*աստ*, 150)։ *Պապայ մէկ ընթրեաց պահուն անոր թագը կը հանգչէր յատուկ սենեկի մը մէջ, որ կը կոչուէր «տուն»*

կամ «վանք պատմուճակացն[1]» (Փաւս. 205)։ Այսր հակառակ էր պարսկական սովորոյթը, որով Սասանեան արքայք թագ ի գլուխ կը ճաշէին, եւ որոց կը համակերպին մեր թագաւորք ալ՝ երբ անոնց սեղանին վրայ են (նոյն, 134), մինչդեռ Յոյներն ու Հռովմայեցիք իրենց քանդակաց մէջ բացագլուխ են սովորաբար (Դար. Ա, 1274–9), եւ եւրոպական ճաշանկար մը ցոյց կու տայ կոչնականաց գլխին ժապաւինաձեւ վարսակալն ալ՝ նման Հայոց (անդ, 1274)։

Հայք կը հանէին նաեւ սամոյրը կամ ուրիշ մուշտակներ՝ որոնք թագաւորին եւ իշխանաց արտաքին թիկնոցի տեղ էին (նոյն, 118, 263), եւ զոր տեսանք նաեւ Վասակայ վրայ (աստ, 151)։ Այսպէս Պապայ խնճոյից մէջ Դղակ մարդպետն հագած էր վարտիս, եւ անոր վրայ պատմուճանը՝ զսպուած գօտւով, եւ ոտներուն մոյկեր. իսկ մուշտակ չունի (Փաւս. 204)։ Մեծն Ներսէս ալ արքունի սենեկապետութեան պաշտօնին մէջ կը նկարագրուի պատմուճանով միայն՝ իբր արտաքին զգեստ (նոյն, 69)։ — Բայց կոչնականք

1. Այդ բառը, ծագած հայ և պահլ. պատմուճանէն (Հիւբշ. 224), ի Դ Թագ. ԻԲ, 14 գործածուած է փոխան յն. ἱματιοφύλαξի, որ է հանդերձապետ։

սեղանի վրայ եւս կը պահեն միշտ, գնդերէ՝ գումարտակէ եւ ուրիշ ազնիւ զարդերէ զատ, նաեւ իրենց զէնքերն՝ ըստ վերոյիշեալ վկայութեանց (151), զի անոնց կարեւորութիւնն աւելի էր հոս՝ զինուոյն անակնկալ եւ կամ նախանկատ թելադրութեանց հանդէպ։

14. — Լուացումն ձեռաց։ — Ճաշի արարողութեանց մասերէն մին էր այս, յայտնի Եղիշէի տիկնանց նկարագրէն, եւ կը կատարուէր տաճարին մէջ։ Կը բերէին լուացման սպասները, որ է ճգոյրն ու տաշտագուրանը (տես, 82–6), եւ «նաժիշտ» մ'անոնց «Ջուր ի ձեռս արկանէր», եւ օշնանով[1] կը մաքրուէին. իսկ չորնալու համար՝ պատուով «կրտսերք աւագաց դաստառակս մատուցանէին» (Եղիշ. 173), որ յետոյ անձեռոց ալ կոչուեցաւ (Յհ. կթղ. գրչ.[2])։ Ձեռաց այս լուացումը, սեպհական ոչ միայն այդ հիւրընկալ տիկնանց, այլ եւ բոլոր կոչնականաց, համոզուած եմ՝ թէ կը լինէր սեղանը սկըսելէ անմիջապէս յառաջ, ըստ որում նոյնպէս կ'ընէին նաեւ Հրեայք (Մտթ. ժե, 2. Մրկ. է, 1–5), Բիւզանդացիք (Ոսկ. Թղթ. Ա, 702) եւ Յոյները (Դար. Ա, 1270,'74),

1. Պրս. ուշնանէն, որ կը նշանակէ «աղային խոտ» (Հիւբշ. 259)։ — 2. Վրիպած տպագրէն. 214։

եւ զոր Հռովմայեցիք կը կրկնէին ընդ մէջ այլ եւ այլ կերակրոց եւս (նոյն, 1281)։

15. – *Օրհնութիւն սեղանոյ*։ — Եթէ ընտանեկան պարզ ճաշերուն կ՚ընկերէր աղօթք մը (տես, 111), կոչնոց հետ կար աւելի հանդիսականը, օրհնութիւնը, որ հարկաւ կը կատարուէր դեռ չնստած (անդ)։ Զայս առաջին յիշատակողն է Փաւստոս, որ խօսելով Հայոց հայրապետին ժամանակ մը վրդոված իշխանութեան մասին, կ՚ըսէ՝ թէ անոր իրաւունքն էր «դրանն արքունի զհացն օրհնել»․ եւ թէ նա իսկ «հաց օրհնէր թագաւորացն» (226–7)։ Ազգի գլխոյն սեղանին՝ եկեղեցւոյ գլխոյն կողմանէ օրհնուիլը՝ բնական էր, եւ յայտարար նշան անոնց փոխադարձ մեծարանաց։ Ասկից կը հետեւի եւս՝ որ հայրապետը սովորաբար անպակաս էր արքունի պաշտօնական կոչունքներէն։ — Հաւանական է՝ որ իշխանաց սեղաններն ալ կ՚օրհնէին անոնց «դրան երիցունք», որոցմէ ամէն նախարար իրենն ունէր հին սովորութեամբ։

Իսկ բոլոր միւս հացկերութեանց մէջ օրհնող էին քահանայք, որոց անպակաս ներկայութիւնը տեսանք վերեւ (141), եւ որոց այդ պաշտօնն յայտնապէս ալ յիշուած է Մովս. Եզնկացիէն՝ այսպէս. «զսե-

դանն օրհնեցէ» (Խրատ)։ — Մեր Ջ դարու փութկոտ երիցունք՝ ճաշէն յառաջ կը վազէին սփռել իրենց անսպառ օրհնութիւնը մառլից ու պարարտ սաներու վրայ եւս, անոնց միջէն օրհնած բաժին մ'ալ իրենց տանց հանելու համար. եւ զոր կ'արգելու Աշտարակեցւոյն մէկ կանոնն՝ ըսելով. «Քահանայք ի պտտանց օրհնել մի իշխեսցեն երթալ, զի զօշաքաղութիւն է». այլ շատանալ մատաղի հասութաբեր օրհնութեամբ (ԻԸ)։

Սեղանօրհնէից յօրինուածը ցոյց պիտի տամ վանականաց ճաշի նկարագրին մէջ. անոր համար աւելորդ է մանր յիշել հոս։ Միայն դիտել կու տամ՝ թէ հաւանական չէ թուիլ նոյն կանոնին յետսամուտ ընդարձակութեամբ գործածութիւնն աշխարհիկ ճաշերու մէջ եւս. այլ հոս միշտ պահած է անշուշտ համառօտ ձեւ մը։

16. – Կը բազմին։ — Հասած է արդէն «ժամ բազմականացն» (Եղիշ. 132) կամ «ժամ բազմակալացն» (Փաւս. 67). այս ինքն բազմոցաց վրայ նստելու վայրկեանը։ Այս տեղ դիտելի երկու բան կայ. բազմելու կարգն ու ձեւը։

Ա. Սեղանն ունի «գլուխ» (Եղիշ. 132) կամ «գահագլուխ» մը (Մրկ. ԺԲ, 39. Ոսկ. Մտթ. ի Հյկզ.), որ Հելլենաց մէջ կիսա-

բոլոր նստարանին ձախակողմեան առաջին տեղը կամ ծայրն էր (Դար. Ա, 1274, '78). եւ այս համեմատութեամբ՝ զուցէ մեր անջատ բազմականաց մէջ ալ նոյն կողմէն առաջինը։ Եւ որովհետեւ կոչնականք պատուոյ կարգով պիտի նստին, ուստի հոս կը բազմի անոնց մէջ աւագագոյնը կամ «գահերէցը» (Փիլ. Ճոք. 27)։ Յունաց քով, եւ անշուշտ մեր ալ, հաւասարապատիւ հիւրոց մէջ նախաթոռ կը կարծուի կոչնատէրն իսկ (Դար. Ա, 1273–4), որ սակայն աւելի բարձր կամ յարգելի անձի մը ներկայութեանն անոր կու տայ իւր տեղը (անդ, 1279)։ Այս փոխանակութեան օրինակները մեր քով ալ պիտի տեսնենք։ Իսկ միւս բազմականք իրենց աստիճանին համեմատ կը բռնեն «զիւրաքանչիւր տեղի» (Եղիշ. 132)։

Արքունի տաճարին մէջ բնականապէս միշտ ի գլուխ կը բազմի թագաւորն՝ «արքունական գահոյից» վրայ (աստ, 54)։ Այն շրջանին՝ ուր կար տէրութեան մեծ պաշտօնակալը՝ «Երկրորդ թագաւորութեանն» կոչուած (Խոր. 77), արքային քով նա կը բռնէր «զգահն երկրորդական», ինչպէս էր Արգամ՝ Արտաշիսի օրով (նոյն, 124)։ Յետոյ երբ կը դադրի այդ պաշտօնը, Տըրդատայ սեղանին վրայ կը տեսնենք «զլո-

ջնսին գահերեցն իւրոյ տաճարին՝ որ բըդեաշխքն կոչին» (Ագթ. 650), այս ինքն Հայ աշխարհին ծանօթ չորս սահմանակալները, որոնք կէս թագաւորներ էին. եւ որ անոր որդւոյն օրով՝ եւ անշուշտ վերջն ալ՝ դեռ կը մնան «գահերեց բարձերեց տաճարին արքունի» (Փաւս. 21)։ Ժամանակ մը մեծապէս զօրացաւ Հայր մարդպետը, արքունեաց այդ ներքին բարձրագոյն պաշտօնեայն. եւ «բարձ նորա ի վեր քան զամենայն նախարարացն» էր (Նոյն, 206)։ Ապա կը նստէին միւս աւագանին, «մեծամեծքն յիւրաքանչիւր գահու, եւ գործակալքն յիւրաքանչիւր չափու[1]», սկսեալ Հազարապետէն ու մամիկոնեան Սպարապետէն, որոց մին վարչութեան եւ երկրորդը բանակին պետերն էին, մինչեւ բոլոր միւսները (Նոյն, 67), համաձայն իրենց ազնուապետական կարգին՝ որ ծանօթ է հին ցուցակաց մէջ եւ ըստ ժամանակին փոփոխուած։

Իսկ Պարսից արքային ընթրեաց մէջ սովորութիւն էր, կ՚ըսէ պատմիչը, Հայոց թագաւորին բազմականն «առ նմա ի նորին տախտին արկանել», երկուքն ալ հագուած

1. Չափ՝ կարգ կամ աստիճան կը նշանակէ. ինչպէս նոյն պատմիչը կ՚ըսէ այլուր, «բազմեցան յիւրաքանչիւր չափու» (168)։

մի եւ նոյն ձեւով, ի նշան իրենց մտերմութեան ու գինակցութեան (նոյն, 168, 124)։

Թէ նախարարք ո՛րչափ նախանձայոյզ էին կարգի, ուշագրաւ է Ե դարու անգիր «գրուցաց» պատմածը՝ Սիւնեաց Անդոկ իշխանի մասին։ Սա ճաշի կ'երթայ Շապուհ արքային, եւ ազատաց մէջ իրեն կու տան հազիւ «չորեքտասաներորդ բարձն՝» ըստ պատմական հին կարգին։ Նա սրտմըտած, կամ ինչպէս պատմիչը կ'ըսէ՝ «հըպարտացեալ՝ ոչ ինչ ճաշակեաց». եւ ապա ուզելով վրէժ խնդրել այդ նախատանաց, վշտեր բերաւ իւր աշխարհի գլխուն (Կաղ. 82 եւն)։

Հայրապետն եթէ ներկայ է արքունի կոչնոց, իբրեւ հոգեւոր պետ հասարակաց՝ թագաւորէն ալ վեր կը նստեցնեն երբեմն պատուոյ համար։ Պապ իւր սեղանին վրայ «աղաչեաց» Ս. Ներսիսի՝ բազմիլ արքունական գահոյից վրայ (Փաւս. 216)։ Աղաչելդ նշան է՝ թէ սովորական չէր այդ բանը. այլ անշուշտ հայրապետն ալ հասարակօրէն կը բազմէր ուրիշ ճաշակից եկեղեցականաց հետ՝ որ կը նստէին «ի թիկանց կուսէ», կարծես աշխարհիկ իշխաններէն վեր կամ վար չմնալու փափկանկատ հաշուով. եւ իրենց մէջ կը պա-

հէին միշտ աստիճանի զանազանութիւնն ալ, «դասս ինն» (Մեսր. 39)։ Այս մեկուսացումը սակայն յատուկ էր լոկ արքունական ճաշերուն կամ համեմատաբար հին շրջաններուն։ Վասն զի ուրիշ խնճոյից մէջ հայրապետը գահագլուխ կը բազմի, եւ բոլորը խառն կը նստին, նախ եկեղեցականք եւ յետոյ աշխարհականք։ Այսպէս՝ Խորենացւոյ մասին միջնադարեան ծանօթ աւանդութեան համեմատ՝ Մանդակունւոյն խնճոյք կատարուեցաւ գիւղի մը մէջ, ուր «քահանայքն եւ իշխանքն առաջի հայրապետին էին նստեալ» (Հյպտ. 195)։

Նիւշապհոյ մոգպետին ընթրեաց մէջ, զոր տուաւ մեր բանտարկեալ քահանայից եւ իշխանաց, հանդիսատես կը լինինք յուզիչ տեսարանի մը։ Ղեւոնդեանց մէջ կար շինական տգէտ երէց մը՝ որ կարդալ անգամ չէր գիտեր, եւ իրենց հետ ի մահ կը դիմէր յօժարութեամբ։ Խրախուսելու համար զինքը, Յովսէփ կաթողիկոս եւ ընկերներն հրամայեցին անոր «ունել ըզգլուխ բազմականին»։ Միամիտ մարդը շփոթած այս նոր պատուէն, կ՚ըսէր՝ թէ ես տգէտս «զիա՞րդ կարացից այդմ տանել». այնքան մեծ էր իրենց համար կարգի նշանակութիւնը։ Բայց ի վերջոյ տեղի

տուաւ անոնց բռնադատութեան եւ բոլորէն վեր նստուցին զինքը (Եղիշ. 132–3)։ Գեղեցի՛կ օրինակ քրիստոնէական անարգամեծար խոնարհամտութեան մեր այդ սուրբ քահանայից կողմանէ։

Ընտանեկան սեղանին շուրջ տան իւրաքանչիւր անդամ իւր յատուկ տեղն ունէր, եւ այն անշուշտ հասակի կարգով, զոր անոր բացակայութեանը դատարկ կը թողուին՝ ի պատիւ հեռաւոր սիրելւոյն։ Եղիշէ կը պատմէ աքսորական նախարարաց ամուսնաց համար՝ թէ «ի ձաշակատեղս նոցա հայեցան» կարօտագին աչերով՝ «եւ արտասուեցին», ըստ որում տասն տարիէ ի վեր թափուր կը մնային անոնք (176)։ — Անյարմար կը գտնեմ Հայկազեանի կողմանէ «ի ճաշակատեղս» բառին նոյնացումը ճաշարանի հետ, մինչ Եղիշէ այս վերջին իմաստին համար կը գործածէ միշտ «տաճարը» (անդ, 48)։ Եթէ ճաշակատեղը ճաշարան լինէր, պատմիչը չպիտի կարենար ըսել «նոցա»․ զի ճաշարանն ամբողջ ընտանեաց էր, ոչ թէ բացակայից միայն։

Բ. Ի՞նչ ձեւով կը նստէին մեր նախնիք։ Այս հարցումը կ՚ընեմ՝ նկատելով որ կէս մ՚ընկողմանած կը ճաշէին Յոյներն ու Հռովմայեցիք (Դար. Ա, 1273, ’78),

*եւ վերջերն Հրեայք ալ* (*Ամովս*, Զ, 4. *Փիլ. Ճոք.* 25–6). *ինչպէս եւ Բիւզանդացիք, որոցմէ Յիսուս եւ առաքեալք իսկ նոյն դիրքով կը նկարուին Զ–է դարերուն* (*Կաբր.* Բ, 3045–7)։ *Բայց հնագոյն ժամանակներն ուղիղ կը նստէին Յոյները* (*Դար.* Ա, 1271), *Հրեայք* (*Ծննդ.* ԻԷ, 19. Ա *Թագ.* Ի, 5), *եւ Հռովմայ գետնադամբանաց մէջ նկարուած քրիստոնեայ կոչնականք եւս* (*Մարտ.* 700)։

*Մեր քով առաջին ձեւին յիշատակութեան կը հանդիպինք մէկ անգամ, Տերենտի ընթրեաց առթիւ, ուր Պապ հետեւելով իւր բիւզանդացի կոչնատիրոջ ու սեղանակցաց օրինակին, ձախ կողմին վրայ կքած ու նոյն արմկին յեցած էր. «ահեակ ձեռամբն յարմուկն յոր յեցեալ բազմեալ էր», եւ նոյն ձեռքով ու դիրքով բաժակն ալ բռնած. իսկ աջ ձեռն ազատ՝ դրած էր նրանի դաստապանին՝ զոր կապած ունէր աջ ազդրին վրայ* (*փաւս.* 233)։ *Բուն այս էր արեւմտեան նիստը*։

*Սակայն տոհմային բնիկ կերպն ուղիղ նիստը կը կարծեմ, զոր մեր անջատ բազմականք եւ նեղ ու փոքր բարձերն իսկ կը պահանջէին, հակառակ Բիւզանդացւոց եւ այլոց լայն ու միապաղաղ անկողնոց* (*անդ*, 52–6)։ *Արդարեւ մեր բոլոր պատ-*

մական օրինակաց մէջ այս ձեւը կը յիշուի՝ բազմեցոյց կամ բազմել (Փաւս. 207, '16), բազմեցուցին (Եղիշ. 133) կամ նստէին (Մեսր. 39) բայերով, որոց սովորական նշանակութիւնն յայտնի է մեր լեզուին մէջ. թէեւ Փաւստոս Պապայ յիշեալ օտար ձեւին համար եւս «բազմեալ» ըսէ լայնաբար: Մեր նիստին աւելի շօշափելի օրինակը կայ, թէեւ ոչ շատ հին, Գագիկ արծրունոյ ծանօթ քանդակին մէջ (աստ, 75), ուր արքայն ծալապատիկ նստած է թուրքի մը պէս, որուն հին ժամանակ եւ դեռ այսօր գաւառաց մէջ կրնայինք ըսել նաեւ՝ հայու մը պէս:

17. — **Բաժանումն կոչնոց**: — Մեր հանդէսն ունի երկու որոշ մասունք, իրարմէ բոլորովին տարբեր, որոց մին միւսին կը յաջորդէ. եւ են՝ Կերակուր եւ Գինարբուք: Առաջնով կը սկսի խնճոյքը, եւ կ'աւարտի երկրորդով: Ասոնք մեր մէջ՝ սկսեալ հին դարերէն մինչեւ վերջ՝ այնպէս անջատ են իրարմէ, որ կերակրոյն հետ բնաւ գինի չի գործածուիր: Այսպէս Դրաստամատ նախ «եդ առաջի նորա (Արշակայ) ընթրիս՝ ըստ օրինաց թագաւորաց». եւ ապա երկրորդ գործողութեամբ մը «եդ առաջի նորա գինի, որպէս օրէն էր թագաւորացն» (Փաւս. 207): Պապ նախ «յըն-

թրիան ուտէր» Տերենտի, եւ յետոյ «ընդ գինիս մտին» (Նոյն, 232)։ Նաեւ Ղեւոնդեանք յառաջ «հաղորդեցան ի կերակուրն», եւ յետ աւարտման բերին «զուրախութեան նուագն» կամ բաժակը (Եղիշ. 133), զոր պիտի տեսնենք իր կարգին։ Եւ ԺԲ դարուն Շնորհալին կը հաստատէ տակաւին, թէ «յորժամ զրաւ լինիցի կերակրոյն՝» այն ժամանակ կը սկսէր գինին, որուն «մինչ յերիս միայն արբումն բաժակի՝» քահանայն մեկնելու էր (աստ, 141). ուրեմն ասկից յառաջ ընաւ գինի չէր խմուած։ Ցար եւ նման էր Ցունաց սովորոյթն ալ (Դար. Ա, 1275), այս տարբերութեամբ՝ որ անոնց գինարբուքը ճաշին հետ անհրաժեշտ չէր միշտ, ինչպէս մեր քով էր. անոնք կրնային նաեւ ճաշել բարեկամի մը տան մէջ, եւ գինարբութեան համար հաւաքուիլ այլուր (անդ, 1373)։ Իսկ Հռովմայեցիք գինին թէ առանձին եւ թէ կերակրոյ հետ խառն կ՚ըմպէին (անդ՝ 1281). Թէեւ միջին դարու Հայոց դաշտային գինարբութիւնք եւս (աստ, 49) ճաշին հետ անվրէպ կապ ունենալ չեն թուիր։

**ԿԵՐԱԿՈՒՐ**

18. — *Աղուհաց կտրել* : — *Աղով կը սկսի ընթրիքը։ Ի հնուց շատ յարգի եղած է աղը մարդկութեան մէջ։ Զայն իրենց երդմանց վկայ կ'առնուին Յոյները* (*Գար. Գ*, 1010), *Պարսիկները* (*Փաւս.* 164) *եւ Հրեայք* (*Բ Մնց. ժԳ*, 5)*։ Հռովմայեցիք զոհագործութեանց պահուն աղած կարկանդակ մը կը նուիրէին դից՝ իբրեւ անոնց հաճելի նիւթ* (*Գար. անդ*)*, եւ Հրեայք կ'աղէին իրենց զոհերը* (*Ղեւտ. Բ*, 13)*։ Աղը նաեւ նշանակ էր բարեկամութեան, հիւրասիրութեան, խօսից հաւատարմութեան եւ այլն* (*Գար. անդ*)*։*

*Աղը մեր քով ալ ունէր նոյն կարեւորութիւնն ու նշանակութիւնը։ Զայն կը խառնէին մատաղի օրհնութեան մէջ՝ զոր պիտի տեսնենք իր կարգին։ Եւ Դենշապուհ պարսիկն ուզելով ցոյց տալ իր կեղծ համակրութիւնը հայ ազգին, կ'ըսէր Ղեւոնդեանց. Որովհետեւ «աղուհաց*[1]*» կերած եմ ձեր աշխարհին մէջ, «զութ եւ*

1. *Տպագրութեանց մէջ անջատ, եւ մէկ բառ կը համարիմ զայդ, նկատելով հետագայ օրինակաց մէջ լոկ վերջին արմատին հոլովումը, յարակից բայից եզակի ձեւը, և «աղուհաց» բարդը։*

սէր ունիմ ընդ աշխարհն ձեր» (Եղիշ. 147)։ Աղեւհաց՝ կամ լոկ Աղ՝ այդ դարուն կերակուր կը նշանակէ Հայոց մէջ. որով Ոսկեբերանի թարգմանիչն երբեմն կը գործածէ զայն՝ բնագրէն անկախօրէն։ Զոր օրինակ. «Աւազակքն յորժամ ընդ միմեանս աղ առնուցուն[1]». (Մտթ. Ա, 398). կամ՝ «Աւազակքն գիտեն պահել զդաշինս աղեւհացի[2]» (անդ, 694). կամ՝ «Աղեւհաց սեղանոյ[3] զաւազակս ի հաւանութիւն ածէ» (Թղթ. Ա, 892)։ Ուշագրաւ է «աղեւհացի» գործածութիւնը թարգմանչէս «աւազակաց» հետ միայն, որ պայքարող տարր մ'է. նոյնպէս եւ Ղեւոնդեանց դահճին բերանը։ Ասկից կրնանք հետեւցնել՝ թէ որ եւ է հաւաքական ճաշ «աղեւհաց» չէր կրնար կոչուիլ, այլ այն միայն՝ որով Հայոց մէջ թշնամիք «դաշինս» եւ «հաւանութիւն» կը հաստատէին իրարու հետ։ Միանգամայն աներկբայելի է՝ թէ «աղեւհաց՝» կերակրոյ այլաբանական իմաստէդ յառաջ, եւ հաւանօրէն դեռ անոր հետ եւս Ե դարուն, ունեցած է իրականն ալ։ Այս ինքն ճաշը՝ մանաւանդ օտարաց տրուածը՝ կը սկսէր փոքր ինչ աղ եւ հաց ուտելով. եւ այս իսկ էր բարեկամութեան կապը՝

1. Յն. հաղորդեսցին։ — 2. Յն. «Աւազակքն զայն առնեն»։ — 3. Յն. լոկ սեղանն։

*զոր տեսանք հին ազգերու մէջ։ Իրական աղին կամ շատ աղոտ կարկանդակաց ճաշակումը կար յոյն սեղանին վրայ եւ՝ գինարբութեան պահուն (Դար. Ա, 1275). եւ կ՚երեւի թէ Փիլոնի օրով դեռ կ՚ուտուէր աղն իսկ, ըսել տալու համար անոր՝ թէ «աղ եւ սեղան» թշնամութիւններ չիջուցին (Ճոք. 17), համաձայն նաեւ յոյն բնագրին։*

*Միջին դարուն սակայն մեր քով դադրած է ապակերութեան սովորոյթը, եւ հին բացատրութիւնն ուրիշ արարողութիւն մը կը նշանակէ։ Տաթեւացին է զայս յիշատակողն՝ ըսելով. «Զի՞նչ է աղուհաց կըտրելն». եւ կը պատասխանէ. «Երկուքն բաժանեն զմի հացն. եւ դարձեալ հաստանեն ի ձեռս իւրեանց, եւ լինի խաչ»։ Այս ինքն՝ հազիւ ճաշի նստած, բարձերէցն եւ մերձաւորներէն մին սեղանէն նկանակ մը կ՚առնուն, եւ քաշելով՝ զայն երկու կտոր կ՚ընեն. յետոյ իւրաքանչիւրն իր ձեռքը մնացած մասը դարձեալ երկուքի կը բաժնէ, որով հացը խաչաձեւ կտրուած կը լինի։ «Զայս, կ՚ըսէ, ի Քրիստոսէ ուսաք». եւ այս պատճառաւ կը պահանջէ՝ որ քրիստոնէից հետ միայն կատարուի ա-*

րարողութիւնս, եւ «ոչ ընդ այլազգիս[1]» (Հրց. 655)։ Իրաւ է՝ թէ Յիսուս հացն «ե-բեկ» եւ այնպէս տուաւ ժողովրդեան, կամ աշակերտաց վերնատան մէջ (Մատթ. ԺԴ, 19. ԻԶ, 26). ինչպէս ըրաւ Պաւղոս ալ նաւուն մէջ (Գործ. ԻԷ, 35)։ Կրնայ մեր բեկումն այդ աւետարանական յիշատակէն ծագած լինել. բայց ոչ եւ խաչաձեւը, որ աւելի նմանութիւն է պատարագի նշխա-րին խաչանման բեկման, ինչ որ հին սո-վորութիւն էր արեւելեան արարողութեան մէջ։

Տաթեւացւոյն այդ աւանդութիւնը դեռ շարունակուեր է ԺԴ դարէն վերջ ալ։ 1662ի Ամստերդամեան տպ. Ժամագրին Նորամուտ հրահանգաց մէջ, զորս յետոյ ուրիշ տպագրութիւնք ալ կ՚առնուն, կայ այն տարբեր հանգամանօք։ «Օրհնող սե-ղանոյն», կ՚ըսէ, որ հարկաւ եկեղեցական է, «կալով կանգուն», կ՚առնու հացն ու կը բեկանէ մերձակայ «պատուաւորաց» եւ կամ ճաշը «պատրաստողին» հետ, «եւ նոքօք առ ամենեսեան». այս ինքն անոնք ալ իրենց մասէն կը բաշխեն բոլոր միւս մերձակայից յաջորդաբար։ Յետոյ օրհնողը

1. Այդ վերջին կտորը չակերտի մէջ՝ Վենետկոյ 1401ի և 1424ի օրինակաց համեմատ է, և տպագրին մէջ չկայ։

կ'ըսէ. «Ճաշակեցէք խաղաղութեամբ», եւ կը նստին ճաշի։

19. – Կարգ կերակրոց։ — Մեր խընդրոյն կարեւորագոյն մէկ կէտին վրայ ենք հոս. այն է՝ թէ ի՛նչ կ'ուտէին նախնիք եւ ի՛նչ կարգով։ Հարկաւ այս մասին բոլոր դարերն իրարու չպիտի նմանէին. զոր օրինակ հինգերորդին կերակրոց ճոխութիւնը, զանազանութիւնն ու նրբութիւնը չենք տեսներ ուրիշ ոչ մէկ ժամանակ, կամ գոնէ նոյնչափ մանր յիշատակուած չեն հետագայ մատենագրաց կողմանէ։ Կրնանք սակայն առանց սխալելու խորհիլ՝ թէ Հայաստանի անկախութեան կամ թագաւորութեանց միջոցին աւելի հարըստութիւն կար թէ ազնուականաց եւ թէ ժողովրդեան մէջ, եւ այդ շրջաններու խընճոյք աւելի շքեղ էին՝ քան բարբարոսաց տիրապետութեան ներքեւ տուայտող դարերու մէջ։ Հարստութիւնն էր՝ որ Հռովմայ դռներն ալ բացաւ զեղխութեանց առջեւ։ Տեսնենք ուրեմն ինչ որ հայ անցեալն աւանդած է մեզ։

Ա. Տարակոյս չկայ՝ թէ ուտելեաց մէջ առաջինն էր միշտ հացը, որ կ'ընկերէր ուրիշ կերակրոց, մերթ իր անունն ամբողջ ճաշին ալ տալով (տես, 112, '20), եւ որ մեծ խնամով կը պատրաստուէր՝

ըմինք՝ ազատաց համար (132)։ Այս պարագային իւր նիւթն էր ճաշիճ կոչուած ազնուագոյն ալիւրը (Փրպ. 331), որ կը մեկնուի՝ «որոշեալ ի թեփոյ» (Հրց. 359)։ Հացը կրնար լինել խմորուն (Ելք, ԺԳ, 3 եւն) կամ խմորեալ (անդ, ԺԲ, 15 եւն) կամ խմէալ (հին Թրգ. Մնց. Ա, ԻԳ, 29)։ Եւ անոր հակառակ՝ բաղարջ (Ծննդ. ԺԹ, 3 եւն) կամ անխմոր (Մնց. անդ)։

Խմորեալը բաժնուելով գնդակներու՝ կը կազմէր նկանակս (Մանդ. 32. Ագթ. 105. Դատ. Ե, 8 եւն) կամ նկանս (Ելք, ԺԲ, 39 եւն) կամ գրտակս (Վարք Հրց. Ա, 271)։ Այս խմորէն էր եւ «հաց կսկոծ (կրակով պնդացած՝) որ նկանն կոչի» (Կիւրեղ ի Հյկզ.)։ — Իսկ բաղարջի գնդակները կը կոչուէին պան (Ելք, ԻԹ, 2 եւն). զանազանութիւն մը՝ զոր կը դնէ Ս. Գրոց հայ թարգմանիչը, մինչ բնագիրը թէ նկանակին եւ թէ պանին դէմ ունի «հաց»։ Հայ մեկնիչք աղոնց երկրորդին բացատրութիւնը տուած են աւելի կամ նուազ միաձայնութեամբ։ Վանական վրդ. հարցնելով՝ «պանն ի՞նչ է», կը սահմանէ՝ «բոլոր բաղարձ» (Վնկ. Հրց.). եւ զոր Վարդան վրդ. իւր ժամանակի ձեւին ու կոչմանց կը մերձեցնէ՝ ըսելով. «պանն՝ բոկեղն բոլոր, մէջն խոր» (Ելից, ՃԺԸ), եւ կամ «պանս բա-

զարջս՝ շուրջ բոլոր եփեալ ձիթով ի թոնրի» (Ղեւտ. Ա)։ Իսկ Տաթեւացին այդ երկուքին բաղադրութեամբ կը հանէ այս բացատրութիւնը. «պան բաղարջն՝ է նաշիհն զանգեալ իւղով, եւ որպէս թոնեղն եփեալ ի թոնրի» (Հրց. 357)։ — Կար նաեւ բլիթ (Բ Թագ. Զ, 19 եւն), որ էր կակուղ մանրիկ հաց[1], երբեմն իւղով ալ եփուած տապակի մէջ (անդ, ԺԳ, 8–9)։ — Վարդան կը յիշէ այժմեան լաւաշի հոմանիշն ալ՝ լաւշ ձեւով (Եղից, ՃԺԸ. Ղեւտ. Ա)։

Անտարակոյս այդ բոլոր ձեւերը ժամանակին համեմատ եղած են հայ սեղանին վրայ, դառնելով իրենց տոհմային կոչումներէն։ Եւ բազմականք ադոցմէ ստուարները կամ պինդերը կտրելու համար՝ կը գործածէին դանակը, ինչպէս յիշեցինք այլուր (տես, 60)։

Բ. Գալով բուն կերակրոց, ասոնք կը լինէին թէ հեղուկ եւ թէ պինդ։ Ամենէն յառաջ սեղան կը բերուէր թանը (Մանդ. 36. Ծննդ. ԻԵ, 29. Ալաւ. ԺԱ), որ միջին դարուն՝ ինչպէս այժմ՝ ապուր ալ կ'ըսուի (Վաստ. 105)։ Ոսկեբերանի թարգմանիչն ինքնակամ յաւելուածով մը ցոյց կու տայ մեզ ասոր ճոխ զանազանութիւնն Հայոց

1. Ասոր նմանութեամբ է «բլթակ ունկան» կոչումը (Ելք, ԻԹ, 20) Հայոց յատուկ։

մէջ՝ ըսելով. «զգունակ (գունակ[1]) թանն եւ զարգանակ» (Մոթ. Բ, 69), որոց առաջինը կը նշանակէ ջրալից կերակուր՝ ընդեղէն եւ այլ նիւթերով, եւ երկրորդը՝ մսի ջուր, որ սահմանուած էին ախորժակ պատրաստելու։ Ասոնց կանխելն անկից յայտնի է՝ որ Խորենացին սպասուց յիշատակութեան մէջ նախ «տարգալը» կը դնէ՝ որով կ'ուտուէին աղոնք (հմմտ. անդ, 59), յետոյ «պատառաքաղը», եւ հուսկ «նուագը» (Խոր. 124). այս ինքն իրենց գործածութեան կարգին համեմատ։ Հաւանական է՝ թէ այս կերակրները կը բերէին սկաւառակներով կամ ափսէներով՝ որ իրենց խորութեամբ յարմար էին այդ պաշտօնին (անդ, 62-4), կը բաշխէին պնակաց մէջ (62), եւ կը դնէին կոչնականաց առջեւ։

Գ. Կը յաջորդէին հաստատուն ուտեստները, որոնք շատ զանազան էին մեր ազնուականաց խնճոյից մէջ։ Փարպեցւոյն Ե համարին մտադիր ընթերցումը ցոյց կու տայ մեզ ոչ միայն անոնց տեսակները, այլ եւ Այրարատայ՝ ազատաց սեղանին պարգեւած բարութեանց կարգաւոր յիշատակութեամբը տեղւոյ մը մէջ՝ կարծես մեր առջեւ կը դնէ անոնց ճաշակման կարգն

1. Ուղղելի է «գունակ գունակ», որ է զանազան տեսակ։

էր[1], եւ ըստ ճոխութեան հայ լեզուին եւ խոհանոցին՝ իրեն հոմանիշ ունէր խոհք[2] եւ համադամք[3] կամ համահամք[4] բառերը. ըստ որում աղոնց մէջ կը խառնուէին համեմք[5] կամ համեմանք[6] կամ համեմոցի ամոքանք[7], որ պաշտօն ունէին «առ զանազան խորտիկսն անուշել» (Յճխ. 59)։ Մանաւանդ թէ աղոցմէ՝ կախուած էր կերակրոց յաջողութիւնը. այս պատճառաւ ազնուականք պատրաստել կու տային «համեմ խախամոքք անուշարար առանձինն»՝ իրենց խոհանոցին համար (Եղիշ. 173), բաղադրուած անշուշտ շտեմարանի ծանօթ նիւթերէն (անդ, 15–6). չհաշուելով սովորական աղը (անդ, 16), զոր մատենագիր մը կ՚անուանէ «անուշիչ խորտկաց, որ զհամեղութիւն ճաշակացն համահամ քըմացն տայ» (Յճխ. 110)։

2. Մեր տիկնայց, եւ յայտնի է թէ տերանց ալ, փափկաճաշակ քիմքերը շատ կ՚ախորժէին պարարիլ նաեւ «ուղղովք զուարակաց» կամ ընտանի մեծ անասնոց (Ե-

1. Եղիշ. 107, 217. Փրպ. 28. Յճխ. 59. Կաղ. 47. Ոսկ. Թղթ. Ա, 127, 469, 530. Մտթ. Բ, 69, 71. Մննդ. ԽԼ, 4 եւն։ Ծագած է Պրս. խարդի կամ Պահլ. խարտիկ հոմանիշէն (Հիւբշ. 161)։ — 2. Փիլ. Ճոք. 15, 21. եւն ի Հյկգ։ — 3. Ոսկ. Թղթ. Ա, 127, 469. Մտթ. Բ, 69. Տար. Վերլծ։ — 4. Յճխ. 58, Մանդ. 30, 36։ — 5. Յճխ. 59։ — 6. Ոսկ. Մտթ. Բ, 69։ — 7. Փիլ. Ճոք. 21, 30։

դիշ․ 174), որ բնականապէս առանձին պնակ մը կամ լաւ եւս պնակներ կը կազմէին կոչնոց մէջ, եփուելով զանազան կերպով, ինչպէս կրնայ գուշակուիլ «ուղղովք» յոգնականէն․ Թէ եւ այդ ձեւը կրնայ նաեւ հետեւանք լինել զուարակաց զանազանութեան։

3․ Կերակրոց երկրորդ գլխաւոր տեսակը կը յօրինէին թռչնեղէնք։ Ազատորդւոց սիրական զբօսանքն էր որսալ զանոնք, որոցմէ կը յիշուին՝ կաքաւուց ու սալամբաց երամներ, անուշահամ վայրի ագարներ, ջրասէր փորը, թանձրն ու սագը, եւ ուրիշ «անհամար ցամաքայնոցն եւ ջրայնոցն ջոկք թռչնոցն», զորս ըստ բախտին կը բերէին «ի յաճումն ընթրեացն ուրախութեան» (Փրպ․ 26–7)։ Ասոնց ալ հռչակաւոր վայրերն էին Այրարատ (անդ) եւ Կարին (Խոր․ 256)։

4․ Երրորդ կերակուրն էին ձկնեղէնք։ Մեք տեսանք ասոնց առատութիւնն Հայաստանի ջրերուն մէջ (աստ, 113)։ Մեր նախարարք ձկնորսութեան մարմաջը չունէին․ դանդաղ եւ անհրապոյր զբօսանք մ'էր այդ․ բայց կը սիրէին ջրայիններն ալ, եւ որսալ կու տային շինականաց։ Բաց աստի՝ երբ իրենք երէներով ծանրաբեռնած կը դառնային, ձկնորսաց ման-

կտրին «հանապազօրեայ սովորութեամբ» մ'անոնց ընդ առաջ վազելով, կը նուիրէին «ձկունս ի յորսոյ», փոխարէնն ընդունելով անոնց սպանած անասուններէն։ Եւ ցամաքայնոց հետ միասին այդ ջրայինք ալ կ'ելնէին ազատանւոյն սեղանին վրայ, «յորոց ուրախացեալ բերկրին, կ'ըսէ Ղազար, ձկնակերացն եւ մսակերացն անձինք» (Փրպ. 27–8)։ Ջուկն այնչափ յարգի էր կոչնոց մէջ, որ Արշակունի թագաւորն անոցմէ անպակաս գնելու համար իւր սեղանին վրայ, ունէր յատուկ վայր մը՝ «ձկնատեսանք» կոչուած (Փաւս. 19)։ Միջին դարուն մամիկոնեան իշխանը Թոռնիկ «կարմրախայտն» իբր յարգի նուէր՝ կը խոստանայ յղել Գր. Մագիստրոսի՝ իւր աներոջ, որ զաւեշտօրէն կը պատասխանէ՝ թէ ի՛նչպէս անոր տենչանօք կը սպասէ «նօթի՝ զայսքան երկարութիւն աւուրց կրել տագնապ քաղցոյ»։ Եւ տեսնելով որ կ'ուշանայ, կը պահանջէ խոստացածը ղրկել, սպառնալով արձակել անոր դէմ «ճարտասան բանիւք ճայթմունս առասութեան, զի ոչ քաղցրասցի, կ'ըսէ, ի կոկորդս քո պարարտութիւն կարմրախայտիդ», եւ բոլոր կերածներդ «զօրէն Կոռնեայ ժայթքեալ արտաքս բերցես» (Մագ. 214–5)։ Նոյն պահլաւունի իշխա-

*նը Սիւնեաց արքեպիսկոպոսին. ինքն ալ պարզեւ կը յղէ Արածանիէն որսացուած ձկներ (անդ, 45)։*

*Նոյն ինքն դարձեալ կ'իմացնէ մեզ՝ թէ քանի՞ կերպով կը պատրաստուէին անոնք խոհանոցին մէջ։ Կամ կը խորովէին շամփրով կրակի վրայ. կամ ջրով սանի մէջ. կամ իւղով տապակի մէջ. կամ կրակի կայծերու վրայ՝ քառանկիւնի եւ ուղղանկիւնի ձեւով պատած «արմանօք», որ մեկնութեան կը կարօտի. կամ երկայնաձեւ «կտապս» կազմելով, զոր կը կարծեմ խմորով շաղած ու տապակած. կամ մանրելով ու «պարսկական խորտիկս» շինելով. եւ հուսկ՝ անոնց վրայ ցանելով ոսկեգոյն քրքում, ռետին եւ ոքսիմելի (յն.) որ է քացախամեղր (անդ, 214)։*

5. *Փարպեցւոյն տեղեկութեանց մէջ կը գտնենք ազնուականաց սեղանին իբրեւ չորրորդ զարդ՝ «բազմազան վայրենի հաւուց ձագս եւ ձուս», զորս ձկնորսաց ժիր մանկտին կը հաւաքէր «Գետոյն՝» այն է Երասխայ անմարդի մենաւոր կղզեկներէն, եւ կը բերէր կ'ընծայէր իր իշխանաց (27)։ — Հաւանական է՝ թէ այս տեղ կը ճաշակէին ուրիշ կթեղէններն ալ՝ զորս տեսանք մշտապատրաստ կամ դեռ նոր բերուած դրուած շտեմարանաց մէջ (աստ. 16)։*

6. Վերջապէս կը տեսնենք հոն նաեւ «զանուշահոտ զմեղրահամ քաղցրութիւն բանջարացն», Այրարատայ դաշտաց ու գետոց ներդաշնակ միութեան ծնունդներ (Փրպ. 23), որոցմէ ոմանք անշուշտ առանձին կ'ուտուէին՝ զգացնելու համար իրենց «մեղրահամ քաղցրութիւնը». ինչպէս խաւարտը՝ որ Սաթինկան տենչանքն էր (աստ, 142), հազարը (Եզն. 66) եւ ուրիշներ։ Մինչդեռ ծնեբեկ (Խոր. 595), սամիթ (Մտթ. ԻԳ, 23), փեգենայ (Ղկ. ԺԱ, 42), ճակնդեղ (Ես. ԾԱ, 20), կաղամբ (Փաւս. 55), թաղթ, շաղգամ, ստեպղին, սպանախ եւ այլք եփուելով կ'ուտուէին (Գոշ՝ Առկ. 49, 51, 53, 55)։

Ղազար՝ որ հայ կոչնոց ճոխութեան գըլխաւոր նկարագրիչն է, ոչ միայն ականատես էր անոնց, այլ երբեմն կենակից ալ եղած Մամիկոնեան պայազատաց (572) եւ անոնց հետ միասին վայելած. ուստի եւ իւր վկայութիւնը բացարձակապէս պատմական է։ Աւելին կայ։ Բնական էր՝ որ ուտելեաց զանազան տեսակներն արուեստով մը պատրաստուէին, ինչպէս ըսինք ձկանց համար, բաղադրուելով իրարու եւ արմտեաց հետ (աստ, 15), յօրինելու համար կերակրոց այլ եւ այլ տեսակներ, ինչպէս կ'ընէին նաեւ Հռովմայեցիք (Գար.

Ա, 128), *եւ մեզ ժամանակաւ՝ աշխարհով ու բարուք մերձաւոր Անտիոքացիք, որոց քով կը տեսնենք «զազգի ազգի համեմանս ընդ միմեանս խառնեալս, զդալար եւ զչոր խորտկացն համաղամս... եւ կէսք զառաջին հաւն կայծակամբք խորովեալ՝ լցեալ մանր ձկամբք՝ նախ հրամայեն բերել. եւ այլք այլ իմն սկիզբն օրինացն այնպիսի ընթրեաց առնեն» (Ոսկ. Մատթ. Բ,* 69)։ *Այս նկարագիրը, զոր հայ թարգմանիչը կրնար անշուշտ տոհմային խոհանոցին համար եւս կրկնել, ուշագրաւ է ոչ միայն կերակրոց յօրինուածով, այլ ճաշացուցակին ըստ կամս զանազանութեան կողմանէ եւս՝ զոր կը յիշէ։*

20. – *Եղանակ ճաշակման։* — *Ակնարկեցինք այլուր* (*տես*, 66) *մեր նախնեաց այլ եւ այլ սպասներէ ուտելու սովորութեան, որ ծանօթ է զէթ ազնուական դասուն մէջ, մինչ Հրեայք մէկ անօթէ կը ճաշէին* (*տես*, 63. *Վիգ. Ե*, 1047)։ *Մերը նման էր Հելլենաց ու Հռովմայեցւոց կերպին, որոց քով ամէն սեղանորդ իւր բաժինը կ'առնուր հասարակաց ամանէն իւր պնակին մէջ, կամ ծառայք կը բաժնէին անոնց* (*Դար. Ա*, 1274, '80)։ *Արդ՝ հայ տաճարին ոտնկայ սպասաւորք* (*տես*, 134–5), – *հաւանօրէն առաջնորդութեամբ*

6. Վերջապէս կը տեսնենք հոն նաեւ «զանուշահոտ զմեղրահամ քաղցրութիւն բանջարացն», Այրարատայ դաշտաց ու գետոց ներդաշնակ միութեան ծնունդներ (Փրպ. 23), որոցմէ ոմանք անշուշտ առանձին կ'ուտուէին՝ զգացնելու համար իրենց «մեղրահամ քաղցրութիւնը». ինչպէս խաւարտը՝ որ Սաթինկան տենչանքն էր (աստ, 142), հազարը (Եզն. 66) եւ ուրիշներ։ Մինչդեռ ծնեբեկ (Խոր. 595), սամիթ (Մտթ. իգ, 23), փեգենայ (Ղկ. ժԱ, 42), ճակնդեղ (Ես. ԾԱ, 20), կաղամբ (Փաւս. 55), թաղթ, շաղգամ, ստեպղին, սպանախ եւ այլք եփուելով կ'ուտուէին (Գոշ՝ Առկ. 49, 51, 53, 55)։

Ղազար՝ որ հայ կոչնոց ճոխութեան գլխաւոր նկարագրիչն է, ոչ միայն ականատես էր անոնց, այլ երբեմն կենակից ալ եղած Մամիկոնեան պայազատաց (572) եւ անոնց հետ միասին վայելած. ուստի եւ իւր վկայութիւնը բացարձակապէս պատմական է։ Աւելին կայ։ Բնական էր՝ որ ուտելեաց զանազան տեսակներն արուեստով մը պատրաստուէին, ինչպէս ըսինք ձկանց համար, բաղադրուելով իրարու եւ արմտեաց հետ (աստ, 15), յօրինելու համար կերակրոց այլ եւ այլ տեսակներ, ինչպէս կ'ընէին նաեւ Հռովմայեցիք (Դար.

Ա, 128), եւ մեզ ժամանակաւ՝ աշխարհով ու բարուք մերձաւոր Անտիոքացիք, որոց քով կը տեսնենք «զազգի ազգի համեմանան ընդ միմեանս խառնեալս, զդալար եւ զչոր խորտկացն համադամս... եւ կէսք զառաջին հաւն կայծակամբք խորովեալ՝ լցեալ մանր ձկամբք՝ նախ հրամայեն բերել. եւ այլք այլ իմն սկիզբն օրինացն այնպիսի ընթրեաց առնեն» (Ոսկ. Մատթ. Բ, 69)։ Այս նկարագիրը, զոր հայ թարգմանիչը կրնար անշուշտ տոհմային խոհանոցին համար եւս կրկնել, ուշագրաւ է ոչ միայն կերակրոց յօրինուածով, այլ ճաշացուցակին ըստ կամս զանազանութեան կողմանէ եւս՝ զոր կը յիշէ։

20. – Եղանակ ճաշակման։ — Ակնարկեցինք այլուր (տես, 66) մեր նախնեաց այլ եւ այլ սկտեղներէ ուտելու սովորութեան, որ ծանօթ է զէթ ազնուական դասուն մէջ, մինչ Հրեայք մէկ անօթէ կը ճաշէին (տես, 63. Վիգ. Ե, 1047)։ Մերը նման էր Հելլենաց ու Հռովմայեցւոց կերպին, որոց քով ամէն սեղանորդ իւր բաժինը կ'առնուր հասարակաց ամանէն իւր պնակին մէջ, կամ ծառայք կը բաժնէին անոնց (Դար. Ա, 1274, '80)։ Արդ՝ հայ տաճարին ոտնկայ սպասաւորք (տես, 134–5), – հաւանօրէն առաջնորդութեամբ

տաճարապետի կամ հացերիցու մը[1], ուր դերն ունի Դրաստամատ՝ Արշակայ ընթրեաց մէջ (տես, 135), — յիշեալ բոլոր խորտիկները, պատրաստութեան կերպին համեմատ՝ որով կը լինէին «դալար եւ չոր», այս ինքն լոյծ կամ պինդ, առանձին ընկուզաւոք եւ կամ մեծ սկտեղներով (տես, 63; 65) ի սեղան կը բերեն, կը բաշխեն առանձին փոքր սկտեղաց մէջ եւ «դնեն առաջի» կոչնականաց (Եղիշ. 173), — գործ՝ զոր երբեմն տանուտէրն իսկ կ'ընէր, ինչպէս պիտի տեսնենք յաջորդ համարին մէջ: — Իսկ անոնք՝ դանակով եւ օգնութեամբ պատառաքաղին կամ մակալին, զորս քաղաքակիրթ նրբութեամբ մ'ի ձեռին բռնած են (տես, 60-1), պատառ պատառ կ'ընեն կերակուրը, եւ պատառաքաղով իրենց բերանը կը տանին:

Այս պահուն սպասաւորաց բազմութիւնն աշխուժիւ եւ արթնութեամբ կը ծառայեն բազմականաց, կանգնելով միշտ

1. Առաջինը գործածուած է ի Ծննդ. ԽԱ, 22. ԽԶ, 26, անկախաբար յն. հարսնածուէն. եւ ի Ցհ. Բ, 8, 9 արմատակից է յունարէնին: Իսկ երկրորդն՝ ի Դատ. ԺԴ, 20, Սամփսոնի հարսանեաց առթիւ՝ այսպէս, «ընդ հացերիցուն նորա», փոխան յն. «ընդ միում ի բարեկամաց նորա». որով չի կրնար գահերէց իմացուիլ, այլ հոմանիշ տաճարապետին: Երկուքն ալ սակայն, դատելով իրենց կազմէն, չեն պահանջեր լոկ հարսանեաց հետ կապուիլ:

«ի բիկանց կողմանէ» (Կաղ. 126), եւ այնպէս ընելով կամ փոխելով սպասները։ Ասոր պատճառ՝ բազմելոց դիրքն էր, որոյ փոփոխութեամբ՝ ծառայից տեղն ալ պիտի փոխուի յետոյ (տես 197)։

21. — *Հիւրամեծարութիւն*։ — Մինչ դեռ ծառայից դասն այդպէս կերակրները կը պաշտէ, կոչնատէրն ալ յատուկ դեր մը կը կատարէ հրաւիրելոց հանդէպ։ Բարձի պատուաւոր ուշադրութենէն զատ՝ զոր ըրած էր ի սկզբան (աստ, 164), ստէպ կ'ելնէ իր բազմոցէն, եւ քաղաքավար հոգածութեամբ մը կը դառնայ անոնց չորս կողմը, «զնոքօք շրջելով». կը խօսակցի իւրաքանչիւրին հետ «քաղցր բանիւք» (Մանդ. 59), զորս ուրիշ մը կը կոչէ «բանս ուրախարարս եւ խրախճանականս, որ յոյժ լաւագոյն է հիւրոցն՝ քան զկերակուրսն» (Ընդհ. 29). եւ մինչեւ անգամ խոնարհաբար «սպասաւորելով» անոնց, ու հսկելով մանաւանդ՝ որ կերակուր կամ ըմպելի չպակսի անոնց առջեւէն (Մանդ. 59)։ Այս ձեւերն ըստ վերջին խստադատ նկարագրողիս ուրիշ բան չեն՝ բայց «ստակասպասութիւն» (60). զի բնականապէս քաղաքավարութիւնն անկեղծութեան հայելին չէ միշտ՝ ոչ այսօր եւ ոչ անցելոյն մէջ։ Մեք զինուոյ ժամանակ ալ կը

տեսնենք զՊապ, որ «յոտն կացեալ, հոլանեալ», որ հասկանալի է պատմուճանին թեզանիքը հանգրիճած՝ քան զգեստի ուրիշ թեթեւացում մը[1], «ի մէջգետին[2] անցեալ», այս ինքն մէջտեղ գալով, սուտակասպասութեան վատթարագոյն օրինակ թունալից «անապակ մատուցանէր» Ս. Ներսեսի (փաւս. 216)։ Պատիւ մը, զոր իրաւ կամ կեղծ՝ անշուշտ հայրապետին միայն կրնար ընծայել արշակունի թագաւոր մը։ Ընդ հակառակն իւր բարեպաշտութեան ճշմարիտ թելադրութեամբն էր՝ որ խաչենացի պատուական ազատն Հասան՝ իւր ծանօթ ճաշին ժամանակ «ինքնին իսկ ձեռօք իւրովք պաշտէր զբազմեալսն» (Կիր. 147)։ Եւ այս քաղաքավար ցոյցը կը յարատեւէ միշտ. եւ ոմանց միայն յատուկ չէ, այլ ամենուն, ըսել տալու համար Նիւսացւոյն մեկնչին՝ թէ «սովոր են մարդիկ» որ հրաւիրողներն «անձամբ պաշտեն զսեղանն» (Լծ. Հյր. ժԴ)։

1. Զի վերեւ (157) իւր գլուխն յայտնապէս բաց տեսանք, եւ սամոյրի գործածութիւնն անհաւանական։ Իսկ «հոլանեալ՝» մասնական մերկացման համար եւս կրնար ըսուիլ, ինչպէս գլխոյ (Գ Մակ. Դ, 6), որ եւ «հոլանի» կ'ըսէին (Ա Կոր. ԺԱ, 13)։

2. Մէկ բառ՝ ըստ ուղղագր. Տ. Ն. Բիւզանդացւոյ (Կոր. Վրդ. 245-6)։

Եթէ ազնուականաց կամ մեծատանց հաճելի էր իրենց պատուակցաց կամ բարձր դասու կոչնականաց ծառայել, յիշեալ մեծ կաթողիկոսը Ներսէս ալ իւր տաճարի աղքատաց կ'ընէր նոյնը։ «Ինքնին իսկ, կ'ըսէ պատմիչը, ջամբէր նոցա զիւրաքանչիւր կերակուրս» (Նոյն, 77)։ Ջամբել՝ այս տեղ հարկաւ հասկանալի չէ բերանը դնել ուտեստը, այլ անոնց առջեւ, անոնց պնակաց մէջ[1]։ Այս իմաստն յայտնի է ուրիշ օրինակէ մ'ալ՝ զոր կ'աւանդէ Գր. Մագիստրոս, պատմելով իւր համանուն պապուն եւ Շուշան կանին համար՝ թէ սովոր էին «իւրովին ձեռօք իսկ կերակրել զաղքատս եւ զկրօնաւորս» (43)։ Ազնուական տանուտերց վերոյիշեալ «սպասաւորելն» ալ մի՛ թէ նո՞յն չէ ասոնց ըրածին հետ։ Եւ արդէն Հրէից քով եւս տանուտէրը կը բաժնէր կերակուրը, գէթ որքան յիշուած է ընտանեկան ճաշերու մէջ (Ա Թագ. Ա, 4–5)։

Աշոտ Ողորմած աւելի զարմանալին կ'ընէր։ Իւր սեղանակից աղքատներէն զոմանս՝ «իշխանս եւ իշխանաց իշխանս եւ կիւրապաղատս» կ'անուանէր եւ «զբօս-

1. Հրեայք կ'ըսէին. «Ո՞ ջամբեսցէ մեզ միս» (Թիւք, ԺԱ, 18). եւ Առաքեալը՝ թէ «Ջամբեցից զամենայն ինչս իմ աղքատաց» (Ա Կոր. ԺԳ, 3)։

նոյր նոքօք», ցուցնելու համար՝ թէ այդ տիտղոսներն իրապէս կրող անձինք աւելի չէին արժեր յաչս իրեն։ Դարձեալ «զքոսն կարմիր եւ զվէրս նոցա՝» ազնուական կոչնականաց վրայ շողացող «զարդուց եւ ականց փայլելոց» տեղ կը համարէր։ Եւ պարագայ մը, որ առանց թափանցելու այդ արքային բարեպաշտ հոգւոյն մէջ՝ խորշում պիտի պատճառէ, — եւ եթէ պատմիչն ալ չի չափազանցեր, — թագաւորական բաժակով ըմպելի կու տար անոնց. եւ «յորժամ թարախ վիրաց նոցա խառնէր ընդ գինւոյն», անոնց մնացորդը կ'առնուր ինք կը ճաշակէր (Ասող. 180—1)։

Հայոց արքունիքն ունէր մեծարանաց ուրիշ ցոյց մ'ալ, որ ծանօթ է Արշակունեաց շրջանէն. այն է՝ պարգեւ տալ հրաւիրելոց։ Այսպէս Պապ «ի ժամ ընթրեացն» հրամայեց «տանել պատմուճան ագուցանել» Դղակ մարդպետին, անշուշտ արքունի հանդերձատան մէջ, եւ հագուցին անոր «դրաստու եւ վարտիս» (Փաւս. 204)։ Այս պատիւն ամէն հոն ներկայից չի ըներ թագաւորը, այլ յիշեալ իշխանին միայն՝ զոր կ'ուզէ իբրեւ թէ աւելի եղանակաւ մը պատուել։ Բայց թէ Դղակի եղածն արդիւնք էր սովորութեան մը, ոչ թէ դիպուածի, յայտնի է Ագաթանգեղոսի

*մէկ տեղէն, որ․ աւետարանի քարոզութիւնը կ՚առակէ խնճոյից, ուր Քրիստոս կը լինի «հրաւիրակ[1]» որ համանիշ է նուիրակին (սատ, 126), «մատռուակ» եւ «պաշտօնեայ»․ եւ դարձեալ «նա ինքնին բազուկս ի վեր հարեալ[2], ի մէջգետին անցեալ՝ պարգեւատու լինէր իւրոցն արժանաւորաց[3]» իբրեւ թագաւոր մը* (424–5)։ *Ուրեմն շատերու պարգեւներ կու տայ նա հոս, բայց ոչ բոլորին զգեստեղէն․ եւ այն ալ տաճարին մէջ եւ իւր ձեռքով։ Արդարեւ Հռովմայեցիք եւս սեղանի վրայ կը նուիրէին զգեստներ եւ զանազան իրեր* (*Դար․ Ա*, 1280, 322)․ *իսկ Պարսիկները՝ տօնական հագուստ մը* (*Վիգ․ Բ*, 2215)․ *զոր օրինակ Յազկերտ տուած էր Վասակայ «զպատուական հանդերձն» զոր ունէր* (*Եղիշ․* 117), *որ կրնայ իմացուիլ թէ խնճոյից պահուն եւ թէ յղուած ի Հայաստան, ինչպէս որ Յազկերտի նախնիներէն մին եւս «ետ տանել․․ պատմուճան» Զարմանդուխտ տիկնոջ եւ Մանուէլի* (*Փաւս․* 245)։

1․ *Նոյնպէս կոչուած նաեւ Եփրեմի Թարգ․* (Բ, 51)։ — 2․ *Այդ բացատրութիւնն համանիշ է Փիլոնի ըսածին, «ծղիս ի վեր ամբարձեալ՝ յառաջ մատիցուք»* (*Ճոք․* 240), *որ է ըստ յն․ բնագրին պատրաստուիլ, ձեռնարկել գործի մը*։ — 3․ *Վենետկոյ տպ․ «արժանեացն՝» ըստ Պարիս․ օր․ իսկ Պոլսոյ տպ․ և Վենետ․ գրչ․ կամ սրբագրեալ օրինակներն ունին «արժանաւորաց»*։

Ռուբինեանց Թագաւորօրհնէից մէջ եւս, որ թէպէտեւ լատիներէնէ թարգմանուած՝ բայց մեր մէջ գործածական էր, կը յիշուին պարգեւներ՝ զորս յետ ընթրեաց կու տար Նորապսակ արքայն։ Ոսկեսար կամ արծաթասար երիվարը, որով հանդիսապէս մեկնած էր եկեղեցիէն, կը շնորհէր ասպարապետին (գունդստապլ)․ հալաւ եւ ոսկեղէն գօտի մը՝ թագադրին․ իւր գործածած ոսկեղէն կամ արծաթի սկուտղն ու դգալը՝ տաճարապետին (սինեսկալ)․ ոսկի կամ արծաթ դաշտիշոնն ու դասպրիկը՝ սենեկապետին (ջամբռլայ), որ սեղանին սկիզբը ջուր լցեր էր արքային ձեռաց վրայ․ ոսկեղէն կամ արծաթեայ «գուռն եւ զքսխտին», որ են թակոյկն ու սափոր, գինէպետին (պօդլեր)․ եւ բոլոր միւս պաշտօնէից «տայ շնորհս ըստ կամաց իւրոց»։ Կը պատուիրէ՝ որ թագուհին ալ տայ «շնորհս» իրեն սպասաւորող տիկնանց (Սիս․ 475)։ Չեմ կարծեր՝ թէ պարգեւատրութիւնը լոկ պսակման ընթրեաց հետ կապուած լինի Ռուբինեան արքունեաց մէջ, եւ միւսներէն վտարուած։

Նոյն իսկ սրբոյն Ներսեսի իւր կոչնական աղքատաց ազուցած հանդերձն ալ, զոր տեսանք (տես, 152), արդիւնք հա-

մարելու ենք նոյն սովորութեան, զոր բարեբախտաբար Մանդակունին եւս կը յիշէ՝ ըսելով. «Որ զաղքատսն եւ զկարօտեալսն կերակրէ, ... զՔրիստոս կերակրէ, զՔրիստոս զգեցուցանէ» (61)։ Այս տեղ զգեցումը քան զկերակրելը կանխելու էր ըստ իրական կարգին՝ որ պահուած է Դղակի եւ Ներսեսի աղքատաց նկարագրին մէջ, որպէս զի պարգեւական զգեստով բազմէին ճաշին ըստ պատշաճի։

Արքունի հացկերութեանց պահուն յարգանաց նշան մ'ալ կոչնականք կ'ընծայէին ծիրանափառ ընթրատուին, կանգնելով ամէն անգամ որ նա հարկադրէր ելնել տաճարէն։ Վարազդատայ կոչնոց մէջ երբ արքայն ելաւ՝ «յապարահէ զանց առնելոյ պատճառաւ», այս ինքն է ճեմիշ երթալու համար, բազմականք «յոտն կացին առ հասարակ, իբրեւ նմա պատիւ ինչ առնել» (Փաւս. 237)։ Թերեւս նոյնը չէին ըներ՝ երբ կոչնատէրն իրենց աստիճանակից լինէր։

22. — **Լռութիւն**։ — Գրիգոր Տաթեւացին կերակրոց գլխոյն մէջ այս հարցումը կ'ընէ[1]. «Զի՞նչ է որ ի մէճլիսն[2] յան-

1. Հարցդ ու պատասխանդ ըստ տպագրին եւ Վենետկոյ 1424ի օրինակին է, եւ չկայ 1401ի օրինակին մէջ։ — 2. 1424ի օր. «ի մջլիսն»։

կարծ ժամ մի լռեն»։ Եւ կը պատասխանէ՝ թէ ՑՀ. Մկրտչի գլուխն երբ Հերովդի բազմականաց մէջ բերին, «ամենեքեան սարսեցին եւ լռեցին. եւ այս նշանակ մնաց ամենայն ուրեք» (Հրց. 656)։ Մեզ այս քմածին մեկնութենէն աւելի կարեւոր է տուած տեղեկութիւնը, որ եթէ ոչ հնոց՝ գէթ իր ժամանակին համար կը զօրէ։ Հոս արուայիկն մեծիս՝ բազմութեամբ հացկերոյթն է, ինչպէս կը կոչէ նաեւ Եզնկացին Մովսէս (աստ, 141)։ Իսկ «լռեն՝» բացարձակ իմաստով առնելու չենք անշուշտ, այլ իբր ուտելու եւ ազմկի դադար մ'ընդ մէջ կերակրոյն եւ գիներբուաց, զուցէ որպէս զի ծառայք սեղանները պատրաստէին այս երկրորդ հանդիսին։ Թերեւս կոչնականաց ծանրաբեռն ստամոքսին հանգիստ մը տալու դիտաւորութիւնն ալ կար այդ «մի ժամուն» մէջ։ Իրաւ է՝ թէ Հռովմայեցիք եւս պահ մը կը լռէին այս տեղ, բայց աստուածոց կարկանդակ ու գինի նուիրելու՝ եւ ապա գինարբուքն սկսելու համար (Դար. Ա, 1281)։ Մեք վանականաց ճաշի նկարագրին մէջ պիտի տեսնենք՝ որ անմռունչ լռութիւնն անծանօթ էր հին դարերուն նոյն իսկ կրօնաւորաց սեղանին վրայ, թող թէ աշխարհականաց։

**ԳԻՆԱՐԲՈՒՔ**

*Առաջին տեսարանին վարագոյրն ուրեմն փակուեցաւ՝ որպէս զի երկրորդինը բացուի։ Յարդ եղածը կոկորդի պահանջ մ'էր լոկ, տարապայման ու զեղխ պահանջ մ'անշուշտ։ Իսկ հիմայ պիտի սկսի խրախութեան բաժինը. եւ բուն այս է Հայուն գինարբուքն իւր լծորդներով՝ զոր տեսանք* (*տես*, 120-1), *Հելլենին* συμπόσιον*ը եւ Հռովմայեցւոյն* comissatioն, *երեքն ալ հոմանիշ եւ համազօր կատարելապէս երրեակ ազգերուն մէջ* (*Դար*. Ա, 1373). *եւ ոչ անշուշտ աղոնց մէջ միայն։*

23. — *Պատրաստութիւն։* — *Սեղաններն հիմայ դատարկուած են կերակրոց սպասներէն։ Եւ անոնց կեղտերէն մաքրուելու համար՝ հաւանօրէն ձեռաց լուացում մ'ալ հոս կը կատարուի. ըստ որում ճաշէն վերջ լուացումն ալ յիշուած է Հելլենաց* (*Դար*. Ա, 1275) *եւ առաջին քրիստոնէից մէջ՝ ըստ Տերտուղիանոսի* (*Մարտ*. 698)։

*Յառաջ կ'անցնին մատռուակները տակառապետին առաջնորդութեամբ* (*տես*, 134, '5), «*պատանեակք լուսատեսակք*» (*Արծ*. 332), *այս ինքն գեղեցիկ կամ ըսպիտակազգեստ, որոց պաշտօնն այս պա-*

հուս կը սկսի . եւ ներս կը կրեն գինելից թակոյկները՝ ճաշակներով հանդերձ, գուցէ եւ առատակներն ալ (տես, 79–82, 134), զորս կը բերեն կը դնեն մէկուսի։ Եւ ադօցմէ մանաւանդ «թակոյքն ճախարակեալ եւ յօրինեալ՝» իրենց հրապուրիչ կազմով ու բովանդակութեամբ « փութացուցանեն զմիտս գինարբուացն » (Նար. 342), ինչպէս կը կոչուին հիմայ մեր բազմականք ուրիշ մատենագրերէ եւս (Փիլ. Ճոք. 18. Խոր. 276, ծն. 3), եւ որ հանգանակիցք եւս կ'ըսուին իրարու (Լմբ. Թղթ. 241), կազմուած հանգանակ բառէն՝ որ արբեցութիւն ալ կը նշանակէ ( Նար. 517 ), եւ հանգանակող՝ արբեցող (Աշտ. ԼԳ)։

Ներս կը բերեն նաեւ նուագները, տաշտերը, բաժակներն եւ ուրիշ ըմպանակներ, գործածուած ըստ դարուն եւ կոչնականաց վիճակին (տես, 58–79), գուցէ նաեւ ըմպելեաց զանազանութեան համեմատ (տես, 22–3), եւ կը սկսին լեցնել ու զետեղել բաժակակալ սկտեղներու վրայ՝ որոցմով պիտի տանին դնեն կոչնականաց առջեւ։ Զայս կը ցուցնէ Եղիշէի բացատրութիւնը՝ թէ «անկեան (դրուեցան) բաժակակալք յուրախութիւն» (173–4). եւ Պապ տաշտով խմելու պահուն սկուտղը կը հանգչէր իւր առջեւ. այնպէս որ երբ յանկարծ զարկին

կորեցին գլուխը, տաշտն ու արիւնն ըն-
կան «ի վերայ բաժակալ սկտեղն» (փաւս.
233)։

Հակառակ միւս սպասաւորաց՝ որ «ի թիկանց կողմանէ» կը ծառայէին (սոյն, 187), մատռուակները կը կանգնին «առաջի» կոչնականաց (Կաղ. 126)։ Այս պարագային՝ զոր մեր դրացի Աղուանից հայաբարբառ պատմիչը կ'աւանդէ, համոզուած եմ թէ մեզ եւս սեպհական էր։ Եւ կը ստիպէ զմեզ գուշակել՝ որ այս տեղ կարեւոր փոփոխութիւն մը կը կատարուէր։ Սեղաններն ու բազմականք կը տեղափոխուէին պատերուն մօտ, եւ կոչնականք կը նստէին սեղանոց ետեւ միայն, ազատ թողլով առաջակողմն եւ ատեանը գուսանութեանց ու պարերու՝ որ այժմ պիտի կատարուին, եւ մատռուակաց ըսպասաւորութեան՝ որոնք սեղանոց այդ դիրքի մէջ բնականապէս «առաջի» պիտի կանգնէին։ Արդէն Հելլէնք սեղաններն անգամ կը փոխէին (Դար. Ա, 1275), եւ իրենց ու հռովմէական գինարբութեանց հին ձեւերու մէջ սեղանի երեսն ազատ է միշտ՝ ծառայից ու երաժշտաց համար (անդ, 1274, '76, '80)։

24. — *Նուագ ուրախութեան*։ — Այսպէս եւ կամ ուրիշ հոմանշերով կը կո-

չունէր առաջին եւ համարակաց արբումն համանուն նուագ գաւաթով (աստ, 68), որ սկիզբ կու տար սոյն զուարթ հանդիսին, եւ որով կը լինէր «ընդ գինիս մտանել» (Ագթ. 49. Փաւս. 52, 232. Դան. Ե, 1)։ Սա իր հետ ունէր արարողական յատուկ ձեւ մը. որով ատոր հետ շփոթելու չենք քանի մ'օրինակներ, որոց մէջ նոյնպէս կը կոչուի որ եւ իցէ բաժակ. զոր օրինակ Տերենտի ընթրեաց մէջ «զառաջին ուրախութեանցն նուագն մատուցին արքային Պապայ», եւ նա «զուրախութեան գինին ունէր ի մատունս իւր» (Փաւս. 232–3)։ Ագաթանգեղոս կ'ըսէ՝ թէ առաքեալք կը լցուին «բաժակօք ուրախութեան Հոգւոյն», եւ թէ Հռիփսիմեանք պատրաստեցին Հայոց «բաժակս ուրախութեան» (374, '79), հոգեւորը նիւթականով օրինակուած։ Վասակ ուրացողն ալ իր տաճարին մէջ «յերկարէր զնուագս ուրախութեան» (Եղիշ. 52)։ Բոլոր այս բացատրութիւնք կը պարզուին Թովմայի խօսքին մէջ՝ թէ Դերենիկ «միշտ զմեզ ուրախարարն զմայլեցուցանէր բաժակաւ» (301). ուր «ուրախարար» ածականը գոյականացած է նախորդ վկայութեանց մէջ, նշանակելով որ եւ է բաժակ որ զուարթութիւն կը բերէ։

Աղօթք չեն ուրեմն մեր նուագը, այլ այն իսկ՝ զոր կը տեսնենք Ղեւոնդեանց սեղանին վրայ։ Հոս յետ կերակրոյն՝ Ս. Յովսէփ, որ իբրեւ կաթողիկոս՝ բազմականաց մէջ երիցագոյնն էր, «յոտն եկաց», մինչ դեռ իւր ճաշակիցները նստած կը մնան. «եւ սկսաւ զուրախութեան նուագն մատուցանել եւ ասել»։ Զայն «մատուցանելու» համար հարկաւ բռնած էր. եւ ճիշդ ինչպէս այժմ կը լինի, արտասանեց բաժակաճառ մը՝ պարագային համեմատ։ Իրենց պարագայն՝ յայտնի էր. յաջորդ օրը պիտի նահատակուէին հաւատոց համար. այս էր նոյն պահուն ամենէն կարեւոր, նուիրական եւ իրենց ուշադրութիւնն ամբողջապէս գրաւող խնդիրը. հետեւաբար բաժակաճառին նիւթն ալ այս պիտի լինէր։ Եւ սկսաւ այսպէս. «Ուրախ լերուք ամենեքեան ի Քրիստոս. քանզի վաղիւ այս ժամ իցէ՝ ահա մոռացեալ իցէ մեր զամենայն նեղութիւնս եւ զչարչարանս զոր կրեցաք»։ Յառաջ տանելով՝ զուշակեց թէ առաջին նահատակը պիտի լինէր իրենց անուս երիցակիցը զոր տեսանք յառաջագոյն (տես. 165). մխիթարեց ու սրտապնդեց զամէնն երկնաւոր բարեաց յուսով։ Յիշեալ քահանայն յուզուած՝ պատասխանեց կաթողիկոսին, մաղթելով՝ ի-

րենց աղօթիւք արժանի լինել զուշակուած մարտիրոսական վախճանին եւ վերին կենաց (Եղիշ. 133-4)։

Թէ ի՞նչ եղաւ նուագը, պատմիչը մեզ կը թողու մտածել։ Եթէ «սկսաւ ճաշուցանել» զայն ճառով, ուրեմն այդ խօսակցութեան աւարտելուն մատոյց ալ։ Այս ինքն՝ նախ ըմպեց ինք եւ յետոյ այլոց տուաւ ըմպելու այդ առաջին գաւաթէն, ինչպէս կը բաժանուէր առաջին հացը (աստ, 172)։ Զայս կը թուի ակնարկել նաեւ Տաթեւացին, երբ կը յիշէ գինւոյն «բաժանիլն ըստ կարգի», եւ զոր կը համարի նշան մը՝ «զի հաւասարութիւն ունիմք առ միմեանս» (Քրզ. ամր. 349), թէեւ չեմ կարող պնդել՝ թէ այս տեղ բուն իսկ մեր նուագի մասին կը խօսի։ Ուրիշ միջնադարեան գրչէ մ'ալ գիտենք՝ թէ «մեծ ամամ լնուն եւ յիրեարս խմեն. տօստամաքան ասեն» (Լծ. Պհ. Գ), որ իւր ծանօթ ձեւով կը տարբերէր հնոց նուագէն (աստ, 69, 77). եւ այս ալ յայտնի չէ՝ թէ առաջին արբումը լինի, թէեւ հաւանական կը թուի երկու վկայութեանց մէջ ալ։ Բայց գիտենք՝ թէ մեր ուրախութեան նուագն իւր բոլոր հանգամանօք կար Հրէից (Դկ. ԻԲ, 17. Վիզ. Բ, 414), Յունաց եւ Հռովմայեցւոց մէջ ալ, թէ հեթանոսութեան եւ

թէ քրիստոնէութեան շրջանին, եւ կը կոչուէր προπίνειν կամ propinare (Դար. Ա, 1373. Մարտ. 684–7)։

Մէկ ըմպանակէ արբումն յատուկ էր լոկ այդ առաջին բաժակին. իսկ յաջորդ արբմանց համար իւրաքանչիւր բազմական իւր սեպհական գաւաթն ունէր։ Զոր օրինակ Պապ իւր տաշտը բռնած շրթանց մօտ, բնաւ չէր աճապարեր զայն ուրիշին անցընելու (Փաւս. 233), եւ ինչպէս տեսանք (աստ, 196), բաժակակալն ալ կը մնար հանգիստ ըմպողաց առջեւ։ Այս սովորոյթն այնչափ ընդհանուր էր Հայոց մէջ, որ Կաղանկայտուացին կը զարմանար Հոնաց վրայ, որոնք երկու կամ երեք հոգի «ի միոյ բաժակէ» կը խմէին (126)։

25. — *Ըմպելոյ ձեւ* ։ — Տաթեւացին կ՚աւանդէ՝ թէ «նախ քան զըմպելն օրհնեմք», ինչպէս Յիսուս «օրհնեաց» վերնատան մէջ (Քրզ. ամր. 349. Հրց. 655–6)։ Չափազանց համառօտ ու մթին է այդ «օրհնելը». որ եթէ իւր յիշած սեղանի երրեակ օրհնութեանց միջինը չէ (Հրց. 655), կրնայ իմացուիլ օրհնարանական մաղթանք մը, ձայնարկութիւն մ՚առ Աստուած, ինչպէս կ՚ընէին հին քրիստոնեայք (Մարտ. 699). եւ որուն ոյժ կու տայ Նաւագրիոսի խօսքն ալ, «թէ ըմ-

*պիցես՝ զարարիչն օրհնեսցես», զոր նոյն տեղերն յառաջ կը բերէ Տաթեւացին։*

*Նոյն վարդապետը կը պատմէ դարձեալ քաղաքավարական յարգանքի մը փոխանակութիւնը կոչնականաց մէջ, ըսելով. «Ըմպելն գինոյն՝ Անո՛յշ, ասեմք միմեանց», այս ինքն խմողին* (*Յովհ.* Բ, 10)*։ Իսկ նախկին տեղեաց մէջ կը յարէ՝ թէ «յետ ըմպելոյն շնորհակալիմք միմեանց», այս ինքն խմողը մաղթողաց։ Եթէ շնորհակալիքն «յետ ըմպելոյն» է, ուրեմն մաղթանքն «յըմպելն՝» կը նշանակէ խմելէ յառաջ։ Եւ թէ զայս, թէ օրհնելը կ'իմանայ նա գինւոյ որ եւ է բաժակի համար. այնպէս որ «յայլ կերակուրս եւ ըմպելիս», կ'ըսէ, որով թուի թէ կ'իմանայ ջուր եւ այլն, «ոչ առնեմք նոյնպէս»։*

*Արեւելեայց արդի բարեկրթութեան մասն համարուած մէկ ձեւին ալ կը պատահինք միջին դարուն։ Կը պատմէ Կիրակոս՝ թէ Մխ. Գոշ տեսլեան մէջ կ'ընդունի բաժակ մը եւ խմելու հրաման. եւ նա «երեսս յետս դարձուցեալ՝ զգուշութեամբ ըմբեաց»* (241)*։ Այս սովորութիւնը սակայն փոխառութիւն համարելու ենք Արաբներէն. վասն զի ասոր հակառակը կը կարդանք Փաւստոսի քով, որ կը պատմէ՝ թէ Պապայ «բերանն ի բաժակին էր յըմպելն»,*

եւ մի եւ նոյն ժամանակ «աչօքն յառաջ մատուցեալ՝» խաղերը կը դիտէր, շարունակելով սակաւ սակաւ խմել հեշտօրէն (233)։ Ուրեմն երբեք դարձնել չկար այդ դարուն։

26. — Գուսանք, Վարձակներ, Բոզեր։ — Ղեւոնդեանք հազիւ խմեցին ուրախութեան նուագը, «յոտն կացին ի բազմականացն անդ» եւ աղօթեցին. կոչունքը վերջացած էր (Եղիշ. 134)։ Բնականապէս նորադարձ մոգպետին հոգեւոր յուզմամբ լի տանը մէջ, առաքինի բանտարկեալ իշխանաց, եւ մանաւանդ վաղուի սուրբ մարտիրոսաց կողմանէ ու գաղտնապէս կերուած ճաշ մը չէր կարող աւելի երկար տեւել, եւ ոչ ալ օրինակ հանդիսանալ սովորական խրախճանութեանց, որոնք բնաւ չէին նմանիր ադոր։ Անոնց ամենէն զուարթ մասն այժմ կը սկսէր։ Հայ ազնուականը գինւոյն հետ երգ ալ կ՚ուզէր, որպէս զի իւր հրճուանքը կատարեալ լինէր։ Ուստի իսկոյն տաճարը կը մտնէին գուսանք ու վարձակներ. առաջինք՝ այր, եւ վերջինք՝ կին երաժիշտներ, որոց զանազանութիւնն զգալի է՝ բաց յայլոց՝ եւ սա տողին մէջ. «զձայն գուսանաց եւ վարձակաց» (Բ Թագ. ԺԹ, 35), ուր բնագիրն է «երգչաց եւ երգչուհեաց»։ Ասոնց դե-

րերը բոլորովին նոյն չեն, անոր համար առանձին նկատելու ենք զիրենք։

Ա. Գուսանք, որ ըստ բառիս ծագման կը թուին նշանակել նուագահար[1], անհրաժեշտ էին բոլոր գինարբութեանց մէջ, եւ ամենուրեք կը հանդիպինք անոնց։ Դըրաստամատ չի մոռնար իր տիրոջ բանտէն ներս անգամ տանիլ զանոնք, եւ «ուրախ առնէր զնա գուսանօք» կամ «արուեստականօք» (Փաւս. 207)։ Տերենտի ընթրեաց նկարագրին մէջ ասոնք կ'որոշուին իրենց զարկած զանազան գործեաց անուններով, այսպէս. «Առ հասարակ թըմբըկահարք եւ սրնգահարք, քնարահարք եւ փողահարք իւրաքանչիւր արուեստօք պէսպէս ձայնիւք բարբառեցան» (նոյն, 232). տողեր՝ որոց մէջ հայ պատմիչն անտարակոյս ի նկատի ունի աւելի ազգային մերձաւոր սովորոյթը քան հեռաւոր բիւզանդականը։ Եւ արդարեւ դարեր վերջ կը տեսնենք դեռ հայ ճոխեր, որ «թմբկօք

1. Համեմատել կուսան (Հիւբշ. 131) կամ Քիուսան (Գ. Գպ.) կոչուած հնադարեան պարսիկ երգչին կամ սրնգահարին անուան հետ, որ կը նշանակէ նաեւ տեսակ մ'երգեցողութիւն (Գ. Գպ.), իսկ արաբ. գուս՝ է փող, սրինգ, միջին դարուն հայացած գոս ձեւով. «Փող եւ գոսերըս գոչէին» (Ճնր. Եղեռ. 47. — տպ. եւ Վենետկոյ 1441ի եւ Բ հին օր. կը գրեն քուսերս. 1620ին քաղերս. 1702ին քաուսերս. Գ օր. նոր՝ փօսերս. Ե եւ Է օր. նոր՝ գոսերս)։

*եւ պարուք զգինին ըմպէին», եւ «ի կաքաւս խաղուց եւ յերգս գուսանաց հեշտանային»* (*Գր. Վրդ. Ողբ*)։ *Այս բոլորը սովորական էին նաեւ Յունաստանի եւ Հռովմայ* (*Դար. Ա*, 1271, 1374), *Հրէից* (*Ժող. Բ*, 8. *Բ Թագ. ԺԹ*, 35), *Փիլոնի ժամանակակցաց* (*Ճոք.* 21) *եւ Բիւզանդացւոց* (*Նմես.* 136)։

*Կեդրոններէ հեռի կատարուած խնճոյից մէջ, ուր սովորաբար դժուարին էր արուեստաւոր գուսաններ գտնել, մանաւանդ ստորին դարերուն, երգերն հաւասարապէս կը հնչէին, բայց կոչնականաց բերանէն՝ որոնք յարմարութիւն ունէին։ Այսպէս՝ Խորենացւոյն աւանդութեան հացկերութին մէջ կ'ըսուի՝ որ բազմականք «մի առ մի յարուցեալ՝ երգէին զերգս առաջի Հայրապետին» Յովհաննու* (*Հյպտ.* 195)։

*Այս գեղօնից*[1] (*Ոսկ. Թղթ. Ա*; 894, 66) *կամ խնձոյական երգոց* (*անդ*, 895) *կամ արքեցութեան երգոց* (*Եղիշ.* 52) *նիւթը կը կարծեմ սիրային, վիպական, եւ ներբողական։ Հարկաւ առաջնոց կ'ակնարկէ Եղիշէ՝ երբ «մարդիկ, կ'ըսէ, գերին ի լկտի երգս ձայնից»* (261), *եւ զորս այլուր յայտնապէս կը կոչէ «զերգս հեթանոսա-*

1. *Գեղօն՝ ածանց է, գեղ-օն, եւ արմատը գեղգեղ կամ գեղգեղել բառին։*

կանս» (52)։ Մանօթ է՝ թէ ինչպէս Գողթան զուարթ երգիչներն իրենց բամբռանց ու շրթանց վրայ կը նուագէին Սաթինկան տոփանքը (Խոր. 58)։ Աւելի ուշ՝ Ալաւկայ որդին հարսանեկան խնճոյից մէջ երգուածները դեռ կ'որակէ՝ «հեթանոսական» կամ «դիւական խաղք» բառերով (ԻԴ)։ «Դիւական երգք» են նոյն այդ «երգք գուսանացն» նաեւ ըստ Շնորհալւոյն (Ընդհ. 42)։ Եւ յետին դարերէն ունինք «ուրախութեան տաղեր», որոց մէջ հին ախտալից քնարն է որ կը թրթռայ տակաւին, եւ որոց հետ կրնանք համեմատել Բիւզանդացւոց « զաղտեղութեան գեղօնս » (Ոսկ. Թղթ. Ա, 894), եւ Կեսարացւոց « երգք ամօթալիք » ըսուածները (Բրս. Արբ.)։ — Գողթան երաժիշտները կը վիպէին նաեւ Հայոց վաղեմի թագաւորաց եւ դիւցազանց կեանքը. Արտաշիսի եւ որդւոց վարքը, Վահագնի ծնունդը, Սաթինկան առեւանգութիւնն ու հարսանիքը, Արտաւազդայ անէծքը, Վարդգեսի շինութիւնը (Խոր. 58, 59, 129, '39, '44)։ Համոզուած եմ՝ թէ ասոնք եւ այսպիսիք ալ կը մտնէին խրախութեան երգոց մէջ։ — Հարսանեկան խնճոյից նուագերգութեանց նիւթերէն էր նաեւ փեսայի աշխարհին եւ ազգատոհմին ներբողը (Խոր. 307), որ

սակայն լոկ այդ առթիւն յատուկ չէր։ Սովորական կոչնոց մէջ մեծաշուք բազմականաց եւս կրնար ուղղուիլ այն, ինչպէս յայտնի է Պատմահօր աւանդութեան ճաշէն, ուր խորնոյ անծանօթ ալեւորն «եկաց առաջի հայրապետին, սկսեալ զբանս երաժշտականս» առ գահագլուխ մեծ հիւրը, որոյ սկիզբն էր այսպէս. «Ո՛վ արքայակերպ տէր քահանայապետ սուրբ, հովուապետ բարի եւ նմանեալ առաջնոց» (Հյպտ. 195)։ Եւ կը յարէ՝ թէ «ի կարգին երիս տունս ասաց». ուսկից կը հետեւի՝ թէ աւանդութեանս խմբագրութեան ժամանակ այդ երգը ծանօթ էր արդէն։

Բուն գուսանք, կամ լաւ եւս ասոնց մէկ դասը, նուագածութենէն շատ աւելի վատթար պաշտօն մ՚ալ ունէին[1], զոր կենդանի նկարագրով մը մեր առջեւ կը դնէ պերճաբան Մանդակունին։ Անոցմէ ոմանք, — որոց համար մեք ալ կրնանք ըսել՝ «զոր եւ շաղակրատսն կոչեն» (Ոսկ. Թղթ. Ա, 851), ինչպէս արդեամբ կը կոչուէին ալ (Փրկ. 511), — աղտեղի եւ յիմարական խօսքեր կ՚ընէին. եւ հայրապետը կը լսէր այդ «վաւաշ գուսանաց» բերանին մէջ՝ «բազում խեղկատակութիւնս եւ մո-

1. Ոսկեբերանի միմոսն հայ թարգմանիչն կը փոխուի գուսան (Թղթ. Ա, 468. եւ այլն, 213)։

րոսխօսութիւնս, գարշաբանութիւնս, դատարկաբանութիւնս» (135)։ Ոմանք ալ, յատկապէս կատակք կոչուած (անդ. Փաւս. 48) կամ հացկատակք՝ (Ոսկ. Թղթ. Ա, 851. Մտթ. Ա, 693), խեղացնող շարժումներով կը ջանային զուարճացնել հանդիսականները։ Պէտք է ըսել, կը յարէ Մանդակունին, «զկատակսն մտակորոյս», որ ըլլալ բազմականաց մէջ «իբրեւ զայսահարս յափրին, ծռին, գելուն, աքստեն»։ Եւ մի եւ նոյն ժամանակ գիրար կամ զայլս կը նախատէին խեղկատակօրէն։ «Զամենեսեան, կը յաւելու նա, աղտով բերանոյն զազրացուցանեն. եւ զոմանս հայհոյէ, զոմանս բամբասէ, զոմանս թըշնամանէ եւ զոմանս ձաղէ» (135)։ Ու մեր վեհափառ թագաւորք եւ ազնուազարմ իշխաններն՝ ի տես այդ յիմարութեանց «թալացեալ էին ի ծաղուէ», ինչպէս հոս ալ կրնար կրկնել Փաւստոս (69)։ Անշուշտ նոյն էր հռովմէական գինարբութեանց մէջ յիշուած կատակերգուաց, միմոսից ու խեղկատակաց պաշտօնն ալ (Դար. Ա, 1374), որոցմէ չէին զանազաներ Բիւզանդիոնի «խեղակատակք» կամ «ծաղրածուք», ո-

1. Այդպէս ըստ ընիկ իմաստին, եւ ըստ կազմութեան՝ հայ լեզուին յատուկ, կը գործածուէր նաեւ շնթողի իմաստով (Փրպ. 511, '13. Ոսկ. Մտթ. Ա, 57)։

րոնք կը ծամածռէին իրենց երեսը, բե-
րանն ու աչքը, կը հոպոէին եւ կը պար-
սաւէին զուրիշները (Ոսկ. Թղթ. Ա, 851)։
Այս երջանիկ ցնծութիւնը կը շարունակէ
դեռ Բագրատունեաց օրով եւս, ուր մեր
աւագանին «նստէին յիշխանական գահու»,
որ յայտնի է թէ տաճարի բազմականներն
են, եւ անոնց առջեւ «ուրախականն երգոց
եւ թանից միայն լինէին հանդէսք». ու փո-
ղերու, ծնծղայից եւ այլ գործիներու ձայ-
ները կը հեշտացնէին անոնց լսելիքը (Լաստ.
38)։ Շնորհալին կը վրդովէր՝ «ի լսելն եւ
ի խօսել զանուղղայս՝» հարսանեկան խըն-
ճոյից մէջ եւս (Ընդհ. 42)։ Ալաւկայ որ-
դին կը փորձէ կանոնական կապեր գծել
այդ «հեթանոսական ամօթալից զրուցա-
տրութեան» դէմ (ԻԴ)։ Բայց Հայն իւր
սովորոյթներէն դիւրաւ չի հրաժարիր. ու
մինչեւ ԺԵ դար Տաթեւացին դեռ կը տես-
նէր հարսանեաց մէջ «բազում անվայելուչ
բանք» կամ «խեղկատակութիւն» (Յովհ.
Բ, 2)։

Բ. Վարձակները[1], որ էին աւելի քան
վարձուած՝ վարժ կամ երաժիշտ կանայք,
– եւ այդ կոչումը սովորաբար կանանց

1. Արմատը վարձ՝ համեմատել ընդ վարժ կամ պրս. վարզ (եւ մարզել՝ մարժել, մարզիկ՝ մարժիկ, մարզիչ՝ մարժիչ). իսկ վարզին իմաստն՝ ուսումն, աշխատութիւն,

տրուած է (Ոսկ Թղթ. Ա, 67, 68 եւն), — Նոյնպէս բաւական յաճախ կ'երեւին կոչնոց մէջ։ Արշակ կը բամբասուի իւր չափազանց ծուլութեամբ «ի գինարբուս եւ յերգս վարձակաց» (Խոր. 204)։ Հայոց կարճատեւ թագաւորի մը՝ Շապուհ պարսկի ընթրեաց մէջ կը հանդիպինք նոյնպէս «ջնարահար քաջամատն կնոջ» մը (Նոյն, 250)։ Հարկ չկար որ ասոնք միշտ օտարներ լինէին. Բակուրի ընթրեաց պահուն նոյն ինքն իւր հարճը, որ վարժ էր նոյն արուեստին, եւ գուցէ երբեմն գործածուած իսկ զայն, «վարձակ» եղած՝ «երգէր ձեռամբ» ի պատիւ իւր հարճակալին կոչնականաց (Նոյն, 141)։ Այս օրինակաց մէջ անոնց յայտնի պաշտօնն է՝ ցոյց տալ իրենց փափուկ մատանց աշխուժութիւնը ջնարի աղեաց վրայ, ուսկից է իրենց ջնարահար կամ ջնարաւոր[1] կոչումը։ — Շատ բնական էր՝ որ նոյն գործւոյն հետ զուգէին իրենց ձայնին քաղցրութիւնն ալ՝ եթէ ունէին. եւ այն ժամանակ կը լինէին

ճարտարութիւն (Հիւբշ. 245), համեմատել մեր արուեստականք բառին հետ, որ կը նշանակէ երաժիշտք (Ծննդ. ԼԱ, 27. Ոսկ. Թղթ. Ա, 68), երաժշտական (Քրոն. Ա, 365), և նուագարանք (Ա Մակ. Թ, 39, 41) որ արուեստք ալ կ'ըսուին (Փաւս. 232)։

1. Ոսկ. Թղթ. Ա, 468. յն. κιθαρῳδός, կիթառերգակ։

*ու կը կոչուէին երգեցիկք* (*Սիր.* Դ, 4. *Ժող.* Բ, 8)։ — *Եւ որովհետեւ խնճոյից մէջ անպակաս էին նաեւ «կաքաւք լկտութեան»* (*Եղիշ.* 52) *կամ «պարք»* (*Գր. վրդ.* աստ, 204), *մեր վարձակներն հարկաւ իրենց ոտներու ճրութիւնն ալ կը ցուցադրէին այդ տեղ եւ այդպիսի պարերու մէջ, դառնալով կաքաւիչք* (*Ոսկ. Թղթ.* Ա, 67, 468), *խաղալիկք* (*Ա Թագ.* ԺԸ, 8. *Երմ.* ԼԱ, 4) *կամ պարաւորք* (*Դատ.* ԻԱ, 23. *Ա Թագ.* ԺԸ, 6)։ *Գագիկ արծրունի՝ Աղթամարայ մէջ կառուցած ուրախութեան յատուկ ոսկեզմրեխ փառաւոր տաճարին որմոց վրայ շռայլած էր խրախճանական տեսարաններ, ուր արքայն բազմած ոսկեզարդ գահոյից վրայ, շրջապատուած էր մատռուակներէ ու գուսաններէ, եւ անոնց մէջ նաեւ «խաղս աղջկանց զարմանալոյ արժանիս»* (*Արծ.* 332)։ *Վարձակաց երգերն ու պարերն անպակաս էին նաեւ Հռովմայեցւոց* (*Դար.* Ա, 1374), *Հրէից* (*Բ Թագ.* ԺԹ, 35. *Մտթ.* ԺԴ, 6), *Անտիոքացւոց* (*Ոսկ. Մտթ.* Ա, 687) *եւ այլոց մէջ. եւ «փափկասուն աղջկանց եւ մանկանց» երգերը կը հնչէին մեր դրացի Պարսից խրախութեանց մէջ եւս* (*Կաղ.* 101)։

Գ. *Բոզերու անգամ կը պատահինք հայ տաճարաց մէջ, որոնք համարձակ եւ հան-*

բերանի թարգմանիչն ալ շեղելով տեղ մը բնագրէն, հայ ազնուականի տաճարէն ու տաճարի մէջ իսկ միասին կը խմբէ նոյն տարբերքն՝ ըսելով. «Գուսան եւ հացկատակ լինիս՝ եւ չամաչե՞ս, վարձակ՝ բոզ եւ երգեցիկ[1]»: Նախ դիտելի է՝ որ այս տեղին ակնարկութիւն է խնճոյից, ուր էր «հացկատակաց» ընիկ եւ «գուսանաց» ու «վարձակաց» սովորական հանդիսավայրը: Երկրորդ՝ եթէ «գուսան եւ հացկատակ» այրեր են, «վարձակ, բոզ եւ երգեցիկ՝» անջատուած նախորդներէն, կանանց կոչումներ են հոս, տրուած մի եւ նոյն կամ տարբեր անձանց: Նոյն «անառակ կանայք» են՝ որ ԺԲ դարուն դեռ կ'երեւին հարսանեկան հանդիսից ու կոչնոց մէջ եւս, եւ որոց ներկայութիւնը պսակի օրհնութեան՝ կ'արգելու Շնորհալին (Ընդհ. 42): — Դարեմբերգ յառաջ կը բերէ գինեբրբուաց երեք քանդակներ, որոց երկուքն յունական՝ ունին սրնգահար կին մը կանգուն (Ա, 1274. Գ, 1826). եւ միւսն հռովմէական, ուր լկտի կանանց հետ խառն եւ անպարկեշտօրէն նստած են այրերը (Գ, 1837): Եթէ լինէին հայ քանդակողներ, անտարակոյս մեր նախնեաց տաճարներէն ալ պիտի

1. Ոսկ. Թղթ. Ա, 851. յն. լոկ՝ «Գուսան (միմոս) լինիս և չամաչե՞ս»:

դիտապէս կը բազմին ազնուականաց հետ կուշտ կշտի։ Կանխենք ըսել՝ թէ դժուարին է ադոցմէ տարբեր պատուոյ արժանացնել վարձակներն իսկ, որոնք չէին կրնար պարկեշտութեան օրինակներ հանդիսանալ սոյնպիսի համախմբութեանց մէջ՝ ուսկից բացակայ տեսանք կանանց սեռը (աստ, 141)։ Հաւանօրէն ասոնց արուեստն երկդիմի էր, որով դիւրաւ կը մեկնուի կոչնականաց չափազանց համարձակութիւնն ալ անոնց հետ, ինչպէս պիտի տեսնենք ի ստորեւ։ Բայց կային նաեւ ադոցմէ տարբեր եւ ընկած կանայք, զորս յաճախ այդ եւ միւս ծաղկանց հետ միասին հաւաքուած կը գտնենք։ Այսպէս՝ Ս. Յուսկան անարժան որդիքն «ըմպէին գինի, կ'ըսէ պատմիչը, բոզօք եւ վարձակօք եւ գուսանօք եւ կատակօք» (Փաւս․ 48)․ փոյթ չէ թէ այնպիսի հօր մը զաւակներ, թագաւորի քեռայրներ, ու սարկաւագութեան սուրբ աստիճանին բարձրացած մարդիկ լինէին, եւ գտնուէին Հայոց վեհագոյն սրբավայրի հայրապետանոցին մէջ։ Պապ եւ Աթանագինէս՝ ոչ առաջին եւ ոչ միակն էին այդ վատթար դասուն մտերմութեան մէջ։ Արդէն իրենց հետ կային հոն «եւ այլ մարդիկ... տաճարակիցք՝» վարժած նոյն կենցաղավարութեան։ Բայց աստ՝ Ոսկե-

բերանի Թարգմանիչն ալ շեղելով տեղ մը բնագրէն, հայ ազնուականի տաճարէն ու տաճարի մէջ իսկ միասին կը խմբէ նոյն տարրերքն՝ ըսելով. «Գուսան եւ հացկատակ լինիս՝ եւ չամաչե՞ս, վարձակ՝ բոզ եւ երգեցիկ[1]»: Նախ դիտելի է՝ որ այս տեղին ակնարկութիւն է խնճոյից, ուր էր «հացկատակաց» ընիկ եւ «գուսանաց» ու «վարձակաց» սովորական հանդիսավայրը: Երկրորդ՝ եթէ «գուսան եւ հացկատակ» այրեր են, «վարձակ, բոզ եւ երգեցիկ՝» անջատուած նախորդներէն, կանանց կոչումներ են հոս, տրուած մի եւ նոյն կամ տարբեր անձանց: Նոյն «անառակ կանայք» են՝ որ ԺԲ դարուն դեռ կ'երեւին հարսանեկան հանդիսից ու կոչնոց մէջ եւս, եւ որոց ներկայութիւնը պսակի օրհնութեան՝ կ'արգելու Շնորհալին (Ընդհ. 42): — Դարեմբերգ յառաջ կը բերէ զիներբուաց երեք քանդակներ, որոց երկուքն յունական՝ ունին սրնգահար կին մը կանգուն (Ա, 1274. Գ, 1826). եւ միւսն հռովմէական, ուր ըկտի կանանց հետ խառն եւ անպարկեշտօրէն նստած են այրերը (Գ, 1837): Եթէ լինէին հայ քանդակողներ, անտարակոյս մեր նախնեաց տաճարներէն ալ պիտի

1. Ոսկ. Թղթ. Ա, 851. յն. լոկ՝ «Գուսան (միմոս) լինիս և չամաչե՞ս»:

*տային մեզ յար եւ նման պատկերներ, որոցմով ճոխ էր գործնականապէս՝ անոնց ժամանակակից Բիւզանդացւոց եւ Անտիոքացւոց կեանքն ալ*[1]։

*Դ. Կարծես թէ Ս. Թարգմանչաց բարոյական շունչը բարերար յեղաշրջութիւն մը յառաջ կը բերէ հայ ընթրական բարուց մէջ. եւ ըստ Փարպեցւոյն՝ մեր նախարարք սեղանի վրայ զուարճութեան մասամբ կը շատանան «հոգեւոր ճաշակօք, սաղմոսիւք եւ մարգարէական երգօք օրհնելով զպարգեւատուն Քրիստոս»* (28), *ինչպէս կ'ընէին Տերտուղիանոսի դարուն հաւատացեալք* (*Կարբ. Ա*, 803) *եւ Ոսկեբերանի ժամանակակից բարեպաշտ աղքատներն ալ* (*Թղթ. Ա*, 533)։ *Բայց մեր հայ պատմչին խօսքը շատ ամփոփ մօք առնելու ենք. այս ինքն երկիւղած իշխանաց ոմանց մասին միայն. իսկ այլոց նըկատմամբ՝ ինչպէս ընելու էին, կամ իբրեւ յորդոր մը նոյնպէս ընելու։ Վասն զի մի եւ նոյն ժամանակ Վասակայ խնճոյքը կը հնչեն տակաւին «յերգս արբեցութեան եւ ի կաքաւս լկտութեան. քաղցրացուցանէր ոմանց զկարգս երաժշտական եւ զերգս հեթանոսականս»* (*Եղիշ*. 52)։ *Եւ եթէ ու*

1. Ոսկ. Թղթ. Ա, 468, 533–4, 849–53. Մտթ. Ա, 692–5։

բացողի մը գործն էր այդ, նոյնպէս չէին անշուշտ միւս մեծատանց «անառակ եւ զուսանամոլ գինարբուքն՝» որոց դէմ կը յարձակէր նոյն ժամանակի բեմբասաց Մանդակունին (135)։ Կը տեսնենք, եւ Եղիշէէ ոչ շատ հեռի, որ այդ անկարգութիւնը կ'ընկերէ մեր իշխանաց՝ մենաստանաց պարկեշտ որմերէն ներս անգամ։ Ներսէս Շինողն է՝ որ կ'աւանդէ այս ուշագրաւ պարագայն՝ իւր կանոնաց մէջ։ «Ոմանք յազատաց եւ ի ռամիկ հեծելոց», որ են զինուորականք, հասնելով՝ կ'ըսէ՝ որ եւ է գիւղ, կը թողուն գիւղն ու կ'իջեւանին մերձաւոր վանուց մէջ, եւ «զուռանօք եւ վարձակօք պղծեն զնուիրեալ տեղին Աստուծոյ» (ԾԲ)։ Այնքան մոլութեամբ փարած էին այդ կորուսելոյ, որ պտոյտի ժամանակ անգամ չէին ուզեր զատուիլ աղօթմէ։

27. – Սրբերգութիւնք։ — Ա. Այդ սանձարձակ զբօսանաց անձնատուր մարդոց ի՞նչ բան կրնար չափ դնել կոկորդի։ Բացարձակապէս ոչ ինչ. եւ անոնք բնաւ սահման չունին «գինարբութեան» մէջ. բառ մը սա՝ որ իւր անսեթեւեթ պարզութեանը մէջ կը խտացնէ մեր հանդիսին այս երկրորդ մասին ամբողջ նշանակութիւնը. խմել, եւ միշտ խմել։ Ո՞չ ապաքէն ասոր

սահմանուած էին մառանին մէջ մեր տեսած պարպատուն կարասները (աստ, 19–23)։ Գուսանական եւ արբեցողական ախորժակներն այս տեղ գիրար կը գրգռեն փոխանակաւ. եւ ըմպանակներն անդադար կը լցուին ժիր մատռուակաց ձեռօք՝ «յընտիր եւ համեղ գինեաց» (Խոր. 76) կամ «մեծազին գինեաւն» (Մանդ. 74), որ կը լինէր «պարզ» (Փրպ. 331) կամ «պարզեալ» (Փաւս. 123), այն է զտուած, լաւագոյնս զգացնելու համար իւր համն եւ ոյժը։ Եւ կ'ըմպեն զայն «անապակ» (Նոյն, 216), այս ինքն առանց ջրոյ[1], հակառակ բարի սովորութեան Հրէից (Առկ. Թ, 2–5) եւ ուրիշ ազգաց (աստ, 71. Դար. Ա, 1373)։ Անով ալ անբաւական, անուշահամ խառնրդներով զայն աւելի հրապուրիչ եւ ազդեցիկ կ'ընէին (աստ, 22), ինչպէս Ասորիք կը գրգռէին իրենց փղերը «խնկեալ գինւով կնդրկախառն» (Գ Մակ. Ե, 25)։ Եւ այս բոլորին բնական հետեւանքը կը լինէր՝ «թմբրիլ եւ յիմարիլ» (Մանդ. 74)։

Արբեցութիւնը, այս գռեհիկ ախտը, տեսակ մ'օրէնք, արարողութիւն մը, ազ-

1. Անոր հետ թերեւս ճաշակի ու վարժութեան ներքին կապ մ'ունէր մեր նախնեաց պատմական ընդդիմութիւնը Ս. Բաժակի ջրախառնութեան։

նուական պերճանաց ցոյց մ'է ամէն աշխարհիկ կոչնոց մէջ. եւ առանց անոր չըկայ ուրախութիւն հայ ասազնուոյն համար։ Ցաճախապատումը կը սպառնայ մեծատանց, որ կը զլանային կարօտելոց պէտքը եւ իրենք «ի շռայլութեան եւ յարբեցութեան կեան» (97). այս է իրենց սովորական կեանքը։ Եւ մեք ունինք բազմաթիւ ապացոյցներ՝ տեսնելու համար այդ յոռութեան տիրապետութիւնը մեր իշխանաց բոլոր խնճոյից մէջ։

Բ. Ախտը լոկ չի ներկայանար հոն, այլ իրեն կը հետեւին սարսուռներ ու խայտառակութիւնք եւս։ Հոդ, Սպանդարամետի գոլորշեաց մէջ պարուրուած են հայ պատմութեան ամենէն յուզիչ էջերը, դաւեր, ոճիրներ ու կրից զեղումներ. այնպէս որ Մանդակունւոյն հետ կրնանք ըսել համարձակ՝ թէ «Ի (են) պղծութեամբ շուայտութիւնք նոցա» (74)։ Տեսնենք քանի մ'օրինակներ՝ որոնք աւելի պերճախօս են քան ամէն խորհրդածութիւն։

Արտպատականի մարզպանը Վարազ Շապուհ՝ պիտի ձերբակալէր զՏիրան արքայ։ Բայց ի՞նչ պէտք զօրաց ու զինուց. քան զաղոնք զօրաւորն ու դիւրինը կար, գինին. ուստի ընթրեաց հրաւիրեց զայն։ Եւ երբ գինըմպութն սկսաւ, «քաջ արբեալ

լինէր թագաւորն եւ որ ընդ նմայն էին», եւ խսկոյն շղթայք անաշխատ կաշկանդե-ցին Հայոց արքային բազկները. կորոյս աչկունքը, եւ գերի գնաց անմտօրէն (Փաւս. 52)։ — Վատն Վարազդատ սպաննել կ'ու-զէր զՄուշեղ, եւ գիտէր՝ թէ «ոչ ոք կա-րէ զդէմ քաջութեան նորա ունել»։ Սա-կայն իբրեւ հայ՝ գիտէր անոր եւ առ հա-սարակ բոլոր ազատաց տկար կողմն ալ։ Խնճոյից կոչեց զայն միւս իշխանաց հետ, եւ «շատ գինի տայր ըմպել, եւ բազում առնէր զբօսումն ուրախութեան»։ Ար-դիւնքն ապահով էր. բոլոր կոչնականք «անցին զառանցին ի գինոյն՝ ըստ չափ անցանելով». եւ նոյն ինքն սպարապետն «զմտօք զառանցեալ (էր) յարբեցութենէ», մինչդեռ նենգաւոր արքայն հակառակ սո-վորութեան «պահէր զանձն ի գինւոյն»։ Ցանկարծ քսանուչորս ձեռներ պրկեցին Մամիկոնեանին ուժասպառ բազկները, եւ անարգ նրան մը ճեղքեց անոր բողոքար-կու փողը։ Հայ զօրութեանց գոռ հրամա-նատարը, Թաւրեզի ու Ջիրաւայ դիւցազ-նը՝ զոհ կ'երթար տոհմային ազնուական գինեմոլութեան (Նոյն, 236–7)։ — Արշակ իսկ, որ բազմամեայ բանտարկութեան մէջ վարժած էր ակամայ ժուժկալութեան, իւր հաւատարիմ Ներքինւոյն իրեն պարգեւած

միօրեայ ուրախութեան պահուն անձնատուր եղաւ հին ախտին. «գինին եկն զականք նորա, արբեցաւ» ու սկսաւ դանդաչել. «Վա՛յ ինձ Արշակայ, կ՚ըսէր. այսպէս եւ այս, եւ յայսմ չափու եւ այս անցք անցին ընդ իս»: Եւ արբեցութեան այս զառանցանաց մէջ ձեռքի դանակը խրեց սիրտը, եւ վարագուրեց սեւ օրերը (նոյն, 208): — Ս. Յուսկան անառակ որդիքը դիակնացած գտնուեցան այն պահուն՝ ուր էին «բազում հատեալ յարբշռութիւն», եւ իրենց այդ խորհրդաւոր մահը հրեշտակի վերագրուեցաւ (նոյն, 48): — Հարկ կա՞յ դիտել տալու՝ թէ այդ ամէն խնճոյից մէջ կ՚արբենան առ հասարակ բոլոր բազմականք, եւ ոչ թէ ոմանք միայն. որով յայտնի կը տեսնենք արբեցութեան տեսակ մը ստիպումն ամենուն համար: Իսկ յարակից ոճիրներն այնպէս կապուած են գիներբուաց հետ, որ հաւասարապէս հոն կը կատարուին առանց արբեցութեան օժանդակութեան ալ: Զոր օրինակ Պապ սպանեց զմեծն Ներսէս իւր կոչնոց պահուն, մահը ծածկելով անոր ժուժկալ բաժակին մէջ (նոյն, 216): Իրեն ալ արեւը շիջաւ Տերենտի ընթրեաց մէջ, երբ հազիւ տակաւին ուրախութեան «առաջին» նուագը բռնած էր, եւ միտքը դեռ

զգաստ (Նոյն, 232-3)։ Այսպէս եւ Գրիգոր կթղ. Բարավէժ ձերբակալուեցաւ իւր հակառակորդներէն՝ «մինչդեռ էին նստեալ ի սեղանն ի ժամ ճաշոյն» (Հյպտ. 412)։

Գինեմոլութիւնն հանդիսատես կ՚ընէ զմեզ նաեւ վիպային ողբերգախառն տեսարանաց։ Բակուրի ընթրեաց մէջ բագրատունին Տրդատ «յուրախանալն գինւով՝ ... արփեցաւ» անոր հարճին ու պահանջեց զայն։ Կոչնատէրը բնականապէս մերժեց։ Այն ժամանակ խելակորոյս իշխանը «բուռն հարեալ ի կինն, յիւրն քարշեաց ի բազմականն, շամշելով վաւաշէր»։ Վեր ցատկեց Սիւնեցին՝ եւ անոր հետ ուրիշներ ալ՝ ազատելու կինը։ Տրդատ կորզեց սեղանէն ծաղկակալ սկուտղը, հարուածներ տեղացուց իւր դէմ յարձակող բարձակցաց վրայ, քաշեց տարաւ կինը, աշտանակեց ձին եւ ի Սպեր հասաւ (Խոր. 142)։ — Նման դէպք մ՚ալ պատահեցաւ Շապուհ պարսկի կոչնոց մէջ։ Խօսրով Գարդմանացին «ի գինւոյ գեղխեալ, ... զօրէն սեղեխի տափեցելոյ» ջնարահար կնոջ մ՚ետեւէն վազեց։ Պարսիկը բարկացած՝ հրամայեց բռնել զայն. բայց Գարդմանացւոյն վաղկաւորն աճապարար շողաց բազմութեան մէջ, եւ դիւրացուց անոր անվնաս փախուստը (Նոյն, 250)։

Մեր ազնուականաց անարգել արբեցողութիւնն անոնց հետ կը շրջէր ամենուրեք. պատշաճութիւն կամ ակնածութիւն բնաւ անծանօթ են անոցմէ ոմանց։ Աշտիշատու հայրապետանոցին մէջ, եւ Ս. Ներսեսի մը ճաշին ինչպէս վարուելու էր Հայր մարդպետի նման բարձր իշխան մը, յայտնի է։ Եւ սակայն նա եւս «արբեցաւ սխալակեցաւ», կ'ըսէ պատմիչը, եկեղեցւոյ պետին առջեւ, որ թէ որքան կ'ատէր «զանառակ արբեցութիւնս՝» լաւ գիտէր (Փաւս. 76)։ Եւ ինք՝ որ գնացեր էր բարեմտութեամբ «կալ յաղօթս եւ առնուլ ողջոյն» հայրապետէն, գինւոյն ազդեցութեան ներքեւ բարեկամը թշնամի մը դարձաւ. սկսաւ «դնել թշնամանս» մեծին Տրդատայ եւ Արշակունեաց տոհմին, անոր մեռելոց ու կենդանեաց, որ Աշտիշատու գեղեցիկ կալուածներն եկեղեցւոյ շնորհեր էին. եւ սպառնացաւ՝ յարքունիս հասնելուն գրաւել տալ զանոնք (նոյն, 114–5)։ Մարդպետը չէր, այլ գինին որ կը բանդագուշէր։

Գ. Արդ՝ այս բոլոր օրինակներս լիովին կը հաստատեն՝ թէ ինչպէս արբեցութիւնն ընդհանուր եւ անհրաժեշտ սովորոյթ մ'էր մեր աւագանւոյն, սկսեալ Թագաւորէն, եւ որով կը փայլէին նաեւ

խրախճանութիւնք Ասորոց (Ցղթ. ԺԳ, 2–4), Հռովմայեցւոց (Դար. Ա, 1374), Բիւզանդացւոց (Ոսկ. Թղթ. Ա, 534) եւ այլոց։ Մտադրութեան արժանի է Փաւստոսի բացատրութիւնը՝ թէ Դրաստամատ Արշակայ առջեւ «եղ գինի՝ որպէս օրէն էր թագաւորացն» (207). եւ որովհետեւ այդ գինիէն խելացնորեցաւ, կը հետեւի՝ որ անոր անչափութիւնն իսկ՝ – զի չափաւորն ամէն տուն ալ ունէր՝ – հետեւանօքն հանդերձ «օրէն» կամ հաստատուն սովորութիւն էր ամէն արքունական կոչնոց մէջ, որոյ ակնարկութիւնը տեսանք Վարազդատայ անսովոր զգուշաւորութեան մէջ եւս (աստ, 218)։ Եւ բացարձակապէս ճշմարիտ է այս. այնպէս որ Խորենացին ուզելով ներբողել զՏիգրան Ա, զայն կը կոչէ «պարկեշտն ի կերակուրս եւ յըմպելիս» (50), որպէս թէ սակաւագիւտ առաքինութիւն մը լինէր այս՝ Հայոց թագին ժառանգորդաց մէջ. եւ զոր յետոյ Յովհաննէս կթղ. ալ կը կրկնէ Աշոտ Բագրատունոյ մասին՝ ըսելով, «առ կերակուրս խրախճանաց օրինաւոր» (175)։ Նաեւ Կորիւն նկարագրելով երբեմն գինուորական Մաշտոցի ճգնութիւնն անապատային նոր կենացը մէջ, կը յարէ՝ թէ «անդ էր այնուհետեւ չարբենալ գինւով» (23), եւ զոր կը կրկնէ

մնացեալ Լուսաւորչին համար ալ (Ագթ. 631), որպէս թէ չարբենալն անծանօթ ազնուականաց կենցաղին մէջ, անապատին միայն սեպհական լինէր։

Արշակունեաց սպառելէն վերջ եւս տակաւին նախանձայուզութեամբ մը պահուած կը գտնենք շատ դարեր մեր աւագաց այս ախտը, իբրեւ սրբազան աւանդ մը, կրօնական վարդապետութիւն մը, ծէս մը։ Արծրունին «Աշոտ, այլ եւ ամենայն իշխանքն Հայոց», կը գրէ ժամանակակից մը, իրենց կեանքը կ'անցնէին «անառակութեամբք եւ արբեցութեամբ» (Արծ. 243)։ Գրիգոր վարդապետի մեծատունք նոյնպէս հանապազորդ սովորութեամբ մը «զգինին ըմպէին եւ զմայլեալ արբենային» (Ողբ)։ Եւ արծրունի արքայն Գագիկ, ի լրումն այգեգործութեան համար թափած ջանքերուն (աստ, 21), եւ չշատանալով իւր տաճարի որմոց վրայ խրախճանական տեսարաններով շրջապատուիլ (աստ, 211), աւելի յառաջ գնաց. եւ իւր գինեճանութիւնը նուիրագործեց, տարօրինակ ու ցուցամոլ մտածութեամբ մը քանդակելով զայն, ինչպէս յիշեցինք այլուր (75), Աղթամարայ սրբավայրին որմոց բարձրութեան վրայ, ուր ինքն իսկ պաշարուած ողկոյզներէ, կը ճմլէ զանոնք իւր բաժա-

կին մէջ, ըմպելու համար ի տեսիլ աշխարհի։ Երջանի՛կ մարդիկ։

Թէեւ ոչ հնութեամբ, բայց ձեւով շատ ուշագրաւ է ճառից Լուծմանց հեղինակին աւանդած մէկ տեղեկութիւնն ալ։ Եթէ գինարբուքն սկսած եւ յառաջ գնացած է, կ՚ըսէ, եւ ուշ մնացած անձ մը ներս մտնէ, անոր առջեւ կը դնեն գինելից մեծ տաշտ մը, կամ ուրիշ ձեւով «մեծ աման» մը, զոր Թուրք բառով կեճգայտի կը կոչէին (Լծ. ՊՀ. Գ)։ Եւ «որպէս պատիժ» ուշանալուն՝ կը պահանջէին որ «կամ խմես, կամ ի բաց գնա» (Լծ. Հես)։ Եւ նա ստիպուած էր այնչափ ըմպել՝ «որ հաւասարի նոցա խմելոյն» (Լծ. ՊՀ. Գ)։ Ահա թէ ո՛ւր հասած էր մեր նախնեաց արբշռութիւնը։

Դ. Իսկ մեր եկեղեցականք՝ որ ներկայ են այսպիսի խնճոյից. ի՞նչպէս կը վարուէին արդեօք։ Գիտենք՝ որ պատուէր կար իրենց՝ գինարբուութեան սկիզբը թողուլ մեկնիլ (տես, 141)։ Եթէ երկիւղած անձինք կը յարգէին այս կանոնը՝ թելադրութեամբ նոյն իսկ իրենց խղճին, բայց պատուէրդ ինքնին ապացոյց է՝ թէ բոլոր կարգաւորք չէին յօժարիր այդ համեղագոյն մասէն զրկուիլ։ Եւ Շնորհալին հարկաւ արդեանց վրայ հաստատուած՝ կ՚ը-

սէր, «զի մի՛ ընդ գինեմոլսն յարբեցու-
թեան ըմբռնեալ՝ այսպէս լինիցի արտաքնոց
տեսողաց» (Ընդհ. 42)։ Նոյն հայրապետը
կը ստիպուէր նոյն իսկ եպիսկոպոսաց ո-
մանց գրել՝ որ իրենց կերակրներն եւ ըմ-
պելիքն «յաճախութեամբ եւ անկարգու-
թեամբ» չլինին (անդ, 29)։ Հայ եկեղեցին
ամէն դարերու մէջ պէտք տեսեր է նոյն
հրամանը կրկնել իւր պաշտօնէից։ Այս-
պէս՝ Շնորհալիէն շատ կանուխ Մանդա-
կունին արդէն կ՚ազդարարէր ժամանակի
վիճակաւորաց՝ յարգել չափաւորութիւնը,
«զի մի՛, կ՚ըսէ, յարբեցութենէն զեղխի-
ցիմք» (129)։ Դունայ Բ ժողովը կանոն
դրաւ «արբեցող» եւ «հանգանակող» քա-
հանայից դէմ (Աշտ. ԼԳ)։ Եւ Օձնեցին սահ-
մանեց՝ որ եպիսկոպոս, քահանայ կամ
սարկաւագ՝ «յարբեցութեան գտեալ», քա-
նի մ՚օր հեռի կենան ս. Սեղանէն (24)։
փորձութիւնն արդարեւ սոնց բոլորին ալ
կարող էր յաղթել։

28. — Աղանդեր։ — Այս կոչումն իւր
սահմանով հանդերձ ծանօթ է մեզ փաւս-
տոսէ, եւ կը նշանակէ հաւաքարար չոր
ուտելիներ։ «Ի ժամ աղանդեր մատուցանե-
լոյն», կ՚ըսէ, Արշակայ առջեւ դրին «միրգ,
խնձոր, վարունգ եւ ամիճ»․ ասոնք են
աղանդերը․ եւ ասոնց հետ դանակ մ՚ալ,

«որպէս զի հատցէ եւ կերիցէ զխարդ եւ կամեսցի» (208). այս ինքն աղոցմէ ի՛նչ, ո՛րքան եւ ի՛նչ կարգով որ ուզէ։ Ասոր համար զանոնք խառն ու միասին բերին դրին։

Ա. Փաւստոսի վկայութեան մէջ կայ նախ՝ որոշ «ժամ աղանդեր մատուցանելոյ», որ շատ յայտնի է պատմչին նկարագրին մէջ. Արշակ յառաջ կերակուր կը ճաշակէ, յետոյ կը սկսի գինին, եւ հուսկ աղանդերը։ Եւ «յորժամ արբեցաւ», տակաւին «զդանակն ունէր ի ձեռինն, որով զմիրգն կամ զամիճն կամէր ուտել»։ Ուրեմն բացայայտ է՝ որ աղանդերը բուն իսկ գինարբուաց մէջ էր, եւ կը տեւէր անոր հետ, ինչպէս էր բացարձակ նմանութեամբ Յունաց քով ալ, նպատակ ունենալով գինւոյ ախորժը գրգռել (Դար. Ա, 1275). եւ որ Փիլոնէ եւ իւր հայ թարգմանչէն «մակընթրակք» կոչուած է (Ճոք. 21)։ — Սա ըստ Բիւզանդայ կը մատուցուի, այս ինքն իւր կարգին կը բերուի ի սեղան՝ սկտեղներով ու խաներով (աստ, 65, 68), եւ ոչ թէ յառաջագոյն դրուած էր։

Բ. Իւր բովանդակութիւնն էր «միրգ, խնձոր, վարունգ՝» ըստ հայ պատմչին. այս ինքն ընդհանուր պտուղներ, որոնք ի հար-

կէ կը փոփոխուէին եղանակին ու գաւառին համեմատ։ Եւ մեզ պիտի կարենանք տեսնել հոն՝ հայ լեզուին ու երկրին ծանօթ մրգերէն՝ տանձ, թուզ, սերկեւիլ, հոյն, թութ (Ագթ. 479), դեղձ (անդ. Գոշ՝ Առկ. 17), նուռն (Ագթ. 479. Խոր. 609, '10. Որբ. 185). սեխ, ձմերուկ (Գոշ՝ Առկ. 51, 56), սալոր, դամոն, ծիրան (Նոյն, 16), նարինջ, յունապ (Նոյն 21, 19) եւ այլն։ Ասոցմէ խնձոր ու տանձ՝ միջին դարուն աւելի յարգի էին «ի սեղան ճոխից» (Նոյն, 13). սեխը նոյնպէս հաճելի է անոնց, եւ ազնուագոյն կը համարուի քան զվարունգը (Նոյն, 55, 57). իսկ սերկեւիլն աւելի հիւանդաց կը գործածուի (Նոյն, 17)։ Ի սեղան կ'ելնեն նաեւ չոր մրգերը՝ զորս տեսանք շտեմարանին մէջ (անդ, 15)։

Գ. Ըստ Փաւստոսի՝ աղանդերի մասն էր եւ «ամիձ», զոր կը յիշէ Եղիշէն ալ, «ամձովք երէոց» (174)։ Նոյնը գործածուած է Ոսկեբերանի Թարգմանչէն եւս՝ «ամճարեր» բառին մէջ (Մտթ. Բ, 69), յն. ὀψοποιόςի դէմ, որոյ առաջին արմատն ὄψον է որ եւ իցէ համեղ ուտեստ, եւ երկրորդն՝ արար, շինող։ Ամիձ՝ կայ ասորի եւ արաբ լեզուաց մէջ եւս՝ խառնուրդ նշանակութեամբ (Հիւբշ. 96)։ Այս է անշուշտ հայ բառին ծագումն եւ իմաստն ալ,

զոր զուգելով « ամճովք երէոց » բացատրութեան հետ, կ'ունենանք հաւանօրէն որսական մսով կամ ճարպով բաղադրուած խմորեղէն մը։ Խմորեղէն կ'ըսեմ, նկատելով նախ՝ որ Արշակ կ'ուտէ իր ամիճը մրգաց հետ եւ անոնց պէս կը կտրէ դանակով. որով յայտնի է՝ թէ չոր բան մ'էր։ Երկրորդ՝ որ Յունաց աղանդերին ալ մասն էին կարկանդակներ՝. մրգաց հետ (Դար. Ա, 1275)։ Ժամանակն է ուրեմն այս տեղ մեր ծանօթ հին խմորեղինաց ակնարկ մը տալու։

Ասոնց ընդհանուր կոչումն էր հաստեայք (Երմ. ԽԴ, 19), որոցմէ ծանօթ են հետեւեալք։ Քաքար, սորի խախուրբս բառէն՝ որ համանիշ կը համարուի յն. պղակունտին (Հիւբշ. 319). եւ նիւթն էր «նաշիհ ցորենոյ զանգեալ իւղով» (Ելք, ԻԹ, 2. Ղեւտ. Բ, 4)։ Մնացորդաց հին թարգմանութիւնը փոխան քաքարի կը գործածէ մանգաղն կամ մանգաղ հոմանիշը (Ա, ԻԳ, 29, ԺԶ, 3)։ Վարդան՝ քաքարը մերձեցընելով իր դարու խմորեղինաց, կը սահմանէ զայն՝ « հաստ լաւաշ եփեալ ձիթով » (Ղեւտ. Ա). եւ այլուր՝ տարբեր բացատրութեամբ՝ «բրդեալ չոր եւ եփեալ իւղով» (Ելք, ՃԺԸ), նշան՝ թէ ինքն իսկ անվստահ էր իր մեկնութեանց ։ Ասոնց երկրորդին

կը հակի Տաթեւացին՝ ըսելով. «Քաքար՝ (է լօշ) պատառ պատառ կտորեալ եւ ի տապակի եփեալ իւղով» (Հրց. 357)։ — Ս. Գրոց մէջ կը գտնենք դարձեալ կարկանդակս (Երմ. Է, 18, ԽԴ, 19), «կրտապս[1] չամչեղէնս» (Ովս. Գ, 14), եւ «շօրս բաղարջս զանգեալ իւղով», որոց էութեան մասին չէ կարելի աւելի պայծառ գաղափար կազմել։ Վարդան կը մեկնէ վերջինն՝ այսպէս. «շաւթ՝ լաւշ անխմոր» (Ղեւտ. Ա). եւ Տաթեւացին՝ թէ «շօթն (է) թանձր լօշ եփեալ եւ ապա օծեալ իւղով» (Հրց. 357)։ Բայց այս բացատրութիւնք զմեզ չեն գոհացներ, այլ կը մնան մեկնութեան փորձեր միայն։

Ոսկեբերանի քաջ թարգմանիչն ուրիշ գեղեցիկ եւ — տեղն է ըսելու — համեղ պարգեւ մը կ'ընէ մեզ, բնագրէն անկախ՝ ուստի իւր կողմանէ իսկ յաւելլով քանի մը խմորեղէն։ Նախ կը թուէ ալիւրի երեք ազնիւ տեսակներ, «զճաշիկն եւ զխորակն եւ զգերմակն», որոնք թուի թէ իրարմէ կը տարբերէին պատրաստութեան ու նրբութեան կողմանէ, ըստ որում երեքն ալ ցորենէ կը հանուէին, կ'ըսէ ինքն իսկ։ Եւ իսկոյն կը յարէ աղոցմէ յօրինուած

1. Կայ պրս. «Կիտշտապ, տեսակ ինչ կերակրոյ» (Գ. Գպ.)։

հաստեայքը. «զծաղսն եւ զկտապսն եւ զփոխրնդեայս, զքաքարսն եւ զտոխղուսն[1]» (Թղթ. Ա, 469)։ Զատոնք ալ ուրեմն ժամանակի հայ սեղանէն հաւաքած է Նա։ Ասոցմէ ծաղք, իբր ծալք[2], պարզուած ու ծալուած խմորեղենի գաղափարը կու տայ։ Իսկ փոխնդեայք՝ թէ հոս եւ թէ այլուր (անդ, 601) դրուած է πλακοῦντος բառին դէմ, որ երբեմն տառափոխութեամբ հայացած ալ է, պղակունտք (Ոսկ. Մտթ. Ա, 692, '93)։ Յունարէնի գործածութեան այս հարկը նշան է՝ թէ փոխնդեայն յարմարաբար միայն դրուած է ադոր դէմ. եւ որ դատելով «փոխինդ» արմատէն, պիտի նշանակէ մանաւանդ արմտեաց ալիւրէ շինուած խմորեղէն։ Աւելորդ եւ անյաջող փորձ պիտի լինէր՝ ուզել յիշեալ հաստեայց իւրաքանչիւրին ճշգրիտ սահմանն ու յօրինուածն որոնել։ Մանաւանդ որ անոնց անուանց յօգնակի գործածութիւնը տեսակի ընդհանուր կոչումներ կը կարծեցնէ զանոնք, որոց ներքեւ կը նշմարուին ուրիշ ստորաբաժանմունք ալ։

Դ. Բայց կէտ մը կայ՝ որոյ մասին չենք կասկածիր. այս ինքն՝ թէ այդ ամէն

1. Յն. լոկ «զպղակունս եւ զքաքարս»։
2. Հմմտ. Մառախուղ եւ մառախլապատ. աղ եւ անալի. թող, թոյղ եւ թոյլ։

քաղցրաւենիք սահմանուած էին հայ ազնուականին կոչնոց փառքն աւելցնելու, եւ ցարդ յիշուած ուտելեաց եւ ըմպելեաց հետ կազմելու ճշմարիտ ղուկուղեան ճաշ մը, որոյ մէջ կը ցոլանայ մեր նախնեաց ճաշակի բարձր նրբութիւնն որկորի արուեստին մէջ։ Ի զուր չէր ըսեր Մանդակունին՝ թէ «ի բազմաց քրտանց յօրինին սեղանք» մեծատանց (74). եւ արդարապէս կը կոչուին ժամանակակիցներէն՝ շուայտութիւնք (անդ) կամ շռայլութիւն (Ցճխ. 97)։ Չէ կարելի անյիշատակ թողուլ Կարուց Գագիկ թագաւորին տուած մէկ ճաշն Ալփասլանայ բանակին, որ կ'ըսուէր թէ «հարիւր հազար դահեկան» արժեր է (Ուռ. 181), շատ մեծ գումար ժամանակին համար։ Ո՛չ. մեր ազատանին ոչ մէկ դարու մէջ պիտի կարենայ ըսել Տերտուղիանոսի հետ. «Մեծարեցէք վայելչութիւնը մեր ընթրեաց՝ որ կրօնից գործեր են...։ Այնչափ կ'ուտենք՝ որչափ պէտք է կշտանալու. եւ կ'ըմպենք՝ որչափ բաւական է պարկեշտ մարդոց» (Կարբ. Ա, 802–3)։ Հայուն «կրօնքը» սեղանի վրայ՝ նախաքրիստոնէականն էր. եւ իւր ընթրեաց յղփութեան մէջ կը գերազանցէր քան զհեթանոս Յոյնը, եւ կը մրցէր հռովմէական կայսրութեան սանձարձակ զեղխութեանց

հետ (Դար. Ա, 1276, '77, '82)։ Հայաստանի անշքացման շրջանին ու մենաստանի որմերէն ներս գրող մը միայն կրնար ըսել՝ թէ «մեր զբաժակ օրհնութեան ճաշակեմք զչափաւորն, եւ ոչ զանչափն՝ որ է մեղաց եւ արբեցութիւն» (Հրց. 656)։ Հին հայ ազնուականն այս խօսքը չպիտի հասկնար բնաւ։

29. – Աւարտ կոչնոց։ — Թէ ի՛նչպէս կը վերջանար խնճոյքը, դիւրին է գուշակել։ Գինիոյն շոգւով անզգայացած մեր ազնուաշուք կոչնականաց կարող ենք նախ կրկնել՝ ինչ որ Ոսկեբերան ըղձականով մը կ'ըսէր բիւզանդացի մեծատանց. «Պարտ էր եւ քեզ գոհանալ (զԱստուծոյ) յետ կերակրոյն» (Թղթ. Ա, 533), ինչ որ կ'ընէին բարեպաշտ քրիստոնեայք իրենց ագապէն կամ պարզ ճաշէն վերջ (աստ, 111)։ Բայց մեր օրհնող եկեղեցականք արդէն վաղուց մեկնած են (աստ, 141). եւ մնացողներն ոչ նիւթապէս եւ ոչ բարոյապէս ի վիճակի չեն մատուցանելու ճաշի առանձնական աղօթքն անգամ։

Գիշերը կէսէն աւելի սահած է հիմայ (աստ, 126)։ Մեր հրաւիրեալք ալ պիտի մեկնին. բայց ի՞նչպէս։ Թողունք որ Ոսկեբերանի թարգմանիչը հաւասար իրաւամբ կրկնէ իւր ոսկեղէն լեզուով նաեւ մեր իշ-

խանաց մասին՝ ինչ որ Կոստանդնուպոլսի հայրապետը կ՚ըսէր իւրայնոց համար։ «Ի սեղանոյն յառնիցեն յանդգնեալք զայրագնեալք ծաղրալից խայտառակեալք, եւ ի ծառայիցն անգամ քամահեալք։ Ստրուկքն լուրջ ի գինւոյ՝ թողուցուն եւ գնայցեն, եւ նոքա արբեալք եւ գեղխեալք՝ մնայցեն։ Անդ կայցեն ամօթ, անարգանք եւ վատթարութիւն» (Ոսկ. Թղթ. Ա, 534)։ Այս նկարագիրը կ՚ամբողջացնէ Մանդակունւոյն աշխոյժ գրիչը, ցոյց տալով հայ արբեցողին ներքին տագնապը՝ «նողկալոյն եւ շմալոյն եւ որովայնին փքալոյն», եւ այս վիճակին արտաքին երեւոյթներն ալ։ «Թառանչէ, կ՚ըսէ, յորովայնին ծանրութենէ, եւ ժահահոտ զգայռիւքն նեխութեանն զմերձաւորսն զազրացուցանէ։ Եւ ի կարկառակոյտ աղբոյն յաճախութենէ զառ ի վեր փսխածք ելանեն, եւ զառ ի վայր խոխոջանք արձակին[1]. եւ շոգին աղտեալ ընդ երեսն մտանէ եւ ընդ օդսն տարածանի» (127)։

Այս նսեմ տեսարանը կը սրէ հայ եւ օտար մատենագրաց ցասումն ու լեզուն, եւ հայ բարբառը կը բանայ անոնց իւր

1. Հմմտ. Ոսկ. Մտթ. Բ, 70. «Ամաչեմ ասել զչարաչար զայռութիւնս, զառ ի վեր փսխածն, զառ ի վայր խոխոջանսն»։

գանձն՝ որակելու համար գինւոյն ստեղծած այդ բարոյական ու բնախօսական աւերման վիճակը մարդուն մէջ։ Արբեալք[1] եւ կամ յունական բարդութեամբ գինեհարեալք[2] անբաւական են անոնց համար. աւելի կծուները ձեռք կ'առնուն. գեղխեալք[3], զգլխեալք[4], թալացեալք[5], դանդաչեալք[6], սխալակեալք[7], սխալականք[8] կամ սխալակք[9]. թմրեալք[10] կամ թմբրեալք[11], թըրչեալք[12], զմրեալք[13] կամ զմբրեալք[14]. յիմարեալք[15], մտակորոյսք եւ խելացնորք[16] կամ խելայեղեալք[17], ի մտաց անկեալ[18], զմտօք զառանցեալ, կամ անցեալ զառանցեալ ի գինւոյ[19], գինւոյն զակամբ եկեալ[20], եւ ուրիշ անթիւ բացատրութիւններ՝ զոր կը ներշնչէ բանաւոր մարդոյն կամաւորապէս զգեցած այդ անբանական պատկերը, որ աւա՜ղ՝ այնքան հաճելի եւ ընտանի էր մեր ազատանւոյն։

30. — Մեկնումն։ — Այդ վիճակին մատնուած կոչնականք ի՞նչպէս ուրեմն

1. Փաւս. 52. Մանդ. 129։ — 2. Եսայի, ԻԴ, 20։ — 3. Մանդ. 128. Ոսկ. Թղթ. Ա, 534։ — 4. Ոսկ. անդ, 200։ — 5. Փիլ. Ճոք. 18։ — 6. Եսայի, ԻԸ, 7։ — 7. Փաւս. 114. Փիլ. Ճոք. 18։ — 8. Փիլ. Ճոք. 16։ — 9. Եսայի, ԻԴ, 20։ — 10. Մամբ. 60։ — 11. Մանդ. 74. Փիլ. Ճոք. 18։ — 12. Փիլ. անդ։ — 13. Մամբ. 38։ — 14. Փիլ. Ճոք. 18։ — 15. Մանդ. 74, 128։ — 16. Նոյն, 129։ — 17. Նար. 517։ — 18. Մանդ. 128։ — 19. Փաւս. 237։ — 20. Նոյն, 208։

կրնային շարժիլ։ Հարկաւ Ոսկեբերանի ըսածին պէս պիտի մնային՝ գէթ ոմանք՝ կոչնատիրոջ տանը մէջ, մանաւանդ հեռի տեղէ եկողները, մինչեւ որ իրենց թմրութիւնը գիշերուան հետ միասին փարատէր եւ թոյլ տար դառնալ իրենց բնակարանները։

Հասած է այդ ժամը։ Կոչնականք կ'ելնեն, կը զգենուն իրենց հագուստին այն մասերը՝ զորս հանած էին (ասա, 157-8)։ Տանուտէրը կը «յղարկէ» զանոնք (Մանդ. 59), հաւանօրէն իւր ապարանից «ընդերկար փողին» կամ սենեկաց հաղորդիչ նրբանցին միջէն (Փաւս. 204) կրկին ընկերելով անոնց մինչեւ դուռը։ Մեկնելու պահուն մինչդեռ հրաւիրեալք շնորհակալ կը լինին, ընթրատուն քաղաքավարական վերջին ցոյց մ'ալ կ'ընէ, աղաչելով հրաւիրելոց՝ որ ներողամիտ լինին կոչնոց մէջ պատահած թերութեանց, եւ կամ վերստին գան մասնակցելու իւր սեղանին։ Ասոնց մին կամ միւսը, կամ թերեւս երկուքն ալ կը նշանակէ Մանդակունւոյն սա բացատրութիւնը. «Զնոսա յղարկէ աղերսանօք» (59)։

Շատ բնական է՝ որ այս տեղ ալ տային իրարու հրաժեշտի սովորական համբուրախառն ողջոյնը, որ ծանօթ է ուրիշ

առթից մէջ եւս՝ Հայոց (Կոր. 9. Փրպ. 280), Աղուանից (Կաղ. 165) եւ այլոց քով, եւ որով ճաշին սկիզբն հանդիպեցան իրարու (աստ, 156)։ Կոչնականք համբուրին հետ կ՚ըսեն ընթրատուին՝ «Բարեւ՛ մնա»[1], կամ «Ո՛ղջ մնա» (Ոսկ. Թղթ. Ա, 897. Կիր. 14). եւ նա կը պատասխանէ՝ «Ե՛րթ բարեաւ» (Փրպ. 539)։

Դռնապանը վերստին կը բանայ դուռը, եւ մեր մեծամեծար կոչնականք կ՚ելնեն դուրս, եւ աշտանակելով իրենց երիվարները եւ կամ հետիոտն՝ ինչպէս որ եկած էին (աստ, 153–4), կը մեկնին իրենց սպասաւորաց հետ։



## Գ. ԲԱՐՈՅԱԿԱՆԸ

Կենա՛նք հոս պահ մը։ Զգոհանանք մեր նախնեաց խնճոյից այդ նիւթական նկարագրով. աւելի կարեւորը կայ. անոր ներքին կապն ու ազդեցութիւնը հին Հայուն ընդհանուր բարոյից վրայ, եւ սերտ աղերսը տոհմային պատմութեան հետ։ Նայելով մեր անցելոյն, հայ հողին վրայ կը

1. «Կենցաղական հոգոց բարեաւ մնալ ասացեալք» (Դաւ. 120)։

տեսնենք երեւոյթներ՝ որոնք անմեկնելի մնացած են. թագաւորութիւնք՝ որ կը բուսնին ու կը խամրին գրեթէ աննշան գոյութեամբ մը. եւ ժողովուրդ մը, որ անդադար նշաւակ խուժադուժ կամ հզօրագոյն ցեղերու ասպատակութեանց ու կեղեքմանց, գրեթէ կրել միայն գիտէ, եւ ազգերու ցուցակին մէջ հազիւ նշմարելի կը մնայ։ Հայաստանի աշխարհագրական աննպաստ դիրքը կը վերագրեն ոմանք այս վիճակը. ուրիշներ՝ Հայոց ընդարբոյս անմիաբանութեան։ Բայց այսպիսի պատճառներ[1] չեն գոհացներ հարցասէրը, որ անդին աշխարհաց սանձը կը տեսնէ մի միայն քաղաքի մը ձեռքը, ինչպէս Հռոմն էր կամ Վենետիկ. եւ տրուած բարոյական պատճառաց մէջ աւելի արգասիք կը նշմարէ քան բուն պատճառ։ Մեր քաղաքական տկարութեան արմատն աւելի խոր որոնելի է, նախնեաց առտնին բարոյականութեան մէջ իսկ։ Հետեւաբար կարեւորագոյն դաս մ'է զոր պիտի հանենք հոս մեր ներկայ ուսումնասիրութենէն։

1. — Ազատաց դատարկութիւնը։ — Մեր դիմաց ունինք ազնուականութիւն մը, որ անգործ՝ ուրախ ու շռայլ կեանք մը կը

1. Հմմտ. Ինճ. Բ, 369-418։

վարէ։ Ժամանակակից քաղաքակիրթ ու բարգաւաճ ազգերու հետ սերտ յարնչութեան մէջ, եւ ոմանք անոնց քով իսկ մնած, կամ բնակած տարիներով ի Բիւզանդիոն, Կեսարիա կամ Անտիոք, անոնց կենցաղավարութեան բոլոր նրբութիւնքն ու գեղխութիւնքը իւրացուցած են իրենց պալատանց, կահուց, հանդերձից ու մարմնոյ ուրիշ խնամոց մէջ, եւ մանաւանդ ստամոքսի սպասարկութեան. բայց ոչ անոնց քաղաքական ու բարոյական առաքինութիւնքը։

Մարդս անգործ չի կրնար մնալ. կամ պիտի աշխատի, կամ զուարճանայ։ Մեր ազատանին, «մարդիկ փափուկ իբրեւ զնոսս, ընդարձակաստւն բնակիչք ծիւնեղէն լերանց» (Եղիշ. 167), ընտրած էին երկրորդը։ Հռովմայեցւոյն տրուած էր՝ երթալ նուաճել ազգեր, դառնալ Թուրը կախել պատէն, ու բահը ձեռք առնուլ, անմահացնելով իսկ զայն Մշակականներով։ Հայ ազնուականը կ'ատէր բահը, եւ նախամեծար կը համարէր իւր պատառաքաղն ու տաշտը։ Իսկ մնացած ժամանակը կ'անցընէր, ըստ գեղեցիկ նմանութեան Եղիշէի, «զօրէն երէոց շրջելով ի մէջ ծաղկաբեր լերանց» (անդ), եւ յաւէտ իսկական եւրէոց եռեւէն վազելով, որուն ճոխ յիշա-

տակարան մ'է Ղազարայ Է դրուագը, եւ յորում իրենց հարց հետ կը մրցէին նախարարաց փոքր մանուկներն ինքնին (Փրպ. 27)։ Անոնք այս մասնագիտութեան մէջ դրած էին մեծ արուեստ ու նրբութիւն։ Կը բաւէ մտածել անոնց ծառայքն ու երիվարները, աղեղունքն ու սուրերը (Նոյն, 26–7), բազէները (Նոյն, 27. Խոր. 76), բարակներն (Եղիշ. 175) ու պառականք (Ագթ. 164. Փաւս. 52). երագազքը (Փրպ. 28. Ագթ. 164) կամ երագազանքն (Եզն. 107) ու գահողք (Փրպ. 26). խուճապականքն (Ագթ. 164) ու թակարդներ (անդ. Փրպ. 26). որսալից փառական շեմակները (Ագթ. 164), կամ մեծատարած դաշտերն (անդ. Եզն. 107) ու լեռներ (Փրպ. 22. Խոր. 256)։ Թող արքունական շրջափակ յատուկ որսանոցները (Փաւս. 18, 120. Խոր. 118)։ Իրենց որսամոլութեան զոհ գնացին՝ Արտաւազդ, ձիարշաւ սուզելով Երասխայ կոհակաց յատակը (Խոր. 138). Մամիկոնեան իշխան մը, տապալելով սրավազ երիվարէն (Մամ. 12). Գուրգէն Անձեւացի, վիճակելով մի եւ նոյն վախճանին[1] (Յհ. կթղ. 223)։ Բզնունեաց

1. ԺԲ դարուն կային եպիսկոպոսներ ալ, որ կը մըրցէին աշխարհականաց հետ, «սրընթաց ձիովք», եւ «շամբք եւ բազէիւք որսականօք» երէոց ու թռչնոց ե-

ծովուն կից կար «ձկնատեսանքն[1] արքունի» (Փաւս. 19), որոյ բառական կազմութիւնը կ'ըսէ մեզ՝ թէ ինչպէս արշակունի թագաւորք կ'երթային տղայաբար զբօսնուլ հոն ձկնորսական տեսարաններով։ Եւ այս բոլորին գլխաւոր նպատակն էր վանել անպէտ ժամանակը, եւ քան զայդ աւելի՝ պարարտացնել իրենց սեղանները[2], ինչպէս տեսանք Փարպեցւոյն կրկին եւ երեքկին վկայութենէն (տես, 179, 181)։ Անոնք ունէին նաեւ իրենց յատուկ զբօսավայրերն՝ ուր կը դեգերէին ընդ երկար ընտանեօք հանդերձ։ Զոր օրինակ՝ Տարօնոյ Բերդակ գիւղը «տեղիք էին զուարճանայոյ՝ բուսօք եւ մրգօք անուշիւք՝ նախնեաց իմոց իշխանաց Մամիկոնէից», կը գրէ նոյն տոհմին մէկ պայազատը ԺԲ դարուն, Զորտուանէլ, ուր եւ ծներ էր զինք իւր մայրը (Հյպ. 397)։ Հոս ալ ահա զուարճութիւնը կը կայանայ որկորի վայելից մէջ։

տեւէն շահատակելով. եւ անոնց օրինակին կը հետեւէին քահանայք ալ, զորս Շնորհալին կը կշտամբէ (Ընդհ. 28, 43)։

1. Նոյն բառն այլուր կը գրէ Փաւստոս «ձկնատեճիցն» (138), համեմատ Վենետկոյ չորս նորագիր օրինակաց, որ ուղղելի կը թուի «ձկնատեսիցն»։

2. Ըստ Քսենոփոնի՝ որսորդութիւնն հին Պարսից մէջ համազօր էր զինուորական մարզանաց. բայց մեր քով խոտոր կը համեմատի պատերազմական ոգւոյն հետ, ինչպէս պիտի տեսնենք։

2. — *Անհատական խանգարում։* — Սոյնպիսի ղատարկ ու շուայտ կենցաղ մ'իւր ետեւէն պիտի ձգէր երկու ծանր հետեւանքներ. եղծումն ներքին մարդոյն, եւ վատթարումն քաղաքական զօրութեան։ Այդ երկու վնասներն ալ մեծապէս զգալի են հայ պատմութեան մէջ։

Ա. Մեր իշխանաց եղծումը կը սկսի՝ իրենց վայելքն ու գեղխութիւնքը ձեռք բերելու անարժան եղանակովն իսկ։ Յառ յայտնի է՝ թէ անոնց անաշխատ կեանքն անբաւական էր ընձեռելու իրենց այնքան փարթամութիւն, եւ ստիպուած ենք ուրիշ աղբիւր որոնել առոր. իրենց հպատակ ժողովրդեան վաստակն իսկ, զոր աւատական իրաւամբ կը կթէին անոնք։ Եւ մինչ զգուշաբան պատմիչ մը փափուկ ձեւով կը կոչէ զայս՝ «մատուցանել ընծայս իշխանաց» աշխատաւորին կողմանէ, եւ տաժանեալ քրէագործին քրտունքը կը սահմանէ մեղմով՝ «գանձել անձանց զշահս եւ զվայելս այսր աշխարհիս՝ ի մեծութիւն թագաւորաց եւ ի հաստատութիւն հարկահանաց» (Փրպ. 27, 24–5), ուրիշ մը, աւելի համարձակախօս, մեծատանց այդ փարթամութիւնը կը հռչակէ «ի յափշտակութենէ եւ ի զրկանաց ժողովեալ անօրէնութեամբ եւ ագահութեամբ» (Մանդ.

74)․ եւ երբեմն մինչեւ իսկ «ի սպանութենէ եւ ի գրկանաց» (72)։ Իսկ երրորդ մը․ 'անուանէ զանոնք՝ «իշխանք գողակիցք գողոց, ... ագահք, յափշտակողք» (Խոր․ 276)։ Հայ «վշտացեալ գեղջուկը» (Եղիշ․ 55) կը տառապի կը շահի, եւ աւազանին կը շորթէ ու կը վայելէ։ Բարեկիրթ մարդոց համար ի՞նչ կայ աւելի նուիրական՝ քան հասարակաց բարեգործական ու կրօնական հաստատութիւնք։ Եւ սակայն մեր աւազանւոյն ընչաքաղցութիւնն անոնց դէմ ալ կը զինուի, յանգելով երբեմն մինչեւ յապերասան սրբապղծութիւն եւ սեղանակապտութիւն։ Պապ մեծին Ներսեսի հիմնած որբանոցները, հիւանդանոցներն ու կուսաստանները քանդեց կողոպտեց, եւ եկեղեցեաց կալուածները գրաւեց (Փաւս․ 228–9, '31)։ Տեսանք արդէն Հայր մարդպետի մ'աչարձակութիւնն Աշտիշատու հայրապետական ստացուածոց դէմ (աստ, 221)։ Ու դեռ Ի դարուն մեր «ազատաց ոմանց» ագահութիւնը կը հարստահարէր կը կեղեքէր վանքերը (Շին․ ԺԱ), լեցնելու համար իրենց անկուշտ որովայնը։ Անոցմէ մին, նոյն իսկ մամիկոնեան ազնիւ արեան անարժան ժառանգորդ մը, Գլակայ ուխտին կալուածներէն յափշտակեց երկու աւան

եւ իրեն հաճելի վարձակի մը նուիրեց (Մատ. 12)։ Դարեր կ'անցնին, ՝ու մեք դեռ հայ իշխանը կը գտնենք մի եւ նոյն մակարդակի վրայ։ Շնորհալին անոնց՝ գըրած խրատուց մէջ կը զգացնէ՝ թէ ի՛նչպէս իրենց հպատակները կը ծառայեցնէին անգթօրէն «որպէս զանբան կենդանիս», զլանալով անոնց հարկաւոր սնունդն անգամ, եւ կտրելով անոնց օրինաւոր վարձը։ Գոհ եղէք, կ'ըսէ, որ «վաստակօք նոցա մեծանայք եւ առաւել քան զչափն փափկանայք»։ Կը յարէ՝ թէ ոմանք կը կողոպտէին իսկ անոնց ստացուածքը՝ գործակցութեամբ գողերու, եւ կը սպանէին զրկեալները՝ որպէս զի յափշտակողաց դատախազ չկանգնէին։ Եւ այսպէս «ի զրկանաց կամ ի գողութենէ եւ ի յափշտակութենէ լնուն զսեղանս իւրեանց» (Ընդհ. 45–7)։

Յայտնի է՝ թէ առաքինութեան հիմը ժուժկալութիւնն է, որ կը կազդուրէ մարմինը, կ'ամրապնդէ հոգին, եւ կը զօրացնէ նկարագիրը։ Իսկ մեր աւազանուոյն այդ «լցեալ սեղանք» կամ հանապազօրեայ որկորստութիւնք եւ արբեցութիւնք անշուշտ առ այս չէին սահմանուած, եւ լոկ հարստահարութեամբ չպիտի վերջանային. այլ խորապէս պիտի խանգարէին մարմինն

ու հոգին, եւ զանոնք դիւրամէտ ընծայէին ամէն տեսակ ախտից։ Եւ եղո՜ւկ, ո՜րչափ տխուր է անոնց պատկերը։ Սկսելով վերէն, չափազանց կեղտոտ դէմքերու շղթայ մ'է Արշակունեաց հարստութիւնը, բաց ի ցանցառ զարտուղութիւններէ։ Զայս հասկանալու համար՝ բաւական է թեթեւ ակնարկ մը պատմութեան վրայ։ Միանգամայն այդ բարձր եւ առաջին օրինակները բնականապէս աղիտաբեր ազդեցութիւն մը պիտի գործէին աւետարանական կրօնից մէջ դեռ խակ ազգի մ'ազատանւոյն ու ժողովրդեան վրայ, Փաւստոսի անոցմէ միոյն համար ըսածին պէս՝ թէ «զթագաւորն իւրեանց օրինակ չարի առնէին, եւ նովին օրինակաւ ձեւել սկսան եւ նոյնպէս գործել» (33)։ Ու չափով մ'իրաւունք պիտի տային նոյն պատմչին վկայելու՝ թէ առ հասարակ Հայք զքրիստոնէութիւնը «լոկ միայն իբրեւ զկրօնս ինչ մարդկութեան յանձինս իւրեանց՝ եւ ոչ ջերմեռանդն ինչ հաւատովք ընկալան, այլ իբրեւ զմոլորութիւն ինչ մարդկութեան ի հարկէ» (անդ)։ Ուրիշ ի՞նչ կերպով կարելի էր ընդունիլ կրօնք մը՝ որ անծանօթ եւ անհանդուրժելի ժուժկալութիւն մը կը պահանջէր իրենցմէ։ Այս պատճառաւ ալ Ս. Վրթանեսի օրով դեռ հազարաւոր գաղ-

*տնի կռապաշտներ կային, որոց թիկունք էր Հայոց Տիկինն իսկ (Նոյն, 7)։ Մեծին Ներսեսի մահուանէն վերջ շատեր «ընդ բազում տեղիս Հայոց կուռս կանգնեցին» եւ կ'երկրպագէին անոնց (Նոյն, 230)։ Ու Գողթն մինչեւ Ս. Մեսրոպայ երեւումն իւր այգեաց պահապան հին աստուածները կը պաշտէր տակաւին (Կոր. 7)։ Նախարարք, կ'ըսէ ուրիշ մը, աւետարանի օրէնքէն կը գերադասէին իրենց «կանանց եւ հարճից» կամքը (Խոր. 181), զորս շարունակեցին պահել երկար դարեր։ Մեք արդէն տեսանք անոցմէ ոմանց սրբապիղծ ոտնձգութիւնքն ալ եկեղեցւոյ մէջ։*

*Այդ բաւական չէ. արբեցութեան եւ անոր պատճառած ջղային անկանոն գրգռմանց անհրաժեշտ արդիւնքը պիտի լինէին աւելի ծանր ախտեր ու կրքեր. այս ինքն բնական եւ մանաւանդ անբնական աղտեղութիւնք, դիւրաբորբոք թշնամութիւնք եւ սպանութիւնք՝ որ ընդհանրացած էին Հայոց մէջ (Ցհխ. 68–9), եւ որոցմով չարաչար կ'ամբաստանուին յատկապէս Տիրան, Արշակ, Պապ եւ Արտաշէս թագաւորները, եւ անոնց ժամանակակից ու հետագայ ազնուականք՝ մինչեւ միջին դար*[1].

1. Փաւս. 30–42, 129, '55–6, 215. Փրպ. 52–3. Խոր. 262–3, '76. Արծ. 127–8, 243։

այնքան մեծ էր աւերն անոնց մէջ։ Պապ յանդգնեցաւ մինչեւ անգամ հայ մենաստանաց աստուածանուէր կուսանքը խայտառակութեան մատնել (Փաւս. 228), ինչպէս Հռովմայ հեթանոս կայսերք կը վարուէին քրիստոնէից հետ։ Մանդակունին յատուկ ճառ մ'ունի երբեակ անբնական եւ անասելի պղծութեանց դէմ (142), յորում ճշմարիտ «սարսուռ» մը կը զգայ ի տես այդ քարուականութեանց. եւ կ'իմացնէ՝ թէ «առաւել զեռաւ այս ամբարշտութիւնս քան զամենայն չարութիւն անօրէնութեան ախտից» (144). եւ զոր անուշադիր չի թողուր Ցաճախապատում ալ (69)։ Գր. Նարեկացին իւր ժամանակակցաց դէմ եւս ունի շատ ծանր ամբաստանութիւններ սոյն կարգէն, զորս կ'ակնածէ մանր պատմել (503)։ Բարեպաշտ անձինք գայթակղած, իրարու ականջէն եւ իրենց թղթակցութեանց մէջ գաղտնաբար մատնացոյց կ'ընէին այդ ախտից մեծաշուք սպասարկուները (Մագ. 15, 59, 63, 69)։ Եւ մեր եկեղեցական կանոնները լի են աղոնց դէմ շանթերով։ Մոռնալու չենք՝ որ սոյն խայտառակութեանց դէմ իրենց մղած պատերազմին զոհ գնացին Յուսիկ, Դանիէլ եւ Ներսէս։

Միանգամայն մեր բարոյախօս Հարք կը միաբանին՝ այդ զեղծմանց աղբիւրը մեր նկատած շուայտութեանց մէջ փնտռելու։ «Յարբեցութենէ (են), կ'ըսէ Եղիշէ, գիջութիւնք պղծութեան» (221)․ եւ այլուր ասոնց արմատը կը դնէ «ի տենչանս կերակրոց» եւ «յարբեցութիւն անյագութեան» (258)։ Մանդակունին նոյնը կը կրկնէ գեղեցիկ նմանութեամբ մը․ «Ջորդունս՝ զէջ երկիր պարարէ, եւ զախտս պղծութեան՝ գինջացեալ որովայն» (30)։ Յաճախապատումն համոզուած է՝ թէ որկորի «անժուժկալութեամբ՝» հոգին ու մարմինը կը նեխին «յայլանդակ խորհուրդս եւ յանմաքուր վարս» (80, 85)։ Նարեկացին իւր վերեւ ակնարկած ախտաւորութեանց հետ կը զօդէ անոնց ծանօթ լուցկիքը, «փարթամութիւն, որովայնամոլութիւն, արբեցութիւն» (504)։ Ու Շնորհալին արբեցութիւնը կը համարի «մայր սպանութեան եւ պոռնկութեան եւ ամենայն չարեաց» (Ընդհ․ 136)։ Աւելորդ է ըսել՝ թէ նախնեաց այս համոզմունք մերն ալ են, հիմնուած բնախօսիկ ու բարոյախօսիկ սկզբանց վրայ։ Եւ արդէն սեղանին շուրջ տեսանք ադոնց կենդանի ու պերճախօս օրինակները (տես, 217–21)։ Եթէ շուայտութիւնը «մայր» է ախտից, մեք չպիտի

վարանինք կրկնել՝ թէ այդ մօր ու զաւակաց խոշտանգիչ կրօնից, այն է քրիստոնէութեան դէմ հակառակութիւնն ալ, զոր տեսանք մանաւանդ Նախկին դարերուն մէջ, ճետն էր նոյն շուայտութեան։

Ի՞նչ բանի հետեւանք են նաեւ մեր իշխանաց շատ ստէպ ուրացութիւնք, որոց կը հանդիպինք՝ սկսեալ Դ դարէն մինչեւ Ռուբինեանց տէրութեան վերջը[1], եւ որոնք կը կատարուին մերթ ինքնայօժար կամօք ու մերթ նեղութենէ խուսափելու համար. ո՞չ ապաքէն անոնց չափազանց փարման իրենց կենցաղական հեշտալեաց, որով եւ հոգեկան ուժոյ պակասութեան, կամ Թովմայի անսխալ բացատրութեամբ՝ «վասն իւրեանց թուլամորթութեանն» (176)։ Այս մասին նշանաւոր է նաեւ Մանազկերտացւոյն կամ «Սակս ժողովոց» գրուածին խօսքը, որ Հայերը քաղկեդոնականութենէ հեռի պահելու համար ուրիշ յարմարագոյն հնարք չէ գտեր՝ բայց եթէ քառասնորդաց պահքը մեղմել։ «Զշաբաթ եւ զկիւրակէ, կ'ըսէ, որոշեցուք յուրախութիւն ճաշակման զօշոտացն, զի թերեւս հնարեսցին ի հնազանդութիւն խոստովա-

1. Փաւս. 140, '60. Եղիշ. 41, 78. Փրպ. 341-2, '54. Ղեւ. 163. Յհ. կթղ. 159, '64, 319-20. Արծ. 176. Որբ. 125. Դարդ. 145 եւն.

նութեան մերոյ» (Թղթ. 227)։ Այդպիսի աստուածաբանական խնդիրներն աւելի դիւրահաս էին մեր «որովայնամոլից» (անդ, 230) որկորին քան մտաց։ Կրօնքը հաճոյքին հետ հաշտուելու էր՝ եթէ կ'ուզէր ընդունելի լինել։

Հարց մ'ալ։ Հայ ազնուականութեան այն անբաւ բազմութեան մէջ ինչո՞ւ չկայ Յուլիոս Կեսար մը՝ որ իւր Յիշատակարանքը թողուր, կամ Քսենոփոն մը՝ որ Կիւրոսի արշաւանք մը տար մեզ։ Ուսկի՞ց էր անոնց հռչակուած «անսիրելութիւն իմաստութեան», որով Սահակ բագրատունի մը «միայն գտաւ» խնդրող Հայոց պատմութեան (Խոր. 7), որով դեռ ԺԲ դարուն Լամբրոնացին կը հարկադրէր ըսել իւր հարազատին՝ Հեթմոյ՝ թէ «միայն զքո բարեպաշտութիւնդ ի մերումս ժամանակի տեսաք վար արկեալ ի խնդրել եւ յուսանել» (Հյպտ. 427)։ Եւ ասոնք ալ մատենագիր չեն, այլ լոկ ընթերցասէր։ Մըտաւոր ամլութեանս պատճառը միշտ նոյն է. հանապազօրեայ զեղծ խրախճանութիւնք, որոնք կրնային նպաստել Վասակայ եւ իւր բարձակցաց «թանձրամտութեան» (Եղիշ. 120), բայց ոչ մտաւոր ծննդոց՝ որոնք բաժին պիտի իյնային վա-

նականին ու եկեղեցականին, շատ քիչ բացառութեամբ վերջին շրջանին միայն։

Բ. Ի տես վերոյիշեալ ազնուազգի դըժընդակութեանց ի՞նչ կ'ընէր արդեօք ռամիկը։ Ասոր կեանքը նուազ կը գրաւէ պատմութեան ուշը. եւ հարկաւ անկարող ալ էր սա մրցելու իւր տերանց յղփութեանց հետ։ Բայց եւ այնպէս չպիտի կարենար զերծանիլ անոնց հրապուրիչ ազդեցութենէն. եւ Փաւստոս մէկ ջրով կը լուայ ժամանակի «Նախարարացն եւ կամ շինականութեանն» ամբոխը (33)։ Ազատաց ախտերէն անոնց մէջ աւելի ճարակածը եւ կամ աչքի զարնողն էր գինեմոլութիւնը, որ կը թունաւորէ անոնց կեանքը։ Մանդակունեայն օրով կը պատահինք շատերու՝ որոնք հրաժարած ամէն աշխատութենէ, « զտիւն ամենայն յարբեցութեան ծախիցեն, եւ զգիշերն ողջոյն ի քուն հանիցեն», որ էր ներհակն ազնուականաց գիշերազբօսութեան. «եւ այգուցն յարուցեալք ծանրարթունք՝ իբրեւ զխելագարս դանդաչիցեն. եւ չեւ երեկուն թմբրութիւնն թափեալ՝ անդէն ի նոյն դառնայցեն » (128)։ Ուշագրաւ տիպար մ'է Փաւստոսի մէկ « աշխարհական » երիտասարդը, որ զինուած ու ձիաւոր՝ «գայր թերեւս յաւազակութենէ». եւ այդ վիճակին մէջ ան-

գամ «արբեալ եւս դիպեցաւ» (266–7)․ այնքան զօրաւոր էր եւ անբաժան իւրմէ գինւոյն բռնակալութիւնը։

Այդ հին զեղխութիւնք դեռ այնչափ ընդարձակ են միջին դարերուն, մինչեւ անձկութեամբ ըսել տալ ականատեսի մը՝ թէ «զոր աչօք տեսանեմ եւ ականջօք լսեմ, եւ երկիւղիւ պաշարեալ՝ լռել ոչ կարեմ, թէպէտեւ կամիմ» (Արգ․ 79)։ Շնորհալին ի Կարս շրջաբերականին մէջ կը հարկադրէր պատուիրել անոնց՝ «ի բաց լինել յանառակ արբեցութենէ… եւ սիրել զչափաւորութիւն ի գինի եւ յամենայն կերակրոց վայելս» (Ընդհ․ 136)։ Մեր գինեմոլք քաջութեան ու մրցանաց նիւթ ըրած էին ըմպելին․ եւ գինարբութենէ դառնալէն վերջ կը պարծէին եւս այլոց առջեւ։ «Պատմեն, կ'ըսէ անծանօթ մեկնիչ մը, թէ զայս անուն յաղթեցի յըմպելն» (Լծ․ Պհ․ Գ)։

Վենետկոյ ԻԴ ճառընտրին մէջ (ԺԵ դարու՝) կը գտնենք Մանդակունւոյն ԺԶ ճառն ընդարձակուած աւելի հին գրչէ մը, որ արբեցողին տգեղ պատկերին գեղեցիկ գոյներ տուած է, եւ որ հետաքրքրական է՝ մեր միջնադարեան բարուց լաւագոյն ծանօթութեան համար։ «Հանապազ, կ'ըսէ, զզեղխիլն խնդրէ, եւ անառակ որկորըս

տութեամբն զօշաքաղ շրջի, եւ յարաժամ ի ճաշ եւ յընթրիս դեգերեսցի անարգել, եւ անժոյժ որովայնիւ միշտ սեղանոյ եւ ըմպելեաց սպասիցէ, եւ իբրեւ զհուր զամենայն կերակուրսն լափիցէ: Այլ եթէ էր հնար այնպիսւոյն եւ որովայնն տանէր, զլերինս եւս կլանել ախորժէր առ անյագ որկորստութեանն, եւ զտիկս եւ զկարասս յորովայնն արկանէր, եւ զթակոյկքն միանգամայն անդր քամէր»: Յետոյ կը նկարագրէ վայն արբեցած ընկած, եւ ործալու վիճակին մէջ. ուր «եթէ մարդ ոչ լինի ի մօտն, շունք եկեալ զբերանն լիզեսցեն, զի կարօտ են՝ լափեն, եւ բարեկամութիւն առնեն անզգային. եւ նմա այսպէս թուի՝ եթէ բարեկամ ոք եկեալ՝ յորջորջէ զինքն, եւ կիպրացի[1] ծիրանածայր դաստառակաւ (որ է շան կարմիր լեզուն՝) սըրբէ զբերանն: Եւ նա բուռն հարեալ զոտից շանն՝ եւ համբուրէ անյագաբար, եւ շնորհակալ լինի նմա»:

Տխուր եւ միանգամայն ծիծաղաշարժ է այդ տեսարանը. բայց շատ աւելի դառն է Նարեկացւոյն վկայութիւնը, որ խօսելով «զանհանճար ծախուցն՝» որ զինարբու-

1. Այդպէս ըստ Նորագիր հաւաքածոյի մը ճառից Մանդակունւոյն (ի Վենետ.), զոր ճառընտիրը վրիպակ ընթերցմամբ «կիպրիցի» կ՚ըսէ:

թեան առթիւ կը կատարուէին, կ'ըսէ՝ թէ շատերն իրենց ամբողջ ունեցածը մէկ օրուան մէջ կը վատնէին՝ յետոյ զղջալու համար։ Եւ այս չափով չէր վերջանար. այդ «խելայեղեալ» արբեցութիւնք հասարակօրէն կ'աւարտէին «ի կռիւս եւ ի թըշնամանս... ի հարուածս եւ ի գանս. ուստի բազում անգամ եւ սպանութիւնք, յորմէ բանտ եւ կապանք եւ տուգանք եւ յափըշտակութիւն ընչից, եւ հատումն անդամոց եւ զրկումն ի հայրենեաց եւ հալածանք յօտարութիւն, եւ կամ մահ փոխանակ մահու» (517–8)։ Այս ալ, աւա՜ղ, հայ ռամկին բաժինն էր անժուժկալութեան երեսէն, մինչ ազնուականն անպատիժ կը հպատակէր անոր ամէն թելադրութեանց, եւ անվրդով կը հիւծէր իր գոյութիւնն ախտին գրկաց մէջ։ Ուխտագնացութիւնն անգամ, բարեպաշտութեան այդ գործը, առանց արբեցութեանց անկարող էր կատարել հայ ժողովուրդը. եւ ասո՛ր դէմ կը զգուշացնէ Շահապիվանու ժողովը, պատուիրելով սրբոց տարեդարձին տօնախմբութեանց «պատուոյ եւ սրբութեան ըզգոյշ» լինել, որպէս զի, կ'ըսէ, մի՛ զուցէ «ցասումն աշխարհի հասցէ փոխանակ բարեխօսութեան» (ԺԵ)։ Նոյն անկարգութիւնն աւելի պարզ կը բացատրէ Ցհ. Եզնկացին,

*ըսելով թէ ինչպէս ժողովուրդը կը շարունակէր «արբեցութեամբ ձանձրացուցանել» ուխտավայրերը* (*Ներբ.* 141)։

*Գ. Մեղկութիւնն ու փափկութիւնը կը խանգարեն հայ տիկնանց բարքերն ալ։ Արդէն իրենց աղջկութենէն մինչեւ հարսնութիւն փակուած իրենց սենեկին մէջ* (*Փրպ.* 161–2)*, այնուհետեւ կը շարունակեն եւ աւելի փոյթ կը տանին «զրգեալք եւ զգուեալք» թաւալու իրենց ճոխ ապարանից ու կերպասեայ սրահակաց մէջ* (*անդ. Յհ. կթղ.* 286)*, եւ կը ննջեն «փետրալից հեշտոցաց եւ ոսկեթել գահոյից» վրայ* (*Որբ.* 140)*։ Անոնց փափուկ մատները կը զգուշանան նոյն իսկ առտնին ծառայութիւններէ, եւ նաժիշտները կը յարդարեն իրենց անկողինն անգամ* (*Եղիշ.* 173)*։ Անոնց պճնասիրութիւնն զգեստուց մէջ՝ շատ վեր է մեր ծանօթութենէն, եւ որուն պիտի վերադառնամ ուրիշ առթիւ։ Մեք տեսանք արդէն անոնց հոգածութիւնը բուրաստանաց, այգիներու, փափկակերութեան, խնճոյից եւ ասոնց մէջ ցուցած պչրանաց* (*տես*, 129, 21, 112, 148–9)։

*Եթէ այդ հեշտակեցութեան ծոցէն կըրնային ծլիլ Աշխենի, Խոսրովիդխտոյ, Շուշանկան, Կատրանիդեայ եւ իրենց նմա-*

նեաց պէս մեծամեծ բարեպաշտուհիք, շատ աւելի դիւրաւ պիտի բողբոջէին՝ Խոսրովուկին մը եւ միանգամայն նու առաքինուոյն Տրդատայ, որ մոռնալով իւր տան ու թագին պատիւը, հեթանոս Սաթինկան մը վէպն իրականացնէր իւր վրայ, եւ Ս. Վրթանեսէ յանդիմանուէր «վասն գաղտնի շնութեան կծծութեան բարոյից պոռնկութեան». ու չարագործաց ձեռքը զինէր իւր յանդիմանչին կենաց դէմ (Փաւս. 8)։ Կամ Փառանձեմ մը, որ ճաճանչաւէտ գեղեցկութեանն հետ զուգէր խաւարային ոգի մը։ «Անօրէն մարդ էր, կ'ըսէ պատմիչը, եւ ամենեւին յԱստուծոյ ոչ երկընչէր». իւր որդին դիւաց նուիրեց, եւ իւր նախանձորդ Ողիմպին սպանեց, Ս. Խորհրդոյն մէջ ամբարշտօրէն թոյն խառնելով (նոյն, 155, '23)։ Ասոնք զարտուղութիւն չէին բնաւ ազնուուհեաց դասին մէջ. Մանդակունւոյն ամբաստանութիւնն անոնց դէմ շատ ընդարձակ է. եւ նախ թատերամոլութեան մէջ։ «Ազգն անհամեստիցն կանանց, կ'ըսէ,... միշտ ի թատերսն փութան», — զորս կ'երեւի՝ Արշակունիք առած էին Յոյներէն, եւ դեռ կը տեւէին թ—ժ դարերուն (Նար. 530. Յհ. Կթղ. 185. Որբ. 147), — եւ «ելեալ ի վեր ի դիտակ տեղիս նստին, խորհին եւ

դիտեն զննականն իւրեանց ի չարիս», այն է վարձակները, որոնք «ի բարս բոզից կերպարանեալք՝» ապականութեան թոյնը կը ծաւալէին կանանց եւ արանց սրտին մէջ (132–4, '59)։

Բաւական չէր՝ որ բիւզանդացի տիկնանց ցուցամոլութեամբ շպարուած, «ժանուաւ» կամ «բասստեռամբ» կամ «գահաւորակաւ» կը շրջէին ամէն կողմ (Փաւս. 118. Ագթ. 131. Ոսկ. Թղթ. Բ, 552), եկեղեցի անգամ նոյն կերպով կ'երթային (Եղիշ. 174), եւ հանդիսավայրի մը կը վերածէին աղօթատեղին, թէ իրենք եւ թէ արք հոն մտնելով՝ լուացուած, օծուած, շքեղապէս զարդարուած, «որպէս թէ ի բոզանոցս կազմիցիմք կամ ի թատերս խաղուց», կը բողոքէ Մ[illegible]ակունին. ուր «կանայք բոզից կեր[illegible] կան առաջի Աստուծոյ, եւ արք՝ [illegible]նեաց», ան պարկեշտ ակնարկն[illegible]րու, եւ «[illegible] ծած[illegible] բարբառ[illegible]րու ուշ[illegible] թ[illegible]ւիրել[illegible]ախտար[illegible] [illegible]ղ սո[illegible]մբ՝ «բ[illegible] [illegible] եւ շ[illegible]եամբ» [illegible]ց ժամ[illegible]4)։ Մ[illegible] [illegible]նոյն [illegible]կարա[illegible] [illegible]ով [illegible]րայ[illegible] [illegible]ղու[illegible]ին [illegible]

ծանր ամբաստանութիւնը կանանց դէմ ալ կ՚ուղղէ (143)։ Այս ցաւագին անկման պատճառն անոնց արանց գայթակղական օրինակին հետ եւ քան զայն աւելի՝ որոնելու չե՞նք անոնց «գինեբեր այգեաց» մէջ (Եղիշ. 174)։ Սկզբունքը միշտ նոյն է երկու սեռից համար եւս. նոյն է եւ արդիւնքը, որ կը տեւէ դեռ իր բոլոր ծանրութեամբ ԺԲ դարուն, ինչպէս կ՚երեւի Ալաւկայ որդւոյն անոնց դէմ գրած կանոններէն (Ծ, ԾԷ)։

Դ. Ռամիկ կինն ալ զերծ չէ մնացած բամբասանաց առիթներէ։ Բարձր դասու սեռակցաց գայթակղական վարմունքը քաջալեր եղած է հետեւելու անոնց։ Մեր եկեղեցական կանոնաց մէջ ստէպ կը պատահինք անոնց անկարգ բարուց ու կենակցութեանց մասին յիշատակութեանց, ո[illegible]մէ ուշագրաւ են մանաւանդ Ալաւկայ [illegible]ւոյն (ԺԷ–Ի, ՀԵ) եւ Ա. Կոստանդնի (Կիր. [illegible]1) խօսքերը։ Նշանաւոր է ասոցմէ միոյն [illegible]ծը, մեգերայ[illegible] յանդգնեցաւ մին[illegible] իսկ մահա[illegible]աշունով լռեցնել [illegible]եփանոս [illegible] յանդիմանիչ բե[illegible]ը, յետ[illegible] բանալու համար ի [illegible] եւ ա[illegible]ր. 101–2)։ Շնորհա[illegible]հար[illegible]արէր ոգորելու իր ժա[illegible]ամ[illegible] պչրանաց դէմ, ի մէջ

դիտեն զնմանիսն իւրեանց ի չարիս», այն է վարձակները, որոնք «ի բաց բոզից կերպարանեալք՝» ապականութեան թոյնը կը ծաւալէին կանանց եւ արանց սրտին մէջ (132–4, '59)։

Բաւական չէր՝ որ բիւզանդացի տիկնանց ցուցամոլութեամբ շպարուած, «ժանուաւ» կամ «բաստեռամբ» կամ «գահաւորակաւ» կը շրջէին ամէն կողմ (Փաւս. 118. Ագթ. 131. Ոսկ. Թղթ. Բ, 552), եկեղեցի անգամ նոյն կերպով կ'երթային (Եղիշ. 174), եւ հանդիսավայրի մը կը վերածէին աղօթատեղին, թէ իրենք եւ թէ արք հոն մոնելով՝ լուացուած, օծուած, շքեղապէս զարդարուած, «որպէս թէ ի բոզանոցս կազմիցիմք կամ ի թատերս խաղուց», կը բողոքէ Մանդակունին. ուր «կանայք բոզից կերպարանօք կան առաջի Աստուծոյ, եւ արք՝ բոզահոմանեաց», անպարկեշտ ակնարկներով իրարու, եւ «կընձաձայն բարբառովն» իրարու ուշադրութիւն հրաւիրելով. ու դժբախտաբար ցայսօր տեւող սովորութեամբ՝ «ընդվայրած լեզուօք եւ շատխօսութեամբ» կ'անցնէին աղօթից ժամանակը (44)։ Մեք կ'ապշինք՝ երբ նոյն համարձակաբան հայրապետը խօսելով արանց վերոյիշեալ անբնական աղտեղութեանց մասին (անդ, 246), նոյն

ծանր ամբաստանութիւնը կանանց դէմ ալ կ'ուղղէ (143)։ Այս ցուցակին անկման պատճառն անոնց արանց գայթակղական օրինակին հետ եւ քան զայն աւելի՝ որոնելու չե՞նք անոնց «գինեբեր այգեաց» մէջ (Եղիշ. 174)։ Սկզբունքը միշտ նոյն է երկու սեռից համար եւս. նոյն է եւ արդիւնքը, որ կը տեւէ դեռ իր բոլոր ծանրութեամբ ԺԲ դարուն, ինչպէս կ'երեւի Ալաւկայ որդւոյն անոնց դէմ գրած կանոններէն (Ծ, ԾԷ)։

Դ. Ռամիկ կինն ալ զերծ չէ մնացած բամբասանաց առիթներէ։ Բարձր դասու սեռակցաց գայթակղական վարմունքը քաջալեր եղած է հետեւելու անոնց։ Մեր եկեղեցական կանոնաց մէջ սաստիկ կը պատահինք անոնց անկարգ բարուց ու կենակցութեանց մասին յիշատակութեանց, որոցմէ ուշագրաւ են մանաւանդ Ալաւկայ որդւոյն (ԺԷ–Ի, ՀԵ) եւ Ա Կոստանդնի (Կիր. 171) խօսքերը։ Նշանաւոր է առոցմէ միոյն գործը, մեգերայի մը, որ յանդգնեցաւ մինչեւ իսկ մահացուցիչ դաշունով լռեցնել Ստեփաննոս սիւնեցւոյն յանդիմանիչ բերանը, յետոյ իրենը բանալու համար ի կոծ եւ ապաշաւ (Որբ. 101-2)։ Շնորհալին հարկ կը համարէր ոգորելու իր ժամանակի կանանց պչրանաց դէմ, ի մէջ

այլոց պատուիրելով չայլագունել իրենց երեսներն «օտար դեղօք» ի գայթակղութիւն անմիտ երիտասարդաց։ Եւ կը կըշտամբէ դարուն «կաւատները», որ «զանմիտ կանանց եւ զարանց տայ ճաշակել զպտուղն մահաբեր մեղաց» (Ընդհ. 52)։ Շատ ծանր եւ ընդհանուր կը նկարագրէ Լաստիվերտցին անոնց անկումն իւր օրով, զոր ինք մահմետական տիրապետութեան արդիւնք կը համարի (76), թէեւ մեք այս մասին բոլորովին համամիտ չլինինք իւր հետ։ Երիցուհիք անգամ, որոցմէ աւելի պարկեշտութիւն մը կը պահանջուէր, կը մրցէին իրենց միւս պճնասէր սեռակցաց հետ՝ զգեստուց պաճուճանաց, ծարրով իրենց աչերը դեղելու, անգուրով երեսնին ծաղկելու, եւ «մուշկ եւ ամբար» բուրելու մէջ, ինչպէս կ'իմացնէ մեզ Առաքել սիւնեցին, նմանեցնելով զիրենք այդ վիճակին մէջ՝ «Որպէս ըզբոզ փողոց նըստեալ» (Աշղ. 200–1)։

Այս եւ այսպիսի վկայութիւնք թէեւ չներեն մեզ դատել ու դատապարտել ամբողջ հայ կանանին, որոց մէջ առաքինութեան յայտնի օրինակներ ալ շատ կան, բայց կը զգուշացնեն զմեզ անպայման եւ անխտիր լաւատեսութեամբ մը նայելէ անոնց վրայ։ Չի սոյնպիսի հրապարակային

ամբաստանութիւնք եւ կամ յանդիմանութիւնք՝ պատահական գեղծումներէ շատ տարբեր բանի մը հաւաստիքն են մեզ։

3. — *Քաղաքական անկում։* — Գլխաւորապէս ազատանւոյն, ազգին այդ կարեւորագոյն ու վարիչ մասին կենաց յիշեալ դերը՝ սահմանուած էր լինել նախադուռն քաղաքային կենաց վատթարացման։ Ուսկի՞ց էր մեր մէջ պակասն աշխարհակալ թագաւորաց կամ զօրավարաց, ի բաց առեալ Տիգրան մը՝ որուն չափով մը ժպտեցաւ բախտը կարճ ժամանակի համար միայն։ Ուսկի՞ց էր մեր երկրին տկարութիւնը, հակառակ այնչափ պերճաշուք նախարարութեանց համախումբ զօրութեան։ Եւ վերջապէս ո՞ւր գնացին այդ նախարարութիւնք։

Հիմայ աւելի դիւրաւ կրնանք տալ այս հարցմանց պատասխանը, համառօտ եւ ամփոփ։ Քաղաքական յաջողութեանց դեկը՝ զինուորական առաքինութիւնն է. իսկ այս առաքինութիւնն անհաշտ էր հայ ազատանւոյն — մեր այդ բարձր զօրականին — անժուժկալ կենցաղավարութեան հետ։ Պատերազմը հոմանիշ է խստամբեր զրկանաց կամ անձնուրացութեան. իսկ հայ ազնուականը, սնած իւր տաճարին հեշտաբոյր մթնոլորտով, ծաղկով ու խնկով եւ

գինւոյն գոլորշով, կ՚առէր երկուքն ալ։ Եւ իր այդ ներքին կեանքն անատակ կ՚ընէր զինք կազմելու այն հաւաքական ինքնապաշտպան ու տիրապետող ոյժը՝ որ անհատական կորովութեանց համախմբութեամբ կը ձեւանայ։ Ասո՛ր համար չկըրցաւ փայլիլ նա, ասո՛ր համար չգիտցաւ տիրել, ասո՛ր համար չկրցաւ պահպանել իր գոյութիւնն ու երկիրն անգամ։ Օրինակները թող խօսին. անոնք աւելի պերճ են եւ համոզիչ։

Արշակ մեծ շահու մը համար օգնութեան գնաց Շապհոյ՝ Յունաց դէմ։ Պարսից բանակը դեռ չէր հասած, եւ թշնամին ակար կ՚երեւէր։ «Տապել սկսան զօրքն Հայոց», կ՚ըսէ պատմիչը, եւ կը բռնադատէին թագաւորը թոյլ տալ՝ որ փութան «անձամբք վճարել» պատերազմը, ինչպէս ըրին ալ։ Ոչ թէ յաղթանակի ծարաւն էր զանոնք անհամբեր ընող, այլ «զի լաւ հաշուէին զմեռանելն առաւել քան զյամելն յօտար աշխարհին»։ Յոյները պարտեցան, եւ Շապուհ երախտագէտ հոգւով հրաւիրեց զԱրշակ յԱսորեստան՝ վարձատրելու համար Հայոց օժանդակութիւնը։ Ճշմարիտ զօրական մը հպարտ սրտով պիտի ընդունէր այդ կոչը. ընդ հակառակն Հայոց զօրքը «տաղտապէին երթալ զհեռի

ճանապարհն», կ՚ըսէ խորատես պատմիչը, տալով անոր ներքին պատճառն ալ. «Զի ամենայն ոք յանձնիւր տան՝ յիւրաքանչիւր տեղի զօրէն բարուց հայաստան մարդկան անձկացեալ էին». այս ինքն հոն՝ ուր կը սպասէին իրենց զբօսանքներն ու սեղանները. — մինչ դեռ խստամբեր հռովմայեցւոյն «տեղին» մինչեւ հոն էր՝ ուր կը մղէր զինք հայրենասիրութիւնն ու փառքը, եւ ուր կրնային հասնիլ զէնքերը։ — Արդ՝ նախարարներն ազատելու համար Շապհոյ հրաւէրէն, նենգութեամբ գժտութիւն ձգեցին երկու թագաւորաց մէջ, եւ Արշակ գիշերայն գաղտուկ փախաւ գնաց բանակովն ի Հայաստան, այդ օրէն դուռ բանալով երեսնամեայ արիւնալից շրջանի մ՚երկու ազգաց մէջ (Փաւս. 130–5)։ Բայց այդ հեշտակեաց իշխանները գէթ իրենց սերմանած փոթորկին ժուժկալելու քաջութիւնը չունեցան. եւ իրենցմէ շատերը գնացին յարեցան յետոյ թշնամւոյն, Պարսից արքային, ազատելու համար կռուի հարկէն (Նոյն, 159–60)։

Այս եղաւ մեր ազատանւոյն ընթացքը սկիզբէն մինչեւ վերջ։ Դժուարաւ պիտի գտնենք շրջան մը կամ նշանաւոր պատերազմ մը, յորում անոնք համաշունչ եւ համագունդ գտնուին։ Շատերը նախա-

մեծար կը համարէին, դաւելով իսկ իրենց տոհմայինքը, թագաւորն ու տէրութիւնը, հզօրագոյն թշնամւոյն դրօշին ներքեւ վայելել անդորր եւ ապահով իրենց մեղկութիւնքը՝ քան զինուց խստութեան ենթարկուիլ ի պաշտպանութիւն հայրենեաց։ Այս թուլամորթութեան հետեւանքն էր անոնց ծանօթ անմիաբանութիւնն ալ, որ սխալմամբ առաջին պատճառ համարուած է մեր տկարութեան։

Դիտելի է՝ թէ ինչպէս մեր իշխանք առ հարկի կամ ըստ պատշաճի բանակին մէջ գտնուելու ժամանակ իսկ միասին կը տանին իրենց բոլոր առտնին հաճոյքները։ Այնպէս որ ռազմի դաշտին վրայ հայ զօրականին «վրանաց» ներքեւ կը տեսնենք այն ամէնը՝ որ կրնար գտնուիլ պալատի մը մէջ. «զհովանոցս եւ զսրահակս, եւ զգահոյս եւ զանկողինս, եւ զկահ եւ ըզկազմածս եւ զկարասի իւրեանց, եւ զգանձս իւրեանց անգամ», որոցմէ զատ են «զէնք իւրեանց»։ Կռուելու չեն գնացած, այլ փափկանալու. եւ փախչելու պարագային՝ այդ ամէնն աւար կը թողուն յաղթականին (Փաւս. 135)։ Այս բաւական չէ. Ոսկեբերանի թարգմանիչն Անտիոքայ քարոզչին նկարագրած արքունի բանակին պատկերն հայացնելու վայրկենին՝ իւր ծա-

նօթ շեղմամբ կ՚երթայ կը կանգնի Վռամշապհոյ կամ Արտաշեսի բանակին առջեւ, ու վայն կը գծէ ուղղակի։ Եւ մեք կը տեսնենք՝ թէ ի՞նչպէս հոն «ճաշք զճաշս մղիցեն եւ ընթրիք զընթրեօք անցանիցեն, գուսանք երգիցեն, փողարք զձայն փողոցն նուագիցեն[1]»։ Ի՞նչ է տարբերութիւնն այս բանակին ու մեր տեսած գիներբուաց տաճարին միջեւ։

Հզօր անմատոյց ամրոցն Արտագերք պաշարուած էր Պարսից բիւրաւոր զօրքերէն, եւ անոր մէջ ապաստանած էին Փառանձեմ տիկինն ու տասնուեօթն հազար անձինք, զուր սպասելով Պապայ փրկարար գալստեան։ Թշնամին վարը մահ եւ աւեր կը սփռէր, եւ կարգը պիտի գար բերդականաց։ Իսկ անոնք այդ ճգնաժամին անհոգ եւ անխորհուրդ, «ուտէին եւ ըմպէին եւ ուրախ լինէին», որպէս թէ իրենց շուրջ հայրենի հողը փոխանակ արեան՝ վարդով ծածկուէր. մինչեւ որ դառն կորուստն իրենց ալ հասաւ ծախիչ մահտարաժամով մը, որ հարկաւ արդիւնք էր իրենց անժուժկալ զեղխութեանց, պատմիչէն երկնային պատիժ մը համարուած. եւ որ ստիպեց զՏիկինն անձնատուր լինել

1. Ոսկ. Մատթ. Բ, 66. յն. է լոկ՝ «ընթրելով եւ սրընգելով»։

գազանաբարոյ ախոյեանին պիղծ բազկաց մէջ (Փաւս. 170–1)։

Աւելին կայ։ Քաջն Մանուէլ Մամիկոնեան, հայ վտանգեալ թագին եւ աշխարհին պաշտպանութեան անձնատուր, իւր զօրքը խաղացուց Պարսից ու Մերուժանայ դէմ՝ վճռական ճակատամարտի մը, եւ բանակ զարկաւ Բագուանի մէջ։ Թշնամին հեռի էր, բայց կը լրտեսէր զինք արթնութեամբ. իսկ Հայք փոխանակ աչալրջութեամբ սպասելու՝ ինչպէս կը պահանջէր պարագայն, սպարապետին հրամանաւ սկսան որսի երթալ. — զբօսանք մը՝ որ բանակին սովորական էր խաղաղութեան ժամանակ ալ (Ագթ. 164)։ — Եւ երբ ձիաւորեալ պիտի մեկնէին, յանկարծուստ հասաւ թշնամւոյն մերձեցման լուրը։ Անոնք տագնապած՝ Ս. Կարապետին ապաւինեցան, եւ աճապարեցին իրենց կապարճները փոխանակ երէոց՝ Պարսից դէմ դարձընելու։ Բախտին կամ Կարապետին օգնութիւնն էր որ փրկեց զիրենք որկրամոլ զբօսասիրութեան պատրաստած աղետէն (Փաւս. 251–3)։

Միակ դէպքը չէր այդ, եւ ոչ ալ յատուկ որոշ շրջանի մը։ Վեց դար վերջ Գեւրենիկ արծրունի, Արարաց հետ կռուի մէջ, մինչդեռ գիշեր մը զօրացը հետ կը

գտնուէր «ի մեծ ուրախութեան», թշնամիք յանկարծուստ յարձակեցան այդ զուարթ ամբոխին վրայ, «արարին կոտորած մեծ», եւ գինւոյն մտերիմ արծրունի թագաւորը գերի բռնեցին (Ուռ. 37)։ — Ուրիշ օրինակ մը։ 1036ին՝ Գանձի իշխանը քաջութեամբ առաւ Պարսից ձեռքէն Վասպուրականի Բերկրի քաղաքը. եւ պաշարելով անոր ամրոցը՝ ծարաւով կը նեղէր թշնամին։ Եւ սակայն «յայսպիսի պատերազմ», ուր մեծ զգուշութեան պէտք կար, «անհոգացեալ կային զօրքն Հայոց», կ՚ըսէ պատմիչն իրաւացի զարմացմամբ, «եւ էին ի մեծ գինարբութեան»։ Ամիրայն գըտած էր նպաստաւոր վայրկեանը. իսկոյն հաւաքեց իրենները, յարձակեցաւ ու դիտապաստ փռեց Հայոց թմրած բանակը զօրագլխով միասին (Նոյն, 86)։ Այսպէս զոհ գնաց արբեցութեան, եւ այն՝ տկար կնոջ մը ձեռքով, զԲետիղուա պաշարող ասորական ահեղազօր բանակն ալ (Յդթ. ժԲ)։ Բոլոր ասիացիք իրարու կը նմանէին։

Քստմնելի ճշմարտութիւն մը կայ մեր պատմութեան մէջ. Արշակունեաց հարստութիւնը վերջացաւ՝ «իգամոլ» թագաւորով մը (Փրպ. 52). իսկ Բագրատունեացն՝ «առնամոլի» թագաւորով մը (Մագ. 59),

որ ինքն ալ յետոյ եղերական վախճան մ'ունեցաւ ախտերու մօր գրկաց մէջ։ Երբ օր մ'որսի ժամանակ «արքեայ»՝ ընկած էր անոք ծառի մը շքին ներքեւ, յանկարծ աչերը բացաւ ապշահար յոյն թերդի մը ծայրը, եւ իսկոյն գահավէժ՝ վերստին փակեց զանոնք յաւերժաբար պարսպին ոտքը, այսպէս քաւելով իր սպանած մեւորապոլտին ոճիրը (Կիր. 58)։ Արտաշէս եւ Գագիկ, նման իրենց նախնոյն Պապայ՝ իրենց դեռաբուսիկ հասակէն զերի ախտին, եւ ախտին արբեցութեանը մէջ Թագակորոյսք, երկուքն ալ դժբախտ ծնունդներն էին հայ աւագորերոյն անբարեխառն կենցաղավարութեան։

4. — Ո՞ւր է Անին։ — Բուն տեղն է հարցնելու. ո՞ւր է Շիրակայ նազելի ոստանը, հայրենի.հին քաղաքաց այդ մարգարիտը, միջնադարեան Ասիոյ այդ բազմարոյր ծաղիկը, որ մեծահաւատ ու մեծազանձ հոգիներու ձեռակերտած «հազար եւ մի եկեղեցեաց» երկնասլացիկ գմբեթներով պսակուած՝ կը սիզար դշխոյի մը պէս. որ Բուպորի պառաւ մրցակցին նախանձը կը գրգռէր, քանասարիկ գայլուն բիբերը կ'այրէր, եւ Թաթար վազրին արիւնոտ ժանիքը կը սրէր իր դէմ։ Ահաւոր հարուածոց ներքեւ ճմլեցաւ այն, եւ

իւր աւերը դեռ կը գորովէ՛ մեր սիրտն ու կը խռովէ՛ մեր հոգին։ Իւր անցած փառաց ու շնորհաց կախարդանօք միայն զօշոտուած են մեր՝ հայորդւոցս աչերը։ Եւ ո՛րքան պիտի խաբուինք՝ լոկ քաղաքական կամ երկրաբանական հասարակ պատճառաց մէջ փնտռելով անոր կործանումը։

Ո՛չ, այդ չէր Անին։ Զայն ճանաչելու համար մեք աւելի ուշադրութեամբ զննելու ենք իւր անցեալը. եւ այն ժամանակ պիտի տեսնենք՝ թէ ի՛նչպէս այդ «ամուրն Անի»՝ եւ իւր շրջակայ աւանները ալ զերծ չմնացին ապականութեան թոյնէն, եւ թէ այս իսկ նիւթեց գլխաւորապէս անոնց կորուստը։ Ցնցող եւ ահագին է պատմչին ամբաստանութիւնն անոնց դէմ, թէ «Առաւել յամբարտաւանութիւն կրթեալ՝ ընդդէմ երկնից կայթս հարկանէին»։ Ծիծաղկոտ ոստանը մանաւանդ, իւր ուժեղ գեղոյն գիտակցութեամբ զգլխած, նախանձորդ մը հանդիսացաւ Բաբելոնի ու Պոմպէի, եւ իւր աթոռը դրաւ անոնց մէջ՝ որ «միայն հեշտութեան եւ փափկութեան ըսպասեն, եւ ի գործոց աղտեղութեան ոչ խորշին. այլ միայն արբեալ լինին ի ցանկութեանցն՝ որ զնոսա ըմբռնեալ ունի» (Լաստ. 109, '11)։ Անոր ազատաց համախմբութեանց մէջ դեռ կը տիրէ հին դարերու

անհոգ զուարթութիւնը, որ վտանգին ծանօթութիւնը չունի բնաւ (սստ, 209), եւ կը վատնէ իր ուժերը՝ որոց պէտք պիտի ունենար վտանգին դիմադրելու համար։ Իր թեթեւութեան համբաւը կը հասնէր ամէն կողմ, եւ հեռաւոր Կիլիկիայէն բանաստեղծ մ'այսպէս կը խօսէր անոր.

« Մանկունքդ քո զըւարթալի
Նըման նորոգ բուրաստանի.
Դըստերքդ քո պաճուճալի,
Յերգ 'ւի քընար միշտ ի խաղի »
(Շնր. Եդես. 16)։

Այս զուարթութիւնն իսկ էր որ կեանք տուաւ Բագրատունեաց քաղաքին, եւ այս զուարթութիւնն իսկ պիտի կապտէր անոր կեանքը։ Այսպէս ծնան ու մեռան նաեւ Աթէնք ու Կորնթոս։

Սոսկալի էր հարուածը՝ զոր տուաւ անոր Ջարմաղան 1236ին. անբաւ մահեր, աւեր, կողոպուտ եւ գերութիւն. որովհետեւ չուզեցին խոնարհիլ հզօրագոյն թըշնամւոյն առջեւ, մոռնալով՝ որ զԱնին հիմնող ու պահպանող բագրատունի զօրեղ բազուկը վաղուց բեկած էր. եւ ապաւինելով իրենց «յղփութեան՝» որ «յամբարտաւանութիւն ած զնոսա, եւ ամբարտաւանութիւնն ի կորուստ», ինչպէս կը խորհրդածէ Կիրակոս իմաստուն կերպով (138)։

Բայց աւելի եղերական էր անոր վախճանը, զոր կը նկարագրէ գրաւոր աւանդութիւն մը. Նկարագիր՝ որ ըստ ոգւոյն կը միաբանի հին մատենագրաց պատմածներուն. եւ զոր դիւրագոյն էր ԺԸ դարու պատմչին փոխ առնուլ հնագունէ մը, քան ինքնին ստեղծել՝ ի վնաս անցած ու աւերուած քաղաքի համբաւոյն։ — Սորկութիւն եւ բազմաթիւ աղէտք չէին խրատած զեղծ ոստանը, եւ անեցիք կը շարունակէին իրենց մոլութեանց մէջ։ Ի հեճուկս Յովհաննէս Եզնկացի վարդապետին, որ եկած էր զգաստութիւն քարոզել, «զեղխեցան եւ արբեցան», կ'ըսէ, ու կը հեգնէին զայն։ Երկնառաք կամ նոյնպիսի կարծուած պատուհասք եւ երեւոյթներ սարսեցին զանոնք պահ մը. բայց շուտով մոռցան, եւ «սկսան կրկին գործել զչարիս եւ թաւալիլ ի յախտս պղծութեանց»։ Համբերատար վարդապետը վերստին եկաւ ազդարարել։ Այս անգամ քաղաքացիք իրենց խօլ զուարթութիւնն հոն հասուցին, որ քարոզչին թմրապեղ արբուցանելով՝ մերկացուցին զայն, սայլի մը վրայ ձգեցին, եւ այնպէս անզգեստ ու խայտառակ շրջեցնելով քաղաքին մէջ ի ձայն մունետիկի, ծաղր կ'ընէին։ Յետոյ բերին կախեցին զամբիւղով կաթողիկէին

ուագ դրան առջեւ, որպէս զի մտնողներն ու ելնողներ տեսնեն։ Վարդապետն երբ աթափեցաւ, ամօթահար՝ սկսաւ լալ եւ անիծել։ Անկարգութեան բաժակը լցուած էր։ Շատ չանցաւ, յանկարծակի ահաւոր երկրաշարժն անոնց լրբենի քրքիջները ճչի եւ խուճապի կը փոխէր, կործանելով անոնց գլխին՝ չորեքդարեան ոստանին հըզօր պարիսպներն ու ճոխ դաստակերտները (Հյպտ. 514-5)։ Բնութիւնը կ'աւարտէր զեղխութեան 'սկսած ու խժդուժ ձեռքին յառաջ վարած աւերը։ Եւ Անին, գեղեցիկն ու շուայտ, կը ջնջուէր քաղաքացանկէն, իր ետեւ թողլով այլասերած ու վայրավատին ժողովուրդ մը, եւ դիր եւ տար փլատակաց մահասարսուռ հովիտ մը, ուր Ախուրեանը կը հեծէ վարանոտ, ուր Ջղջիկը կը սաւառնի ագաթեւ, ուր կ'ողբայ պատմութիւնը։

5. — Անկ՞ղծ են պատմիչները։ — Թերեւս պիտի զոնուին անձինք՝ որ հարցընեն՝ թէ աշխարհականաց կամ Անւոյ դէմ մեր թուած ծանր ամբաստանութեանց մէջ արդեօք չկա՞յ չափազանցութիւն կամ կուսակցական հակառակութեան պէս բան մը մեր եկեղեցական պատմչաց կողմանէ։ Ես համոզուած եմ՝ թէ չկայ։ Եւ ապացոյց՝ նախ անոնց համաձայնութիւնն ամէն դա-

րերու մէջ։ Երկրորդ՝ անոնց անկեղծու-
թիւնը՝ չխնայելու իրենց կարգակցաց ալ՝
երբ տեղի կար հարուածելու, ինչպէս տե-
սանք եւ դեռ աւելին պիտի տեսնենք յե-
տոյ։ Երրորդ՝ անոնք շատ անգամ համա-
կրողներ իսկ են այն անձանց՝ որոնց վը-
րայ կը ծանրանան իրենց պարսաւները։
Փաւստոս՝ որ Մուշեղի արքեցութիւնն ու
սպանութիւնը կը վիպէ, կը պաշտէ զայն
եւ անոր տոհմը։ Փարպեցին գովեստով կը
նկարագրէ ազնուական ընթրեաց շռայլու-
թիւնքը. եւ կը զգանք՝ թէ Աշուշայի սե-
ղանին վրայ ճաշակած պարարտ խորտա-
կաց համը դեռ բերանն է։ Արծրունին,
որ իւր Աշոտ իշխանին եւ այլոց խայտա-
ռակութիւնքը կը ձաղէ, ընդ հակառակն
հաճութեամբ կը յիշէ տոհմակցին ապաշ-
խարողական մահը։ Արիստակէս աղի ար-
տասուօք կը շաղէ իւր ամբաստանութիւ-
նը դժրախտ Անւոյ դէմ. իսկ Շնորհալին՝
կը ներբողէ անոր զուարթութիւնը, չի պար-
սաւեր։

Մեր ընդհանուր նկարագրէն սակայն չի
հետեւիր՝ թէ հայ աւագանւոյն մէջ կեղտ
միայն տեսնելու ենք։ Կային՝ կային ա-
նոնց մէջ անհատական եւ ընկերային ա-
ռաքինութեանց վսեմ օրինակներ եւս, զորս
դարձեալ մի եւ նոյն մատենագիրք ան-

մահացուցին, ցուցնելով՝ թէ գիտէին բարին զատել չարէն։ Կարելի չէ մոռնալ մեր Տրդատներն ու Վռամշապուհները, Վասակները, Մուշեղները[1], Մանուէլները, Վարդաններն ու Վահանները, Աշոտները, Լեւոններն ու Հեթումները, որոցմով իրաւունք ունինք հպարտանալու եւ պարծելու։ Սակայն եթէ ընկերութեան մը բարոյականը հարկ է որոնել անոր ստուար մեծամասնութեան մէջ, մեր ցարդ նկատած վկայութիւնք եւ օրինակները դժբախտաբար չեն ներեր մեզ այդ համեմատութիւնը տեսնել մեր ազնուական դասուն մէջ։ Եւ յիշեալ առաքինիք գրեթէ վարսամներ կը հանդիսանան հին Հայաստանի երկնակամարին վրայ. դարերու մէջ կ'երեւին, ու կը մեկնին անհետ եւ անդարձ։ Այդ կորովի եւ զգաստ հոգիները պիտի մնան միշտ իրենց պատուանդանին վրայ. բայց երբեք չպիտի լինին հայ ազատանւոյն սովորական պատկերն անցած դարերու շրջանին մէջ։

Եւ երբ վաղը մեր ուշիմ ու պատճառախնդիր զաւակներն հարցնեն մեզ՝ թէ ինչո՞ւ հին Հայը պատերազմիկ ազգ մը չեղաւ, մեք՝ իբրեւ խոհական մարդիկ քան

1. Բաց արբեցութենէն՝ որ հասարակաց տկարութիւնն էր։

թեթեւ ազգասէրներ, մեր պատասխանին մէջ նախ եւ յառաջ խնամով ցոյց պիտի տանք անոնց՝ մեր աւագորերոյն յղփացեալ կենցաղը։ Եւ երբ հարցնեն՝ թէ մեր ինն հարիւր նախարարական տոհմերն ի՞նչպէս սպառեցան բոլորովին, առանց ընձիւղ մ'անգամ թողլու իրենց արմատէն, մեք դարձեալ մեր մատը պիտի ուղղենք անոնց տաճարներուն եւ ըսենք. Հող, այդ թաքթաքուր փլատակայ ներքեւ, ծիւրած ախտէն, եւ հարուածեալ վրէժխնդիր անծանօթ Ձեռքէն, թաղուած կը մնան անոնք՝ իրենց սուրբ սկուտեղաց ու բաժակաց, իրենց գուսանաց եւ վարձակաց հետ. սարսափը թառած է անոնց ուրուականաց վրայ, եւ ո՛չ ոք կը յանդգնի մօտենալ անոնց (Փաւս. 48)։ Այսպէս շիջան նաեւ Բաբելոն ու Նինուէ, այսպէս նուաղեցան Հռովմ եւ Բիւզանդիոն ալ։

# ՄԱՍՆ ԵՐՐՈՐԴ

## ԸՆԹՐԻՔ ՎԱՆԱԿԱՆԱՑ

Աշխարհիկ ճաշերէն եւ անոնց արգասիքներէն վերջ՝ պատշաճ է որ նկատենք կերակրոց հանգամանքն այն դասուն, որ հրաժարած աշխարհի հաճոյքներէն, ժուժկալութեամբ կը մաշէր իւր օրերն Հայաստանի մենաստանաց եւ անապատից մէջ։ Տարբեր կեանք մը հարկաւ տարբեր անուշ մ՚ալ պիտի ունենար։

1. — *Թիւ ճաշի*։ — Մեր կրօնաւորք հին սովորութեամբ օրը մի անգամ միայն կերակուր կ՚առնուին. սովորութիւն՝ որ կը ծագէր միւս ազգաց մենաստաններէն իսկ (Ոսկ. Թղթ. Ա, 127, 815. Վարք Հրց. Բ, 548)։ Այսպէս կ՚ընէին նաեւ Եղիշէի յիշատակած «հարաւային» միանձունք (214), զորս գտնելու համար մեր միտքը դէպ Եգիպտոս կը ձկտի. զի մեր պատմչի նկարագրին մէջ Փիլոնի խօսքերն, որոցմէ ներշնչուեր է, յայտնապէս քրիստոնէա-

*ցած են, ինչպէս կը տեսնուի անոնց համեմատութենէն* (Փորթ. 468–71)։

*Արդ՝ մեր Գլակայ վանականաց համար ևս կը կարդանք՝ թէ «միաճաշակս» էին* (Մամ. 9)։ *Աւելի վերջ՝ ի Սիւնիս անուանի Թանահատի խստամբեր միանձունք դեռ «յաւուրն մի անգամ» կը ճաշեն* (Որբ. 116)։ *Նոյնը կը գտնենք ակնարկուած նաև Նարեկացւոյն կողմանէ* (կարգ ադ. 419)։ *Ժ դարուն Հայոց մէջ կը հիմնուին զանազան մենաստաններ, որոնք մի և նոյն կանոնն ունին՝ չուտելու ոչ միրգ և ոչ բանջարեղէն «նախ քան զհասարակաց սեղանն», որ մի միայն է* (Ասող. 176)։ *Եւ ԺԴ դարուն երուսաղեմացին Վարդան աբեղայ կը խրատէ տակաւին «յաւուրն մի անգամ» կերակուր ուտել* (Վդ. Խր.)։ — *Միաճաշակութիւնս՝ յիշուած ի գովեստ ոմանց, և ի յորդոր կամ ի պատուէր այլոց, չի կրնար ուրեմն միակ սովորոյթն եղած լինել հայ կրօնաւորաց. այլ կային, և հաւանօրէն ժուժկալներէն ալ բազմաթիւ, որ իրենց ստամոքսին աւելի խնամ կը տանէին։*

2. – *Ժամ կերակրոյ։* — *Մի անգամ ճաշողաց յատուկ ժամը նոյն էր աշխարհականաց ընթրեաց պահուն հետ. այս ինքն՝ «իբրև երեկոյ լինի»* (Ոսկ. Թղթ.

Ա, 127, 815), *կամ «յերեկորէ ցերեկոյ»* (*Եւագ.* 325), *եւ կամ յետ երեկոյեան ա-ղօթից* (*Վարք Հրց.* Բ, 552), *կամ յետ արեւու մտնելուն* (*նոյն*, Ա, 585)։ *Նմա-նապէս Եղիշէի միանձունք կը սպասեն ա-րեւմտից՝ մինչեւ աստեղաց երեւումը, եւ յետոյ կ'ընթրեն* (214)։ *Աղոցմէ չէր տար-բերեր Հայոցն ալ. մանաւանդ թէ աւելի որոշակի յիշուած է այդ ժամը մեր մա-տենագրաց կողմանէ։ «Յորժամ յիՃՃ ժամՃ աղօթես, կերակուր Ճաշակես», կ'ըսէ Նա-րեկացին վանականաց* (*Կարգ աղ.* 419)։ *Նոյնը կը կրկնէ Վարդան արեղայ, թէ «զմարմնաւոր պէտքն կերակրէ՛ երբ զիՃՃ ժամՃ ասես», այս ինքն Ճաշու երեք ժա-մերուն վերջինը. եւ կը յարէ՝ թէ «մին-չեւ երեք Ողորմեայն չվՃարի, չէ պարտ կերակուր ուտել»* (*Վղ. Խր.*)։ *Արդէն նոյն իններորդ ժամուն կը հաղորդուէին Ս. Խոր-հրրդոյն եւ ապա հաց կ'ուտէին Թերայի-ղացի Ճգնաւորք եւս՝ ըստ պատմութեան Ապողինեայ* (*Վարք Հրց.* Ա, 241–2)։ *Եւ նոյն էր հայ ազնուականին ընթրեաց ժամն ալ* (*աստ*, 110)։

*Այդ ժամը սակայն փոփոխելի էր ըստ եղանակին։ Նարեկացին՝ «ի Զատկէն մինչ ի Խաչն» իՃՃերորդը կը դնէ Ճաշելու ժամ. իսկ «ի Խաչէն յետոյ՝ ի մտանել արեգա-*

կանճ» (անդ)։ Ասոր համար թերեւս Որբելեան կ'ըսէ անորոշաբար՝ թէ Թանահատք կ'ընթրէին «ընդ երեկս» (116)։ Վերջապէս այդ ժամը կը փոփոխուի ցերեկի երկարութեան ու կարճութեան համեմատ։

Միջին դարու հայ վանականին անհամբերութիւնը սակայն չի հանդուրժեր հնոց երկար ծոմապահութեան, և սովորութեամբ կը լուծէ զայն «ի վեց ժամն» (Մատ. 16)։ Գոնէ յայտնի է այս Սիւնեաց մէջ ԺԴ դարու վերջերը. և այսպէս կը պատուիրէ Մատթէոս, Եւագրի նոյն ժամուն արգելքը (222-3) փոխելով առաւօտուն։

3. – Կոչնակահարութիւն։ — Վանական վրդ. չգիտեմ՝ ո՞ր երեւակայական աւանդութեան յեցած, կ'ըսէ՝ թէ Նոյի տապանը շինելու ժամանակ կերակրոյ ժամուն «կոչնակով ձայնէին ի հացն» (Հրց.). կարեւոր տեղեկութիւն, որոյ մէջ հեռաւոր ջրհեղեղէն աւելի դիւրին է մեզ՝ նոյն կրօնաւորի ժամանակակից միաբանանց սովորոյթը նշմարել։ Մենաստանաց ընդարձակութիւնը, միացած յաճախ խրճթաց ցրուածութեան հետ, կը ստիպէր զանոնք հաւաքել ի ձայն ժամահարի[1]։ Կու գային

1. Գործւոյս մանրամասն նկարագիրը տուած եմ ի Բազմվ. ԿԸ, 193։

*անոնք ամփոփ ու պարկեշտ ձեւով մը, եւ կը բոլորէին իրենց պարզունակ սեղանոց շուրջ։ Թերեւս գտնուէին անոցմէ՝ որ կըրկնէին Եղիշէի միանձանց սա խորհրդաւոր բանաձեւը. «Ի խաւարային ժամուս զխաւարային կերակուրս խաւարային մարմնոյս տացուք»* (215)։ *Անհրաժեշտ հարկ մը բընութեան, որոյ առջեւ մարմնոյ բռնագոյն թշնամիներն անգամ խոնարհելու էին։*

4. — *Օրհնութիւն սեղանոյ։* — *Եթէ աշխարհիկ կոչնոց կ'ընկերէր այս հոգեւոր պաշտօնը (տես,* 160), *շատ աւելի իրաւամբ պիտի գտնենք զայն վանականաց ճաշին հետ ալ, որոց եւ քահանայից կը պատկանէր առաւելապէս քան այլոց։ Մեզ կարեւոր են ասոր թիւն ու ձեւը։*

*Ա. Թիւը։ Ոսկեբերանի անապատականք «չեւ նստեալ (կերակրոյ՝) եւ անդրէն յօրհնութիւնս յորդորին» (Թղթ. Ա,* 127)*. ինչպէս նաեւ սովոր էին «Գոհանալ զնըմանէն յետ կերակրելոյն» (անդ,* 533)*. հետեւաբար կ'աղօթեն երկու անգամ։ Նըմանապէս Եղիշէի միանձունք բազմելէ յառաջ «ի ձայն բարձր փառատրեն զսուրբ Երրորդութիւնն». իսկ յետոյ «յարուցեալ յանպաճոյճ ընթրեացն, միաբանութեամբ սաեն» գոհութեան աղօթքը* (215)։ *Սոյն կրկին աղօթից կը հանդիպինք Ղեւոնդեանց*

ճաշին մէջ ալ. կամ աւելի ճիշդ՝ այս հայ կանոնն է զոր նոյն պատմիչը «հարաւային» միանձանց բերանը կը դնէ։ Մեր քահանայք հոն նախ կ'օրհնեն սեղանը, որով իրենց կոչնատէր մոգպետը «միաբանէր ընդ նոսա հացին օրհնութեան». եւ յետ աւարտման «յոտն կացին ի բազմականացն անդ, գոհանային» (132, '34). եւ կամ «յարուցեալ յընթրեացն՝ ... կատարէին զաղօթսն» (Փրպ. 267)։ Կանգնումը սովորական էր արդէն ամէն ճաշերու աղօթից, ինչպէս տեսանք (աստ, 111)։ Իսկ աղօթից թիւը կ'աճի յետոյ վանքերու մէջ։ Նարեկացին յեցած անշուշտ ժամանակակից սովորութեան մը, կը խրատէ՝ թէ «երեք անգամ օրհնեա». եւ չգոհանալով՝ կը յարէ եւս՝ թէ հին ճգնաւորք «երկոտասան ծունր կրկնէին» ճաշէն յառաջ, եւ նոյնքան ալ վերջը (Կարգ աղ. 419), եւ որոց հետեւելու յորդոր մը կը թուի այս յուշարարութիւնը։ Բայց երբեակ աղօթքն աւելի տարածուած էր եւ կը տեւէր տակաւին Տաթեւացւոյն օրով ալ, որ յետ ըսելու՝ թէ «կրկին օրհնեմք» ըստ ընդհանուր սովորութեան, կը յարէ թէ «ոմանք երեքկին օրհնեն, ի սկիզբն, ի մէջն եւ յետ կերակրոյն»։ Կային «ոմանք» ալ՝ որ մարմնական ուրախութեան այս գործը կը

վերածէին մտաւոր տանջանաց, իւրաքանչիւր պատառին հետ մտածելով մահն ու դատաստանը, եւ անոնց սարսափին ներքեւ խեղդելով կերակրոյն ախորժը. եւ կամ պատառներուն թուով մէկ մէկ տուն սաղմոս կ'ըսէին, որպէս զի կերակուրը «պարկեշտութեամբ լիցի» եւ իրենք ալ «միշտ անպարապ լիցին աղօթից» (Հրց. 655)։ Իսկ ո՞վ կրնային լինել անոնք՝ եթէ ոչ վանականք, որոց կարգէն էր նոյն ինքն տեղեկատուս։

Բ. Ջեռը։ Յիշեալ կամաւոր բարեպաշտութիւնք չէին կարող կանոն մը կազմել եւ համեմատուիլ պաշտօնական Օրհնութեան հետ, որ ինչպէս այսօր, հին ժամանակ ալ յայտնի ձեւ մ'ունէր։ Ե դարուն զայն շատ համառօտ կը գտնենք։ Եղիշէի միանձունք ճաշէն յառաջ պարզապէս «փառաւորեն զսուրբ Երրորդութիւնն» (215). որ անշուշտ ուրիշ բան չէ՝ բայց եթէ «Փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ...» ծանօթ բանաձեւը, զոր «փառաւորել» կամ «փառաւորութիւն» բառերով կը բացատրեն նոյն ինքն Եղիշէ (96, 215) եւ ուրիշներ։ Այս էր ուրեմն ամբողջ աղօթքը։ Իսկ յետ ճաշին կը պաշտէին հետեւեալը, քիչ մ'աւելի երկար քան նախորդը. «Փառք քեզ՝ տէր, փառք քեզ՝

թագաւոր մեր, զի ետուր մեզ կերակուր ուրախութեան։ Լցո զմեզ Հոգւով սրբով, զի գտցուք առաջի քո հաճոյք եւ մի՛ ամաչեսցուք։ Զի դու հատուցանես իւրաքանչիւր ըստ գործոց իւրեանց» (215)։ Եղիշէ սոյն աղօթքը Ղեւոնդեանց ալ պաշտել կու տայ իրենց ճաշէն վերջ (134)․ որուն կ'ակնարկէ նաեւ Փարպեցին՝ երբ կ'ըսէ․ «Փառաւորելով եւ օրհնելով զԱստուած՝ կատարէին զաղօթսն», (267)․ եւ Նախարարաց կոչնոց համար՝ թէ «օրհնելով զպարգեւատուն Քրիստոս եւ զտուիչ եւ զլցուցիչ ամենայն բարութեանց» (28), ուր շեղագիրք Եղիշէի տուած աղօթքին բառերն են։ Այնու՝ որ այս աղօթքը, թէեւ ընդարձակմամբ մը դեռ պահուած մեր մէջ, ազգային էր եւ Եղիշէի կողմանէ յարմարաբար տրուած հարաւային միանձանց, կրնանք հետեւցնել՝ թէ սոնց ճաշէ յառաջ մատուցած փառաբանութիւնն ալ ազգային էր։ Եւ թէ լոկ այդ երկուքն էին սեղանօրհնէից կանոնը։

Իբր հինգ դար վերջ Նարեկացին կ'աւանդէ մեզ ուրիշ կանոն մը, որով կը վարէին Նիգ գաւառի Թեղենիք կոչուած անուանի մենաստանին մէջ։ Նախ քան ճաշը կը դնէ «սաղմոս եւ քարոզ որպէս կարգեալ է»․ եւ կը յարէ․ «յառաջ յիշեա

զսուրբ Երրորդութիւնն», որ նման է Եղիշէի փառատրական յիշատակութեան։ Եւ «ապա արա զնշան տէրունական», որ նոյնպէս հին է, ըստ որում Եղիշէի միանձանց զոհութիւնն ալ կ'աւարտէր «տեառնագրելով զինքեանս» (215)։ Իսկ յետ ճաշակման յիշէ՛, կ'ըսէ Նարեկացին, «ըզսուրբ Աստուածածինն եւ նովաւ զիւր միածինն. զի այսպէս ասեն ի Թեղենիս եւ սուրբն Անտոն եւ այլ սուրբ հարքն» (Կարգ աղ. 419)։ Եթէ Տիրամօր մաղթանքն այդ մենաստանաց յատուկ էր, ուրեմն հասարակաց կանոնին մէջ չէր մտած, որով հին գրչագրաց մէջ ալ չենք գտներ անոր հետքը։

Բայց դիտելու արժանի է Նարեկացւոյն սա խօսքը. «սաղմոս եւ քարոզ որպէս կարգեալ է». ուրեմն կանոնական Օրհնութեան մասունք էին անոնք, ինչպէս մինչեւ ցարդ դեռ ունինք սաղմոս մը եւ քարոզ մը։ Ասոնց կը յաջորդեցնէ Երրորդութեան յիշատակը, եւ ուրիշ աղօթք չունի առաջին մասին մէջ։ Ուրեմն Ն դարու պաշտօնական կանոնին վրայ բարդուած էր սաղմոսն ու քարոզը միայն։ Թէ երբ՝ յայտնի չէ։

Նորանոր յաւելուածներ հետ զհետէ երեւան կու գան յաջորդ դարերուն, եւ Ս.

Ղազարու գրչագիր ժամագրոց համեմատութիւնն հետեւեալ արդիւնքը տուաւ ինձ։ Ասոնց մէջ հնագոյնն է 1284ի գրուածը, որ ունի կանոնս քան յաջորդներն համառօտ ձեւով, եւ զետեղած է յետ իններորդ ժամու աղօթից ու պատարագին, որ է կերակրոյ ընիկ ժամուն։ Իւր բովանդակութիւնն է․ այժմեան սաղմոսը՝ «Բարձր առնեմ» (ՃԽԴ)․ կցորդը՝ «Ողորմած գթած է»․ քարոզն՝ «Աղաչեսցուք», եւ աղօթքն՝ «Օրհնեա Քս․ Աստուած մեր»․ այս՝ Օրհնութեան բաժինն է։ Իսկ Գոհութենէն ունի․ կցորդը՝ «Տէր Ցս․ լցաք»․ սաղմոսը՝ «Տացուք գոհութիւն» (ԼԲ)․ քարոզը՝ «Գոհացարուք»․ եւ աղօթից երկրորդ մասը՝ «Փառք քեզ տէր»։ Հետեւաբար իւր մէջ պակաս են՝ 1, գոհութեան կցորդը՝ «Կերակրիչ եւ ուրախարար»․ 2, անոր աղօթից առաջին մասն՝ «Օրհնեալ ես»․ 3, մաղթանքը՝ «Զկերողքս»․ 4, աւարտական երկու Հայր մերը․ 5, հրահանգները՝ որ տպագրութեան գիւտ են (տես, 173)։ Ասոցմէ 1 եւ 3 կ'երեւին նախ 1408ի օրինակին մէջ, որ մեր հաւաքածոյին երկրորդն է ըստ հնութեան․ իսկ 2 և 4՝ 1465ի օրինակին մէջ՝ որ երրորդն է։ Իսկ հետագայ օրինակաց մէկ մասին մէջ անցեր են եւ միւս մասին մէջ ոչ, առանց ժամանակա-

գրական կարգի. եւ այսպէս բաղդուեր ու կազմուեր է արդի կանոնը։

Մեր մատենագրերէն կը յիշուի կերակրոց վրայ տեառնագրելու պարագայն ալ։ Զաքարիա կթղ. խօսելով առ Խաչն՝ կ՚ըսէ. «Քեւ կնքեալ մաքրին կերակուր եւ ըմպելի մեր» (Զաք. Խաչ). եւ զոր կը կրկնէ Տաթեւացին ալ. «Նշանաւ խաչին կնքեմք զամենայն կերակուրս եւ զըմպելիս» (Քրզ. ամր. 348)։ Նոյնը կը յիշատակէ նաեւ Ապարանեցին, ընելով տեառնագրութիւնը «խաչանիշ կնքով» (Ապար. Ծն, Թ)։ Նկատելով օրհնութեան կանոնին հին վիճակը, դժուար է ճշդել՝ թէ ո՛ր կէտին կը լինէր այդ կնքումը. փառատրութենէն յառա՞ջ թէ վերջը։

5. — *Կը բազմին*։ — Եթէ ազնուականք կը նստէին բազմոցաց վրայ եւ ռամիկը գետինը (աստ, 50), ի՞նչպէս կ՚ընէին վանականք։ Ասոր ակնարկութիւնը կը կարծեմ տեսնել Եղիշէի քով, որ կ՚ըսէ. «ակմբին յիւրաքանչիւր տեղիս» (215)։ Բայց արմատն ակումբ՝ կը նշանակէ թէ նստողաց ժողովը (նոյն, 133), եւ թէ նստելու սփռոցը, որ չի ժխտեր գետնէն բարձր բազմոցի մ՚ալ գոյութիւնը իւր ներքեւ, ինչպէս տեսանք (աստ, 56)։ Արդ՝ «ակմբին՝» չի նշանակեր խմբուիլ, զի իւր

նկարագրին մէջ միանձունք արդէն հաւաքուած են եւ աղօթքն ալ մատուցած. այլ նստիլ ակմբի եւ կամ բազմոցի վրայ. եւ աւելի վերջնոյս, երբ նկատենք որ աշխարհիկ տաճարաց միւս դիւրութիւնք ալ շատ անգամ անպակաս են հոն, ինչպէս պիտի տեսնենք։ Իմ այս տեսութիւնը, հաւանական Ն դարուն համար, ստուգութեան կը փոխուի միջին դարուն, ի տես Որբէլեանի վկայութեան՝ թէ այլազգիք 1046ին «քակեալ յատակեցին զզարդատներն եւ զտրապէզն մարմնաւոր սեղանոյն» Տաթեւոյ ուխտին (230). ուր ակներեւ է սեղանի կազմութիւն մը եւ գետնէն բարձրութիւն մը։ Եւ հետեւաբար աղոր համեմատական էին բազմոցներն ալ։ Բայց անոնց նստարանք սովորաբար անզարդ են, ունենալով խստամբեր Ս. Ներսեսի «ակումբը» միայն՝ առանց բարձի (աստ, 56)։ Իրենց միւս սպասներն ալ պէտք է որ աղքատիկ լինէին, փայտեայ, կաւեղէն, քարեղէն, կամ թէ շատ՝ ապակի (աստ, 57)։

6. – Լուսրի՞ւն ընթերցմամբ։ — 1284ի գրչ. ժամագրին պականներէն էր սեղանորհնէից հրահանգաց բաժինը, որոց մէջ կարեւորագոյնն է այն՝ որ կը պատուիրէ վանականաց ընթեռնուլ ճաշի ժամանակ.

եւ բոլորն ուշ պիտի դնեն ընթերցման «անմռունչ ճաշակմամբ»․ եւ եթէ մէկը տարակոյս մ'ունենայ ընթերցուածի մասին, կրնայ կարողներու հարցնել, «եւ դարձեալ ճաշակեսցեն լռելեայն եւ ոչ աղաղակաւ»։ Պատուէրս ընդունուեր է եւ կայ ցարդ քանի մ'ազգային վանքերու մէջ։ Ի զուր խուզարկեցի հրահանգս Ս. Ղազարու ԺԳ—ԺԷ դարուց գրչագրաց մէջ[1]. ոչ մին չունի զայդ։ Եւ առաջին անգամ գտայ 1662ին յԱմստերդամ տպուած ժամագրին մէջ, ուսկից ապա առեր են ուրիշ տպագիրք ալ[2]։

Ի՞նչպէս մտաւ ուրեմն այդ հրահանգը։ Արեւմտեան բարքերը ճանաչողացս յայտնի է անոնց բոլոր վանքերու եւ դպրանոցաց մէջ մինչեւ ցարդ տեւող ·կանոնը՝ լռութեամբ եւ ընթերցմամբ ճաշելու։ Անտարակոյս անոնցմէ առած են զայդ մեր առաջին տպագրիչք ալ, կամ այդ ժամանակ արդէն մտած էր սովորոյթը մեր մէջ։ Եւ զոր շատ համոզիչ կը գտնենք, երբ նկատենք ամստերդամեան տպագրին վրայ լատինական ազդեցութիւնը, որ ա-

1. Օրինակք 1284, 1408, '65, 1556, '81, '98, '99, 1641, '55, '63, '73 տարիներու։

2. Ամստերդամի՝ 1686ին եւ 1688ին, Կ. Պոլսոյ՝ 1701ին եւ այլն։

նոր տուեր է «Ողջոյն քեզ Մարիամ» աղօթքն ալ։

Ընդ հակառակն հին հայ սովորութիւնը կը մերժէ լռութիւնը։ Եղիշէի միանձունք «խնդալից ուրախութեամբ» կ՚ակմբին իրենց սեղանին շուրջ (215)․ եւ հոդ լռութիւն չկայ։ Ղեւոնդեանք ճաշեցին նոյնպէս «ուրախութեամբ» (Փրպ․ 267) կամ «զուարթութեամբ» եւ հոգեւոր մխիթարական խօսակցութեամբ (Եղիշ․ 133–4)։ Եւ անոնց դարուն կանոնական աղօթքը՝ զոր տեսանք (սստ, 281) կը զոհանայ Աստուծոյ՝ որ տուած էր «կերակուր ուրախութեան», եւ ոչ թէ սգոյ․ զի լռութիւնն հին ժամանակ սգոյ նշան էր։ Տաթեւացւոյն յիշած (սստ, 280) մաղձոտ կերակուրն յատուկ էր «ոմանց», այս ինքն առանձնակեցաց, եւ ոչ թէ խմբովին ճաշակողաց։ Եւ քիչ վերջ մեր վանականները պիտի տեսնենք այնպիսի վիճակի մէջ, որոյ հետ անհաշտ էր լռութիւնը ։ Արդէն ուրիշ արեւելեան միանձանց քով ալ չկայ սոր յիշատակը, մինչդեռ խօսակցութեան օրինակներ չեն պակսիր Հարանց Վարուց մէջ (Ա, 593․ Բ, 510)։

Սակայն արեւմտեայց սովորոյթն ալ մասամբ ունէր իւր հնութիւնը ։ Ոսկերերան անտիոքացի մեծատանց խրատ կու

*տար, որ սեղանի վրայ փոխանակ հացկատակաց ծաղրածութեանց՝ հրաման տան «դպրացն ժողովել, զգիրս աստուածեղէն օրինացն առնուլ եւ ընթեռնուլ» (Մոթ. Ա, 696)։ Իսկ ասոր ծագումն աւելի հին է. Հեթանոս ուսումնասէր Հռովմայեցիք երաժշտութեան ու գուսանութեանց հետ կը կարդային նաեւ նշանաւոր հեղինակներ (Ֆլեօր. 329), ինչ որ նմանողութեամբ մեր քով ալ պատահեր է երբեմն. Բ Տիգրանայ որդին Արտաւազդ եւ Պարթեւաց Որոդէս թագաւորն իրարու խնճոյից մէջ յունարէն քերթուածներ կը կարդային (Պլտ. Դ, 138)։ Եւ այդ պահուն անշուշտ կ'անցընէին կէս մը լուռ ունկնդրութեամբ եւ կէս մ'ալ խորհրդածելով մատենագրաց վրայ։ Հեսեանց գահերէցն ալ Ս. Գրոց մեկնութիւն ու խրատ կը խօսէր իւր ճաշակցաց, ու կ'երգէին եւս (Փիլ. Ճոք. 27-9)։ Վերջապէս բոլոր այս օրինակաց մէջ լռութիւնն իբրեւ լռութիւն չի յարգուիր, այլ հետեւանքն է ընթերցման կամ խրատու եւ կարճատեւ։*

7. — Կերակուր։ — *Հին ժամանակ սովորաբար շատ պարզ եղած է վանականաց սնունդը. եւ ըստ հաճոյս իւրաքանչիւր անհատի կամ մենաստանի՝ աւելի կամ նուազ խիստ։ Ուրիշ խօսքով՝ մշտնջենա-*

ւոր պահեցողութիւն մ'էր անոնց կեանքը։ Սկսելով նոյն ինքն հայ վանականութեան հիմնադիր Լուսաւորչէն, երբ անապատը կ'առանձնանար ճգնելու, սովոր էր առօրեայ սնունդը «խոտաբուտ ճարակօքն» կատարել (Ագթ. 631)։ Իր որդին Արիստակէս դեռ կրօնաւոր, նուիրուած էր «քաղցի եւ ծարաւոյ եւ բանջարաճաշակ կենաց» (նոյն, 640)։ Ճգնաւուն Դանիէլ եպիսկոպոսի կերակուրն էին «արմատք բանջարոց» (Փաւս. 37)։ Նոյն Դ դարուն Նըշանաւոր էին Գինդ վանահայրն եւ ուրիշ շատեր, որ կը նկարագրուին «խոտաճարակք՝ ընդարուտք՝ արմատակերք» (նոյն, 271)։ Ս. Մեսրոպ անապատի մէջ նոյնպէս «բանջարաճաշակութեանց» տուած էր ինք զինքը (Կոր. 7)։

Եւ այդ չոր սնունդը կը շարունակուի յաջորդ դարերու մէջ եւս։ Այսպէս Վարազայ ճգնաւորը Թոդիկ «ընդակեր» մ'էր (Հյպտ. 230)։ Թաթուլ եւ Վարոս «խոտաբուտ տքնութեամբ» կ'անցնէին իրենց կեանքը (անդ, 190)։ Յովհաննէս կթղ. պատմագիրն այցելութեան երթալով Մանեայ եւ Լուսաւորչի այրերուն, կը տեսնէր հոն «արս կուսակրօնս .. խոտաճարակս» (359)։ Գր. Մագիստրոս՝ Սանահնի վանականաց գրած նամակին մէջ իր

*հիացումը կը յայտնէ անոնց խստակեցութեան վրայ, եւ «ի կերակուրս մարդկայինս ոչ հպեցելոց, այլ խոտովք վայրենի շատացեալք»* (Մագ. 137)։ *ԺԲ դարուն անուանի էր Մեղրիկ վարդապետը, որ իր բոլոր կեանքը «չորաճաշակ» անցուցեր է* (Ուռ. 418)։ *Ուրիշ մը, Մարկոս միայնակեացը, վաթսուն եւ հինգ տարի «ի խոտաճարակութեան վարս» կ'ապրի, եւ իր ամբողջ կրօնաւորութեան մէջ հաց կամ անոր նման որ եւ է բան բերանը չի դներ* (Նոյն, 373)։ *Հռչակաւոր էր Թանահատի վանքն ալ, որոյ միաբանք «աշտուճ հացիւ եւ լոկ ջրով» կ'անցնէին լուր օրերը. իսկ կիւրակէն՝ «բանջարօք եւ ընդովք» միայն։ Սիւնեաց եպիսկոպոսներն եւ իշխանք շատ աշխատեցան համոզել՝ որ գէթ կիւրակէ օրերն ուտեն ապուր կամ պանիր կամ իւղ, — ինչպէս եգիպտացի հին ճգնաւորք ալ կը մեղմէին տօնական օրերու կերակուրը* (Եւագ. 225, '28, '32, 116—7), — *բայց անոնք չհաւանեցան. ասոր համար ալ «Թանահատք» կոչուեցան, կ'ըսէ Օրբելեան* (117)։ *Նոյն Սիւնեաց մէջ կար նաեւ «Խոտակերաց վանքը», որոյ բնակիչները «սակաւ ոգեպահովն ի յընդոյ կամ ի բանջարոյ շատանային»* (Նոյն, 171)։

կուսաստանաց մէջ ալ կ'երեւի նոյն չորակերութիւնը, դատելով Ագաթանգեղոսի մէկ վկայութենէն, որ Հռիփսիմեանքն «ընդակերս» կը կոչէ (113). եւ զոր մեք կրնանք ուրիշ հայ կուսանաց մասին եւս առնուլ։ Եւ արդարեւ մեծին Ներսեսի օրով մեր կուսանք կ'անցնեն «ի պահս», որ համանիշ է նախորդին. եւ իրենց այդ անունդը կ'ընդունին «յաշխարհէ եւ յիւրաքանչիւր ընտանեաց» (Փաւս. 228)։ Ճուշանիկ խորշելով իւր ուրացող ամուսնէն, կրօնաւորական զգեստ կը հագնի եւ կը ճգնի նոյնպէս «պահօք եւ աղօթիւք» (Սոփ. Թ, 31)։ Նոյն էր յոյն հաւատաւորաց անունդն ալ. «Բանջարիկ ինչ կամ հաց լոկ կամ ոսպն կամ այլ ինչ դեղահունդք, թէ բեւեկն, թէ ձիթապտուղ կամ թուզ» (Ոսկ. Թղթ. Ա, 815)։

Կը կրկնեմ՝ թէ այդ խստամբեր անունդը կամաւոր էր. այնպէս որ ի կանոնէ արգելուած էին կրօնաւորաց՝ միսն ու գինին միայն, ինչպէս էր Յունաց քով եւս[1]։

1. Ոսկեբերան անոնց անունդը կը կոչէ «չորաբեկ սեղան», ուր չկան «ոչ խորտիկք,... ոչ հոտ ճենճերոյ, եւ ոչ համադամք կերակրոց. այլ ոմն հացիկ եւ աղիկ, եւ ոմանք իւղիկ եւս յաւելուն». տկարք «բանջարիկ եւս խառնեն, եւ դեղահունդս եւ ոսպնեայս» (Թղթ. Ա, 127). եւ կ'ըմպեն լոկ «ջուր» (Մտթ. Բ, 67)։ Տես եւ Վարք Հրց. Ա, 585. Բ, 552, եւն։

Նախկին դարերուն կային աղանդաւորներ՝ որոնք պիղծ կը համարէին միսը, ինչպէս Մանիքեցիք, Մոնտանեանք եւ ուրիշներ։ Ողջամիտ քրիստոնեայք Առաքելոյն հետ կը մերժէին այդ միտքը։ Բայց եւ այնպէս ասոցմէ շատեր եւս, մանաւանդ ջերմ աշխարհաց բնակիչներէն, կամաւորապէս կը հրաժարէին մսէ եւ գինիէ, ինչպէս Գ դարուն կը վկայէ Որիգենէս (ընդ. Կելս. Ե, 49), եւ մերս Եզնիկ ալ մսին համար (287)· այս համոզմամբ՝ թէ «միս եւ գինի (այրեն) զհոգիսն շարժմամբ ցանկութեան» (Յճխ. 86)։

Արդ՝ բնական էր որ այս ժուժկալութեան աւելի խստիւ փարէին միանձունք։ Յիշեալ կողբացի իմաստասէրը պատասխանելով Մարկիոնեանց հարցման՝ թէ «Ձեր ուխտաւորքն ընդէ՞ր են մսահատք», կ'ըսէ Յաճախապատմի մտօք. «Զի զսըրբութիւնն՝ զոր ի մտի եդին պահել՝ դիւրաւ պահիցեն» (286-7)։ Պիտոյից գրոց մէջ կը կարդանք՝ թէ գինին եւս ժուժկալ կրօնաւորաց «բնաւ իսկ ատելի է» (Խոր. 468)· եւ Եղիշէ կ'ըսէ իւր միանձանց համար՝ թէ գինին «եւ զանուն իսկ ոչ» անոնց միայնանոցաց մէջ (215)։ Վերջապէս այդ երկու նիւթոց արգելքն ալ միանգամայն կը յիշուի Թաթլոյ կողմանէ՝ թէ

«Միս եւ գինի կրօնաւորաց ոչ է ուտելի» (Սոփ. ԺԱ, 55)։ Այս սահմանն, այդպէս ընդհանուր այդ ժամանակները, տակաւին կը յարգուէր ԺԲ դարուն Հայոց մէջ, ուր Շնորհալին գրելով վանականաց, կը գովէր զանոնք՝ թէ «բազումք ի ձէնջ եւ ոչ հացիւ եւ ջրով յագին վասն սիրոյն Աստուծոյ, թող թէ աւելորդ կերակրովք եւ գինեաւ» (Ընդհ. 20)։ Ասոր կը խրատէր եւ Մխ. Գոշ՝ ըսելով. «Միս մի՛ ուտիցես՝» բաց ի հիւանդութեան կամ ծերութեան պարագայէն[1]. իսկ «գինի մի՛ ըմպէին» (Խր. ոգ.), զի երկրորդիս վտանգները ծանրագոյն կը համարուէին, ինչպէս էին իսկ (Յճխ. 85), մինչ Թաթուլ երկուքն ալ կը ներէ «որոյ պէտք են» (55)։ Սարգիս վրդ. նոյնպէս կը թելադրէր իւր վիճակակցաց՝ թէ «ի չափաւորացն եւս (գինւոյ) պարտ եւ արժան էր մեզ հրաժարել» (792). ու Տաթեւացին կը յիշեցնէր հին օրէնքը՝ թէ «գինին ի կարգաւորայ ամենեւին արգելեալ է» (Քրզ. ամր. 267)։

8. — *Զեղծմունք*։ — Ա. Բայց ի՞նչ կը ցուցնեն այդ պատուէրք, յորդորք եւ ըղձականք՝ «արժան էր մեզ հրաժարել». եթէ

1. Եգիպտացիք ալ միս եւ գինի կը ներէին հիւանդաց (Նուագ. 140, 357)։

ոչ այս՝ որ ժուժկալութեան նախկին կանոնն ընկած էր ուժէ։ Մանաւանդ թէ զայն յարգողները մեր մէջ փոքրամասնութիւն մը կազմած են միշտ, սկսեալ Ե դարէն իսկ, որով եւ առանձին յիշատակութեան ու գովեստից արժանացած։ Եղիշէ երբ պիտի խօսի հարաւայնոց չորաքեկ սննդեան վրայ, կը փութայ շեշտել անոր եւ ընդհանուր հայ վանականաց սովորական կերակրոյն մէջ եղած զգալի տարբերութիւնն՝ ըսելով. «Դու իբրեւ լսիցես զուտելն, մի՛ առ մերս ընթանայցես» (214)։ Այո, այդ դարէն իսկ այլափոխուած էր հայ կրօնաւորին ճաշը։

Պղտոր լճի մէջ դժուարաւ կը գտնուին ականակիտ խաւեր։ Աշխարհիկ դասուն յաճախեալ չափազանցութիւնք իրենց վտանգաւոր ազդեցութիւնը պիտի տարածէին ամբողջ հայ զանգուածին վրայ, ու զեղծումը պիտի սպրդէր նաեւ մենաստանին սեմէն ներս։ Եւ հոդ, կրօնաւորական կենաց դեռ թարմ շրջանին անգամ, մեր վանականք կը նկարագրուին՝ «անյագ պակշոտեալ հայել ի կեանս աշխարհիս», եւ կ՚իւրացնեն հեշտակեաց մեծատան գրգանքները. բարձրագահ ու փափուկ անկողինք, վայելուչ զգեստներ ու կօշիկ, երիվարներ, ապարանք, ստացուածք եւ ան-

*դատաանք (Եղիշ. 217)։ Ասոնց համապատասխան էր անոնց սնունդն ալ։ Իրենք եւս կ'ախորժին՝ փափկասէր աշխարհականաց պէս ճաշէն յառաջ շպարուիլ անոյշ հոտերով. «Սիրեցաք մեք զիւղ ախտալից աշխարհիս» կ'ըսէ նոյն վանական պատմիչը։ Արգելուած կերակրոց եւ ըմպելեաց լաւագոյնը կը ճաշակեն. «Պարարեցաք զանձինս մեր ի զանազան խորտիկս». եւ ասոնց չափուն մէջ կը մրցին աշխարհականաց հետ. «Մրգուզք անյագք եղաք ի կերակուրս, եւ առանց չափոյ արբաք զգինի պղտորիչ խորհրդոց եւ մըտաց» (անդ)։*

*Լոկ Եղիշէի ժամանակակիցները կամ մերձաւորք չեն այդ ամբաստանութեանց նշաւակ։ Վեց դարեր կ'անցնին, եւ մեծ Վկայասէրի գործակիցը Կիրակոս՝ կը հարկադրէր բողոքել տակաւին անոնց յաջորդաց դէմ, հաւատացեալներն անգամ զգուշացնելով անոնց գայթակղեցուցիչ օրինակներէն՝ եւ ըսելով. «Մի՛ հայիցիք ի ծոյլ եւ յորովայնամոլ կրօնաւորանսն, եւ ընդ նոսին կորնչիցիք ի կենացն Աստուծոյ» (Հյպտ. 352)։ Շնորհալին նոյնը կը հաստատէր, գրելով վանականաց՝ թէ «յոլովս ունիք զնիւթ կերակրոյ եւ ըմպելւոյ առձեռն եւ առ տնին». եւ թէ անոնց*

մէջ անպակաս էին անձինք՝ որոնք «անխտիր տան զանձինս որկորստութեան եւ արբեցութեան» (Ընդհ. 20)։ Սարգիս վրդ. ասոնց բազմութիւնը եւ գինւոյն հետ աւանդական մտերմութիւնը ցոյց կու տայ հեգնութեամբ մը. «Բազումք ի մէնջ իբրեւ զհայրենի ժառանգութիւն պահեն զարբեցութիւն» (792), ինչ որ աշխարհականաց գինեմոլութեան ժառանգականութիւնը կը յիշեցնէ (աստ, 223)։

Անգամ մը զեղխութիւնն զմենաստանն աշխարհի մերձեցնելէն վերջ՝ շատ դիւրին էր որ վանականք ելնէին նոյն հաճոյքներն աշխարհի մէջ իսկ որոնել։ Մանդակունւոյն ընծայուած ճգնաւորաց խրատին մէջ կը յանդիմանուին վանաց երիցունք, որոնք «երիվարաւ սատանայիւ՝» այս ինքն սատանայի վրայ նստած՝ «զհետ տերանց եւ տիկնաց յածեալ ծփին» (219)։ Եւ Լամբրոնացին մատնացոյց կ՚ընէ անոցմէ ժամանակակից նշանաւոր դէմք մը, Տուտէորդին, որ «ուտելով եւ ըմպելով ընդ աշխարհականաց՝ զպորտն պարարէ» (Թղթ. 223)։ Սա մրցակից ունէր ուրիշներ ալ, որոնք աշխարհականաց հետ կը բնակէին քաղաքաց ու գիւղերու մէջ. եւ «յորովայնամոլութիւնս անպատկառս եւ յարբեցութիւնս անառակս եւ յամենայն ան-

կարգութեանց բերմունս առաւելուն քան զնոսա» (Ընդհ. 15)։ Եւ երեք դար վերջ վանական մը դեռ կը պատմէ իւր վիճակակցաց համար, մանաւանդ աշխարհի մէջ բնակողաց, թէ անբարոյական արանց ու կանանց հետ նստած՝ «զուշակորոյս գինին ըմպեմք», այս ինքն ըմպելով կը կորուսանէին իրենց ուշը (Տաթ. Ցոբ. Ա, Գ)։

Մինչդեռ մենաստան մը Է դարուն անլուր խժդժութեամբ կը սպանէ ազնուազարմ տիկին մը, որ նոյն վանականներէն աւելի բարեպաշտ եւ ողջամիտ, կ'արհամարհէ անոնց տգէտ նախապաշարմունքը, եւ իւր կանացի անսուրբ ոտներով կը կոխէ Կարապետին սրբավայրին մէջ՝ իւր աղօթից խունկը ձօնելու (Մամ. 11), ընդ հակառակն նշանակալից է նկատել Ջ դարէն նոյն տիկնոջ սեռակցաց համարձակ մուտքն ուրիշ մենաստանաց զգուշաւոր սեմերէն ալ ներս՝ ծառայութեան պատճառաւ կամ պատրուակաւ, որ եկեղեցական իշխանութեան ուշադրութիւնն ու սաստը կը հրաւիրէ (աստ, 137)։ Եւ որոյ դէմ դրուած արգելքն այնչափ տկար կը մնայ, որ եօթ դար վերջ Մխ. Գոշ հայ մենաստանաց մէջ դեռ կը տեսնէր կանանցմէ «կովկիթս եւ սպասաւորս» (Խր. ոգ.)։ եւ Տաթեւացին նոյն վարդապետին հետ ձայն կը բար-

ծրացնէր, վրդովելով ի տես նոյն անկարգութեան՝ որ կը տեւէր միշտ. «Քահանայք, կ'ըսէ, ի մէջ քաղաքի շրջեալք, եւ կանայք ի վանորայս բնակեալ, սեղանակից եւ տնակից եղեալ» (Յոր. Ա, Դ), ուր լոկ ծառայութենէ աւելի ծանր խանգարմանց ամբաստանութիւնն է որ կը լսուի:

Եթէ այդ վկայութեանց համեմատ աշխարհաբնակ զեղծ կրօնաւորք համեմատաբար սակաւ են թուով, մենաստանաց մէջ մուտ գործած թուլութիւնն ու վատթարումն աւելի ընդհանուր էր, դատելով Եղիշէի եւ Կիրակոսի նկարագրածէն. այնպէս որ Սանահնի, Թանահատի ու Խոտակերաց չորաբեկութիւնն ու ժուժկալութիւնը զարտուղութիւն կը կազմէին՝ նման միւս անհատական օրինակաց խստամբերութեան՝ զոր տեսանք վերեւ:

Մենաստանք ամէն ժամանակ եւ ամէն աշխարհաց մէջ դաստիարակ ու խնամակալ հանդիսացած են ուսմանց, առաւելապէս եկեղեցականաց, եւ փոքր ի շատէ բոլոր միւս գիտութեանց ալ, որոց բարգաւաճման յուռթի անդաստանն էր վանական ժուժկալ ու տեսական կենցաղը: Ուսումն՝ հաւատարիմ ու մտերիմ ընկերն էր անզբաղ մենակեցին, եւ կրօնական նկարագրովը՝ շղթայն իրեն եւ իւր կոչ-

ման ու Աստուծոյ միջեւ՝ որուն նուիրուած էր։ — Այդպէս եղած է մեր քով ալ. եւ հայ գրողաց ու գրչագրաց, նկարչաց ու երաժշտայ մեծագոյն մասն վանական որմերէն ներս բուսեր ու ծաղկեր են. հոն ծնաւ հայ գիրն ու գրականութիւնն իսկ։ Նըկատելով սակայն Հայաստանի վանքերու բազմութիւնն եւ անոնց մէջ ամփոփուած մարդկային ամբոխը, մտաւորական արդիւնքը շատ անհամեմատ պիտի գտնենք. եւ այս պարագայն կը մեկնուի այն զեղխութեամբ որով անոնք վարակուած էին։ Նոյն ինքն հայ մտաւորականութեան ամենէն փայլուն շրջանին, ինչպէս ոսկեդարն էր, եւ զարմանալի հակասութեամբ մ'այդ ժամանակ մանաւանդ՝ «յուլովք» մեր վանականներէն անհմուտ կ'ապրէին գրոց, եւ բուռն կերպով կը հալածէին անգամ՝ թէ ի կենդանութեան եւ թէ մինչեւ յետ մահու եւս՝ գրոց մշակները, երանելի Թարգմանիչները, որոնք ներշնչուեցան յոյն մտայնութենէն ու փորձեցին ներշընչել հայ մտքին (Փրպ. 602–10)։ Այդ հալածուածներէն էր նոյն ինքն տեղեկատուդ Ղազար, որ կ'աղաղակէ՝ թէ իւր սեպհական ու սիրական գրեանքը դատապարտուած էին «ի կերակուր ցեցոյ՝» Վաղարշապատու կաթողիկէի վանուց մէջ, որոյ

տեսչութենէն վտարեց զինք չար Նախանձը (նոյն, 592)։ Նոյն յուզեալ եւ յուզիչ բողոքն է՝ որ դեռ կը հնչէր դարեր վերջ Կիրակոսի բերանէն՝ այդ «ծոյլ եւ որովայնամոլ կրօնաստանաց» դէմ, ինչպէս տեսանք վերեւ (295)· եւ զոր ուրիշ շատեր ալ կրնային կրկնել Ստեփանոս վարդապետի հետ, որոյ դէմ լարուած հակառակութիւնք եւ ամբաստանութիւնք՝ եպիսկոպոսական գաւազանը շահեցուցին իրեն՝ ողջամիտ Բարսեղ կաթողիկոսի կողմանէ (Հյպտ. 378)· կամ Կոստանդին Երզնկացւոյն հետ, որ զանազան ակնարկներէ զատ յատուկ քերթուած մ'ալ յօրինած է «ոմանց» դէմ, որոնք «կրճէին ատամն» իւր կարողութեան ու գրուածոց վրայ, շարժելով միշտ հին դժնեայ Նախանձէն (Կոս. 97)։

Նկատելով այդ բոլորը, միջանկեալ ու լոկ մասնական երեւոյթներ կը մնան Արշարունեաց մէջ Երասխաձորոյ վանքը, ուր Ե դարուն «ժողովեալ էին մանկունք ճարտարք եւ գիտունք Հայոց» (Որբ. 82)· կամ Տաթեւոյ ուխտը, որ Ը դարուն «Գրլուխ էր ամենայն գիտնոց Հայոց», եւ Աթէնքի դիրքն ունէր Հայաստանի մէջ, կ'ըսէ նոյն պատմիչը (97)· եւ որ Թ—Ժ դարուն նոր բարգաւաճում մ'ալ կը ստանայ, եւ «լի էր ծովամատոյց փիլիսոփա-

յիւք երաժշտական երգոց. ճոխ էր եւ վար-
ժարանն վարդապետական կրթութեամբ.
նաեւ արհեստաւորք նկարչացն եւ գրողաց
անհամեմատք» (նոյն, 165)։ Եթէ այս
նկարագրին մէջ սիւնեցի մեծարանութիւնը
չկայ, ինչ որ հաւանական է, սակայն
պատմչիս օրով իսկ արդէն պատմութեան
կը վերաբերէր, եւ շատ հեռի ժամանակի
վիճակէն։ Այսպէս նաեւ Սանահին իւր
խստամբեր կենաց ծաղկեալ շրջանին, այն
է ԺԱ դարուն, կը կոչուի Մագիստրո-
սէ բնակարան «իմաստնոց բոլոր արհեստից
և մակացութեանց պարառելոց» (136)։
Բայց քիչ վերջ կիլիկեան լուսաւորաց՝
Գրիգոր Տղայի եւ Ներս. Լամբրոնացւոյն
դէմ անոնց՝ կամ որ նոյն է՝ Հաղբատաց-
ւոց վարած պատերազմը՝ հոն մնած եւ
կամ պահուած հզօր մտայնութեան մը
գրաւականը չէ, թէեւ Ցոլհ. Սարկաւագ
մը տուած լինէին։ Տարսոնի եպիսկոպոսը
կ՚ըսէ՝ թէ «այնքան կուրացեալք ի մի-
մեանց նախանձուէ, մինչ զի ի բան խօ-
սելն միոյն եւ միւսոյն ունչ առնելն՝ ա-
մենայն վանականացն կատականք են եւ
ծաղր» (Թղթ. 223–4)։ Իսկ կաթողիկոսը
կը գրէ անոնց՝ թէ «հեռի էք յամենայն
գիտութենէ հին եւ նոր կտակարանաց»
(Տղ. 10), եւ թէ Հայոց քով «ոչ պա-

տուր գիտութիւն, այլ անձնահաճ կամք» (անդ, 24)։

Բ. Շատ դիւրին է մեկնել մեր մենաստանաց այդ աղաւաղման պատճառը։ Յայտնի է՝ որ Հայաստանի վանքերն հին ժամանակ միանգամայն հիւրանոցներ էին[1], նման արեւմտեայց. եւ ունէին ընդարձակ կալուածներ՝ բաւելու համար իրենց եւ օտարաց սննդեան, և զորս կը մատակարարէին վանականք իսկ, այնքան անձնատուր լինելով անոնց, որ Եղիշէ կը վկայէ՝ թէ «Գրեթէ զամենեսեան տեսանեմ թաւալեալ յերկրաւոր ստացուածս... որ լի են անառակ ագահութեամբ». այս ինքն դիզելու ջանքով (217)։ Կ՚աւանդուի՝ որ Լուսաւորչի օրերէն մենաստանաց ապրուստին համար սահմանած էին «անդս» (Սահ. 109)։ Իբր օրինակ յիշենք Գլակայ վանքը, որ ունէր «գիւղս եւ աւանս մեծամեծս» (Զեն. 11)։ Ստէպ ստէպ բարեպաշտ ազնուականք ալ կ՚աճեցնէին անոնց հարստութիւնը։ Դաւիթ կամսարական Գոտկոյ վանուց եկամուտ կը կտակէ «հարիւր կայթ հաց եւ հազար փաս գինի» (Հյպտ. 192)։ Վահրամ պահլաւունի

1. Հմմտ. Ցճխ. 214. Խոր. 206. Հյպտ. 397. Ցհ. կԹղ. 116. Աստղ. 174. եւն։

Մարմաշէնի մենաստանին կ'ընծայէ գիւղեր, խումբ մ'այգիներ, ջաղացներ, տներ ու կրպակներ (Շիր. 148)։ Մաքենոցաց ուխտը Սուփան սիւնեցիէն կը ճոխանայ «բազում ընչիւք, նաեւ գեղօք եւ ագարակօք եւ այգեստանօք» (Որբ. 130)։ Տարսայիճ օրբելեան՝ Տաթեւոյ վանուց կը նուիրէ «գեօղս վեց» եւ «զմեր ձեռատունկ այգին», կ'ըսէ. Թէպէտեւ Սիւնեաց Ցակոբ եպսն. արդէն վաղուց զարդարած էր զայն, տնկելով շրջակայքը «բազում այգիս... ձիթենիս եւ թզենիս եւ նռնենիս, եւ յամենայն մրգաց արար դրախտս զարմանալիս՝» եղբայրութեան ու կարօտելոց վայելման համար (Նոյն, 305, 185)։ — Անոնք ունէին բազմաթիւ անասուններ եւս։ «Ունկնդիր եմք բառաչման խաշանց մերոց», կը տրտնջէ Եղիշէ (217), ցուցընելով իրենց յօժարամիտ զբաղումն անոցմով։ Թող պարգեւներէ հետ զհետէ յաւելուածները. զոր օրինակ Գագիկ արծրունի ի յիշատակ իւր հանգուցեալ եղբօր՝ Հայաստանի ընդհանուր մենաստանաց կը նուիրէ ձիեր ու ջորիներ, հանդերձ արջառոց եւ ոչխարաց հօտերով (Արծ. 324)։ Մաքենոցք Սուփանէ կ'ընդունի նաեւ եզանց ջոլիրներ ու զուարակաց ջոկեր, անդեայք եւ ոչխարաց հօտեր (Որբ.

131)։ Ցիշեալ պարգեւատրութեանց յիշատակօք լի են մեր բոլոր հին մենաստանաց արձանագիրները։ Մսեղինաց առատ պաշար կը գոյանար նաեւ մատաղներէ, զորս պիտի տեսնենք իրենց կարգին։

Բաւական չէր որ կրօնաստանք ունէին այդ անշարժ ու շարժուն ստացուածքները, այլ վանականք իսկ կը զբաղէին անձամբ անոնց հոգաբարձութեամբ, ինչպէս ըսինք։ Ի հնուց ծանօթ են անոնց մէջ «տեսուչք եզանց հողագործաց կամ խաշանց արօտականաց եւ հօտից կթոց եւ գրաստուց բեռնակրաց» (Յհխ. 214)։ Տեսուչք կամ վերին հսկողներ՝ դեռ հանդուրժելի են. բայց Շնորհալին կը բողոքէր՝ տեսնելով մեր վանականներն անձամբ իսկ «այգեգործ իւրաքանչիւր ոք լինելով» (Ընդհ. 16), եւ անոր հետ իւր ձայնը կը միացնէր Լամբրոնացին եւս նոյն անարժան զբաղանաց դէմ (Պտր. 416)։

Հիմայ կրնանք հարցնել. ի՞նչպէս կըրնային հաշտուիլ այդ փարթամութիւնն ու վանական ժուժկալութիւնը. ի՞նչպէս կարելի էր անասուն դարմանել եւ անոնց միսը չուտել. գինի պատրաստել անձամբ, կամ դրսէն վանք կրել գրաստներով (Կիր. 114), եւ անոր հետ թշնամի ապրիլ. այս

*նիւթերն հայթհայթել հիւրոց եւ աղքատաց, եւ իրենք անմասն մնալ։ Մարդկօրէն գրեթէ անկարելի էր այդ. եւ այդ իսկ եղաւ մեր մենաստաններէն ժուժկալութեան բարձման մերձաւոր պատճառը, առանց հաշուելու աշխարհականաց հոն մուծած գայթակղական օրինակները (տես,* 215), *եւ արտաքին ընդհանուր ազդեցութիւնը՝ զոր նկատեցինք* (294)։ *Արեւմըտեայց վանքերու ճոխութիւնք ծառայեցին գեղազարդելու իրենց մենաստաններն ու տաճարները, որոց մեծագործութեան վրայ դեռ այսօր կը զարմանանք։ Հայ վանականաց հարստութիւնք ծառայեցին անոնց զեղխութեան ու զեղծմանց՝ որոց վրայ կը ցաւինք այսօր, եւ որոնք ոչ միայն մեր ընչաքաղց իշխանաց ախորժակը պիտի գրգռէին իրաւամբ, ինչպէս տեսանք* (242-3), *այլ աւելի ծանր հետեւանքներ պիտի ունենային, մատնելով միանձունքը ծուլութեան եւ ուսումնատեցութեան, եւ աննպատակ ու խորշելի դարձնելով այնուհետեւ մենաստաններն ինքնին, վերածուած շահասիրութեան ու խռովութեան բոյներու, որոնք հետ զհետէ պիտի կողոպտուէին ներքուստ եւ արտաքուստ, դատարկուէին ու քայքայուէին. եւ հին բազմաթիւ ու բազմամարդ կրօնաս-*

տաններէն օր մը հայ հողին վրայ պիտի մնային քանի մը թափուր եւ աննշան բնատուերններ միայն։

Միջին դարու Հարք տեսնելով այդ դէպ ի քայքայում դիմող վիճակը, եւ յուսահատ վերանորոգելու հին ժուժկալութիւնը՝ որ այլ եւս պատմութեան կը վերաբերէր, մեղմացուցին նախկին կանոնները, եւ բաւականացան չափաւորը միայն պահանջել։ Շնորհալին գոհ էր՝ եթէ մեր միանձունք «յառաւելութիւն գինւոյ» չըտային իրենք զիրենք, «այլ պարկեշտութեամբ եւ օրինաւոր ըստ կարգի կրօնաւորաց» (Ընդհ. 20)։ Սարգսի համար գինւոյ «անչափն կարի ընդ մեղադրութեամբ է», բայց ոչ եւ չափաւորը (792)։ Ու Մխ. Գոշ յետ խրատելու Եւագրի հետ՝ որ բնաւ չըմպեն, կը թոյլատրէ զայն՝ ըսելով նոյն հօր բացատրութեամբ. «Բայց եթէ ճաշակեսցես եւ զարարիչն օրհնեսցես[1]». անշուշտ շատ հաճելի պայման մը գինեսիրաց համար. «եւ կամ ի բժշկութիւն վարիցես սակաւ՝ հանդերձ երկիւղիւ» (Խր. ոզ.), այս վերջինս քիչ մը տարակուսական ։ Ասոնք ընդհանրապէս

1. Եւագ. 140։ Տաթեւացին այդ խօսքը կ'ուզէ աշխարհականաց համար առնուլ (Յովհ. Գ), բայց հեղինակը վանականաց միայն կը խօսի։

գինւոյ մասին կը խօսին, որովհետեւ աւելի վտանգաւորն ու զգուշալին այս նիւթն էր, եւ ոչ եթէ միս չէին ուտեր կամ արգելուած էր, զոր գիտենք թէ կ'ուտէին։ Անոր համար Զաքարէ իշխանը, նուազ խոհական քան յիշեալ Հարք, չափազանցօրէն պահանջեց «կրօնաւորաց միս ոչ ուտել» բնաւ, բայց ոչ ինչ շահեցաւ (Կիր. 83. Վրդ. 138)։

9. – Խտրութիւն ի սեղանի։ — Ուշագրաւ է Շնորհալւոյն մէկ պատուէրը, որ վանականաց շատերու ծուլութիւնը բժշկելու համար՝ կ'ուզէ որ կերակրոց բաշխումն «ըստ չափոյ աշխատութեանն» կատարուի՝ աւելի կամ նուազ դրուելով անոնց առջեւ (Ընդհ. 25–6)։ Եթէ այս տարբերութիւնը – համարելով որ գործադրուած է – կրնար խթանել ծոյլերը, բայց դիւրին է գուշակել՝ որ սեղանի վըրայ տեղի տուած է նաեւ աչառութեանց, նախանձու եւ անշուշտ աղմկի եւս վանականաց մէջ։ Վերջապէս ոչ յաջող հրաման մ'իմաստուն հայրապետին կողմանէ։ Մինչդեռ շատ գեղեցիկ է իր ըրած միւս յանձնարարութիւնը՝ թէ ծերունիներն ու տկարներ, որոնք իրենց կեանքը մաշած էին եկեղեցւոյ ծառայութեան մէջ, մեծապատւին կարողութեան համեմատ խը-

տաններէն օր մը հայ հողին վրայ պիտի մնային քանի մը թափուր եւ աննշան ըստուերներ միայն։

Միջին դարու Հարք տեսնելով այդ դէպ ի քայքայում դիմող վիճակը, եւ յուսահատ վերանորոգելու հին ժուժկալութիւնը՝ որ այլ եւս պատմութեան կը վերաբերէր, մեղմացուցին նախկին կանոնները, եւ բաւականացան չափաւորը միայն պահանջել։ Շնորհալին գոհ էր՝ եթէ մեր միանձունք «յառաւելութիւն գինւոյ» չըտային իրենք զիրենք, «այլ պարկեշտութեամբ եւ օրինաւոր ըստ կարգի կրօնաւորաց» (Ընդհ. 20)։ Սարգսի համար գինւոյ «անչափն կարի ընդ մեղադրութեամբ է», բայց ոչ եւ չափաւորը (792)։ Ու Մխ. Գոշ յետ խրատելու Եւագրի հետ՝ որ բնաւ չըմպեն, կը թուլատրէ զայն՝ ըսելով նոյն հօր բացատրութեամբ. «Բայց եթէ ճաշակեսցես եւ զարարիչն օրհնեսցես[1]». անշուշտ շատ հաճելի պայման մը գինեսիրաց համար. «եւ կամ ի բժշկութիւն վարիցես սակաւ՝ հանդերձ երկիւղիւ» (Խր. ոգ.), այս վերջինս քիչ մը տարակուսական։ Այսոնք ընդհանրապէս

1. Եւագ. 140։ Տաթեւացին այդ խօսքը կ'ուզէ աշխարհականաց համար առնուլ (Յովհ. Գ), բայց հեղինակը վանականաց միայն կը խօսի։

գինւոյ մասին կը խօսին, որովհետեւ աւելի վտանգաւորն ու զգուշալին այս նիւթն էր, եւ ոչ եթէ միս չէին ուտեր կամ արգելուած էր, զոր գիտենք թէ կ'ուտէին։ Անոր համար Զաքարէ իշխանը, նուազ խոհական քան յիշեալ Հարց, չափազանցօրէն պահանջեց «կրօնաւորաց միս ոչ ուտել» ընաւ, բայց ոչ ինչ շահեցաւ (Կիր. 83. Վրդ. 138)։

9. — *Խորուրդին ի սեղանի*։ — Յուշագրաւ է Շնորհալւոյն մէկ պատուէրը, որ վանականաց շատերու ծուլութիւնը բժշկելու համար՝ կ'ուզէ որ կերակրոց բաշխումն «ըստ չափոյ աշխատութեանն» կատարուի՝ աւելի կամ նուազ դրուելով անոնց առջեւ (Ընդհ. 25–6)։ Եթէ այս տարբերութիւնը — համարելով որ գործադրուած է — կրնար խթանել ծոյլերը, բայց դիւրին է գուշակել՝ որ սեղանի վրայ տեղի տուած է նաեւ աչարձակութեանց, նախանձու եւ անշուշտ աղմկի եւս վանականաց մէջ։ Վերջապէս ոչ յաջող հրաման մ'իմաստուն հայրապետին կողմանէ։ Մինչդեռ շատ գեղեցիկ է իւր ըրած միւս յանձնարարութիւնը՝ թէ ծերունիներն ու տկարներ, որոնք իրենց կեանքը մաշած էին եկեղեցւոյ ծառայութեան մէջ, մենաստանին կարողութեան համեմատ խը-

նամարկուին «տեսչութեամբ եւ պիտոյից նոցա պատրաստութեամբ» (անդ, 26):

Ռուբինեան թագաւորութեան բառնալէն վերջ ընդհանուր աղքատութիւնը կը տիրէ Հայաստանի մէջ, որոյ երեսէն կը կրեն մենաստաններն ալ, զորս օտար հարստահարիչները բոլորովին կը մերկացնեն. եւ հին ժուժկալութիւնը՝ գուցէ ակամայ՝ հոն կը վերադառնայ: Այսպիսի եւ կամ թերեւս ի բնէ պարկեշտ մնացած կրօնաստանէ մը կ'երեւի ճառից Լուծմանց հեղինակը, որ կը պարզէ մեզ իւր վանուց չորակերութեան վիճակը. եւ թէ ի՛նչպէս հոն իսկ կային հասարակաց կանոնէն թուսափողներ կամ փափկասէրներ՝ որ իրենց համար խտրութիւններ կը ստեղծէին, ըսելով. «Աղիքս եւ խռչակս չորել է, չըկարեմ խոշոր կերակուր ուտել. մեղր պիտի, նուշ, շաքար»: Արդարեւ մեկնիչս հիւանդաց կերակուր կը համարի «նուշ, շաքար, ձէթ, եղմայրապայք եւ այլ այսպիսիք» (Լծ. Հրց. ժե):

10. – Աշարա: — Ընթրիքը կը վերջանար գոհութեան կանոնով զոր տեսանք (տես, 278–9): Եւ զգաստ վանականք լրջմտութեամբ, ու գինւոյն մտերիմները տատանելով, կ'երթային դուրս շաղակրատելու կամ առանձնանալու իրենց խցերը.

*ոմանք՝ խորասուզելու իրենց հայեցողական խոհերուն մէջ, ոմանք՝ հետապնդելու տնտեսական հոգերու, եւ շատերն ալ յօրանջելու եւ սպասելու ճաշարանի կոչնակին յաջորդ հարուածին։*

---

# ՄԱՍՆ ՉՈՐՐՈՐԴ

ՄԱՏԱՂ. — ՏԵԱՌՆԱԿԱՆ. — ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ. — ԶԱՏԿԻ ԳԱՌՆ. — ՀԱՑ ՄԱՏԱՂԸ ՋՈՀ ԷՐ

Ընկերային ու կրօնական կենաց այլ եւ այլ պարագայից համեմատ՝ բոլոր ազգերու մէջ աւելի կամ պակաս կը փոփոխուէին ճաշի արարողութիւնք եւ կերակրոց տեսակներն ու չափն անգամ։ Ուսումնասիրութեանս ներկայ մասին մէջ պիտի նկատենք բարեգործական ճաշերը։ Նախնիք սովոր էին՝ քրիստոնէական գթասիրութեան գաղափարով, կամ առ Աստուած խոստացուած ուխտից պատճառաւ, եւ կամ ննջեցեալ հոգւոց հանգստեան համար՝ անասուններ մորթել, կամ ուրիշ նիւթերէ կերակրներ պատրաստել, հրաւիրել բազմաթիւ հաւատացեալներ, ու կերակրել։ Այս հացկերոյթները կը զանազանէին իրարմէ կոչմամբ եւ հանգամանօք, որով եւ մեք առանձին առանձին պիտի քննենք զանոնք։



## Ա. ՄԱՏԱՂ

1. — *Կոչումն ու սահման։* — *Մատաղ՝ ընդհանուր անունն էր այդ կարգի կերակրոց (Տար. Թէոփ. 282. Ընդհ. 154, '60), եւ մանաւորապէս առաջնոյն, այս ինքն բարեգործականին, ինչպէս կը գործածեն կրտսեր դարու մատենագիրք, Շնորհալին (Ընդհ. 156), Կոստանդին Ա (Կիր. 172), Յովհ. Երզնկացին (Խրտ. Ժ) եւ այլք. եւ զոր Ս. Սահակայ կանոնաց մէջ ալ կը գտնենք՝ «մատաղենիք» ածանց ձեւով (111, '13)։ Հաւանօրէն անունս ծագած է սոյն ճաշերու մէջ յաճախ մատաղ կամ նոր անասնոց գործածութենէն, ինչպէս Հրեայք ալ կը զոհէին միշտ փափուկ կենդանիներ (Ղեւտ. ԻԲ, 27), այս ինքն «ոչխար տարեւոր» (Ելք. ԺԲ, 5), «որթ տարեւոր» (Թիւք, Ը, 8) կամ «զորթ մատաղ» (Սղմ. ԿԸ, 32)։ Ասկից շատ հեռի է Տաթեւացւոյն տղայական ստուգաբանութիւնը՝ «մատո՛ աղ» (Հրց. 657), ըստ որում աղ կը կերցնէին անասնոյն, ինչպէս պիտի տեսնենք։*

*Յաճախ կոչուած է նաեւ Հին Կտակարանէն փոխ առեալ բառերով. զոր օրինակ պատարագ*[1]*, իբրեւ նուէր առ Աստուած, ինչպէս կը համարուէր այլոց եւ մանաւանդ աղքատաց եղած այդ բարիքը*[2]*։ Ասկից յօրինուած են բացատրութիւնքս, ընդունելութեան պատարագի, կամ ընդունելութեան կոչունք պատարագաց* (*Մանդ.* 59), *կամ հաց պատարագի* (*Սահ.* 97. *Աշտ.* ԻԴ)։ — *Կայ դարձեալ զենումն*[3]*, իբր անասուն մորթել այլոց համար, ուսկից եւ պատարագ զենման* (*Գող՝ Առկ.* 109)։ — *Անգամ մ'ըսուած է նաեւ ողջակէզ, միշտ նոյն աղբիւրէն*[4]*, բայց անճիշդ իմաստով. զի մեր մէջ կիզումն չկար նուիրեալ անասնոց, ինչպէս Հրեայք կ'ընէին։*

*Վերջապէս հին ժամանակ ագապ ալ կը կոչուէր*[5]*, յն.* ἀγάπη*էն՝ որ է սէր, ողորմութիւն, եւ սոյն հացկերութից սեպհական կոչումն ընդհանուր քրիստոնէական եկեղեցւոյ մէջ։ Մեր քով միջին դարուն արդէն ընկած սովորութենէ, հին գրոց*

1. Մանդ. 59. Փրպ. 430, '79. Սահ. 113, '14, '30. Ձեն. 48. Արծ. 329. Ընդհ. 160. Հկճ. Ժ. հմմտ. Ղեւտ. Ա, 2. Գ. Թագ. Ը, 64։
2. Մանդ. 58. Տար. Թէոփ. 282. Ընդհ. 156։
3. Մանդ. 58, 62. Օձն. 25. Ընդհ. 154. Հկճ. Ժ։
4. Ձեն. 48. Ղեւտ. Ա, 3-14 եւն։
5. Սահ. 112. Աշտ. ԻԴ. Օձն. 25։

ընթերցողներէն ոմանք երբեմն կը յարուցանեն զայն, ինչպէս Մխ. Գոշ՝ ըսելով « յաւուրս ագապից » (Խր. Պտր.), կամ Տաթեւացին՝ «ագապս մատաղաց», զոր եւ կը զատէ տէառնականէն եւ ոգեհանգըստէն (Հրց. 362) զորս պիտի տեսնենք։ — Զանազանութիւն մը կը նշմարուի, գոնէ Զ դարուն, ագապին ու պատարագին մէջ եւս. զանազանութիւն մը նպատակի, եթէ ոչ արարողական հանգամանաց։ Զայս կը գտնենք Աշտարակեցւոյն կանոնաց մէջ, երբ կը խօսի քահանայից տրուելի բաժնին վրայ։ Հոն ագապն է բուն իսկ ողորմութեան ճաշը, որ կարօտելոց միայն կը տրուի. անոր համար քահանայք, կ՚ըսէ, «յագապս մասունս մի՛ բարձցեն ըստ հրամանի կանոնաց, այլ աղքատաց տացեն ի նմին (օրհնելու) ժամու յանդիման ագապատեառնն» (ԻԳ). մինչդեռ « պատարագին» վրայ խօսելով, կը սահմանէ եկեղեցականաց բաժինը (ԻԹ). զի վերջինս ամենուն խառն կը տրուէր ըստ Մանդակունւոյն (59)։

2. — Ծագումն։ — Յունաստան եւ Իտալիա ունէին ի հնուց այդպիսի հասարակաց ճաշեր՝ կրօնական պաշտամանց առթիւ (Դար. Բ, 736-8), հանրային բարձերու թիկնածուաց, յաղթողաց, ճոխ ժա-

ռանգորրդաց կողմանէ եւ այլն (Նոյն, Ա, 1282)․ եւ որոնք միշտ կրօնական հանգամանք ունէին, ուստի եւ աննման սովորական խնճոյից (Նոյն, Բ, 737)։ Հրբեայք նոյնպէս կը տօնէին զատիկը (Բ Մնաց․ Լ, 23–6), եւ Սողոմոն՝ նորակառոյց տաճարին նաւակատիքը (Գ Թագ․ Ը, 62–5)։ Մեր հեթանոսութիւնն ալ կը հետեւէր նոյն սովորութեան․ Տրդատայ հայրը Խոսրով՝ Պարսից դէմ շահած յաղթութեան փոխան՝ «սպիտակ ցլուք եւ սպիտակ նոխազօք, սպիտակ ձիովք եւ սպիտակ ջորովք... զհայրենեացն պաշտամանց տեղիսն մեծարէր» (Ագթ․ 34), որոնք կը հասկացուին զոհեր եւ ճաշեր (Խոր․ 146)։ Ինչպէս եւ Յազկերտ իւր յաղթութեանց համար «ցլուք սպիտակօք եւ գիսաւոր նոխազօք առատացոյց զգոհս կրակին» (Եղիշ․ 9)։ — Քրիստոնէութիւնն առաւ ադոր բարեգործական մասը միայն, սկսեալ առաքելոց օրերէն, կցորդելով զայն տէրունական Պատարագին․ հաւատացեալք միասին կը ճաշէին, իւրաքանչիւրն իւր կերակուրն եկեղեցի բերելով (Ա Կոր․ ԺԱ, 17–34․ Գործ․ Ի, 11)։ Եւ այս ագապներուն հոգաբարձու կարգուեցան եօթն սարկաւագները (Գործ․ Զ, 1–5)։ Ապա հետ զհետէ զարգացաւ այն բոլոր քրիստոնէից մէջ (Կաբր․ Ա, 783–808)։

Մատաղն անցաւ նորադարձ Հայաստանին ալ, կամ լաւ եւս՝ անընդհատաբար յաջորդեց բնիկ հեթանոսականին։ Զենոբ կը համարի՝ թէ Տրդատ յետ ջնջելու կռապաշտութիւնը մեր աշխարհէն, իշխանաց հետ Յաշտիշատ եկաւ, ուր էր Լուսաւորիչ, եւ «մեծ գոհութիւն Աստուծոյ եւ պատարագս ողջակիզաց մատուցանէին... եւ աղքատաց բազում ողորմութիւնս առնէին» (48)։ Թէեւ այս պարագայն չկարենանք հաստատել հնագոյն աղբիւրներով, բայց սովորութիւնը բացարձակապէս հին էր, ինչպէս կը վկայեն Ե դարու յիշատակարանք։ Ս. Սահակայ կանոնք Լուսաւորչին կը վերագրեն կարգեր մատաղենեաց մասին (130–1)։ Ուրիշ հին վկայից ալ ակնարկեցինք վերեւ (312)։ Եթէ Տրդատայ պատարագները «գոհութեան» համար էին, սովորականք նպատակ ունէին՝ նուիրողին ստանալ «թողութիւն մեղաց», որ բարեգործութեան բնական արգասիքն է (Մանդ. 59)։

Արեւմտեայց ազգներու մէջ մուտ գտած զեղծմունք կամ զեղխութիւնք, որոց սկիզբը մինչեւ առաքելական դարը կ'ելնէ (Ա Կոր. ԺԱ, 20–2), պատճառ եղան՝ որ նախ Պաւղոս, եւ եկեղեցւոյ Հարք Դ դարէն, կռուէին անոնց դէմ

(Կարբ. Ա., 818–20), եւ ասոր հետեւանօք մատաղը տակաւ ջնջուէր անոնց միջէն, Թողլով մեր քով միայն. այնպէս որ Շնորհալւոյն օրով արդէն «այլք յազգաց քրիստոնէից ոչ ունին սովորութիւն առնել զայս» (Ընդհ. 156)։ Հայրապետս կը կարծէր՝ թէ անոնց առաջնորդները չեն դրեր այդ կարգը, որովհետեւ հարկ չեն տեսեր, ինչպէս Լուսաւորիչն էր տեսեր (անդ)։ Բնականապէս իրեն անծանօթ էր հինը, որով այսպէս կը խօսէր։

3. — *Մատաղի օրեր։* — Առանձին օրեր սահմանուած չէին սովորական պատարագաց համար։ Բայց որպէս զի թէ հրաւիրողք եւ թէ հրաւիրեալք կարենային միասին հաւաքուիլ, կ'ընտրէին տօները, ուր անզբաղութիւն եւ ուրախութիւն կարող էին ներդաշնակօրէն միաբանիլ։ Ս. Սահակայ կանոնք թուելով մատաղի տեսակները, «զամենայն ընծայս ուխտից, զատկաց եւ ագապաց եւ զայլոց տօնից» (98), այս վերջնով կ'իմանան մեր ըսած օրերը։ Շնորհալին նոյնպէս հաւաքաբար կը յիշէ զասոնք. «տէրունականս տօնից մատաղքն եւ սրբոցն Աստուծոյ» (Ընդհ. 160)։ Տարօնացին կը հաստատէ՝ թէ մատաղի օրը կախուած էր պարզապէս նուիրողին կամքէն. եւ թէ կը թո-

ղուին սովորաբար «տէրունական տօնից եւ ամենայն կիւրակէի». կամ աւելի որոշ, «Վարդավառին եւ Աստուածածնին, խաչի եւ Եկեղեցւոյ, Առաքելոց եւ Մարգարէից եւ ամենայն սրբոց, նաեւ յամենայն կիւրակէի՝» ըստ հին աւանդութեան (Թէոփ. 282)։ Սրբոց յիշատակին ագապը, յիշուած այդ երկու հայ մատենագրերէն, շատ հին է միւս քրիստոնէից մէջ եւս (Կաբր. Ա, 816–20)։

Բայց մշակ ժողովուրդն աւելի կ'ընտրէր տարւոյն այն եղանակն՝ ուր բնութիւնն իւր բարիքներով կը վարձատրէր անոր աշխատութիւնը, եւ կը դիւրացնէր անոր նուիրատուութիւնը։ «Սովոր եմք, կ'ըսէ Տաթեւացին, ի մուտս աշնան, յորժամ արմտիք ժողովին ի կալոյ եւ յայգւոյ եւ ի ծառոց», մատուցանել մատաղներն եւ այլ նուէրներ (Քրզ. ամր. 481)։ Եւ այս նոյն էր հրէականին հետ, որ ունէր «ըզտօն կատարածի ելից տարւոյն՝ ի ժողովել գործոց յանդէ» (Ելք, ԻԳ, 16), յորս իրենց բերքերէն կ'ընծայէին Աստուծոյ։ Հին ժամանակ սակայն աշոր հետ կամ փոխանակ աշոր՝ Հայոց մէջ կար ամառնային հանդէս մը, յիշուած ու կոչուած Ս. Սահակայ կանոններէն՝ «տօն նորաց[1]»

1. Այդպէս ըստ 1614ի կանոնագրին Վենետկոյ, գոր-

յատուկ «հացով» (113), որ կատարելապէս կը համեմատի մեր հեթանոսութեան «ամանորայ ամենաբեր նորոց պտղոց տօնից հիւրընկալ դիցն Վանատրի» (Ագթ. 623), եւ կը յիշեցնէ Հրէից միւս «տօն ամարայնոյ առաջնոյ արմտեաց» (Ելք, ԻԳ, 16) կամ «օր նորեաց» ըսուածը (Թիւք, ԻԸ, 26)։

Տեսանք Տրդատայ պատարագներն ի նշան գոհութեան՝ իւր յաջողութեանց պատճառաւ։ Միակ օրինակը չէ այդ. Վահան Մամիկոնեան իւր յաղթական պատերազմներէն վերջ ի Դուին կու գայ, եւ հոն «զշնորհակալութեան պատարագն մատուցեալ Աստուծոյ արժանաւորապէս», կը կերակրէ աղքատները (Փրպ. 525)։ — Օրբելեանը կը յիշէ զենումներ նաեւ խաչ ու եկեղեցի օրհնելու առթիւ (Հկճ. ժ)։ — Վերջապէս Վենետկոյ գրչագրի մը մէջ, գրուած 1668ին, գտած եմ եօթն անհարազատ կանոններ յանուն Մանդակունւոյն, որոնք մատաղներ կը սահմանեն մեղաց թողութեան համար, բայց կատարեալ հրէական կոշտ ձեւով. «Մատուցէ Տեառն զուարակ վասն անգիտութեան եւ

1663ի օրինակը կը կարդայ «նորին տօնեացն», եւ տպագիրը՝ «տօնին որ էանցն». երկուքն ալ սխալ։

քաւեսցէ»․ եւ կամ «Գ զուարակօք սըր-
բեսցի»։ Աւելի հին կանոնագրոց մէջ չը-
կան ասոնք․ եւ մովսիսական օրինաց այս
կրկնութեան թելադրիչն ոչ անշուշտ մե-
ղաց քաւութեան պէտքն էր, այլ այս կա-
նոններն երեւակայող երիցուն դատարկ
եւ կամ անկուշտ փորը։

4․ — Մատաղի վայրը։ — ՚Ի դարու
հայ մեծատունն իւր հոգեւոր կոչունքը
կու տայ հոն իսկ՝ ուր սովորական խըն-
ճոյքը կը կատարէր․ այս ինքն իւր տան
մէջ։ Առ այս ունինք նախ Մանդակու-
նւոյն վկայութիւնը՝ թէ աղքատները «քա-
ւարան կոչեցեր ի տուն քո»․ եւ թէ
«մի՛ զոք ի կարօտաց եւ կամ ի մարմնա-
ւոր սիրելեաց քոց մուծանիցես ի տուն
քո՝» մատաղին մասնակցելու համար (59)։
Յետոյ կան Ներսէս Աշտարակեցւոյն կա-
նոնները, որ կը դատապարտեն զանոնք՝
որ «ոչ կամեցան տանել ի տուն զքահա-
նայս եւ զպաշտօնեայս եւ զմատուցողս
պատարագին»․ այլ սովոր էին «առնել
զտուեալս իւրեանց թերակատար յօրհնութենէ
քահանայիցն», հոն տանելով քահանայա-
կան շնորհէ զրկուածները (Աշտ․ Դ)։ Այս
վկայութեանց մէջ ուրեմն շատ յայտնի է
տունն՝ իբրեւ տեղի մատաղի։

*Իսկ տան մէջ ոչ թէ տաճարը կամ ճաշարանը, այլ գաւիթն էր սահմանուած այս ճաշին, ուր սովորականներէն աւելի բազմութիւն կը հաւաքուէր, եւ գաւիթը ճաշարանէն աւելի ընդարձակ՝ յարմարագոյն էր այդ նպատակին, ուր կարելի էր ի հարկին դռնէն դուրս՝ տան առջեւ ալ ամփոփել ճաշողաց մէկ մասը։ Այս պարագայն մեզ կ'աւանդէ Մանդակունին՝ ըսելով. «Ոչ է քեզ պարտ... զՔրիստոս (այս ինքն աղքատները) թողուլ արտաքոյ գաւթին» եւ ճոխերն «ի ներքս» (61)։ Եւ թէ «գաւիթ» բառով կ'իմանայ իսկապէս բակը, յայտնի է իր միւս մէկ տեղէն, թէ մուրացիկն «երկիւղիւ ի դրունս, երկիւղիւ ի գաւիթս, երկիւղիւ ի տունսն մըտանէ» (52). եւ ուր զգալի է գաւթին տեղն իսկ, իսկոյն դռնէն ներս։*

*Բայց կ'երեւի թէ առտնին ճաշակումն երկար չտեւեց, եւ մատաղի միւս տեսակաց պէս փոխադրուեցաւ սրբավայրերը։ Այնպէս որ Ներսէս Շնորհալի կանոնաց մէջ, այն է ԺԲ դարուն, կը տեսնենք արդէն՝ որ հաւատացեալք մատաղի համար վանքերը կը հրաւիրուին (Շին. ժԲ)։ Եւ ես այնուհետեւ առտնին հաւաքմանց յիշատակութիւն չեմ գտած. ընդ հակառակն՝ Տաթեւացւոյն ըսածին պէս՝ մատաղ ու նուէր*

կը մատուցուէին «ի սուրբ տեղիս ի վանորայս» (Բրգ. ամր. 481). ինչպէս Հրեայք ալ իրենց ամէն տեսակ պատարագները կը մատուցանէին ու կ՚ուտէին սրբավայրին մէջ (Բ Օր. ԺԲ, 5–7), որոց օրինակին՝ ըսինք՝ հետեւեցան ի սկզբան քրիստոնեայք եւս. եւ հեթանոսք արդէն նոյնպէս կը վարուէին (աստ, 314)։

5. — Կոչնականք։ — Մանդակունւոյն վերոյիշեալ վկայութեան մէջ տեսանք, զարտուղութեամբ սովորական ճաշերէն (աստ, 139), աղքատն ու հարուստ միասին հրաւիրուած։ Հայրապետս, աւետարանական ռամկավար մը մինչեւ ծուծը, սաստկապէս կ՚ընդվզէր այդ սովորութեան դէմ, որուն ուղղած է ամբողջ Զ ճառը։ Զէր հանդուրժեր նա՝ աշխարհիկ պատշաճութեանց հետեւանօք երկու դասերուն մէջ տիրող խտրականութեան, որ աչքի կը զարնէր սոյն հոգեւոր կոչնոց առթիւ եւս։ Մէկ դասակարգը, կ՚ըսէ, զարդարուած գաւթին մէջ «պատուով ի բազմականի» նստած, եւ միւսն՝ եթէ նեբսը տեղ կար՝ «արհամարհանօք առ պատուանդանի» առաջնոյն, այս ինքն գետնի վրայ կծկած «գլխարկեալ», եւ մեծագոյն մասամբ գաւթէն դուրս մնացած (61)։ Առաջնոց սեղանէն կերակուր եւ գինի չէն

պակասիր, սպառածին նորն յաջորդելով.
մինչ աղքատներն «ի ներքուստ ի վեր
նային, եւ սեղանք նոցա դատարկ՝ յոգոց
հանիցեն»։ Աւելի սխուր էր դուրս մնա-
ցողաց վիճակը, որոնք՝ կ՚ըսէ՝ բազմակա-
նաց ձայները միայն կը լսեն, իրենց ար-
համարհութիւնը կը խոցէ իրենց սիրտը,
«վարանին, զօղեալք եւ ակնկորեալք նրա-
տին» (59), եւ ակնածութեամբ մունջ կը
մնան (60)։

«Ջերմեկոց ժողովոյն» ընծայուած այդ
մեծարանքը նախատինք մը կը համարի
բեմբասացը՝ նետուած Քրիստոսի դէմ, որ
հրաւիրուած էր աղքատաց ձեւով (61)։
Կը յիշեցնէ՝ թէ ազայն «աղքատաց կո-
չունք» մ՚է զոր պէտք չէ եղծանել, ա-
նոր մէջ հզօր եւ անկարօտ մարդոց պա-
տիւներ շռայլելով (58)։ Մեծամեծ բա-
րեկամներդ մեծարելու համար, կ՚ըսէ, ու-
նիս երեք հարիւր վաթսուն եւ հինգ օր.
գոնէ անոցմէ մին աղքատաց եւ հոգւոյդ
նուիրէ, կոչելով լոկ «զորբս եւ զայրիս,
զնեղեալս եւ զտառապեալս, զխեղս եւ
զկոյրս եւ զկաղս, զկարօտեալսն եւ զգե-
րիսն, եւ զամենայն քաղցեալս եւ զան-
մխիթարսն» (59)։ Ուշագրաւ է այս ամ-
բոխին մէջ չքաւոր «այրեաց» ներկայու-
թիւնը. եւ որ դիւրաւ կը մեկնուի, երբ

նկատենք այս կրօնական կոչնոց աննմանութիւնը սովորական անկարգ խնճոյից հետ, որոց չէին կարող մասնակցել կանայք (նոյն, 141)։

Մանղակունեայն սուր սլաքներն ունեցան իրենց բարերար ազդեցութիւնը ժամանակակցաց վրայ։ Անոցմէ շատերը տիրող սովորութեամբ կը շարունակեն մասնակից ընել նաեւ հարուստները․ բայց կը զատեն զանոնք աղքատներէն, վայելչօրէն կերակրելով նախ զասոնք, որոց էր առաջին իրաւունքը, եւ յետոյ ազնուականները։ Վահան Մամիկոնեան ի Վաղարշապատ գալով, «նախ հոգացեալ զաղքատաց դարմանս, ապա մեծաւ ցնծութեամբ ուրախանային եւ ինքեանք» (Փրպ․ 430)․ նոյնպէս ըրաւ ուրիշ անգամներ ալ (նոյն, 479, 525)։ Յաջորդ դարերուն եւս աղքատներն եղան միշտ գլխաւոր վայելող մասաղին, ինչպէս կ՚ըսէ Տարօնացին՝ թէ Հայք զայն «Աստուծոյ իբր ընծայս մատուցանեն՝ բաշխելովն աղքատաց» (Թէոփ․ 282)։

6․ – Մեծարանք։ — կոչնոցս հոգեւորականութիւնը կը պահանջէր արդարեւ կարեւոր տարբերութիւն մ՚ուրիշներէ։ Ս․ Սահակայ կանոնները կը պատուիրեն՝ որ հասարակաց բոլոր պատարագները պաշ-

տօնեայք եւ հաւատացեալք ուտեն «բազում մեծարանօք» (113)։ Մխ. Գոշ կը խրատէ քահանայից՝ այդ տեղ զգուշանալ շահադիտական ու փառասիրական ցոյցերէ. «Մի՛ յաւուրս ագապից, կ'ըսէ, յափշտակիցես զառաջին պատիւն՝ շահի վասն եւ մեծարանաց միանգամայն» (Խր. Պտր.), ուսկից յայտնի է՝ թէ առաջին տեղը բռնող քահանայն աւելի բաժին ունէր քան միւսները։

Ե—Զ դարերուն յարգանաց մասն համարուած էր անօթի կամ ծոմ երթալ այս հացին, եւ որ շատ խստութեամբ պատուիրուած է եկեղեցական կանոններէն։ Ս. Սահակայ ընծայուած կանոնները կը գրեն՝ որ եթէ մէկը կանխաւ իր տան մէջ ուտէ եւ ըմպէ, զգուշանայ մատաղի ճաշին երթալ, «զի մի՛ եղիցի դատապարտութիւն անձին եւ թշնամանք հոգեւոր տօնին». իսկ եթէ յանդգնի գալ, քահանայն եւ ընկերքը թող ներս չընդունին. «զի ատելի է եկեղեցւոյ այնպիսի անառակութիւն» (97)։ Նոյն պատուէրը կրկնեց յետոյ Աշտարակեցւոյն ժողովն ալ, յաւելլով՝ որ եթէ մէկը բռնի ներս մտնել ուզէ, քահանայք դուրս ելնեն եւ սեղանը չօրհնեն (Աշտ. ԻԴ)։ Կ'երեւի թէ այդպիսիք արդէն ծանրացած ստամոքսով, ագապի պահուն

կը զեղխէին, ինչպէս ակնարկեց Ման-
դակունին (տես, 322)։

7. – *Նիւթ մատաղի*։ — Ա. բոլոր ըն-
տանի ուտելի չորքոտանիք յարմար նիւ-
թեր էին այս կոչնոց, ինչպէս Հրէից մէջ
(Ղեւտ. ԻԲ, 19, 27)։ Այսոցմէ կը յիշէ
Մանդակունին խաշն կամ ոչխար, քօշ եւ
եզն (58)։ Տրդատ մատաղ ըրաւ «սպի-
տակ» զուարակաց, նոխազներու եւ գա-
ռանց բազմութիւն մը (Զեն. 48)։

Հոս հետաքրքրական է անասնոց սպի-
տակ գոյնը, որ շարունակութիւնն է մեր-
ձաւոր հայ եւ պարսիկ հեթանոսական
սովորութեան, զոր տեսանք Խոսրովու եւ
Յազկերտի օրինակաց մէջ (տես, 314)։
Զենոբայ խմբագրիչը՝ որ Տրդատայ կը
վերագրէ այս գունով մատաղներ, հաւա-
նական է թէ այդ գաղափարին կը մղուէր
դեռ իւր ժամանակ՝ այն է Է դարուն՝ տե-
ւող սովորութենէն, որ թէ տակաւին ո՛ր-
քան պահուեցաւ այնուհետեւ՝ յայտնի չէ։
Գիտենք՝ որ Հելլէնք ալ ծիսական խը-
տրութիւններ ունէին զոհից գոյներու մէջ
(Դար. Դ, 560–1)։

Դիտելի է՝ որ թէ սա վերոյիշեալ եւ
թէ յաջորդ գլխոց մէջ յիշելի անասունք՝
առ հասարակ արու են։ Եւ պիտի համո-
զուինք՝ թէ այս պատահական բան մը

չէ, երբ նկատենք որ Հրեայք ալ ուշ կը դնէին այդ հանգամանքին՝ զոհին տեսակին համեմատ (Ելք, ԺԲ, 5. Ղեւտ. Ա, 3, 10. Գ, 1, 6)։ Ցոյնք նոյն խորութիւնը կ'ընէին ըստ պարագային (Դար. Դ, 960)։ Եւ Ցազկերտի՝ ինչպէս նաեւ մեր Խոսրով Թագաւորի զոհերն ալ արու էին (աստ, 314)։ Բայց միջին դարուն այդ զանազանութիւնն այլ եւս չկայ։ «Թէ որձ է եւ թէ էգ՝ ոչ է խոտելի», կ'ըսէ Տարօնացին (Թէոփ. 279). եւ Շնորհալին զատկի գառին համար՝ թէ «արու կամ էգ անփոյթ եղեալ» է (Ընդհ. 155)։

Սակայն կայ ուրիշ հանգամանք մը՝ որ ամէն ժամանակ պինդ բռնուած է։ Այդ չորքոտանիք լինելու էին ընտիր տեսակէն եւ անարատ։ «Զգէրն եւ զուղիղն ի հօտից», կ'ըսէ Մանդակունին, մեզի չպահենք, եւ «զանօգուտն եւ զվտիտն» աղքատաց ընդունելութեան չնուիրենք (62)։ Տաթեւացին նոյնպէս կը պահանջէ «զընտիրն եւ զգէրն» (Հրց. 657)։ Անպիտանը նուիրողն աստուածային բարկութեան պիտի հանդիպէր (Մանդ. 57–8)։ Ցայտնի է՝ թէ այս զգուշութիւնը խստութեամբ կը պատուիրէր մովսիսական օրէնքն ալ (Ղեւտ. ԻԲ, 19–24)։

Նմանապէս պէտք էր որ արդար վաստակոց արդիւնք ըլլեր զենեալը, եւ ոչ թէ յափշտակութեան կամ գողութեան կամ զրպարտութեան կամ վաշխի, կամ բռնի գնուած կամ տառապեալները զրկելով. զի բոլոր ասոնք «պիղծ» կը համարուէին Աստուծոյ առջեւ (Մանդ. 58)։ Ալաւկայ որդին կը պատուիրէ՝ որ երբ այսպիսի նուէրներն իմացուին, բացօթեայ ձգուին՝ որպէս զի շներն ուտեն (Լթ)։

Սոյն վարդապետս կը զգացնէ նաեւ ապօրինութիւնն « անսուրբ կենդանեաց » զենման. այս ինքն է այն որ «զոհեալ է կամ հեղձուցիկ» (անդ), եւ կամ ուրիշ անարժան եղանակաւ պղծուած (Հթ)։ Մերժելի են ըստ Տաթեւացւոյն՝ մեռեալը, ըսպանեալը կամ գազանաբեկն ալ, ըստ որում անոնց արիւնը մարմնոյն մէջ մնացած է։ Գազանաբեկի անյարմարութիւնը կը յիշէ եւ Մխ. Գոշ (Առկ. 100)։ Տաթեւացին նոյն կարգին կը դնէ ծովայիններն ալ, ըստ որում անարիւն են (Հրց. 366)։ Բայց եթէ նկատենք՝ որ ցամաքային վայրենի անասունք եւս զոհելի կամ զենլի չէին ոչ Հրէից եւ ոչ մեր քով, կը հարկադրինք նիւթականէն աւելի բարոյական պատճառ մ'որոնել աղոր մէջ. այս ինքն՝ թէ ասոնք մարդուն սեպհական կամ քըր-

տամբ երեսաց շահուած ստացուածքը չլի-նելով, յարգ չունէին՝ Աստուծոյ ընծա-յուելու համար։ — Մեք այս պայման-ներն առնելու ենք մատաղի բոլոր տեսա-կաց համար։

Բ. Ազգալի յատուկ՝ միայն մսեղէնք չէին, այլ ուրիշ ուտելի եւ ըմպելի նիւ-թեր եւս, որոց կը պատահինք ամէն ժա-մանակ։ Մանդակունին Աստուծոյ նուիրաց մէջ կը թուէ «կալոյ եւ հնձանի» ար-դիւնքը, եւ անոցմէ լաւագոյնը կը պա-հանջէ, ինչպէս անասնոցը (57, 62)։ Ս. Սահակայ կանոնք կը յիշեն նոյնպէս «պը-տուղ յամենայն արմտեաց». եւ կ'ուզեն որ լինի «յառաջին արմտեաց, այս ինքն յընտրոցն, զի զեղծցին կալք ցորենոյ եւ խաղոյ» (111)։ Համաձայն էր այս մովսի-սական օրինաց պատուիրած «առաջին արմտեաց» (Ելք, ԻԳ, 19), որ Հայոց մէջ կը կոչուէին նաեւ «երախայրիք» (Բ Օր. ԺԸ, 1. Սահ. 128) կամ «նախան» (Սահ. 112). եւ էին մեր «նորեաց տօնին» խա-կական ընծայն (տես, 317)։

Այս կարգի նուիրատուութիւնք կը շա-րունակեն միշտ։ Տարօնացին կը կրկնէ՝ թէ իւր օրով դեռ «այս սովորութիւն է ազգիս Հայոց՝ զի յամենայն պտղոցն տան զպատարագս Աստուծոյ». այս ինքն է «ի

կալոյ, ի հնձանէ եւ ի ձիթոյ» (Թէոփ. 282)։ Ասոցմէ արմտիքն է որ Մաշտոցին մէջ «հատ պատարագի» կը կոչուի, սկըսեալ Վեննետկոյ ԺԱ դարու հնագոյն օրինակէն. եւ զոր նոյն «հատ» բառով կը յիշեն Մանդակունին (210) ու Խոսրով Անձեւացին եւս (Հյպտ. 290). եւ Տաթեւացին՝ «հատ պատարագի մարտիրոսաց» (Հրց. 362), յորում զգալի է այս ձօնին առիթն ալ։ Հրէիցմէ զատ՝ սոյն նիւթերէն աստուածոց կ'ընծայէին նաեւ Եգիպտացիք (Վիգ. Ե, 1312), Յոյնք եւ Հռովմայեցիք (Դար. Դ, 962-3. 973-4), եւ բոլոր ազգերը, սկսեալ նախամարդոյն անդրանկէն (Ծննդ. դ, 3)։

Հարկ չկար մսեղէնն ու միւսները միշտ միասին նուիրելու կամ ուտելու. անճոխք կընային լոկ արմտեօք ալ ճաշ տալ։ Ասոր համար յիշեալ Մաշտոցն յատուկ կանոն մ'ունի սեղանի օրհնութեան, զոր պիտի տեսնենք քիչ յետոյ, եւ յորում կը խնդրուի օրհնել «զհատս զայս եւ զգինիս», ու միս չկայ։ Մշակի մը տուած պարզուկ ագապը տեսնելու չե՞նք հոդ։

8. — Օրհնութիւն։ — Ա. Կը տարբերէր հասարակ սեղանօրհնէից կանոնէն՝ թէ մեր եւ թէ միւս քրիստոնէից քով (Կաբր. Ա, 834-5)։ Հայոց մէջ կրկին

էր, ինչպէս կը տեսնենք Զ դարէն իսկ՝ Աշտարակեցւոյն կանոնաց մէջ։ Ըստ ասոնց՝ սովոր էին մորթել յառաջ «զպատարագն... տանել յեկեղեցին՝ զի օրհնեսցի» (Ա). հոն կ՚օրհնուի միայն, բայց չի զենուիր, ինչպէս մատաղի միւս տեսակները կը լինէին։ Յետոյ քահանայք տուն կ՚երթային՝ օրհնելու համար սեղանն ալ, ուր պիտի ուտուէր մատաղը, ինչպէս տեսանք նոյն կանոններէն մեկին մէջ (տես, 319)։ Այս կրկին աղօթից հնագոյն ձեւերն եթէ տարբեր էին ծանօթներէն, անստոյգ կը մնան։ Բայց միջին դարուն ասոնց առաջինը կը կազմեն ըստ Շնորհալւոյն՝ «քահանայական աղօթքն եւ մարգարէից եւ առաքելոց եւ աւետարանչացն բանքն՝ զորս ընթեռնուն ի վերայ աղին, եւ խաչին դրոշմեն» (Ընդհ. 157), կերցընելու համար անասնոյն։ Այս կանոնն հաւանօրէն նոյն է տեառնական մատաղին վրայ կատարուածին հետ, զոր պիտի տեսնենք յետոյ. զի հին Մաշտոցն այս տեսակին յատուկ օրհնութիւն չունի։ Դարձեալ՝ Շնորհալւոյն բացատրութեան եւ զուգէ դիտաւորութեան մէջ ես կայ՝ ամբողջ օրհնութիւնն «ի վերայ աղին» միայն կատարել տալ՝ եւ ոչ անասնոյն ալ, ինչպէս կը սահմանէ մաշտոցը տեառնականին եւ հոգեհանգստեան կանոնաց մէջ։

Ուրիշ պարագայ մը կայ Աշտարակեցւոյն կանոնաց մէջ։ «Ձեռնադրութիւն ոք արջառոց մի՛ իշխեսցէ առնել», կ'ըսէ նա (ԻԷ)։ Հին ժամանակ հիւանդաց ու դիւահարաց վրայ ձեռք կը դնէին բժշկելու համար։ Պիտի տեսնենք մեք դիւաց ներգործութիւնը նաեւ կերակրոց վրայ՝ գործիս վերջին մասին մէջ։ Կը հետեւի ուրեմն՝ որ այդ ձեռնադրութեան նպատակն էր դիւական ախտերն եւ անսրբութիւնքը հալածել անասնոյն միջէն։ Եւ «արջառոց» կ'ըսէ՝ ցուցնելու համար զենլին իսկ, որպէս զի որ եւ է հիւանդ անասնոյ մասին չհասկանանք։ — Անսովոր ու բռնազբօս է Հ. Ջամչեանի սոյն «ձեռնադրութեան» տուած մեկնութիւնը՝ թէ «Քահանայք մի՛ իշխեսցեն երթալ եւ ընտրել ըստ հաճոյս իւրեանց զարջառ վասն ողորմութեան նուիրաց» (Ջմչ. Բ, 238)։

Բ. Իսկ տան պաշտօնն էր «Աւրհնութիւն սեղանոյ տեառնականի եւ պատարագի՝» զոր ունի վերոյիշեալ հին Մաշտոցը, կատարելի ուտելէ յառաջ՝ փոխան սովորական սեղանօրհնէից։ Եւ ոլովհետեւ իւր բովանդակութեամբ աւելի հոգեհանգըստեան յատուկ կը թուի, անոր նկարագրին մէջ պիտի տեսնենք զայս. թէպէտ յայտնի է՝ որ մի միայն լինելով, պարզ

մատաղի սեղանին ալ նոյնը կը պաշտուէր։

Գ. Բայց բուն տեղն է յիշելու «Աւրհնութիւն հատի պատարագի», ծանօթ Անձեւացւոյն (Հյպտ. 290), զոր վերոյիշեալ հին Մաշտոցն յառաջ կը բերէ այդ վերնագրով. եւ զոր մեր մատենադարանի ուրիշ օրինակ մը, գրուած ի Սիս 1345ին, կը կարդայ՝ «Աւրհնութիւն հատի մարտիրոսաց», համաձայն այն օրերու յիշատակին՝ յորս կը մատուցուէր այս նուէրը (տես, 316–7)։ Օրհնութիւնս միակ աղօթք մ'է համառօտ, որ կը պաշտուի կերակրոյ սեղանին առջեւ իսկ, որոյ վրայ եփուած ու դրուած է հատը, ինչպէս կ'ակնարկուի աղօթքին մէջ՝ որ ըստ կարեւոր մասին հետեւեալն է, ԺԱ դարու Մաշտոցին համեմատ. «Աւրհնեալ ես Տր. Ած. արարիչ ամենայն արարածոց... առաքեայ զշնորհս հոգոյդ սրբոյ ի վերայ սեղանոյս այսորիկ՝ որ առաջի եդեալս կա(յ), եւ աւրհնեա զհատս զայս եւ զգինիս, զի որք կերիցեն եւ արբցեն ի սմանէ, եղիցի նոցա ի սրբութիւն եւ ի քաւութիւն մեղաց, ի կենդանութիւն եւ ի փրկութիւն անձանց, բարեխաւսութեամբ ամենայն սրբոց վկայից քոց, եւ արժանաւորեայ» եւ այլն։

9. — Պայմանք զենման։ — Տաթեւացին հետեւեալ հետաքրքրական պայմանները կ'աւանդէ մորթելու համար, որոնք չեմ կարծեր՝ թէ վարդապետիս սովորական քմածին գիւտերէն լինին՝ քան թէ ժամանակի համոզմանց ու բարուց արդիւնք։

Պէտք է, կ'ըսէ, որ մորթողը լինի «արու, աշխարհական եւ հաւատացեալ»։ հետեւաբար, կը յարէ նա, կինը, ներքինացեալը, անհաւատը[1], արիւնահեղն ու կարգաւորը չեն կարող մորթել, «զի պիղծ է զենն նոցա». ըստ որում կինն ու ներքինին անկատար մարդիկ են ըստ իրեն, միւսներն անարժան, եւ եկեղեցականին անպատեհ է արիւն թափել։ — Զենլի անասունը «կենդանի» լինելու է, եւ ոչ մեռած։ — Պէտք է որ ելնէ արիւնն ու շունչը, եւ բնական կենդանութիւնը՝ որ է ջերմութիւնը. այնպէս որ չպաղած՝ «ոչ է ուտելի»։ — Զէնքը լինելու է «սուր երկաթոյ, եւ ոչ այլ ինչ գործի». զուցէ անոր համար որ միւսները չէին կարող սրոյ չափ քամել արիւնը։ — Անասնոյն գլուխը հարկ է անջատել մարմնէն, որով

1. Հրէից եւս արգելուած էր «ի ձեռանէ այլազգւոյն» առնուլ զոհելի անասուն (Ղեւտ. իբ, 25)։

միայն կը լինէր կատարեալ զենումն: — Վերջապէս կանխաւ դիտաւորութիւն եւ նպատակ ունելու է մատաղին: Այս պայմաններէն եթէ բան մը պակաս է, «պիղծ է, կ'ըսէ, եւ խոտան, եւ ոչ է ուտելի զենեալն» (Հրց. 365): — Դիտելի է եւ այս՝ որ զենումը պիտի կատարուի «դէպ յարեւելս» եւ «յանուն սրբոյ Երրորդութեանն» (անդ, 366). պարագայ մը՝ որ այլուստ անծանօթ է ինձ եւ չափազանց այս առթիս մէջ:

10. — *Եփելու ձեւ:* — Նոյն վարդապետը կ'աւանդէ՝ թէ մատաղն «ի հուր խորովեալ ողջակիզեմք» (անդ, 657): Միակ եղանակն է այս՝ որով կ'եփէին զատկական գառն ալ, ինչպէս պիտի տեսնենք, եւ որ կը ծագէր հրէական զատկի ոչխարին «խորովելէն» (Ելք, ԺԲ, 8):

Տաթեւացին կը յարէ՝ թէ յետ այսպէս եփելու՝ «զիւղ անոյշ մատուցանեմք» (Հրց. 657). այս ինքն կը ցանէին մսին վրայ. առնուած հաւանօրէն հրէականէն, որ նաշհոյ եւ կամ արմտեաց «զոհին» վրայ կը պատուիրէր իւղ եւ կնդրուկ դնել (Ղեւտ. Բ, 1, 15): Սուտն Յովհան դամասկացին եւս, զոր ես դատելով իւր «առ Հայս պատասխանեաց» բովանդակութենէն՝ ԺԱ դարու գրիչ կը համարիմ, կը

յիշէ մեր այդ օծումը, բայց դեռ չմորթած. «Օծանեն իւղով, կ'ըսէ, զանդամս նոցա (անասնոց), եւ այնպէս զենեալ ուտեն» (Լոյս, 1905, էջ 1114)։

Բայց զենման կը յաջորդէր նախ վերոյիշեալ սեղանի օրհնութիւնը, յետ որոյ՝ կ'ըսէ Տաթեւոյ վանականը՝ «կերակրիմք ի նմանէ» (Հրց. 657)։

11. – Բաժին փառաց եւ քահանայից։
— Հին օրէնքը սահմանած էր՝ որ Ղեւտացիք յատուկ կալուած չունենային, եւ կերակրէին տաճարի պատարագներէն (Բ Օր. ԺԸ, 1–5)։ Նոյնը սովորական էր բոլոր հին կրօններու պաշտօնէից։ Հայ քըրմերն ալ կը սնանէին «ի զոհից եւ ի պտղոց» (Սահ. 129). որոնք երբ Լուսաւորչին յայտնեցին՝ թէ քրիստոնեայ լինելով, ընտանեօք անօթի պիտի մնային, նա ապահովեց անոնց վիճակը «սուրբ պատարագացն երախայրեօք եւ այլովք ընծայեալք պտղովք» (անդ, 127–32)։

Այդ նուիրաց ամէն ժամանակ մասնակից եղած են քրիստոնեայ Հայաստանի ժառանգաւորք ալ. ասոնց եւս՝ ինչպէս Ղեւտացւոց՝ սահմանուած էին եկեղեցական օրինօք որոշ մասունք մատաղներէ եւ ուրիշ պարգեւներէ, — բաց ի բուն ագապէն՝ ուսկից պիտի ուտէին միայն, ա-

*ռանց յատուկ բաժին առնելու* (ատ, 313)։ *— Ս. Սահակայ կանոնք քահանայից կը յատկացնեն Վարդավառի մատաղներեաց ամբողջ «պտուղը». այս ինքն «յամենայն արմտեաց քոռ քոռ»* (111)։ *Նոյնպէս քահանայից էին Զատկի շաբաթու եւ կիւրակէի, Երկրորդ զատկի եւ յաջորդ բոլով կիւրակէից ու Վերափոխման արմըտեաց հասոյթը* (113–4)։

*Իսկ նոյն օրերուն կատարուած «պատարագք՝ որ մասնականաւ են», այս ինքն որոց հասը բաժանելի էր քահանայից ու մենաստանաց միջեւ, կաշոյն կէսն ու ճրագուին երկու մասունքը վանուց թողլով՝ ի նպաստ ժամերգութեան ու կանթեղ վառելու, մէկ մասը քահանայից կու տայ լուցման համար։ Եւ եթէ մատաղն ոչխար էր, ասոնց պիտի տրուէր դմակն անդամովը, ճրագուն, խախացոցն ու մորթը* (114)։ *Նմանապէս այն «ազապն որ մասնականաւ է», կ՚ուզէ որ կաշոյն կէսն ու ճրագուին երկու մասունքը վանքն երթան, եւ քահանայից տրուի բովանդակը. իսկ ոչխարէն՝ յիշեալ անդամները։ Դարձեալ մասն հանուելու էր քահանայից տան մէջ բնակող պանդխտաց եւ անոնց եղբարց ալ* (112–3)։

Իսկ Յայտնութեան եւ անոր քառասնից, Տեառնընդառաջի, Առաջաւորաց աւարտման, Աղուհացից միջնոց, Ղազարու, Աւագ հինգշաբաթու, Զատկի երկշաբաթու եւ Համբարձման տօներուն համար կը սահմանէ՝ որ «ի վանս ուխտաւորեալ տեղիսն երթիցէ ճախաճճ հանապազ», որպէս զի տեղւոյն պաշտօնեայք եւ հիւրերն ուտեն (111–2)։ Կային նաեւ «պատարագք ճասարակաց», ուսկից ի միասին պիտի վայելէին քահանայք ու վանականք, առանց յատուկ բաժիններ առնելու (113)։ Այսպէս նաեւ Բարեկենդանի, Ծաղկազարդի, Առաքելոց ու Մարգարէից տօներու կամաւոր մատաղներն «հասարակաց» կը թողու (114)։ Նմանապէս Նորեաց տօնին ճաշն (ատ, 317) «առ հասարակ կերիցեն, կ'ըսէ, ամենայն պաշտօնեայք» առանց զանազանութեան (113)։

Տարբեր բաժանում մը կը գտնենք Աշտարակեցւոյն կանոնաց մէջ։ Հոն գլխաւոր քահանայք մատաղէն պիտի առնուն երկուք ու կէս մասն, եւ միւս քահանայք՝ երկու երկու. սարկաւագունք՝ մէկ ու կէս, եւ դպիրք ու պարկեշտ այրիները մի մի մասն (ժԳ)։ — Նոյն կանոնք աւելի հետաքրքրականը կ'աւանդեն. մատաղի անասունք երբեմն ողջ ողջ կ'երթային քա-

*հանային տունն իբր բաժին. «Զարջառս եւ զոչխարս, կ'ըսէ, քահանայքն ի տունս իւրեանց կենդանի մի՛ իշխեսցեն առնուլ. ապահութիւն է». եւ ժողովրդեան կը պատուիրէ մորթել զանոնք օրհնութեամբ իրենց տներու մէջ ըստ կարգի (ԻԹ):*

*Ուրիշ գեղծում մ'ալ կար նոյն Զ դարուն: Հասառուաց անյագութիւնն հոն հասած էր, որ ժողովրդեան տներն իրենց մէջ բաժնած էին, եւ իւրաքանչիւրն իրեն պատկանած տան մատաղաբաժինն ինք միայն կ'ուզէր առնուլ: Ասոր համար կ'արգելուին ժողովրդեան՝ անասունը նոյն իսկ եկեղեցի տանիլ օրհնուելու, որ մի՛ գուցէ ուրիշներ ալ տիրանային: Եւ «ի նոյն ինքն յեկեղեցւոջ կռուին եւ խոցոտմունս միմեանց առնեն, զոր մեք իսկ տեսաք», կ'ըսէ Դունայ ժողովը (Աշտ. Ա), հոգեւոր կոչունքն այդպէս աւազակային խնճոյից վերածելով:*

*Ժամանակներն ու բարքերը կը փոխուին: Հին դարերու առատ նուիրատուութեանց ակնարկելով Շնորհալին, կ'ըսէ՝ թէ «խափանեալ է յայժմուս յաղքատութենէ եւ ի ժլատութենէ տուողացն». եւ թէ իւր օրով քահանայից բաժին մնացած էր «երի եւ մորթի» միայն (Ընդհ. 155): Վրաց Եպիփան կաթողիկոսն 1218ին Ան-*

ւոյ մէջ թողած իւր արձանագրութեամբ կը հաստատէ զայդ, պատուիրելով քաղաքին քահանայից՝ կովուն մորթէն, զոր ամբողջութեամբ կ'առնուին, այնուհետեւ «մի մի շերտ» ստանալ (Արրտ. 1911, էջ 665)։

Իսկ Տաթեւացին ուրիշ բաժանում մը կը դնէ, եպիսկոպոսին սեպհականելով անասնոյն կուրծքը. տաներիցուն՝ աջակողմեան երին. եւ միւս քահանայից՝ սիրտը, երիկամունքն ու լերդաբոյծը ճարպով, մորթը, ոտներն ու գլուխը (Հրց. 367)։ Եւ այս անդամահատութեան մէջ ուղղակի ազդուած է մովսիսական օրէնքէն (Ելք, ԻԹ, 22. Ղեւտ. Է, 32-4)։



Բ. ՏԵԱՌՆԱԿԱՆ

1. — *Կոչումն ու սահման։* — Յատուկ կոչումն էր այս այն մատաղին, զոր մէկն յաջողութեան մը կամ որ եւ է բարի վախճանով կանխաւ կը խոստանար կամ կ'ուխտէր Աստուծոյ կատարել, եւ աղով անհրաժեշտ պարտականութիւն մը յանձն

*կ՚առնուր ընելու այդ նուէրը. որով կը տարբերէր գոհութեան կամ ողորմութեան ինքնաշարժ մատաղներէն՝ զոր տեսանք։ Այս անունն ու սահման յայտնի են՝ մեզ ծանօթ ԺԱ դարու Մաշտոցէն, որ ունի առանձին «Կանոն տեառնական աւրհնելոյ։ Ածեն զխոստացեալն» եւն։ Շնորհալին մի եւ նոյն ոճով կը բացատրէ զայն. «Խոստացեալն Աստուծոյ՝ զոր տեառնական կոչեն» (Ընդհ.* 160)*. Նոյնպէս Որբելեանի քով եւս (Հկճ. Ժ), մինչ Տարօնացին հոմանշով «տէրունական» կ՚անուանէ (Թէոփ.* 266)*։ Իսկ իմաստն է՝ ուղղակի Տեառն խոստացուած ու ձօնելի։*

*Այդ շրջանէն աւելի կանուխ չեմ հանդիպած կոչմանս. բայց նիւթը շատ հին է, քրիստոնէութենէն ալ հին։ Ունէին զայն Հելլէնք (Դար. Դ,* 956)*, Հրեայք (Ղեւտ. Է,* 16 *եւն) եւ ուրիշներ։ Եւ մեր քով կը պատահինք անոր Ե դարէն իսկ՝ տարբեր բառերով։ Վահան ի Վաղարշապատ կ՚երթայ կատարելու «զուխտս պատարագաց» (Փրպ.* 430)*. եւ յաղթանակներէն վերջ նոյնպէս կը կատարէ «զսովորական ուխտս եւ զպատարագս» (Նոյն,* 479)*։ Ս. Սահակայ կանոնք կը յիշատակեն՝ ի մէջ այլոց՝ եւ «զամենայն ընծայս ուխտից»* (98)*։*

2. – *Կարեւորութիւնը։* — Շատ ծանր էր այս մասողը. զայս խոստացողն անվրէպ կատարելու էր ըսինք. այնպէս որ զանցառութիւնը հաւասար կը համարուէր երդմնազանցութեան, որ շատ մեծ յանցանք էր, ինչպէս այլուր ցուցած եմ (Երդ. 86–90)։ Մանդակունին կը կշտամբէ այն ուխտաւորները, որ «անցին զուխտիւն եւ ստեցին, եւ զդաշինս երդմանն արհամարհեցին» (161)։ Ալաւկայ որդին կը յորդորէ անոր արագ կատարումն՝ որպէս զի մի՛ զուցէ անակնկալ պատահարով մը խափանուի. զի զանցառուն «կըցորդ ուրացողացն է», կ'ըսէ (ՁԸ)։ Մխ. Գոշ կը պատուիրէ զգուշութեամբ ուխտել եւ ուխտը կատարել, որպէս զի «ուխտազանց» չլինի. «ապա թէ ի նեղութեան ուխտեցեր, փութա կատարել», կ'ըսէ (Խր. ոգ.)։ Նոյն խստութեամբ կը խօսին մեր ուրիշ վարդապետներն ալ։

3. – *Ցատուկ օրեր։* — Ի հնուց կային տեսանականի առանձին օրեր. ինչպէս Կարապետի մեծ տօնը՝ սահմանուած Լուսաւորչէն, Աշխարհամատրանը, եւ «շաբաթք եւ պահք եւ ծոմք», որոնք «ուխտից են կատարմունք» (Սահ. 110–1)։ Բայց աղոնք միայնակ եւ կամ անփոփոխ չմնացին միշտ, այլ երթալով բազմացան.

*որով Տաթեւացւոյն ծանօթ է «տեառնականն զատկի եւ տէրունական տօնից» (Հրց. 362)։ Կային եւ հաւատացեալք, որ առանձին պաշտօնասիրութեամբ մ'այս կամ այն սրբոյն, անոնց յիշատակին կը թողուին իրենք տեառնականը. այսպէս Ատոմ Նահատակն ուխտած էր՝ Ս. Գէորգայ տօնին օրը նոխազ մը պատարագ մատուցանել (Յհ. կթղ. 157)։*

4. — *Վայրը։ — Յայտնի տեսանք՝ որ տեառնականը շատ աւելի կրօնական կնիք ունէր քան պարզ ագապները. ասոր համար կը կատարուէր սրբազան վայրերու մէջ, եւ առաւելապէս մենաստանաց, գէթ հին ժամանակ։ Ս. Սահակայ կանոնք թըւելով բոլոր տեառնականները, կ'ըսեն՝ թէ որովհետեւ «ուխտք են՝ ի վանս կատարեսցին», որպէս զի անոնց բնակիչները, որ «ուխտաւորեալ են», շնորհիւ ուխտին կերակրուին* (111)։

*Բայց կը զենուին նաեւ ուրիշ ականաւոր ուխտավայրից մէջ՝ որ վանք չէին, կամ հարկ չկար որ լինէին. այսպէս տեսանք վերեւ՝ որ Վահանեանք իրենց ուխտականքը կը նուիրէին Վաղարշապատու կաթողիկէին մէջ, «ի տան Աստուծոյ եւ ի վկայարանս Նահատակեալ կուսանացն»* (Փրպ. 430, '79)։ — *Իսկ ըստ երիցա-*

գոյն Մաշտոցին՝ կրնար կատարուիլ նոյն իսկ «ի դուռն եկեղեցւոյն», որ հասկանալի է գիւղին կամ քաղաքին, եւ ոչ թէ վանուց։ Հին սովորոյթք այս տեղ այլափոխուած են, եւ վանքերու իրաւունքը ակարացած՝ քահանայից շահադէտ պայքարին երեսէն, որոյ սկիզբը շատ հին է (Սահ. 100)։

5. – *Օրհնութիւն*։ — Մասամբ նման, եւ ուրիշ մասամբ մեծապէս կը տարբերէր սովորական մատաղի արարողութենէն, ունենալով տարօրինակ ու հնաւանդ նկարագիր մը՝ զոր կը տեսնենք միջնադարեան մատենագրաց քով։ Ասոնց մէջ երիցագոյնն է ԺԱ դարու Մաշտոցը, որ այսպէս կը նկարագրէ զայն։

Ա. Խոստացեալը կը բերեն «ի դուռն եկեղեցւոյն», որ է գաւիթը, ինչպէս կը կոչէին. եւ «առաջի խաչին», որ միշտ մնայուն էր հոն գաւթին մէջ, անասնոյն վրայ կը դնեն, կ'ըսէ, «կարմիր (ճարօտ[1]) եւ թամբակ», ու կը ծածկեն «կարմիր հանդերձիւք» կամ ծածկոյթներով։ Այս խրատը, կրկնուած նաեւ յաջորդ օրինակներէն ոմանցմէ, ինչպէս 1216ի, 1386ի եւն (Վենետկոյ), Շնորհալին կը պարզէ

1. Փակագծեալը Վենետկոյ 1216ի մաշտոցէն է։

այսպէս. «կարմիր արկանելով ծածկել զանասունն, եւ յեղջիւրսն նարօտ» կապել (Ընդհ. 160)։ Կոնիբէր՝ պարխեան 1331ի մաշտոցին մէջ կը կարդայ նաեւ «կարմիր եւ թուղթ» (Ծխս. 5), որոց երկրորդը կրնայ պահպանակ գիր մը լինել՝ շատ ծանօթ մեր մէջ (Երգ. 243)։ Ռուսն Յովհ. դամասկացի իւր հակառակորդի աչերով աւելի մանր կը տեսնէ ու կը նկարագրէ այդ պաճուճանքը։ Կը բերեն, կ՚ըսէ, արջառներ կամ ոչխարներ, ու կը զարդարեն՝ անոնց եղջերաց կապելով ներկուած «կարմիր եւ սպիտակ թուղթս»։ Եւ նոր պարագայ մը, եղջիւրներէն կը կախեն «միրգս զանազանս», եւ եղջերաց միջեւ կը զետեղեն «մոմեղէնս» (Լոյս, 1905, էջ 1114)։

Շնորհալին կ՚ուզէ՝ որ Մաշտոցին հրահանգը նորամուտ լինի «ի տգէտ քահանայից», եւ թէ «ըստ հնոյն օրինի» էր այդ ծէսը (Ընդհ. 160)։ Բայց ես կը զանազանեմ։ Մաշտոցին գրութիւնը կրնայ արդարեւ եկամուտ լինել, սակայն ոչ եւ սովորոյթը մեր եկեղեցւոյ մէջ, որ շատ հին է՛ եւ նոյն իսկ հեթանոսական ծագումն ունի։ Զայս կ՚ըսեմ, զի դեւտական զոհերը չունէին այդպիսի պճնում մը։ Արդարեւ վեր կ՚ելնենք մինչեւ Տրդատայ հայրը՝

դիցապաշտն խոսքով, եւ կը տեսնենք որ սա եւս իր զոհելի անասունքը կը սքողէ «ոսկեղէն եւ արծաթեղէն զարդուք», այս ինքն այդպիսի հիւսուածներով, որոնք կ'աւարտէին «ի վերջաւորս փողփողելս». Նոյնպէս եւ «նշանակապ պալարակապ մետաքսիւքն եւ ոսկովք պսակօք» (Ագթ. 34), որոց վերջինդ հարկաւ կ'անցնէին եղջերաց շուրջ[1]։ Եւ թէ այս, թէ վերոյիշեալ միրգերը կը նշանակէին մայր երկրի բարեբերութիւնը. ըստ որում մեր հեթանոս նախնիք «պսակս եւ թաւ ոստս ծառոց» կը նուիրէին նաեւ Անահտայ, «որով կեայ, կ'ըսէին, եւ զկենդանութիւն կրէ երկիրս Հայոց» (նոյն, 49, 61)։ Ակից է ուրեմն տեառնականի պճնումը, ինչպէս կը համարի եւ Շնորհալին՝ «ըստ հնոյն օրինի» բացատրութեամբ։ Գիտենք որ Հելլէնք ալ կը զարդարէին զոհելի կենդանին պսակներով ու ժապաւինօք, եւ ցուլերու՝ կովերու եղջիւրները կ'ոսկեզօծէին (Դար. Դ, 964)։ Եւ ինքս հին Հռով-

1. Այդպէս կ'իմանամ ես Ագաթանգեղոսի խօսքերդ, զոր Հ. Ալիշան մեհենաց սեպհական զարդերու կը վերագրէ (Հին հաւ. 457)։ Բայց դիտելի է՝ որ պատմիչն յետոյ կը յարէ արդէն տաճարի զարդարանքներն ալ. եւ «պալարակապ» բառը կը յիշեցնէ մանաւանդ անասնոց յատուկ զարդ մը, ծանօթ «պալարակապ երիվարօք» օրինակին մէջ (Ես. ԿԶ, 20)։

մայ Որգոստային (Foro Romano) փլատակաց մէջ տեսած եմ քանդակ մը զոհելի անասնոց, որոց վրայ ձգուած է ուրարի նմանող լայն եւ հիւսկէն ժապաւէն մը։ Այդ ձեւն յառաջ կը բերէ եւ Դարեմբերգ (Դ, 975)։ Ուրիշ քանդակաց մէջ եւս կը տեսնուին եզներ, իրենց գլխին մետաղեայ զարդերով կամ ծաղկեայ պըսակներով (անդ, 975–6)։

Բ. Մատաղի չորքոտանին զարդարուելէ վերջ՝ կը կատարուէր հետագայ պաշտօնը, համաձայն հնագոյն Մաշտոցին եւ այլոց, « ի դրան եկեղեցւոյն »։ Կ'ըսէին նախ «ի թիւ՝» ԼԱ, ԼԳ եւ Ծ սաղմոսները։ Յետոյ սրկ. «Խնդրեսցուք հաւատով». եւ քհն. «Աւրհնութիւն եւ փառս»։ Դարձեալ սղմ. ժԹ, եւ ընթերցուածք՝ զորս գլխով միայն կը նշանակեմ. Ղեւտ. Ա, 1–17. Բ Թագ. Ձ, 17–19. Ես. ԾԶ, 6–7. Եբր. ժԳ, 10–16. Ալել. սղմ. ԽԸ. Ղկ. ժԴ, 12–15։ Ապա քրզ. «Վասն ի վերուստ», որուն կը յաջորդէ երկար աղօթք մը, «Ամենակալ Ած. փառաւորեալ», յորում նախ ցոյց կու տայ մատաղիս էութիւնը կամ վախճանն՝ ըսելով. «Ընգալ Տր. Ած. մեր զնուէր խոստմանս մերոյ՝ զոր խոստացաք քեզ ի նեղութեան մերոյ, յորում աղաչեցաք առ քեզ եւ փրկե-

ցեր զմեզ»: Ապա կը յարէ անոր արգա֊
սիքը. «Եւ պարգեւեայ զթողութիւն մե֊
ղաց. անեցոյ զհաւտս եւ զանդեայս եւ զա֊
մենայն ինչս եւ ստացուածս ծառայից
քոց», եւ այլն:

Գ. Մաշտոցին այդ կանոնին կից կայ
նաեւ «Աւրհնութիւն աղի», յիշուած Ան֊
ձեւացիէն (Հյպտ.290), Շնորհալիէն (Ընդհ.
160) եւ յայլոց եւս, որոյ թարգմանիչ
կը դնէ Որբելեանն զՍ. Սահակ եւ Մես֊
րոպ (Հկճ. ժ): Բովանդակութիւնն է սղմ.
ԿԶ, ու կարճ աղօթք մը, «Աւրհնեալ ես
Տր. Ած. արարիչ», որով կը խնդրուի
աստուածային օրհնութիւնն աղին վրայ,
«զի յամենայն ինչ յոր եւ խառնեսցի
սա, եղիցի մեզ ի սրբութիւն քաւութեան
եւ ի թողութիւն մեղաց»: Եւ կը կերցը֊
նէին զայն անասնոյն (Ընդհ. 160):

Շատ հին է սովորութիւնս, զոր արդէն
նշմարեցինք Յունաց ու Հրէից մէջ եւս
(աստ, 170): Ես կը համարիմ՝ թէ մեք
հրէականէն առած ենք: Խորենացւոյն ըն֊
ծայուած ճառի մը մէջ կը գտնենք յիշա֊
տակն «առաքելաշհրաման նորընծայ պա֊
տարագաց աղին օրհնութեան» (Խոր. 336):
Բայց առաքելականութիւնդ ենթադրական
է. այնպէս որ Յհ. Իմաստասէրը Լուսա֊
ւորչին կ'ընծայէ օրհնած աղի այս գոր֊

ծածութիւնը (Օձն. 25). եւ Տարօնացին՝ Հռովմայ եկեղեցիէն ընդունած կը համարի (Թէոփ. 306)։ Իսկ որովհետեւ պատմական մթութեանց մէջ մեր Հարց երեւակայութիւնը սահման չունի, Կիրակոս կը կարծէ՝ թէ Գրիգոր ու Սեղբեստրոս «աղ օրհնեցին» ի Հռովմ, եւ խառնեցին խաչանց զենման մէջ (7). զոր Որբէլեանն ալ կ'ընդունի, համարելով զանոնք նորոգիչ նոյն օրհնութեան, եւ զՅակոբոս տեառնեղբայրն՝ առաջին հիմնադիր (Հկճ. ծ)։ Տաթեւացին տեղ մը Լուսաւորչին կ'երեւակայէ աղին հաստատութիւնը, եւ ուրիշ տեղ մը՝ Երուսաղեմի Յուստոս եպիսկոպոսին (Հրց. 657, '58–9). նշան՝ թէ ինքն ալ ապահով չէր ըսածին։ Սակայն աւելի դրականն է անոր գոյութիւնը մեր մէջ Ը դարուն, — չհաշուելով Խորենացւոյն ընծայուած ճառն՝ որոյ թուականն անստոյգ է, — ուր Օձնեցին կը պատուիրէ «զաղն օրհնութեան յագապացն զենմունս խառնել» (25)։

Շնորհալին աղին խորհուրդն ալ կը բացատրէ հետեւեալ կերպով։ Աղը, կ'ըսէ, «մաքրութեան օրինակ» է, ինչպէս Քրիստոս աշակերտաց ըսաւ՝ թէ «Դուք էք աղ երկրի»։ Նախամարդոյն մեղօք երկիրս անիծուելով, անոր վրայ գտուածներն ալ

«անմաքուր» եղան։ Ասոր համար մեք եւս «բանիւն Աստուծոյ զօրս ընթեռնումք, եւ սուրբ անուան նորա յիշմամբ եւ խաչին դրոշմամբ» կը սրբենք աղը եւ կու տանք կենդանւոյն, որպէս զի ուտելով մաքրուի «ի վերջնոյ անիծիցն», եւ արժանի նուէր դառնայ Աստուծոյ (Ընդհ. 161)։ Այս բարեքիկ մեկնութիւնս սակայն չի ժխտեր ային հրէական ծագումը մեր մէջ։

6. — Եփումն։ — Այսուհետեւ կը մորթէին անասունն ու կ'եփէին։ Տրուղեան ժողովը, որ կատարուեցաւ ի Կ. Պոլիս 692ին, իւր ԻԹ կանոնն ուղղած է Հայոց դէմ, որոնք՝ կ'ըսէ՝ «սուրբ սեղանոց վրայ եփելով մսեղեաց անդամները, հրէաբար մասեր կը նուիրեն քահանայից»։ Մեր հարց վերագրուած այս սովորոյթը սակայն յիշուած չէ բնաւ այլուր. եւ դըժուարին է ընդունիլ՝ թէ մեր նախնիք կրակ վառէին Պատարագի սեղանին վրայ եւ աղօթավայրը լեցնէին ծխով ու ճենճերով։ Հայ եկեղեցւոյն յօրինուածն ինքնին անյարմար էր այդ գործին։ Հաւանական է՝ թէ ժողովը թելադրուած է հակառակորդաց խեղաթիւր լեզուէն, որոնք շարժած կը թուին մատաղին ս. սեղանին վրայ դրուելէն. սովորութիւն՝ որուն կ'ակնարկէ Մխիթար, ըսելով պատարագեալ

*աղաւնոյն համար՝ թէ «ի տէրունի սեղանն իջէ» (Գոշ՝ Առկ. 99). եւ որ ուղղակի առ Աստուած նուիրման ձեւ մը կը թուի, ինչպէս հին զոհերն ալ սեղանի վրայ կ'այրէին։*

7. — *Օրհնութիւն սեղանոյ։* — *Տեառնականին յատուկ, այս ինքն իւր գաղափարին իսկապէս համաձայն սեղանօրհնէք մը չկար նախնեաց մէջ։ Անոր համար հոգեհանգստեան սեպհական կանոնը հոս ալ կը պաշտէին, ինչպէս յայտնի է երիցագոյն Մաշտոցին մէջ աղօր վերնագրէն. «Աւրհնութիւն սեղանոյ տեառնականի եւ պատարագի». եւ զոր տեսնելու ենք իւր ընիկ տեղւոյն մէջ։*

8. — *Ճաշակումն։* — *Այսուհետեւ հոն սրբայրին մօտ իսկ, բացօթեայ կամ ընդ յարկաւ ըստ օդին, եւ ափ յափոյ պատրաստուած սեղաններու շուրջը «բազմեցուցեալ դաս դաս զբազմութիւն մարդկանն՝» որ ուխտի եկած էին, կը բաշխէին անոնց մատաղէն, ինչպէս ըրաւ Վարդ ռշտունի Վարագայ ուխտին մէջ (Հյպտ. 231), թէ մսեղէն լինէր անոր նիւթը, եւ թէ ընդեղէն՝ ինչպէս հասկանալու ենք «պահոց եւ ծոմոց ուխտերը» Սահակայ կանոնաց մէջ (111)։*

*Շնորհալին կը յիշեցնէ՝ թէ այս մատաղէն եւս բաժին պիտի հանուէր քահանայից տան համար, հարկաւ այն սահմանին համեմատ՝ զոր մանրամասնօրէն տեսանք նախնաբար* (335)*. եւ միւսը՝ կ'ըսէ՝ աղքատաց ու կարօտելոց բաշխել «առանց ակնառութեան», որպէս զի Աստուծոյ հաճոյ լինի* (*Ընդհ.* 160)*։ Բացատրութիւնս «առանց ակնառութեան՝» ցոյց կու տայ, թէ ինչպէս սրբավայրին մէջ անգամ սպրդած էր խտրական ոգին՝ զոր նկատեցինք առտնին ագապներու մէջ* (*տես*, 321)*։*



## Գ. ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

1. — *Կոչումն ու սահմանն։* — *Ննջեցեալ հոգւոց հանգստեան համար տրուած ագապն է այս, որոյ ամենէն աւելի յայտարար անունն էր հոգեհանգիստը։ Ասոր կը պատահինք նոյն ինքն Մաշտոցին մէջ, սկսեալ ԺԱ դարու օրինակէն, յորում կը կարդանք. «Կանոն ոգեհանգիստ առնելոյ կամ յիշատակ մեռելոյ». եւ ըստ* 1345*ի*

եւ 1386ի օրինակաց Վենետկոյ՝ «կանոն հոգեհանգիստ առնել կամ պատարագ մեռելոյ»։ Ասոցմէ «հոգեհանգիստ» կոչումը կը գտնենք նաեւ Շնորհալւոյն (Ընդհ. 156), Որբելեանի (361) եւ Տաթեւացւոյն քով (Հրց. 362)։ Իսկ հին ու նոր մատենագիրքը փոխանակ ասոր կը գործածեն ուրիշ հոմանիշեր. Մանդակունին (179) եւ Եղիշէ (288-92) յիշատակ կ՚ըսեն. Պարտաւայ ժողովն՝ ագապ ի հանգիստ, կամ յիշատակ վախճանելոցն, կամ մխիթարութիւն ոգւոց (ԺԸ). Ղեւոնդ՝ հաց ոգւոյ (152). Գր. Խլաթեցին՝ հաց հոգւոյ (Հյպտ. 568). ուրիշներ կը կոչեն պատարագ կամ զոհ զենման (Արծ. 323), ու մատաղ (Ընդհ. 154. Ուռ. 404)։ Իսկ Որբելեանն ըսելով՝ թէ «զագապն ո՞ սահմանեաց, որ է հոգեհանգիստն» (Հկճ. Փ), կը հաստատէ ագապին իւր ժամանակ ունեցած մասնաւոր եւ ամփոփ իմաստը։ Հին արձանագրաց մէջ կայ նաեւ սեղան, եւ յն. ագապին բառացի թարգմանութեամբ՝ սէր (աստ, 355)։

2. — Ծագումն եւ Հայոց մէջ։ — Բոլոր հին ազգերը, քաղաքակիրթ կամ վայրենի, կռապաշտ թէ աստուածապաշտ, սովոր էին ննջեցելոց ի նպաստ տալ այսպիսի ճաշեր, ինչպէս մանրամասնօրէն կը

յիշէ Լըկլերկ (Կարր. Ա, 775–9)։ Հրեայք եւս ունէին այս նպատակով «հաց սգոյ» եւ «բաժակ մխիթարութեան» (Երմ. ԺԶ, 7)։ Մեր մէջ ալ նոյնքան հին է այս սովորոյթ։ Տիգրան իւր Մաժան եղբօր գերեզմանին վրայ բագին մը կը շինէ, «զի ի զոհիցն ամենայն անցաւորք վայելեսցեն, եւ ընդունիցին հիւրք երեկօթիւք» (Խոր. 146)։ Հոգեհանգստեան վախճանն յայտնի է հոս. բայց թէ որքան պատմական է՝ չեմ գիտեր, թէեւ գաղափարին հնութիւնն ապահով է։

Հեթանոսութեան կամ հրէութեան սկըսած այդ պաշտօնն աւելի ճշդեց եւ ազնուացուց քրիստոնէութիւնը. եւ հայ եկեղեցւոյ մէջ եւս կը գտնենք զայն աւետարանին հետ միասին։ Անոր յաճախութիւնն իւր օրով ցոյց կու տայ Մանդակունին, երբ կ'ըսէ՝ թէ ննջեցեալն «հանապազ օրհնի եւ յիշի ի յիշատակացն կատարելոց» (179)։ Նոյնը կը հաստատէ Պարտաւայ ժողովն ալ հետագայ վկայութեամբ. «ի յիշատակս վախճանելոցն՝ յընտանեաց նոցա որ ինչ ըստ կարգի օրինաց քրիստոնէից կատարեն զմխիթարութիւն ոգւոց նոցա, կամ զքառասունսն եւ զագապս ի հանգիստ նոցա» (Պրտ. ԺԸ)։ Արծրունին Գագիկ արքայ՝ իւր Գուրգէն եղբօր հոգ-

ւոյն համար կը մատուցանէ «պատարագս եւ զոհս զենմանց»․ զայս կ՚ընէ անոր մահուան սգոյ ժամանակ, կրկնելով ապա ամէն տարի «անմոռաց յիշատակօք» (Արծ. 323–4)։ Գող Վասիլի մահուան մորթուեցան «մատաղ անթիւ» (Ուռ. 404)։ Շնորհալին մատաղի տեսակաց մէջ կը թուէ եւ զայս, զոր կ՚ընենք՝ կ՚ըսէ՝ մեռելոց յիշատակին համար, «զի զաղքատսն կերակրելով՝ ողորմութիւն գտցեն նոքա յԱստուծոյ» (Ընդհ. 154, ’55)․ կամ ըստ Տարօնացւոյն՝ «ի բարեխօսութիւն առ Աստուած» եւ «առ ի թողութիւն պարտուց» (Թէոփ. 282)։

Յաճախ հին արձանագրութեանց մէջ ալ կը պատահինք սոյն ճաշին, կապուած միշտ յատուկ օրերու հետ։ Մին՝ գրուած ի Սանահին 1191ին, Համբարձման տօնին կը սահմանէ Պատարագներ եւ «հաց» (Ազգ. հնդ. 1911, էջ 283)։ Ուրիշ մը կը պատուիրէ՝ որ Հոգեգալստեան օրն «ի մեր արդեանց սեղան դնեն» (նոյն, 1901, էջ 405)։ Խծկօնից ուխտին նորոգիչ մը 1153ին պայման կը դնէ՝ որ տեղւոյն աբեղայից մահուան «հայրն լաւ մատաղ առնէ», ինչ որ Բագնայրի բարերար մը 1233ին իրեն համար կը սահմանէ (Տեղ. 209, 185)։ Կայ նաեւ Վաչէի եւ ընտա-

նեաց կտակն 1213ին, որպէս զի Կեչառուաց վանքը Նոր կիւրակէին «զսէրն առնէ» ի նպաստ իրենց հոգւոց (Այր. 261). եւ 1229ին ալ Հոռոմոսի ուխտին կը պայմանադրէ՝ որ դարձեալ նոյն օրն «հասարակաց սէր առնէ» (Շիր. 24)։ Շքեղ է եւ համաձայն սիւնեցի պերճութեան՝ Որբելեան պատմչին կտակն ալ, որով Պենտեկոստէին օրը Նորովանից միաբանք «առնեն մեզ, կ'ըսէ, յիշատակ հոգեհանգիստ՝ զենմամբ զուարակաց եւ գառանց, եւ առատ առճկօք կերակրոց եւ ըմպելեաց լըցուցանեն զպէտս աղքատաց եւ կարօտելոց» (Որբ. 361–2)։

3. – Վայրը։ — Հին ազգերը ննջեցելոյն գերեզմանին շուրջ իսկ կը կատարէին զենումը, եւ հոն ճաշ կու տային, ինչպէս ըրաւ Աքիլլեւս՝ Պատրոկլի մահուան (Իլ. 412), եւ Աղեքսանդր՝ Դարեհի (Պտմ. Աղ. 113). ինչպէս կ'ընէին Եգիպտացիք (Լնոր. Գ, 252–3) եւ Հրեայք ալ (Տովբ. Դ, 18)։ Ընդ հակառակն Դ դարուն Հռովմայ, Անտիոքայ եւ Փոքր Ասիոյ քրիստոնեայք հոգւոյ հացը կ'ուտէին եկեղեցւոյ եւ գաւթին մէջ, զոր Կարքեդոնի ու Լաւոդիկեայ ժողովները դատապարտեցին (Կարբ. Ա, 820–2), նոյնպէս եւ Բ Նիկէական կանոնները (ԾԷ)։

Մեր հեթանոսութեան շրջանի սովորոյթը նման է միւս հեթանոսաց ըրածին. Մաժանայ հոգեհացն անոր գերեզմանին վրայ իսկ կ'ուտուէր՝ ինչպէս ըսինք (353)։ Իսկ քրիստոնէութեան ժամանակ։ Հինն անծանօթ է ինձ, եւ հաւանական է՝ թէ միւս քրիստոնէից պէս եւ տեառնականին նման կը կատարուէր «ի դուռն եկեղեցւոյն», ինչպէս իւր դարուն համար կը վկայէ Շնորհալին (Ընդհ. 160)։ Բայց վերոյիշեալ արձանագրութեանց համեմատ՝ առաւելապէս կը տրուէր վանքերու մէջ. որով եւ առիթ կը դառնար շահաւէր հակառակութեանց՝ աշխարհիկ քահանայից կողմանէ։ Մխ. Գոշ այդ վէճին մէջ վերջնոց իրաւունք տուաւ՝ ըսելով. «Զհոգեհանգիստ ի վանս առնել՝ ոչ է ըստ օրինաց դատաստանի գրոց», պատճառ բերելով՝ որ վանքերու մէջ մսակերութիւն չկայ, կամ լաւ եւս՝ լինելու չէր, զի կար արդէն (աստ, 303–7)։ Ինք կ'ուզէ՝ որ աշխարհի մէջ զենուն, եւ վանքերու պատկանեալ բաժինը տան։ ·Բայց ի վերջոյ կը զիջանի տիրող սովորութեան, եւ կ'ըսէ՝ որ եթէ նուիրատուն իւր կարողութեան չափաւորութեան համար կամ «յաղագս յուսոյ» վանք տանի անասունը եւ հոն հաւատացելոց կերցնէ, աշխարհիկ քահանայք չհակառակին (Դատ. 95–6)։

*Եւ որովհետեւ ի նպաստ հոգւոց՝ մատաղէն զատ ուրիշ տեսակ հացեր ալ կը տրուէին, ինչպէս պիտի տեսնենք, ասոնք ոչ եւս վանքերու մէջ, այլ մերթ «ի գերեզմանին» մեռելոյն կ՚ուտուէին՝ նման հեթանոսականին, եւ մերթ «ի տունս», ինչպէս կը յիշատակէ Տաթեւացին (տես,* 364)։

4. – *Կոչնականք։* — *Շնորհալւոյն, Որբելեանի եւ այլոց վկայութեանց համեմատ (տես,* 354, ՚55) *այս մատաղին մասնակցողներն են չքաւորք ու թշուառք։ Ասոնց մէջ եւս, ինչպէս պարզ ագապի պահուն (տես,* 322)*, չկայ սեռի խտրութիւն. Գագկայ հոգեհացին ներկայ կը գըտնենք «զդասս աղքատաց, որբոց եւ այրեաց, տնանկաց եւ տառապելոց բիւրաւոր ամբոխից առ նա կուտելոց» (Արծ.* 323). *այդպէս նաեւ «այրեաց»։*

*Բայց հոս ալ կու գար բազմիլ բարեկեցիկ դասը, յափշտակելով աղքատաց առաջնութեան իրաւունքը, ինչպէս իւր սովորութիւնն էր (տես,* 321–2)*։ Որով Շնորհալին կը հարկադրի հրամայել՝ որ ճաշելէ յառաջ քահանայից բաժինը տան նախ. եւ մնացորդով յառաջ քաղցածներն ու կարօտները կերակրեն, «եւ ապա թէ յաւելու՝ զսիրելիսն եւ զբարեկամս»*

(Ընդհ. 160)։ Բայց յուսալի չէ որ Հայք համակերպած լինին այդպիսի կարգադրութեան մը, եւ յետադասած կամ զրկած իրենց մեծամեծար բարեկամները։

5. — Օրհնութիւն։ — Տարբեր էր տեառնականի կանոնէն՝ ըստ մեր ծանօթ աղբերաց. եւ Որբէլեան զայն Ս. Եփրեմի կ'ընծայէ, ու Ղազար Թարգմանչէն ի Հայս բերուած կը համարի (Հկն. ժ)։ — Շնորհալին այսպէս կը նկարագրէ զայն։ Քահանայք՝ որքան որ կան՝ պիտի հաւաքուին եկեղեցւոյ դուռը, եւ իրենց հետ երթալու է «տէր պատարագին», ինչպէս կը կոչուէր նուիրատուն։ Հոն, կ'ըսէ, թող աղը դնեն խաչին առջեւ (ստ, 343), երգեն գրուած սաղմոսը, եւ կատարեն ընթերցումներն ու աղօթքը։ Կը յաւելու՝ թէ այս պաշտօնը կատարուելու է «երկիւղիւ մեծաւ», ուզելով արգելուլ այն ժխորն եւ անկարգութիւնը՝ որ ի հնուց յատուկ էր հայ ժողովրդեան՝ հոգեւոր պաշտամանց պահուն (ստ, 253). եւ ջերմեռանդ սրտիւ, կ'ըսէ, յիշեն մեռելոյն անունը, անոր մեղաց թողութիւն խնդրելով։ Ապա տան աղն անասնոյն եւ մորթեն (Ընդհ. 160)։

Ա. Այդ նկարագիրդ ամփոփումն է Մաշտոցին պաշտաման, որ հետեւեալն է՝

*ըստ ԺԱ դարու օրինակին, սա վերնագրով. «Կանոն ոգեհանգիստ առնելոյ կամ յիշատակ մեռելոյ»։ Նախ կը դնէ սղմ. ԼԱ «Ի թիւ». յետոյ «Աւրհնութիւն եւ փառս». սղմ. ԼԶ, ԼԷ, Խ, եւ Օրհնութիւն Եսայեայ, ԻԶ, 9–20։ Ապա քրզ. «Վասն ի վերուստ». ԺԲ «Տէր ողորմեա». աղօթք՝ «Անկեալ եմք առաջի քո». սղմ. ԾԳ, եւ հետեւեալ ընթերցուածները. Առկ. Գ, 9–12. Գրծ. ԻԴ, 14–18. Ա Պետ. Դ, 6–7. Ալել. սղմ. ԿԶ. ՂԿ. ԺԹ, 1–10. եւ հուսկ ընդարձակ աղօթք մը, «Հայր երկնաւոր բարեգութ եւ ողորմած», յորում կայ հետագայ կարեւոր կտորը մատաղիս էութեան ու վախճանի մասին. «Ընկալ ողորմութեամբ քո(յ)ով զպատարագս զոր մատուցանեմք հաւատացեալքս ի քեզ առ ի յիշատակ ննջեցելոցն յանուն քո սբ...։ Աւրհնեա զպատարագս զայս՝ առաքելով զաներեւոյթ աջ քո, եւ հանգոյ զկամս ընդունողութեան քո զմատուցողք[1], առհաւատչեայ ընդունել զհանգիստ փոխեցելոյն՝ զոր աւանդեցեր ի պատրաստեալ բնակութիւնս անճառ բարեացդ։ Լցոյ քո անճառ շնորհաւք բազ-*

1\. 1216*ի օրինակն աւելի ճշդօրէն կը կարդայ «ի մատուցողքս»։*

մապատիկ ցնծութեամբ որք հաղորդք հանդիպեցան այսմ խրախութեանս», եւ այլն։

Բ. Ապա կը մորթէին ու կ'եփէին անասունը, եւ կը պատրաստէին սեղանն՝ ինչպէս տեառնականի առթիւ կ'ընէին (տես, 350)։ Եւ նստելէ յառաջ կը պաշտէին «Աւրհնութիւն սեղանոյ տեառնականի եւ պատարագի՝» ըստ ԺԱ դարու Մաշտոցին (տես, 350), կազմուած միակ աղօթքէ մը, որոյ հետագայ համառօտութեան մէջ կ'ամփոփեմ կարեւորագոյն կէտերը, որոնք կը վերաբերին սեղանին, ննջեցելոյն ու նուիրողին։ Աւասիկ. «Աւրհնեալ ես Տր. Ած. ամենակալ հայր Տն. մերոյ Յի. Քի. որ առիթ սիրոյ պատրաստեցեր քո ծառայիցս բարեպաշտել առ քեզ սեղանովք բարութեան։ Խնդրեմք ի քէն Տր. եւ աղաչեմք, ընգալ եւ աւրհնեայ զուխտ պատարագիս այսորիկ... եւ յիշատակեայ զհոգիս հանգուցելոյն ընդ սուրբս քո ի փառս քո...։ Յիշեայ Տր. ողորմութեամբ քո զմատուցող պատարագիս, եւ կատարեա ի բարի զխնդրուածս սորա», եւ այլն։

Գ. Եւ որովհետեւ հոգեհանգստեան նուէր կրնային լինել արմտիք ալ, նոյն Մաշտոցն ունի յատուկ «Աւրհնութիւն հատի պատարագի», զատ սովորական մատաղի

սեպհականէն (տես, 332)։ Վեննետկոյ Թ. ԾԹ Մաշտոցին մէջ, որոյ գրութիւնն հնագոյն է քան իւր լրացուցչին 1401 թուականը, աւելի զարդարուն է սոյն կանոնս իւր հրահանգաց մէջ։ «Դնեն, կ'ըսէ, ի սեղանն հաց, եւ անապակ գինի եւ Գ մոմ լուցեալս»․ եւ կը պաշտեն հանգստեան շարական եւ օրհնութեան աղօթքը՝ «Գոհանամք եւ փառաւորեմք զքեզ», յորում ուշագրաւ են պարագային հետ կապ ունեցող հետեւեալ տեղիքը։ Նախ կը յիշատակէ ննջեցեալները․ «Հայցեմք ի բարերարութենէդ քումմէ, յիշեայ զհոգիս ծառայից քոց ընդ սուրբս քո յերկնաւոր առագաստիդ յանպատումն ուրախութիւնսըդ։ Հայեաց հաշտ ակամբ ի պատարագս՝ զոր մատուցանեմք առաջի քո, անկարաւտդ Ած․ եւ պարգեւեայ նոցա զմուտ վերին կենացդ»։ Եւ որովհետեւ ոգեհանգիստն ալ կրնար մարտիրոսաց յիշատակին հետ կատարուիլ (տես, 317, '42), կը յարէ այս մտօք․ «Ընդունող աղաւթից եւ հաճեցող պատարագաց, նախընտրեալ սրբոց, աղերս արկանեմք առաջի քո զսրբութիւնս նոցա․ խոնարհեցո զունկն քո յաղաչանս մեղուցեալ ծառայիս քո... եւ պարգեւեա զհանգիստ յիշատակելոցս առաջի քո»։ Կը դառնայ սեղանին եւ անոր

*բովանդակութեան վրայ. «Զգեա զբաշխող աւրհնութեան սուրբ զաջ քո, եւ աւրհնեայ զսեղանս զայս եւ զառաջիկայ հատս եւ զգինիս՝ զոր մատուցանեմք յաւրինակ ամենայն սուրբ մարտիրոսացն եւ յիշատակ հոգւոց հանգուցելոց»: Եւ հուսկ կ'աղերսէ ճաշակողաց ու նուիրատուաց համար. «Եւ շնորհեայ ամենեցուն որք հաղորդին ի սըմանէ՝ զփրկութիւն առողջութեան կենաց եւ քաւութեան մեղաց: Տուր Տր. վարձս բարիս մատուցողաց պատարագիս... Ջընջեայ զձեռագիր յանցանաց ամենայն ժողովրդեանս», եւ այլն:*

6. – *Սեղանը: — Իր նիւթերն էին ուրեմն մսեղէնք, արմտիք ու գինի: Որբելեանի ոգեհացը կը կազմուէր «առատ ռոճկօք կերակրոց եւ ըմպելեաց»* (*աստ*, 355)*: Այս տեղ ըմպելեաց կարեւորութիւնն զգալի է Հոռոմոսի վանուց մէկ արձանագրութեան մէջ եւս՝* 1229*ին, ուր կտակարարն այգի մ'է թողեր եկեղեցւոյն, պայմանաւ՝ որ փակակալը «գինոյն իշխանութիւն ունի՝ որ ի մեր պատարագի յաւրն հասարակաց սեր առնէ»* (*Շիր.* 24)*:*

*Որ եւ է հայ կոչնոց մէջ չէր կարող մտնել գինին՝ առանց իր հետ բերելու չափազանցութիւնն ու զեղծումն ալ, ինչ որ կը տեսնուէր ափրիկեցի քրիստոնէից ա-*

գապաց մէջ եւս (կարր. Ա, 818)։ Թէպէտ չենք կարող այս չափազանց մտօք առնուլ մեր այդ յիշած կտակաց «գինին» կամ «առատ ըմպելիքն» ալ, որ կրնան թէ սովորական գիներրուաց նմանիլ վայելողաց կողմանէ, եւ թէ աւելի պարկեշտ լինել, սակայն նոյն միջին դարուն՝ դեռ ուխտավայրից մէջ մեր տեսած արբեցութիւնք (սստ, 253–4) մեր ուշն հոգեհացերուն ալ տանին (հմմտ. 366)։

7. – Սովորոյթներ։ — Մեք եթէ այդ գինարբուքն իրեն ամբողջական իմաստով առնունք, հոս ալ պիտի տեսնենք աղմուկ ու պարեր (սստ, 204–11), զոր Կարքեդոնացիք եւ Անտիոքացիք եւս ունէին իրենց ագապներու մէջ. հեթանոսական ծիացորդներ՝ որոց դէմ կը կռուէին իրենց հովիւները (կարր. Ա, 818, '22)։ Եւ նըկատելով աղոնց ժամանակակցութիւնն ու նմանութիւնքը հայ բարուց հետ՝ որուն շատ անգամ ակնարկեցինք, եւ մանաւանդ պարերու գոյութիւնը մեր յուղարկաւորական Թարորին մէջ անգամ (փաւ. 229), բնաւ անտեղի չէ զասոնք մեր հոգեհանգըստեան մէջ ալ տեսնել։

Կարեւոր պարագայ մը կայ՝ զոր ոմանք այսօր կը գործադրեն, կ'ըսէ Վարդան. այն է «գինի արկանել ի գետին՝ ի յիշելն

զմեռեալս» (Բ Օր. ԻԶ). Եւ ուր դեռ մնացած էր Տաթեւացւոյն ժամանակ, որ կը հարցնէ[1]. «Զի՞նչ է՝ որ յըմպելն զգինին՝ բափեն յանուն մեռելոյ ի գերեզմանին[2]»։ Եւ կը պատասխանէ՝ թէ հեթանոսներէ առնուած է, որոնք մեռելոյն ինչքը գերեզման կը դնէին անոր հետ, եւ «ի գինի ըմպելն[3]» մեռելոց բաժինն անոնց վրայ կը լեցնէին. եւ թէ նոյնպէս կ'ընէին «ի տունս եւ ի դուրս՝ յորժամ յիշէին» (Հրց. 656)։ Հոս դիտելի է նախ՝ որ «հեթանոսաց» ընծայուած սովորոյթը կապ ունէր ժամանակի հայ բարուց հետ, եւ զասոնք իսկ կը դնեն մեր առջեւ այդ վարդապետները։ Ըստ այսմ ուրեմն գինին կը թափէին մեռելոց յիշատակին՝ ոչ միայն մատաղի ժամանակ, որուն կ'ակնարկեն «ի դուրս» բացատրութեամբ, այս ինքն բացօթեայ վայրերու մէջ՝ ինչպէս էին ուխտատեղիք (հմմտ. աստ, 350, '56), այլ նաեւ «ի տունս» եւ «ի գերեզմանին» տրուած ճաշերու առթիւ։ Երկրորդ՝ թէ սովորութիւնս յիրաւի հեթանոսական ծա-

1. Հարցումդ ըստ տպ. եւ Վենետկոյ 1424ի օրինակին է, եւ չկայ 1401ի օր. մէջ։
2. «Ի գերեզմանին՝» ըստ 1424ի օր. է, եւ չկայ ի տպագրին։
3. «Ի գինի ըմպելն՝» 1424ի օրինակէն է։

գումձ ունէր, եւ կար՝ զոր օրինակ՝ Հելլենաց քով։ Հոմերոս կ՚աւանդէ՝ որ մինչդեռ Պատրոկլի մարմինը կ՚այրէր, Աքիլլեւս անոր խարուկին շուրջ գերինը գինի կը թափէր, կոչելով մեռելոյն հոգին (Իլ. 416)։ Ատոր համար կը յարէ Վարդան՝ թէ «չէ պարտ առնել». եւ Տաթեւացին՝ թէ «չէ պարտ, զի յուսահատութեան է նշան եւ հեթանոսաց գործ»։ Չէ՛ պարտ. եւ սակայն մինչեւ ցայսօր դեռ կը մնայ Հայաստանի մէջ։

Ոչ նուազ կարեւոր է եւ այն՝ որ մատաղի տիրոջ արգելուած էր սեղանէն որ եւ է բան տուն տանիլ՝ հետագայ օրերուն ի պաշար. այլ պէտի շատանար նոյն օրուան հարկաւորը միայն առնուլ, ինչպէս կ՚ազդարարէ Շնորհալին, իմացնելով պատճառն ալ, «զի Աստուծոյ է նուիրեալ» (Ընդհ. 160)։ Զայս իբրեւ զեղծում դատապարտեց նաեւ Լաւոդիկեայ ժողովը 363ին (Կարբ. Ա, 821), եւ Բարսղի ընծայուած կանոնները (ՃԴԸ), որոնք հաւանօրէն ծանօթ էին մեր հայրապետին։ Արդէն Մովսէս եւս կը պատուիրէր զոհութեան զոհն առ օրին ուտել ըսպառել (Ղեւտ. ԻԲ, 30)։

8. — Հաց ագոյ։ — Ղեւոնդ կ՚աւանդէ մեզ ուրիշ ճաշ մը։ Երբ ննջեցեալն ողբալու

համար՝ ազգականք ու բարեկամք կը հաւաքուէին անոր տունը, հոն իսկ «ի տունս իւրեանց», կ'ըսէ, սովորութիւն էր «հաց ոգոյ բեկանել». եւ ապա կը տանէին թաղել մեռեալը։ Այդ ճաշն հանդիսական լինելու է, որով թշնամեաց երկիւղէն կը հարկադրէին երբեմն զանց ընել (Ղեւ. 152)։ Արդարեւ Մխ. Գոշ ալ կը յիշատակէ զայս իւր առակաց մէջ. ազնուին որդին մեռնելուն, կ'ըսէ, շատերն եկան «յողբ նորա, եւ նա ճաշ մեծ յօրինեաց սգաւորաց» (110–1), որ յայտնի է՝ թէ նոյն է Ղեւոնդի աւանդածին հետ։ Եւ որովհետեւ անպատեհը սովորական խընճոյից մէջ՝ անպատշաճագոյն պիտի լինէր այսպիսի հոգեւոր սեղանի մը վրայ, մեր Հարք ուզեցին արգելուլ գինարբութիւնն այս առթիւ։ Վաղարշապատու ժողովին կանոնները կը գրեն. «Մի՛ թոյլ տացեն քահանայք գինարբուս առնել ի սուգս մեռելոց» (Վղշ. ԻԱ). եւ Ս. Սահակայ կանոնք՝ թէ «Գինեմպեղխս ի լալիս մի՛ արասցեն» (98)։ Այս դատապարտուած գինարբուքն անտարակոյս մեզ ծանօթ զեղխութիւնքն են անուամբ եւ իրօք (աստ, 195)։ Եւ ահա կը կատարուին նոյն իսկ «ի սուգս» կամ «ի լալիս». այս ինքն մահուան օրն իսկ, եւ մեռելոյն դիակին մօտ։

Թաղման օրուան այդ ճաշը, այդքան հին, եւ իւր բոլոր հանգամանօք վաղուց ծանօթ Հռովմայեցւոց, Ետրուրացւոց եւ այլոց եւս (Դար. Բ, 1385), ըստ ինքեան բնական պէտք մ'էր սգաւորաց հետ երկար ժամերով ողբացողաց համար։ Միայն թէ հանդիսական ձեւ առած էր իբրեւ հոգեհանգիստ մը, եւ ասով իսկ արժանի ուշադրութեան։

9. — Խաչի ուրբաթ։ — Ընտանեկան օր մ'էր այս մեռելոց յիշատակին, յատուկ կանանց միայն, ուր հանգուցելոյն ազգականուհիք ճաշի կը հրաւիրէին իրենց սեռակիցները։ Յովհ. Երզնկացին է զայս յիշողն հետագայ խօսքերով. «Ուրբ խաչի ուրբաթուն ծախս հանեն յանուն մեռելոյն, եւ ժողովս կանանց առնեն», որով յայտնի է՝ թէ ժողովողներն ալ կանայք են, «ուտեն եւ ըմպեն». որուն կը հակառակի ինքն իբր աւելորդ ծախուց դուռ (Վս. սգ.)։ Թէ վարդապետէս ո՛րքան հին է այս սովորոյթը, յայտնի չէ. բայց կարծեմ թէ իւր ծագումն հետեւանքն է այն պարագային, որով կանայք չէին կարող մասնակցիլ հասարակաց կոչունքներու (աստ, 141), բաց ի չքաւոր այրիներէն՝ որ ըսինք թէ աղքատաց հետ միասին կրնային ագապին երթալ (աստ, 322, 357)։



## Դ. ԶԱՏԿԻ ԳԱՌՆ ԵՒ ՃԱՇ

*Քրիստոնէական տօներուն մէջ ամենէն նշանաւորն ու խորհրդաւորը, Զատիկը, մեր հարց սեղանին վրայ կը բերէր հոգեւորին հետ մարմնաւոր յատուկ ուրախութիւն մ'ալ, որ իր առատութեան հետ լի էր նաեւ խորհրդով։*

1. – *Ճաշը։* — Ը դարու հեղինակ մը, Գր. Արշարունին, կու տայ մեզ այս օրուան ճաշին բաւական մանր նկարագիր մը, զատկական «Նաւակատեաց» նմանեցնելով կամսարական Վահանայ խօսքերն եւ իր գրաւոր վաստակը։ Զմեզ քո սեղանիդ վրայ կերակրեցիր, կ'ըսէ անոր, «Ջամբելով ճաշին՝ մսով օրհնութեան եւ անոյշ գինով, եւ բանից ուրախութեան հոգւոյ եւ մարմնոյ»։ Եւ անոր խնդրով կատարած իր Մեկնութիւնը կը համեմատէ փոխադարձ սեղանի մը՝ նոյնպէս յատուկ սոյն «սատուածային պասեքիս», զոր կը յօրինեն «հացք, որթք, խոյք, զառն՝ ոչխարաց հանդերձ. եւ դարձեալ բազում*

զենմամբ գառանց, յօղեաց եւ յայծից՝ պատարագեալք մսով օրհնութեան». որոց վըրայ երբ յաւելունք «մրգաց» բաժինն ալ (Արշ. ԼԴ), մեր առջեւ կ'ունենանք ազնուական կոչնոյ ճոխութիւնը[1]։ Ասոր մէջ սակայն զգալի է տօնիս սեպհական ճաշացուցակ մը, որ կը կազմուի ընտանի անասնոց մսերով. այս ինքն անոյմով միայն՝ որ յարմար էին մատաղի (տես, 327). որով բացակայ են սեղանէս վայրի՝ թէեւ սուրբ չորքոտանիք, եւ ծովայինք նոյն իսկ արգելուած, ինչպէս կ'իմացնէ Արշարունին՝ ըսելով. «Այլ ոչ (կերիցես) ձուկն՝ վիշապացեալ ի խորս խաւարի ծնալով՝ ատելին քեզ» (անդ). այս ինքն՝ զի ձուկը ջրին ներքեւ բնակելով, կը նըմանէր վիշապակերպ խաւարաբնակ սատանային, եւ այս պատճառաւ այսօր խորշելի էր, ըստ որում մատաղի ալ անյարմար (տես, 327)։ Սեղանիս լրութեան համար անպակաս են նաեւ «բանք ուրախութեան», բայց պարկեշտութեան սահմանի մէջ, եւ աննման սովորական կոչնոց մէջ ընդունուած յիմարաբանութեանց (տես, 207)։

1. Հմմտ. տես, 175, '78-83, 216, '26։

2. – Մատաղ։ — Հարկ չկայ յիշեցընելու ընթերցողացս՝ որ ընթերցուածոց մեկնչին յիշատակած զատկական մսերը սովորաբար օրհնուած են կամ պատարագեալք. այս ինքն մատաղ եղած՝ ամէն տեսակ ընտանի սուրբ կենդանիներէն։ Մանաւանդ թէ այս օրուան մատաղներն աւելի բազմաթիւ եւ ընդհանուր են այդ ժամանակ եւ յետոյ եւս, իբր չորս դար վերջ դեռ ըսել տալու համար Տարօնացւոյն՝ թէ «ի զատկին ամենայն ազգս Հայոց (անոցմէ) մատուցանեն ի յիշատակ ննջեցելոցն», եւ աղքատաց կը բաշխեն (Թէոփ. 282)։ Ուրեմն զատկի հին ազապը հոգեհանգստեան վերածուած է հոդ։ Շնորհալւոյ դարուն ալ կը պատահինք այդ օր «անբանից կենդանեաց զենմանց» (Ընդհ. 154), եւ մեծն Լեւոն նոյն տօնը կը փառաւորէ «մեծահանդէս ժողովով եւ մեծածախ սեղանով» (Հյպտ. 438). բայց այս վկայութեանց մէջ հոգեհացի սեզմ իմաստը նշմարելի չէ։

Սակայն սոյն զենմանց մէջ ամենէն ուշագրաւն ու տօնին յայտարարն է «զատկական գառն», որուն կը հանդիպինք նախ Արշարունեաց եպիսկոպոսին վերոյիշեալ տեղւոյն մէջ, ուր կը շեշտէ անասնոյս քան զայլս կարեւորութիւնն՝ ըսելով. «Կերիցես զզատիկ Տեառն, զառն՝ որ բառնայ ըզ-

մեղս աշխարհի, զսիրեյին քեզ միս, հաւուք հանդերձ որք թռուցեալք յօդս»։ Աւելի յայտնի կը խօսի «Սակս ժողովոց» գրութիւնը, թէ «Այս աւուր յարութեան ճաշակի գառն զենեալ» (Թղթ. 229), որ է մատաղ եղած (սստ, 312)։ Բայց ԺԱ դարու սկիզբն ուրիշ բան կը յիշուի Տարօնացւոյն կողմանէ. հոն գառն արդէն մեծցած՝ ոչխարի փոխուած է։ Մեր զատկի մատաղը, կ'ըսէ նա, «յոչխարաց առնումք» (Թէոփ. 278)։ Վերջինս հրէականէն էր, որոնք զատկին «տարեւոր ոչխար» մը կ'ուտէին (Ելք, ԺԲ, 3–5)։ Եւ որոյ հետ աւելի կատարեալ նմանութիւն մը ցոյց կու տայ սուտն Դամասկացի, ըսելով թէ Հայք եւս Հրէից պէս «տարեւոր գառամբ» կը տօնեն զատիկը (Լոյս, 1905, էջ 1114)։ Սակայն Տարօնացիէն կէս դար վերջ տարեւորը վերստին փոքրկացած կը գտնենք Շնորհալւոյն մէկ վկայութեան մէջ՝ թէ Հայոց այդ գառնը կը լինէր «ամսօրեայ կամ որպէս պատահէ աւելի կամ նուազ» (Ընդհ. 155)։ Եւ յաջորդաբար կը հաստատեն այս «գառն՝» Ալաւկայ որդին (ԳԱ), Օրբէլեանը (Հկճ. Է) եւ Տաթեւացին (Հրց. 657)։

Գալով զարին ծագման, Ալաւկայ որդին «հրաման առաքելական» կը համարի

անոր զենումը Ծննդեան, Զատկին ու Վարդավառին (ԴԱ)։ Բայց ասկից կ'ուսանինք գառին աւելի ընդարձակ գործածութիւնը՝ քան առաքելականութիւնը, որ երեւակայական է, եւ արդիւնք Ա Առաքելական անվաւեր կանոնաց (ԺԱ), որոց կ'ապաւինի Օրբելեանն ալ (Հկճ. Ժ)։ Իսկ Շնորհալին կը կարծէ՝ թէ Լուսաւորիչ զատկական գառն «ի Հռովմայ եկեղեցւոյն ընկալաւ եւ աւանդեաց»։ Արդարեւ՝ ինչպէս ինք կ'ըսէ, դեռ իւր օրով ալ կը պահուէր այն «յամենայն եկեղեցիս փռանկաց» (Ընդհ. 158)։ Բայց թէ Լուսաւորիչ անոցմէ ընդունեցաւ, կրնայ ձրի լինել, կամ փոխառութիւն Տարօնացիէն, որ աղն ու գառն առնուած կը համարի «ի սուրբ հայրապետէն Հռովմայ», եւ միասին կերած (Թէոփ. 306), ակնարկելով անշուշտ Լուսաւորչին ի Հռովմ այցելութեան։ Սակայն աւելի դիւրական է կարծել՝ թէ Հայք հրէակերպ ոչխարը Տարօնացիէն կամ Դամասկացիէն վերջ՝ այն է ԺԲ դարու առաջին կիսուն՝ փոքրկացուցին ժամանակի հռովմէական գառին պէս, որպէս զի իրենց հակառակորդաց դէմ կռուան մ'ունենային արեւմըտեան մեծ եկեղեցւոյն սովորոյթը։ Եւ Տաթեւացին մեր ու լատինաց նմանութեանց մէջ կը թուէր նաեւ «գառն զենուլ ի տօնս»

(Հրց. 553). ուրեմն աւելի քան մի ան-
գամ։ Բայց կ'երեւի՝ թէ իր օրով այն-
քան ստիպողական չէր գառնը, որով կա-
րելի էր մորթել զատկին «գառն կամ ոչ-
խար կամ այլ ինչ» (Քրզ. ժմր. 606)։

3. – Վայրը։ — Շնորհալին ջանալով
գառին տրուած չափազանց ու գայթակղե-
ցուցիչ կարեւորութիւնը մեղմել, կը պա-
տուիրէր՝ որ զայն մորթեն անխտիր «յո-
րում տեղւոջ հանդիպի», նման ուրիշ ա-
նասնոց (Ընդհ. 160)։ Ուրեմն սովորու-
թեան մէջ կապուած էր յատուկ տեղւոյ
մը հետ, որ անտարակոյս եկեղեցին էր,
ուր կ'օրհնուէր նման տէառնականին ու
հոգեհանգստեան, եւ նոյն իսկ կոչուած է
նաեւ «տէառնականն զատկի» (Հրց. 362)։
Ոչ միայն եկեղեցին կը մորթուէր, այլ հոն
ալ կ'ուտուէր, ինչպէս կը զգացնէ մեր ա-
ռակախօսը, աղուեսին ըսել տալով գայ-
լուն. «Վաղիւ զատիկ է, տարայց զքեզ
յեկեղեցին՝ զի կերիցես մատաղ» (Գոշ՝ Առկ.
79). եւ ինչպէս պիտի տեսնենք քիչ վար՝
1345ի մաշտոցի մը մէջ եւս։ Արդարեւ
ԺԲ դարու Լատիններն ալ խորովելով զայն,
«դնեն ի խորանն ընդ Պատարագաւն»,
կ'ըսէ Շնորհալին (Ընդհ. 160), այս ինքն
Ս. Պատարագը մատուցանելու պահուն։
Այս սովորոյթը, անծանօթ եւրոպացի հը-

նախօսից, գուցէ հայրապետս չփոխած է Ս. Ագնեսի յիշատակին հետ, ուր Պատարագը դեռ չաւարտած՝ երկու սպիտակ ողջ գառնուկներ կը դրուին ս. Սեղանին վրայ ու կ՚օրհնուին, յիշեցնելով մեր նման մէկ սովորութիւնը (տես, 349–50), եւ յետոյ անոնց բրդէն կը շինուին պալլիումները։

4. — Օրհնութիւն։ — Յիշուած Արշարունիէն (տես, 369) եւ ուրիշներէ, միւս մատաղներու կանոններէն շատ աւելի համառօտ է Շնորհալւոյն օրով, որ կը պատուիրէ օրհնել աղը տեառնագրութեամբ, եւ ըսելով «զաղմոսն եւ զաղօթսն՝ որ կարգեալն է», եւ կերցնելով գառին (Ընդհ. 160)։ Այս՝ հին մաշտոցին աղօրհնէից ձեւն է, կազմուած մէկ սաղմոսէ եւ մէկ աղօթքէ՝ զոր տեսանք (տես, 347)։

Բայց այդքանը չի գոհացներ մեր միջին դարու եկեղեցականները, որոնք Շնորհալիէն վերջ կը հնարեն գառնօրհնէից յատուկ ձեւեր։ Վենետկոյ գրչ. մաշտոցներէն 1345ի օրինակը՝ գրուած ի Սիս, ունի «Աւրհնութիւն գառինն ի նոյն (զատկի) կիրակէին, եւ բաշխեն ժողովրդեան». և կը կազմուի հետեւեալ լոկ ու կարճ աղօթքէն. «Տր. մեր, որ ի պասեքս աւրհնեալ յագեցաք երկնային կերակրով երկնա(յ)ին սեղանոյս, ընծայեմք քեզ զմիս

գառանցս , եւ աղաչեմք զի աւրհնեսցես զսոսա ի պարարումն և ի վայելս մարմնոց՝ բանիւ բերանոց մեր, որով կոչեմք զքո սբ. անունդ, եւ դրոշմեմք զնշան սբ. խաչիս։ Եւ որք ընդունիմք զսա ի քո շնորհացդ, յամենայն ժամ կալցուք զքեզ կերակուր հոգոց յանձինս մեր , շնորհաւք Տն. մերոյ Յի. Քի. ընդ որում քեզ հաւր և հոգոյդ սրբոյ փառ» եւն։

Ուրիշ օրինակի մը մէջ՝ 1436ին, գրուած եմ տարբեր օրհնութիւն մը, որ Վարդավառին ալ յատուկ է, ըստ որում գառին ճաշակումը տեսանք նաեւ նոյն օրը (տես, 372)։ Իր վերնագիրն է՝ «կանոն գառին Զատկի եւ Վարդավառի»։ Եւ բովանդակութիւնն է. «Տէր տանից եւ Աստուած ամենայն ուխտից, որ յամենայն ժամ լի առնես բարութեամբ զերկիւղածս քո, ընկալ զգառն պատարագիս զոր մատուցանեմք քեզ։ Աճեցոյ եւ բազմացոյ զտուն ծառայից քոց, որպէս աճեցուցեր եւ բազմացուցեր զտունն՝ Աբրահամու, զիսահակայն եւ զՅակոբայն։ Ի հաճոյս քեզ եղիցի պատարագս զայս որպէս զՀաբելին , եւ յամենայն ժամ քեզ պատարագս մատուսցուք՝ բարերարիդ եւ խնամողիդ։ Եւ քեզ վայելէ փառք իշխանութիւն» եւն։

Աղօթիցս զանազանութիւնը եւ անագան երեւումն ալ նշան են՝ թէ կանխաւ յատուկ պաշտօն մը չկար զառին։ Դարձեալ այս աղօթքը չի մերժեր զառին տրուելիք աղին օրհնութիւնն ալ։ Իսկ մինչեւ ցարդ մեր ըսածները խոտոր կը համեմատին Ռւս. Կոնիբիրի կարծեաց հետ, որ նկատելով զառնօրհնէից բացակայութիւնը գրչագրաց մէջ, հապճեպով հետեւցուց՝ թէ անասունս կը մորթուէր առանձնական տներու մէջ, եւ թէ կատարիչն էր ընտանեաց հայրը (Կոն. 113)։

Յետ օրհնութեանս կը պատուիրէ Շնորհալին «խորովել» զառնը, տալ քահանային բաժինը, եւ մնացածը ճաշակել (Ընդհ. 160)։

5. – Ժամ ճաշակման։ — Ըստ Տարօնացւոյն՝ զառնը կ'ուտէին «ի ճաշուն» (Թէոփ. 279). եւ ըստ Շնորհալւոյն՝ «ի նոր զատկիս առաւօտին». կամ ուրիշ բացատրութեամբ՝ «ի տուընջեան միաշաբաթին», յետ մերձենալոյ տէրունական խորհրդոյն (Ընդհ. 155, '57)։ Երեք շեղագրերդ ալ կը ցուցնեն Պատարագի ժամը։ Լատինք եւս մեզ նման կ'ուտէին «յետ սուրբ խորհրդոյն հաղորդելոյ» (անդ, 158)։ Գառն անոցմէ ընդունուած էր իւր բոլոր հանգամանօք հանդերձ։

6. — *Կարգ ճաշակման։* — Քան ամէն կերակուր կանխելու էր գառնը։ Խոսրովիկ կը պատմէ Ը դարուն՝ թէ մեծ պահքը կը լուծուէր նոյն իսկ ասոր ճաշակմամբ. «Պահի, կ'ըսէ, մինչեւ զենանի գառն զատկին» (Խոսր. քառ.)։ Ս. Խորհրդոյն հաղորդելէ վերջ, կը յարէ Տարօնացին, անպատեհ է անսուրբ կերակրոց մերձենալ. այլ նախ պէտք է «զմիս աղահար օրհնել եւ ուտել», եւ յետոյ միւսները (Թէոփ. 278)։ Եւ այդպէս ալ պիտի լինէր, քանի որ գառն եկեղեցւոյ դուռն իսկ կը բաշխուէր եւ կ'ուտուէր, ինչպէս տեսանք (աստ, 373)։ Հոս ալ մեր նախնիք նման էին Լատինաց, որ կ'ուտէին գառն «յառաջ քան զայլ հասարակաց կերակուրս» (Ընդհ. 158)։ Սակայն Շնորհալին բուժելու համար օտարաց գայթակղութիւնը, աւելորդ համարեցաւ եւ յորդորեց ջնջել այս խտրութիւնը. «Թէպէտ յառաջ, կ'ըսէ, քան զայլ կերակուրս եւ թէպէտ յետոյ, անվնաս են երկոքին» (անդ, 160)։

Աւելի տարօրինակ գաղափար մ'ալ կը գտնենք աւանդուած Ալաւկայ որդիէն։ Ով, կ'ըսէ, անպատրաստ է մօտենալու ս. Սեղանոյն, «նախ ի խորհրդական եւ յօրհնական յանբան գառին մսոյն կերիցէ, եւ ապա ի մարմնականն դառնալ կերակուր»

(ԴԱ)․ որպէս թէ ասով տեսակ մը հոգեւորական հաղորդութիւն կատարուէր։ Ի՞նչ եղաւ այս տեսութեան հնարողը, թէ ուրիշէ փոխ առաւ, յայտնի չէ։ Գիտենք միայն՝ որ նոյն յորդորը կը կրկնէ յետոյ Տաթեւացին ալ (Քրզ. ձմր. 605–6)։ Եւ սուտ Դամասկացին կը բամբասէ զՀայս, որ գառին մէջն ուտելով՝ «ոչ հաղորդին ի մարմնոյն Քրիստոսի» (Լոյս, 1905, էջ 1114)․ եւ նոյն մէջն չուտողը «մեռելոտի» կը կոչէին (անդ, 1906, էջ 1196), որպէս թէ հոգեւոր կենդանութեան պատճառ մը լինէր գառնը՝ նման տէրունական մարմնոյն։

7․ – *Սովորոյթներ*։ — Շնորհալին կը յիշատակէ ու կ'արգելու անպատեհ արարողութիւն մը․ այն է՝ «զսեամս դրանց օծանել արեամբ գառինն», որ լսած էր թէ տգէտներէ ոմանք կը գործադրէին․ «զի այն հրէական է», կ'ըսէ (Ընդհ. 160), ինչպէս որ էր իսկապէս, եւ զոր սուտ Դամասկացին եւս կը հաստատէ, յաւելմամբ ուրիշ պարագայի մը․ «զսեամս տանց եւ զճակատս (հաւատացելոց) արեամբ օծանելով» (Լոյս, 1905, էջ 1114)․ եւ ճակատինը կը կրկնէ այլուր՝ հարցնելով․ «Ընդէ՞ր արեամբ գառին դրոշմեցար» եւ պղծեցիր այն դրոշմը՝ զոր ընդունեցար Յի-

սուսի արեամբ (անդ, 1906, էջ 1197)։ Անշուշտ այս նպատակով ալ արիւնն հաւաքելով տուն կը տանէին, եւ զոր մինչեւ իսկ կ՚ուտէին իբրեւ սրբազան բան մը, որով Շնորհալին կը հարկադրի արգելուլ զայդ, պիղծ յայտարարելով արիւնը (Ընդհ. 160)։ Այս սովորութեան կ՚ակնարկէ նոյն դարու մեր առակախօսն ալ, ըսելով՝ թէ աղուէսը մատաղաց զենման ժամանակ «զարիւնն եռ լեզոյր». եւ երբ կը մեղադրէին զինքը, պատասխանեց. «Նուիրեալ է եւ այդպէս արժան է առնել» (Գոշ՝ Առկ. 84)։ Հայոց այս խնդրոյ մասին ունեցած հակաճառութիւնն է՝ զոր կը ներփակէ Մխիթար այս առակին մէջ։

Լամբրոնացւոյն Յունաց հետ ունեցած անվաւեր վիճաբանութեան մէջ անոնք կ՚ամբաստանեն՝ թէ Հայք խաչերն ալ՝ զորս կ՚օրհնեն, «զարին արեամբ մկրտեն»։ Մեր ջատագովը փոխանակ ժխտելու՝ փախըստեան պատասխան մը կու տայ, ըսելով՝ թէ այդպիսի «նանիր քննութեամբ» մեր աշխարհը ձեզմէ հեռացուցեր էք (Լմբ. Դսպ. 16)։ Եւ սով կը հաստատէ մանաւանդ եղած ամբաստանութիւնը։

8. – Կարմիր ձու։ — Եթէ միջին դարուն մօտենայինք մեր հարց զատկական սեղանին, անոր վրայ զարին հետ պիտի

տեսնէինք կարմրաներկ հաւկիթներ ալ, իբր սեպհական նոյն տօնին։ Զայս կը յիշեն Տաթեւացին եւ Յհ. Եզնկացին։ Առաջինը կ'ըսէ, թէ ճրագալոյցի շաբաթ օրը «ձու ներկեմք կարմիր». եւ թէ «միայն ի տօնի զատկիս ներկեմք ձու»։ Ինքն ասոր խորհրդաւոր նշանակութիւն մ'ալ կու տայ, համարելով զձուն օրինակ «բոլոր աշխարհի», համաձայն իմաստնոց՝ որոնք անոր կեղեւը երկնից նմանեցուցին, մզնաձեւը կամ մաշկը՝ օդին, սպիտակուցը՝ ջրոյ, եւ դեղինը՝ երկրիս։ Իսկ «ներկն նշանակէ՝ թէ բոլոր աշխարհս Քրիստոսի արեամբ գնեցաւ. զոր մեզ ի ձեռն առեալ՝ յայտնապէս զփրկութիւն մեր քարոզեմք» (Քրզ. ձմր. 606)։

Գեղեցիկ է այդ մեկնութիւնը։ Բայց մեք գիտենք՝ որ ձուին տրուած այդ կարեւորութիւնը քրիստոնէութենէն հին է։ Եգիպտոս, Յունաստան եւ Հռովմ գարնան սկիզբը ձու կը նուիրէին աստուածոց՝ իբրեւ խորհրդանշան արգասաւորութեան։ Պարսկաստան եւ Հնդկաստան նուիրական կը համարէին զայն, եւ կապած էին աշխարհի ստեղծման աւանդութեանց հետ։ Պարսիկները նոյնը գունաւորած՝ իրարու կ'ընծայէին. եւ Հրեայք իրենց պասեքին կը ճաշակէին զայն խորոված։ Եւրոպա

*ժառանգելով զայն հիներէն, միջին դարուն պէսպէս կրօնական նկարներով ու գոյնե֊րով կը ներկէին զատկի օրը, եւ օրհնե֊լով՝ բարեկամաց կը նուիրէին։ Ես համո֊զուած եմ՝ թէ այդ շրջանին եւ արեւմուտ֊քէն մտաւ մեր մէջ ալ կարմիր ձուն. ո֊րով անծանօթ է մեր երիցագոյն մատե֊նագրաց, եւ կը պակասի դեռ Աշխարու֊նւոյն զատկական ճաշի մանր նկարագրին մէջ ալ (տես, 368–9)։*

*Հաւկթին ճաշակումն սկսաւ կանխել քան զգառին ալ։ Տաթեւացին կ'ըսէ՝ թէ «փրկութեանն մերոյ (այս ինքն մեր փըր֊կութեան այդ օրինակին) է հաղորդելի նախկին, եւ ապա յայլ կերակուրս» (Քրզ. ձմր. 606)։ Նոյնը կը խրատէ Յովհ. Երզն֊կացին եւս. «զատիկն եւ կարմիր ձուն՝... անօթի եւ առանց ուտելոյ» նախ ուրիշ բան (Ճո. ԻԴ)։ Ասոնց տեղեկութիւնը կը լրացնէ 1650ին ի Կ. Պոլիս գրուած տօ֊նացոյց մը, որ կ'ըսէ՝ թէ աւագ հինգշաբ֊թի օր եօթներորդ ժամուն երբ կը ժողո֊վին եկեղեցւոյ դուռը, «ուրհնեն աղ զգատկի գառին եւ խմոր եւ ռաւկիր նմին». ուրեմն ձուն ալ կ'օրհնէին։ Իւ խթման երեկոյին կը յաւելու՝ թէ «է առաջին կերակուրն կարմիր ձուն»։ Շատ տարօրինակ է իւր յորդորը՝ զոր այս տեղ կու տայ. «Թէ*

*կարնաս՝ անարատ կուլ տուր, զի խորհրդաւոր է»։ Թէ կարեւս. ուրեմն այդ գրողին կոկորդն ինքնին կը բողոքէր՝ ամբողջ հաւկիթը կուլ տալու այդ անտեղի գաղափարին կամ սովորութեան դէմ։*

*Տաթեւացւոյն վերոյիշեալ բացատրութիւնը, «զոր (ձուն), մեք ի ձեռն առեալ, յայտնապէս զփրկութիւն մեր քարոզեմք», պարզ ուտելէ աւելի բանի մը մասին կը խօսի, ինչպէս կը կարծեմ. այս ինքն է՝ կարմիր հաւկիթները բռնած իրենք ձեռներուն մէջ, ուրախութեամբ ման կու գային փողոցները, «յայտնապէս քարոզելով» նոյն օրուան յիշատակը։*



## Ե. ՀԱՅ ՄԱՏԱՂԸ ԶՈՀ ԷՐ

*Տեսանք հայ ազգային արտաքին այլազան նկարագիրը։ Բայց խորհող միտքը հոս չի կասիր, եւ կը ձկտի խնդրոյն հոգեբանութեան՝ որո՛յ մէջ է անոր լուծումը, ուստի եւ կարեւորագոյն կէտը։ Իմ առաջարկութիւնը՝ «հայ մատաղը զոհ՛» յանդուգն է եւ ծանր, գիտեմ։ Դարերու բողոքով ժխտուած ամբաստանութիւնն է՝ զոր ստիպուած եմ կրկնելու. եւ զիս ըս-*

տիպողն է բանասիրի այն անկեղծութիւնը՝ որ խուզարկութեանցս ու տեսութեանցս մէջ առաջնորդեց ինձ մինչեւ հոս ։ Հայ մատաղն ուրեմն զոհ էր . եւ ոչ միայն հայը, այլ երբեմն օտարացն ալ։ Եւ այս երկուքն ալ պիտի տեսնենք այժմ անկախ կշռադատութեամբ մը։

1. – Հայոց մէջ։ — Ա. Մատաղն՝ ընդհանուր իմաստով՝ մեր քով երկու շրջան ունեցած է, զոր ես կը կոչեմ հին եւ նոր։ Այս երկու շրջանք իրարու չեն նմանիր բնաւ։ Առաջնոյն մէջ, որ շատ կարճատեւ եղած է, էր բուն իսկ քրիստոնէական նախկին ագապը. բարեգործական սեղան մը, որ կը տրուի հրաւիրողին տանը մէջ՝ նըման սովորական ճաշերու (տես, 319–20)։ Կրօնական որ եւ է յատուկ ծէս չի յիշուիր հոդ. եւ ոչ ալ մատաղի օրհնութեան առանձին կանոն մը, թէեւ վերջինս հաւանական է (տես, 330) ։ Եթէ ծիսական ստգտանելի սովորոյթներ մտած լինէին հոդ, Մանդակունին՝ որ իւր Զ ճառով մատաղի հանդէսը կը մանրանկարէ, չպիտի խնայէր իւր խարազանը, զոր ամէն տեղ եւ նոյն ճառին մէջ իսկ կը հասցնէ ուրիշ կարգի զեղծմանց դէմ։ Կրնանք ուրեմն հետեւցնել՝ թէ այդ շրջանին ագապը դեռ մաքուր էր, գէթ ազգին մեծամասնութեան

մէջ. եւ Ջենոբայ կողմանէ Տրդատայ վերագրուած «պատարագք ողջակիզաց» (աստ, 315) է դարու խմբագրողին ժամանակի գաղափարաց ծնունդ համարելու ենք։

Բ. Երկրորդ շրջանը կը սկսի՝ դեռ առաջինը չվերջացած. եւ այդ սկիզբն համեմատաբար անմեղ է տակաւին։ Ե դարու վերջերը տներէն զատ ուխտավայրերն ալ արդէն կ'ընդունին մատաղներ (աստ, 342)։ Զ դարուն դեռ տան մէջ եւս կը շարունակեն ուտել, բայց կ'օրհնուին յեկեղեցին (330)։ Իսկ Է դարուն ճաշակումն ալ օրհնութեան հետ սրբավայրը կ'երթայ (320)։ Հաւանօրէն այդ ժամանակ արդէն սկսած է մատաղին ընդհանուր խանգարումն իսկ՝ ազդեցութեամբ հրէականութեան եւ օժանդակութեամբ հեթանոսականին։ Հին կտակարանը, հանդիսավայր մովսիսական ձեւապաշտ կրօնից, իւր հայացած օրէն իսկ խոր հրապոյր մ'ազդեց մեր ժողովրդեան, որ Իսրայելի պէս՝ կրօնից տեսականէն աւելի նիւթականին փարող, ոգիէն աւելի ձեւը փնտռող, շուտով այլափոխեց քրիստոնէական ագապը. եւ սկսելով Ե դարէն, հետ զհետէ զգեցուց անոր զոհագործական ծիսեր ու կրօնական հանդիսաւորութիւն մը, մոռնալով՝ որ Գողգոթայի աստուածային պատարագն անպիտանացուց ու ջըն-

ջեց սուրբական հին զոհերը, անոնց տեղ դնելով ս. սեղանոյն անարիւն զոհը. եւ թէ քրիստոնէական եկեղեցին սկսաւ իր խանձարրէն՝ հրաժարեցաւ անոցմէ (Եբր. Ժ եւն)։ Ագապի այդ յեղաշրջութիւնը մեր հարց քով՝ լոկ արտաքին կամ պատահական բան մը չէ. այլ զոհի խոր դրոշմն է՝ որ կը կայանայ մատաղին թէ ձեւին եւ թէ գաղափարին մէջ։

1. Ջերի կողմանէ հետեւեալ ծանր աղաւաղմունքը կը կրէ։ Համարձակօրէն կը մկրտուի՝ ոչ միայն հրէական պատարագ անուամբ, որ դեռ տանելի է, այլ եւ ողջակէզ եւ զոհ կոչումներով (տես, 312, '52), որոց ընիկ իմաստը շատ յայտնի է եւ անկարօտ մեկնութեան։ Ժամանակ մ'որձ են հայ մատաղի անասունք, ինչպէս յաճախ արու էին հրէականք ու հեթանոսականք ալ (325–6)։ Իսրայէլ իր զոհերը կը ձօնէր Եհովայի տաճարին մէջ, կը հանէր սեղանին վրայ, ու Ղեւտացւոց ձեռքով. Հայն ալ իր մատաղը տնէն հեռացուցած՝ կը մատուցանէր եկեղեցւոյ գաւթին մէջ, կը դնէր ս. սեղանին վրայ, եւ իր քահանայից ձեռքով (320, '42, '49, '73)։ Աղ կը կերցնէ սա անասնոյն, եւ անոր վրայ անոյշ իւղ կը ցանէ, ինչպէս Եբրայեցին կ'ընէր իր պատարագաց (330, '34, '47,

'58, '74)։ Թէ մին եւ թէ միւսը կը խորովեն իրենց զոհերը (334, '76)։ Երկուքն ալ կը ճաշակեն զանոնք սրբավայրին մէջ իսկ (320, '50, '62, '73), եւ կը սպառեն նոյն օրը (365)։ Եգիպտոսէ փախըստական ազգն իւր փրկութեան զատիկը կը յիշատակէ տարեւոր ոչխարով. Լուսաւորչի զաւակներն ալ նախ տարեւոր ոչխարով, ապա գառամբ կը պատուեն իրենց զատիկը (370–1)։ Երկուքն ալ նոյն անասնոյն արիւնով կը ներկեն իրենց դըրանց սեմերը, եւ այս նշանը կը յաւելու Հայը նաեւ իւր ճակատին ու խաչերուն վրայ՝ մեռոնին քով (378–9)։ Հրեայն իւր զոհերէն որոշ բաժին կը հանէ Ղեւտացւոյն, եւ Հայը մասն կու տայ իւր քահանային նոյն կամ գրեթէ նոյն ոճով (335, '51, '57, '76)։

Հեթանոսութիւնն ալ, ուսկից մեր հարց դժուարին բաժանումը նկատեցինք կանխաւ (244–5), կը հասնի լեցնելու հրէականութեան թողած պակասը ձեւամոլ ազգիս, եւ մատաղի անասնոյն վրայ ժամանակ մ'որոնել կու տայ սպիտակ գոյնը (325). անոր մարմնոյն ու գլխին կը խճողէ պաճուճանաց շողշողուն կոյտ մը (343–6). եւ ճաշակողաց բաժակէն յատուկ բաժին կը հանէ մեռելոյն (363)։ — Այս

բոլորն ուրեմն կատարեալ եղծումն էր քրիստոնէական ազգային նախկին՝ հարազատ ու պարզ ձեւին։

2. Ադոր հետ կատարելապէս զուգընթաց էր գաղափարին խանգարումն ալ, որ մեր խնդրոյն մէջ կարեւորագոյն է քան արտաքինը։ Ի՞նչ էր այս ճաշին սկզբնական իմաստը։ Սեղանակցութեամբ ջերմ պահել եղբայրական միութիւնը հաւատացելոց մէջ, եւ չքաւոր կրօնակիցները կերակրելով՝ Աստուծոյ առջեւ արդիւնք շահիլ։ Այս էր անոր միակ վախճանը Մանդակունեայն համոզմանց մէջ (տես, 322)։ Եւ եթէ ի յիշատակ ննջեցելոց էր, թէ անոնց հոգւոյն եւ թէ նուիրողին նպաստաւոր պիտի լինէր, ինչպէս յայտնի է Հարց խօսքերէն (տես, 353–4), եւ յարակից ազօթից ոմանց բովանդակութենէն (359 – 60), որոնք մաքուր հնութեան մը դրոշմը կը կրեն։

Բայց երկրորդ շրջանին բոլորովին յեղաշրջուած է անոր դիտաւորութիւնը։ Հոն կերակուրն այլ եւս տուողին կամ հանգուցելոյն միայն շահաւոր չէ, այլ ադոնց հետ եւ ադոցմէ աւելի՝ ճաշակողաց օգտակար է։ Ուտեստը կը դադրի լոկ սնունդ մը լինելէ, եւ կը դառնայ հոգեւոր ու սրբազան նիւթ մը, որ շնորհք կու տայ բո-

լոր կերողաց, ինչպէս մկրտութեան ջուրը կամ մեռոնն իրենց մերձեցողաց։ Բարին այլ եւս գործը չէ, այլ նիւթն իսկ։ Ի՞նչ բան կայ աւելի հեղինակաւոր՝ քան ամբողջ Հայ եկեղեցւոյ ընդունած ու բոլոր դարերու մէջ գործածած Մաշտոցը։ Եւ ահա սա է՝ որ կը հաստատէ այս գաղափարը, առաջին շրջանէն բովանդակութեամբ՝ ուստի եւ գոյութեամբ ալ հեռի աղօթից մէջ մաղթելով անասնոյն տրուելի ազին վրայ, որպէս զի «եղիցի մեզ ի սրբութիւն քաւութեան եւ ի թողութիւն մեղաց» (աստ, 347)։ Նոյնպէս պատարագի հացին վրայ, թէ «շնորհեա ամենեցուն որք հաղորդին ի սմանէ՝ զփրկութիւն առողջութեան կենաց եւ քաւութեան մեղաց» (362)։ կամ թէ նոյն ճաշակողաց «եղիցի ի սրբութիւն եւ ի քաւութիւն մեղաց, ի կենդանութիւն եւ ի փրկութիւն անձանց» (332)։ շատ անզգոյշ բացատրութիւնք, որոց մէջ ակներև է մատաղին տրուած չափազանց եւ թիւր նշանակութիւնը, եւ կ'արդարացնեն սուտ Դամասկացւոյն զայթակղութիւնը (աստ, 378), որ ուրիշ տեղ մ'ալ կը կրկնէ՝ թէ Հայք զենեալն ուտելով՝ «այնիւ ասեն ունել զթողութիւն մեղաց կենդանեաց եւ մեռելոց» (Լոյս, 1905, էջ 1114)։

Լա՛ւ, ուսկի՞ց էր այդ համոզումը, եթէ ոչ հրէական զոհերէն, որոնք նոյնպէս սահմանուած էին մատուցողաց մեղաց թողութեան (Ղեւտ. Դ եւն) եւ ճաշակողաց ալ սրբութեան (անդ, Զ, 27)։ Եւ ոչ միայն այդ զոհից արդիւնքը, այլ գաղափարն ինքնին կապած էին մեր հարք մատաղին հետ։ Տաթեւացին, հայ աւանդութեանց այդ նախանձայոյզ պաշտպանը, կը հաստատէ անկեղծօրէն սոյն ճշմարտութիւնս, ըսելով՝ թէ մատաղը «պատարագ եւ նուէրք է Աստուծոյ, որպէս Աբէլ, Նոյ եւ Աբրահամ մատուցանէին» (Հրց. 657)․ եւ մեք գիտենք՝ թէ ի՛նչ էին անոնց մատուցածները։ Ուրիշ մը, Որբելեանը, նոյնքան ազգայնամոլ, հայ մատաղը պաշտպանելու համար՝ նոյնպէս նահապետաց ու հին օրինաց աստուածահրաման եւ աստուածահաճոյ զոհերուն կ'ապաւինի եւ անոնց կը յենու բոլոր ուժով (Հկճ. Ժ)։ Այս գաղափարով էր անշուշտ՝ որ միջին դարու մեր եկեղեցականներէն ոմանք պահոց անգամ լուծիչ չէին համարեր ագապի մսին ճաշակումը։ «Են ոմանք ի տգէտ քահանայից, կ'ըսէ Ալաւկայ որդին, որ հրաման տան քառասնապահից ի մատաղոյ մսոյ ճաշակել եւ յայլմէ զատանել»․ որուն բնականապէս կը հակառակի ինք,

պատճառաբանելով՝ թէ «մի է մատաղամիս եւ խառնամիս առ ի հեշտութիւն եւ փափկութիւն մարմնոյ» (ԴԱ)։

Քան զայլս կը գերազանցէ զատկական գառին աղաւաղութիւնը։ Անոր զենումը կը համարուի «ի խորհուրդ անարատ Գառինն՝ որ ի վերայ մեղսաքաւիչ սեղանոյն պատարագի՝» ըստ Ալաւկայ որդւոյն (ԴԱ), որուն կը ձայնակցին նաեւ Սիւնեաց պատմիչն Օրբելեան (Հկճ. Է) եւ Տաթեւացին (Հրց. 657)․ երեքն ալ նշանաւոր վարդապետներ իրենց ժամանակին, որոնք անտարակոյս հասարակաց կարծիքը կը ներկայացնեն․ մանաւանդ իրենց դարերէն ալ հին կարծիք մը՝ զոր տեսանք Արշարունոյն վկայութեան մէջ, «գառն՝ որ բառնայ զմեղս աշխարհի» (աստ, 370–1)․ այս ինքն օրինակ բարձողին մեղաց։ Ալաւկայ որդին խիզախաբար աւելի յառաջ կ'երթայ, եւ կը դաւանի զենեալն ուղղակի «խորհրդական եւ օրինական անբան գառն», որ պարզապէս կը նշանակէ հրէական զատկին զոհը (աստ, 377)։ Եւ Տաթեւացին անոր արձագանգ կու տայ՝ թէ «հին զատիկն» է այն, եւ անկից ճաշակողը կը հաղորդուի «հնոյն եւ օրինակին» (Քրզ. ձմր. 605–6)․ եւ թէ գառին զենումն «առակ եւ օրինակ է ճշմարիտ

պատարագին Քրիստոսի» (Հրց. 657), ինչպէս զեւտական զոհերն ալ ճիշդ նոյնպէս «սուեր» եւ «օրինակ» էին փրկչական զոհին՝ ըստ առաքելական բացատրութեան (Եբր. Ժ, 1. Ը, 5)։ Ուրեմն ուր ալ դառնանք, Հայոց մատաղին մէջ հին զոհերը կը գտնենք միշտ։

Գ. Եւ ոչ մեք միայն, այլ Հայոց միջին դարու օտար հակառակորդներն ալ կը տեսնէին զայս, եւ չէին վարանիր անոնց ուղղել իրենց կծու սլաքները։ «Ի տօնս առնել մատաղ՝ ամբաստանին Հայք հրէաբար առնել», կ՚ըսէ Մխ. Գոշ, եւ փոխանակ ժխտելու՝ կը լռէ. լռութիւն՝ որ շատ բան կ՚ըսէ մեզ (Արրտ. 1900, էջ 562)։ Ամբաստանիչներէդ մին էր յաճախ յիշեալն սուտ Դամասկացի՝ Ասորոց կողմանէ, որ մեր պատարագները կը սահմանէ նախատական լեզուով մը՝ «ըստ օրինացն Հրէից գարշելի զոհս» (Լոյս, 1905, էջ 1114). եւ մեր հրէամիտ հարց պատասխանելով՝ կ՚ըսէ. «Եթէ օրինակ Քրիստոսի մատուցանես զնա (զառն), ստես. զի ոչ կարօտիս օրինակի, զի ճշմարտութիւնն պատրաստ է». այս ինքն զՔրիստոս իսկ ունինք։ Ապա պնդելով զատկական զոհիս անտեղութեան եւ աւետարանին հետ անհաշտութեան վրայ, կը յարէ. «Եթէ զե-

նաւ ձեզ զատիկն Քրիստոս (ըստ Պաւղոսի), այս ո՞ր զատիկն էր զոր երկրորդն զեներ» (անդ, 1906, էջ 1197)։

Իսկ Ցունաց ձայնատուն էր Թէոփիստէ, որ նոյնպէս կը դատապարտէր հայ մատաղը՝ թէ «այդ ի հին օրինացն է եւ Հրէիցն է նման»։ Որուն պատասխանելով մեր բարկացայտ Տարօնացին, կը ջանայ՝ թէեւ բնականապէս չի յաջողիր՝ սրբել ազգէն այդ ամբաստանութիւնը։ «Մերս, կ՚ըսէ, կատարի ի խորհուրդ կերակրոյ՝ որպէս զամենայն կերակուր. եւ միայն միս օրհնեալ անուանի» (Թէոփ. 278)։ Աննշան համեմատութիւն մ՚ալ կ՚ընէ հրէականին ու հայկականին միջեւ, թէ մեք Եբրայեցւոց նման գիշերը չենք ուտեր, ոչ կանգուն, եւ ոչ ալ բաղարջով (անդ, 279–80). համեմատութիւն՝ որոյ դէմ մեք աւելի խոշորն ու ցայտունը դըրինք վերեւ։ Ասորոց հակառակութիւնը կը շարունակէր տակաւին Շնորհալւոյն օրով, որոց ձայնակից էին Միջագետաց լուսաւորեալ Հայերէն ալ, ոմանք ըսելով՝ թէ «բարիոք» է մատաղը, եւ ուրիշներ՝ թէ «չար եւ խոտելի» իբրեւ հրէական (Ընդհ. 154)։ Ասորի առաջնորդք պատուիրած էին մինչեւ անգամ Հայոց պանրէն զգուշանալ, որպէս զի մի՛ գուցէ զատկի

գառին խախացէն խառնուած լինէր անոր մէջ (անդ, 157)։ Շնորհալին անոնց ի պատասխանի՝ ինքն ալ կը կրկնէ Տարօնացւոյն յիշեալ համեմատութիւնը. բայց մի եւ նոյն ժամանակ խոստովանելով մատաղին մէջ գոյութիւնը «հին օրինէն» ծեսերու, եւ գառին արեան «հրէական» ծագումը (անդ, 160)։

Արդարեւ պէտք է ըսել՝ թէ մեր այդ երկու ջատագովները կը կատարեն դերը փաստաբանի մը, որ հարկադրուած է չքմեղելու իւր պաշտպանեալը, եւ կամ գոնէ մեղմելու անոր յանցանքը՝ եթէ շատ յայտնի է։ Նոյնպէս վարուեր է Անանիա Նարեկացին եւս՝ Թոնդրակեցող դէմ գրուածին մէջ, որոնք «հեթանոսական զոհ» կը համարէին հայ մատաղը։ Այս անծանօթ գրութիւնն յիշելով Օրբելեանը, ինքն ալ կը պաշտպանէ տոհմային աւանդութիւնը. բայց ոչ թէ ժխտելու որկար զէնքին ապաւինելով, այլ իւր ընդարձակ համարձակութեամբ դաւանելով մատաղին նոյնութիւնը հրէական զոհից հետ՝, եւ իբր այսպիսի ջատագովելով զայն, ինչպէս ըսի վերեւ (389)։ Գովելի է անշուշտ, նկատելով ժամանակի հանգամանքները, Տարօնացւոյն եւ Շնորհալւոյն ժխտողական դրութիւնն ալ. բայց հարկաւ ան-

բաւական համոզելու զմեզ, որ շատ մօտէն ու շատ խոր կերպով կը շօշափենք մեր ազգին մտաց թելերը։ Եւ մեր հարց բարոյից այս ներքին քննութեան պահուն՝ պէտք չենք զգար ձգելու մեր եւ անոնց մէջ այն վարագոյրը, զոր յիշեալ երկու վարդապետները պատշաճ համարեցան պարզել օտարին խոժոռ եւ աններող աչերուն դէմ։ Աղոնց օրինակին ու բացատրութեանց հետեւեցան նաեւ արդի գրողներէ ոմանք, ինչպէս Յակ. Նալեան (Վէմ. 651–4), Տէրոյենց (Իրաւ. Բ, 206–36), Լոյս հանդէսը (1905, էջ 298) եւ ուրիշներ, որոց ուղղութեան հարկը կամ օգուտը գէթ մեր օրով՝ չեմ ըմբռներ ես, որ կը սիրեմ իրապաշտութիւնը պատմութեան մէջ։

2. – *Օտարաց մէջ։* — Այն բուռն պայքարը սակայն, զոր դարերու շրջանին մէջ մղեցին օտարները Հայոց զոհակերպ մատաղին դէմ, պիտի չունենար նոյն ուժգնութիւնը, եթէ այդ հակառակորդները գիտնային՝ թէ իրենց ալ կարելի էր՝ գոնէ երբեմն՝ ուղղել նոյն կշտամբութիւնը։ Կոնիբիր իւր յօդուածին մէջ կը նկրտի ցուցնել՝ թէ «անասնոց զոհերը» կային հին ընդհանուր եկեղեցեաց մէջ. եւ առ այս յառաջ կը բերէ յոյն գրչագրերէ մատաղի

*օրհնութեան կանոններ՝ գաղերէն թարգմանութեամբ, որոցմէ կտոր մը կը հայացնեմ հոս։ Այսպէս՝ Հռովմայ Բարբերինեան մատենադարանի Եւքոլոգիոնի կամ մաշտոցի մը մէջ, որ Ը դարու համարուած է, գտեր է «Աղօթք վասն զոհի եզանց», յորում ուշագրաւ է այս տեղին. «Հրամայեցեր եւ մեզ՝ ծառայիցս քոց մեղաւորաց եւ անարժանից՝ զոհել կենդանիս անբանասունս եւ թռչունս ի շահ հոգւոց մերոց։ Տէր եւ թագաւոր գթած առ մարդիկ, ընկալ եւ զկամակար նուէր ծառայիցս քոց՝ ի յիշատակ այսր սրբոյ քո…։ Եւ քանզի նուիրեն սոքա քեզ ի փրկանս փոխարինի զանասունս զայս, ճարպ սորին եղիցի որպէս խունկ առաջի սուրբ փառաց քոց։ Հեղումն արեան սորա եղիցի հացն ճոխութեան ողորմութեան, եւ միս սորին՝ ի բժշկութիւն մարմնական ցաւոց սոցուն» են* (109)։ *Ուսուցչապետն այս աղօթքը տեսեր է նաեւ Գրոտտա Փերրատայի երկու գրչագրաց մէջ, ժ եւ ժԱ դարուց կարծուած։ Նոյն երրեակ օրինակներն ունին դարձեալ երկու առանձին կանոններ զառն օրհնելու, — զորս Գոյար եւս հրատարակեց յոյն մաշտոցին մէջ (Գոյ.* 566–7), *— եւ աղօթք մը «Վասն զոհի եզանց եւ անբանից եւ այլոց անասնոց»* (*կոն.* 110)։

Բայց ադոնց մէջ կարեւորագոյնն է անշուշտ առաջինը, յորում մեք կը տեսնենք նոյն ինքն մեր մատաղը։ Յայտնապէս զոհ (sacrifice) է այն՝ ըստ թարգմանչի գործածած բառին։ Անոր միսն առողջութիւն է հիւանդաց, ինչպէս հայ զոհերունը. եւ ճարպը հաճելի նուէր Աստուծոյ, ինչպէս ղեւտականացն էր։ Ուրեմն կատարեալ է գաղափարի միութիւնն այդ զոհին եւ հայ մատաղին միջեւ։

Կոնիբէր կը յայտնէ՝ թէ վրացի գրչագրաց մէջ ալ կան մատաղի օրհնութեան կանոններ (114)։ Իսկ ես պիտի յաւելում՝ թէ Լատինաց զատին ս. սեղանին վրայ օրհնուիլն ալ (տես, 374) աւելի մօտ է մեր մատաղազոհին քան հին ագապին։ Նկատելով սակայն Յունաց եւ Ասորոց հակառակութիւնը հայ մատաղին, կը ստիպուինք հետեւցնել՝ թէ միջին դարուն այլ եւս պաշտօնական չէր Յունաց վերոյիշեալ «զոհի» աղօթքը. այլ դեռ ցրիւ մնացած ի գործածութեան։ Յամենայն դէպս հաւանական չէ՝ որ հայ մատաղին արտաքին աղճատ ձեւերն ալ ունեցած լինին անոնք։



# ՄԱՍՆ ՀԻՆԳԵՐՈՐԴ

## ՅԱՏՈՒԿ ՃԱՇԵՐ. — ՊԱՀՔԵՐ ԵՒ ԾՈՄԵՐ

*Միայն մեր տեսած հոգեւոր սեղանները չէին՝ որ առանձին նկարագիր ունենան։ Կային ուրիշ կենցաղական բազմաթիւ առիթներ ալ, որոց մէջ կերակրոց մասնաւոր զանազանութիւն մը կը մտնէր։ Սնունդը՝ բնախօսական ու բարոյախօսական օրինօք կախուած էր միշտ մարդուն հոգեկան տրամադրութեանց վիճակէն, որ յառաջ կու գար անձնական, ընտանեկան կամ ընկերային պատճառներէ, որոնք կրնային լինել զուարթ կամ տխուր։ Ըստ այսմ ճաշն ալ կը լինէր աւելի կամ նուազ ուրախ եւ տրտում, պարարտ կամ չոր։ Թէ այս պարագայն ո՛րքան սերտիւ կապուած է եղեր ամէն ժամանակի մարդկութեան հետ, ամէն ապացոյցէ յառաջ մեր փորձն ու զգացումները կը վկայեն։ Վիշտը կը գողնայ մեր ախորժը, ժպիտը զայն մեզ կը վերադարձնէ։*



## Ա. ՅԱՏՈՒԿ ՃԱՇԵՐ

1. – *Հարսանիք.* — *Ընտանեկան կենաց այս ամենէն ցնծուն ու շռնդալից հանդէսն իրեն հետ կը բերէր նաեւ կերակրոց եւ ըմպելեաց մեծ շռայլութիւն մը։ Հոս կը մտնէր բուն խնճոյքը իր բոլոր չափազանցութեամբ հանդերձ, զոր չէր կարող Օձնեցին աւելի լաւ սահմանել՝ քան կոչելով «մարմնական զեղխութիւն»* (24)։ *Շնորհալին կը շեշտէ «գինարբութեան եւ ուրախութեան» անչափ առատութիւնն անոր մէջ. հոն էին ճշմարիտ «գինեմոլքն յարբեցութեան ըմբռնեալ»* (*Ընդհ.* 42), *որոնք յետոյ իրենց անզգամալոյծ մարմինները մինչեւ եկեղեցի կը քաշէին հարսանեկան թափօրին ետեւէն* (*անդ,* 41. *Յհ. Եզկ. Խր. Մվ. Եզկ.*) *եւ որոց մէջ կը փայլէին իրենց լկտի համարձակութեամբ՝ «անառակ կանայք եւ արք», որոնք հրաւիրուած էին զուարթացնել հարսանիքը* (*Ընդհ.* 42)։ *Այս գիներբութեանց կ'ընկերէին նաեւ պարեր,*

գուսանական երգեր ու զրոյցներ, զորս հին Հարսանեաց նկարագրութեանս մէջ աւելի մանր յիշած եմ (Թէոդ. 200–7), եւ որոց ակնարկեցինք մեր սովորական կոչնոց մէջ ալ (աստ, 206, '9)։

Ուշագրաւ են մանաւանդ սոյն հանդիսին սեպհական ուտելիքները, որոց կը հանդիպինք Գեւորգ Երզնկացւոյն քով։ Եւ են «Նուռն, խնձորն անուշահոտ՝ սպիտակ եւ կարմիր». գոյներ՝ որ կը յիշեցնեն պսակի նարօտին երանգն ու խորհուրդը (Թէոդ. 204)։ Եւ վերջապէս «ձու կարմիր», որ մեր քով ահա այս առթիւ ալ կ'ուտուի (Գեւ.), բայց նորամուտ կամ տեղական սովորութեամբ. զի Տաթեւացին «միայն» զատկին գիտէ զայս (աստ, 380)։ Եթէ կարելի լինէր հոս ալ ենթադրել զատկական հաւկթին խորհուրդը (անդ), դեռ բաղձալի պիտի մնար նռան ու խնձորին իսկական նշանակութիւնը։

2. — Ծնունդ եւ Մկրտութիւն։ — Ընտանեաց նորածին անդամոց երեւումն ալ կը պահանջէր զուարթ խնճոյք մը, զոր կը յիշատակէ Յաճախապատումն իսկ, ցուցնելով սովորութեանս մեծ հնութիւնը։ «Բազում ուրախութիւն ցուցանեն, կ'ըսէ, ի ծննդեան, եւ բարեկամօք եւ մերձաւորօք տօն կատարի ծննդեան եւ անուանակո-

չորեան» (126)։ Որովհետեւ այդ դարուն սովորական էր եւ չափազանց մկրտուիլ, ծննդեան հանդէսը մկրտութենէն հեռի եւ առանձին կը կատարուէր։ Բայց միջին դարուն, ուր արդէն հաստատուն էր ութօրեայ մուտն յաւազան, այս առթիւ կը կատարուէր հին հանդէսը, զոր Աւաւկայ որդին հարսանեաց յար եւ նման կը նկարագրէ՝ ըսելով. «Յաւուր լուսաւորութեան զմանկունս, նոյնպէս ի տան հարսանեաց... մի՛ ոք իշխեսցէ կաքաւել կամ պարել ըստ ազգի ազգի հեթանոսական խաղուց» (ԻԴ)։ Այս տեղ յիշուած պարագայք արդարեւ մասն են կոչնոց (հմմտ. աստ, 211), զոր Յովհ. Եզնկացին յայտնապէս ալ կ'աւանդէ հետագայ բացատրութեամբ. «Մի՛ զմկրտութիւնն որպէս մարմնական գործ համարիք, եւ ծիծաղելով եւ արբեցութեամբ առնէք» (Խրատ. Դ). եւ արբեցութիւնը գիտենք որ խնճոյից մէկ պատկերն էր։

3. — Բարեկենդան։ — Մնացորդ է հին ազգերու սովորութեան, որոնք յատուկ օրեր ունէին աստուածոց նուիրուած, եւ անոնց մէջ ամէն տեսակ զեղխութիւն կը գործէին համարձակ եւ անարգել։ Այսպէս էին Հռովմայ սատուռնալեանք եւ Յունաց դիոնիսեանք (Դար. Դ, 1080. Բ, 230), որոց երկրորդին թարգմանիչ ու հոմանիշ

է Հայոց «սպանդարամետական պաշտօնը» (Բ Մակ. Զ, 3)։ Այս հանդէսն է ուրեմն քրիստոնէութեան բարեկենդանը, եւ անոր համար շատ ալ նման աղոր ամէն ազգաց մէջ։

Մեր բարեկենդանին երիցագոյն վկայն է Մանդակունին, որ զայն կը նկարագրէ կատարեալ հեթանոսական գոյներով։ «Են ոմանք, կ'ըսէ, որ յորժամ կամին մտանել ի պահս», այս ինքն մեծ պահք մտնելէ անմիջապէս յառաջ, «փութան ի լուանալ եւ յօծանել՝» ի պատրաստութիւն խնճոյից (տես, 146–50), որոնք այդ միջոցին կը յաջորդեն իրարու. «եւ խճողեն զպորտ եւ զորովայնս. եւ բազում որկորստութեամբ եւ արբեցութեամբ շուայտանան», եւ յետոյ կը սկսին պահել (34)։ Ինչպէս կը տեսնենք, այս տեղ յիշուած զեղխութիւնք կը գերազանցեն ուրիշ ամէն առթիւ կատարուածները՝ թէ չափով եւ թէ տեւողութեամբ, որ զգալի են «բազում որկորստութեամբ» բացատրութեան մէջ։ Մօտալուտ պահոց ժուժկալութեան յիշատակն անյագ վայելից կը մատնէր զանոնք, որոց երկուքին անհաշտութիւնը քրիստոնէին մէջ՝ ճարտարութեամբ ցոյց կու տայ հոն հայրապետը։ «Ոմանց» կը վերագրէ զայս, իմանալով անշուշտ զա-

նոնք՝ որոց հարստութիւնը կը բաւէր տոկալու այդ երկարատեւ ու չափազանց ծախուց։ Բայց ամէն վիճակի անձինք ալ կը ջանային իրենց չափով զուարթ անցընել բարեկենդանը։ Մինչեւ անգամ հայ ժուժկալ մենաստանք իրենց սովորական ոճէն դուրս կ'ելնէին, ինչպէս կ'աւանդէ Տաթեւացին, ըսելով թէ այդ առթիւ «յամենայն տեղիս՝ ի վանորայս եւ յանապատս ներեն սակաւ ինչ ի չափաւոր վայելս» (Հրց. 657)։

Բարեկենդանը մեր քով կը տեւէր երկու շաբաթ անընդհատ, այս ինքն Առաջաւոր պահոց աւարտելէն մինչեւ Մեծ պահոց սկիզբը. այսպէս կ'աւանդեն Գր. Արշարունին (ժԲ), «Սակս ժողովոց» գրութիւնը (Թղթ. 232) եւ ուրիշներ։



## Բ. ՊԱՀՔԵՐ ԵՒ ԾՈՄԵՐ

Այդպէս կոչուած են տարւոյն այն օրերը, որոց մէջ հաստատացեալք օրինօք կամ կամաւորապէս կը հրաժարէին կամ կը «պահէին» զիրենք փափուկ կերակրներէ։ Այս զրկումն ըստ Հարց կը մեղմէր մար-

մնոյն ախտալից կրքերը, կը զօրացնէր միտքը դիւական յարձակմանց դէմ, կը մաքրէր խորհրդները, եւ կ՚ապահովէր առաքինութիւնը (Մանդ. 30–1. Եզն. 286 –7)։ Այս նպատակաւ եկեղեցին տարւոյն ամբողջ օրերն երեք դասակարգի բաժնուած էր, ինչպէս կը դիտէ Տաթեւացին. ուտիք, որոյ կերակուր էին մսեղէնք. պահք, բանջարով՝ ընդով ու պտղով. եւ միջակ կամ նաւակատիք՝ ձկամբ, ձուով ու կաթով (Քրզ. ձմր. 603. Հրց. 509)։ Մեր քննութեան նիւթ՝ վերջին երկուքը պիտի ըլլան այս տեղ։

1. — Ծագումն պահոց։ — Ասոր մուտքն Եկեղեցւոյ մէջ՝ անտարակոյս հրէականէն է, ծանօթ Դատաւորաց ժամանակէն ի վեր (Ի, 26), եւ գործադրուած այլ եւ այլ առթից մէջ՝ զորս պիտի տեսնենք։ Յիսուսի աշակերտները չէին պահեր ու կը քամբասուէին Հրէիցմէ, որոց կը պատասխանէր Փրկիչը՝ թէ իւր վերանալէն վերջ պիտի պահէին (Մտթ. Թ, 14–15)։ Եւ արդարեւ յետոյ կը տեսնենք անոնց պահեցողութիւնը. զոր օրինակ երբ ձեռնադրութիւն պիտի կատարէին (Գործ. ԺԳ, 3), կամ կամաւորապէս ու շատ ստէպ (Հռ. ԺԴ, 5)։ Պաւղոս կը գովէ Կորնթացւոց նուիրումն «ի պահս» (Բ Կոր. Զ, 5). եւ

*կ'ըսէ՝ թէ ինքն իսկ շատ անգամ «ի պահս» կ'անցնէր (անդ, ԺԱ, 27)։*

*Արդ ակներեւ է՝ որ Եկեղեցին առաքելական դարէն իսկ սկսաւ պահեցողութիւնը, եւ Հայք եւս ընդունեցան զայն աւետարանի լուսոյն հետ։*

2. — *Պահոց տեսակները։* — *Ամէն պահոց կերակուրք հաւասար չէին. օրուան կարեւորութեան համեմատ սնունդն ալ աւելի կամ նուազ խիստ կը լինէր։ Տաթեւացին պահքերը կը բաժնէ երեք տեսակի. պահք, որ կը կայանար մսէ հրաժարելու եւ պտղով ու բոյսերով շատանալու մէջ. սրբապահք, ուր կը զրկուէին տնկոց պարարիչ հիւթերէն եւս, ինչպէս ձէթ, գինի եւ այլն. եւ ծոմապահք, որ կը լինէր պարզագոյն ուտելիներէ անգամ, ինչպէս ցորենէ եւ ջրէ՝ հրաժարելով, եւ ինք զինքը «մաշելով սովով եւ ծարաւով» (Քրզ. ձմր. 148)։ Այս բաժանմունք մասամբ ծանօթ են աւելի կանուխ՝ Աւաւկայ որդւոյն կանոնաց մէջ եւս. հոն կը գտնենք սրբապահութիւնը (Ե, ԻԵ, ԿԵ), զոր Մխ. Գոշ ալ կ'առնու եւ կը կրկնէ (Խր. Պտր.)։ Աւաւկայ որդին ունի նաեւ շաբաթապահութիւն (անդ), որ է շաբաթ մը ծոմ պահել։ Եւ Յհ. Եզնկացին կը յիշէ սրբապահ ուտել կամ ծոմով պահել (Խրատ.*

ԺԷ)։ Թէ ե՛րբ կը գործադրուէին այս զանազան ձեւեր, պիտի տեսնենք յաջորդաբար։

3. — Սովորական պահք։ — Այսպէս կը կոչեմ զանոնք՝ որ յատուկ էին չորեքշաբաթու, ուրբաթու եւ շաբաթապահոց։

Ա. Եօթնեկի մէջ երկու օր պահելու սովորոյթն եբրայական ծագում ունի (Ղկ. ԺԸ, 12)։ Հրեայք սակայն կը պահէին երկուշաբթի եւ հինգշաբթի (Վիգ. Գ, 1531), զորս քրիստոնեայք վերածեցին արդի օրերուն, Յիսուսի մատնութեան ու չարչարանաց յիշատակաւ։ Եւ այս օրերն ու խորհուրդը կը յիշուին արդէն «Վարդապետութիւն առաքելոց» (Ը, 1-2) եւ «Առաքելական կանոնք» (ԿԴ) կոչուած անվաւեր՝ բայց հին գրութեանց մէջ, ինչպէս եւ Բ—Գ դարուց Հայրերէն։ Ասոնք են հնագոյն պահքերը, մինչդեռ շաբաթապահք աւելի ուշ կ՚երեւին։

Այդ օրերուն ուտելի կերակուրք՝ պահողաց ազատ ընտրութեան թողուած էին, «ըստ իւրաքանչիւր կարողութեան», ինչպէս կ՚ըսէ Մանդակունին։ Ըստ այսմ՝ ոմանք կը շատանային լոկ ջանճարով. ուրիշներ՝ միայն ընդով. կային՝ որ քիչ մը հացով գոհ կը լինէին, մինչ ոմանք աւելի

բաներ կ'ուտէին, որոց մէջ եւ պարզ բա֊
ճիկ մ'ալ։ Կը տեսնէր դարձեալ անձինք՝
որ գինիէ կը հրաժարէին, ուրիշներ թանէ,
եւ ոմանք հացէ անգամ։ Իւ հասարակաց
աւելի ընդունելի սովորոյթն էր «միով ինչ
կերակրովն եւ ոգեպահովն եւեթ շատանալ».
եւ ասկից ալ տակաւին «սակաւ ուտել,
սակաւ ըմպել»։ Իսկ ինչ որ յատուկ էր
սովորական ճաշերու, այս ինքն փափուկ
եւ համեղ կերակրներ, բացէ ի բաց կը
մերժեն, կ'ըսէ հաւատացելոց համար (36)։
Յիշեալ բոլոր ուտեստներէն միակ արգե֊
լեալն է «փափուկն եւ համահամ» (անդ),
որ կը կայանար մսոյ եւ գինւոյ մէջ. այն֊
պէս որ Յաճախապատումն ալ այս երկու
նիւթերէն միայն ստիպողաբար կը հրա֊
ժարեցնէ պահոց մէջ, ըսելով՝ որ կարող֊
ներն ու երիտասարդութիւնը զգուշանան
«ի մսոյ եւ ի գինւոյ» (86)։ Արդէն ա֊
ռաքելական պահքն ալ այս երկու տար֊
րերէն զրկումն էր (Հռ. ԺԴ, 21)։ Ազ֊
գային տեսակէտով արդարեւ շատ կարե֊
ւոր է Յաճախապատմի վկայութիւնն իւր
բարձր հնութեամբ, որ մեր առջեւ կը դնէ
Հայոց հնագոյն պահեցողութեան մէջ տի֊
րող ազատականութիւնը, որ խոտոր կը
համեմատի միջնադարեան մատենագրաց
անձուկ սահմանին հետ, եւ կը լուծէ ա֊
պագայ վէճերու գաղտնիքը։

Չափաւոր պահեցողութիւնը յարատեւեց մեր ազնուական դասին մէջ մինչեւ Ժ դար, ուր հին կամաւոր խստութիւնը տակաւ ընդհանրանալով՝ կ'ընդհարէր անոր հետ, եւ անգիտաբար բամբասել կուտար զայն։ Ասողիկ կը պատմէ՝ թէ «սովորութեամբ անճկարգութիւն էր... իշխանաց եւ ազատաց՝ որովայնամոլութեամբ ապականել» չորեքշաբաթի, ուրբաթու եւ եօթնօրեայ պահքերը, «բաց ի մսոյ՝ կթեղէն կերակրովք». այս էր գայթակղեցուցիչը։ Կարուց Աբաս թագաւորը ջանաց ուղղել զայդ իւր իսկ օրինակով, հրաժարելով կթեղէն ու ձկնեղէն ուտեստներէ, եւ բաւականանալով «հացիւ եւ բանջարեղէն մրգօք», ինչ որ կը համարի «օրինաւորեալս կանոնիւ» (197)։ Արդարեւ այդ շրջանին կը վերնան կթեղէնք եւ այլ եւս չեն յիշուիր. այնպէս որ Նարեկացին կը պայքարէր լոկ «ձկամբ եւ գինւով եւ ձիթով» լուծելու սովորութեան դէմ՝ որ կը տեւէր. եւ որուն կը պատասխանէին լուծողները՝ թէ «հրաժարեցուցեալ կերակուր՝ միս է եւ որ ինչ ի մսոյ», եւ ոչ այլ ինչ (518-9)։ Խստապահից իղձերն ապարդիւն մնացին, որով աւելի քան դար մը վերջ Տարօնացին դեռ կը տեսնէր հնոյն շարունակութիւնը,

*եւ կը գրէր Թէոփիստեայ՝ թէ Հայոց «ա-
մենայն որովայնամոլք» նախանձեցան
Յունաց կերակրոց, եւ պահոց օրերն ա-
նոնց պէս կը ճաշակեն գինի, ձէթ եւ
ձուկն* (Թէոփ. 280–1)։ *Նաեւ Գր. Մա-
գիստրոս առ Թոռնիկ Մամիկոնեան նա-
մակին մէջ յիշելով անոր ձկնակերու-
թիւնն ուրբաթ օր, զայն արդիւնք կը հա-
մարի անոր քաղկեդոնականութեան* (Մագ.
214–5)։ *Հին դարերու անծանօթութիւնն
այսպիսի սխալ հետեւութիւններ հանել
կու տար ադոնց՝ չափաւոր պահեցողու-
թեան ծագման մասին։*

*Իրաւունք ունէին միայն գինւոյ նկատ-
մամբ, որ ստուգիւ նորամուտ էր։ Բայց
թէ այս եւ թէ միւս նիւթերն յարատե-
ւեցին մնալ։ Լամբրոնացւոյն ներբողիչ
մ'անոր առաքինութեան իբր ցոյց՝ կը յիշէ
չուտելն «ոչ ձէթ եւ ոչ գինի, ոչ ձուկն
եւ ոչ թան. այլ միայն ընդօք շատանայր»*
(Հյպտ. 420)։ *Ուրեմն ուրիշներ չէին ըզ-
գուշանար ադոցմէ, որով Տարսոնի առա-
քինի եպիսկոպոսին ընթացքն ուշադրու-
թիւն կը գրաւէր։ Բայց իւր օրինակն՝ ա-
ւելի խստացած պահպանութիւնն էր կա-
նոնի մը՝ որ հայ եկեղեցականաց կ'ար-
գելուր ձուկն ու գինի. ինչպէս կ'իմա-
նանք նոյն շրջանի Հայոց Յոյներէն պա-*

հանջելէն՝ որ «կանոնական պահք մի՛ ի կրօնաւորաց եւ ի քահանայից ձկամբ եւ գինով լուծցի» (Պալճ. 266)։ Սակայն Հայք սոյն պահանջը կրնային նաեւ իրենց եկեղեցականաց շատերէն ալ ընել, ինչպէս յիրաւի կ'ընէր ԺԵ դարուն Սիմէոն Այրիվանեցին, պատուիրելով որ աշխարհիկ երէցը պահոց ժամանակ «գինի մի՛ ըմպիցէ եւ ձէթ մի՛ ուտիցէ» (Հյպտ. 570). ուսկից կը հետեւի որ կ'ուտէին տակաւին։

Եկեղեցին շարունակեց փորձել՝ որ նոյն սահմանն հաւատացելոց եւս ընդունել տայ։ Կոստանդին Ա՝ Սսոյ ժողովով սահմանեց՝ որ «ամենայն պահք ըստ կանոնաց առանց ձկան եւ ձիթոյ եւ գինւոյ եղիցի». եւ յարելով՝ թէ «առաւել աղուհացիցն եւ ուրբաթ եւ չորեքշաբաթին» (Կիր. 171), յայտնի կ'ընէ միւս պահոց համար նուազ խստապահանջութիւնը։ Մխիթար կթղ. ձկան ու ձիթոյ արգելքը կը յիշեցնէր Հռովմայ հայրապետին՝ իբրեւ կանոն հայ եկեղեցւոյ (Տօն. 689), ինչ որ բաւական ընդհանրացած լինելու է. եւ որ հակառակ լինելով լատինական սովորութեան, Հայոց երկու հակառակորդները՝ Ներսէս Պալիենց եւ Սիմէոն Բէկ՝ իրենց հարիւր տասնուեօթն ամբաստանութեանց մէջ կը

*խառնեն եւ զայս՝ թէ պահոց օրերուն հրաժարելով մսէ, ձկէ, հաւկթէ, պանրէ, կարագէ, կաթէ եւ ձիթէ, կը գոհանան հացով, բանջարով ու գինւով* (*Նոյն*, 364)։ *Բոլոր այս նիւթերէն զգուշացողներ կային, այո, բայց մի եւ նոյն ժամանակ շատերն ալ աւելի մեղմ կը պահէին, խորշելով մսէ, հաւկթէ ու կթեղենէ միայն, ինչպէս կը վկայէ Սսոյ* 1342*ին ժողովը* (*Նոյն*, 387)։ *Ասոր համար վերոյիշեալ Այրիվանեցին հազիւ քահանայից կը համարձակէր արգելուլ գինին ու ձէթը. ուսկից կը հետեւի՝ որ աշխարհականք կը շարունակէին ուտել զաղոնք*։

*Բ. Ծոմը*[1] *սովորական պահոց մէջ բոլորովին ազատ էր, եւ առանց զոք բռնադատելու՝ կը գործադրուէր ի հնուց կամաւորապէս, որով եւ անհաւասար կերպով*։ *Անշուշտ առնուած էր ս. Գրքէն, ուր կը յիշուին ծոմեր՝ միօրեայ* (*Բ Թագ.* Ա, 12), *երեքօրեայ* (*Եսթ. Դ*, 15) *եւ եօթնօրեայ* (*Ա Թագ.* ԼԱ, 13)։ *Ըստ այսմ Մանդակունին կ՚աւանդէ՝ թէ Հայերէն «ոմանք միօրէ, ոմանք երկպահք, ոմանք երեքօրեայ, եւ ոմանք եօթներորդ պարկեշ-*

1. *Եբր. ծոմ կամ ասոր. ծոմա հոմանիշէն* (*Հիւբշ.* 306), *և Ե դարուն արդէն մեր մէջ գործածական էր. «ծոմ կարգային»* (*Ա Մակ. Գ*, 47).

տութեամբ կատարեն՝ ըստ իւրաքանչիւր անձանց զօրութեան» (36)։ Այդ ծոմե-րուն երկարագոյնն է եօթնօրեայն, որոյ օրինակները շատ են. մեծն Ներսէս իւր աքսորման մէջ «յեւթն աւուրն ի կիւրա-կէն հասանել միայն, ապա ճաշակէր», կ'ըսէ Փաւստոս (93)։ Կիւրակէն աւելի փափուկ անցնելու բարոյական հարկն էր՝ որ այդ օր ձգել կու տար լուծումը (անդ, 290)։ Յովսիա «չարչարապահս» կը կոչէ Թաթլոյ վանուց կրօնաւորները (Հայպ. 192)։ Լամ-բրոնացին իւր կամաւոր պահեցողութեան մէջ նոյնպէս «զաւուրս հօրն անսուաղ կեայր» (անդ, 420). եւ տեսանք արդէն «չարչարապահութեան» յիշատակն Ալաւկայ որդւոյն քով եւս (անդ, 404)։ Ասոնց հա-մեմատութեամբ շատ մեղմ էր Յովհ. Տուե-ցւոյն չորեքշաբթի եւ ուրբաթ «անհաց եւ անջուր» կատարելու ժուժկալութիւնը (Վրդ. 154)։

Բայց աւելին կայ. քառասնօրեայ ծո-մապահութիւնն ալ յիշուած է երբեմն, որ հարկաւ արդիւնք էր Մովսեսի, Եղիայի եւ մանաւանդ Յիսուսի օրինակին հետեւելու ջանից։ Լուսաւորչի համար կը պատմուի՝ թէ բոլոր կեանքը, «քառասուն քառասուն օր պահովք» անցուցեր է (Ագթ. 638-9), զոր Խոսրովիկ իրաւամբ ծոմ կ'իմանայ,

*եւ կը յաւելու՝ թէ «զլուծումն ի խոտոց առնէր» (Խոր. քառ.)։ Ժ դարուն Մովսէս անուն ճգնաւորը նոյնպէս «քառասուն աւուրբք ծգանեցուցանէր զանսուաղութիւնն» (Ասող. 178)։ Ասոնք արդարեւ եզական դէպքեր են պատմութեան մէջ, եւ ցոյց կու տան մարմնոյ եւ կամաց անսովոր ու զարմանալի ոյժ մը, եթէ սակայն պատմուածն ստոյգ է, եւ ոչ բարեպաշտիկ համբաւ մը։*

*Գ. Պահոց ճաշին միւս հանգամանքներն ալ համեմատական էին կերակրոց տեսակին։ Եթէ սովորական հացերուն կ՚ընկերէին կենաց բոլոր հաճոյականք ու փափկութիւնք, ընդ հակառակն պահոց շրջանին հաւատացեալք կը հրաժարէին այդ բոլորէն. որով կ՚անցնէին «առանց յուռանայոյ եւ օծանելոյ» (Մանդ. 36), ինչպէս կ՚ընէին Հրեայք ալ (Մտթ. Զ, 16–17)։ Կը հրաժարէին նաեւ զգեստուց պերճանքէն, մերկութեան ու ցրտոյն պէտքը վրճարելով « խարազն ինչ հանդերձիւք » (Մանդ. 36). այս ինքն հակառակը սովորական ժամանակի ճաշերուն (սաս, 146–52)։ Գրգանք ու շքեղութիւնք անհաշտ էին տխրութեան ու դատարկ ստամոքսի հետ։ Ուստի բնականապէս հրաւէրք ու կոչունք ալ կը դադրէին այդ ժամանակ։*

Դ. Պահեցողութեան պարտականութենէն ազատ էին հիւանդները, տկարներն ու ծերեր, որոց թոյլ կու տայ Յաճախապատումը սակաւ ինչ գինի եւ միս ճաշակել (85–6)։ Կոստանդին Ա նոյնպէս կը պատուիրէ պահքը՝ «բայց ի հարկէ հիւանդութեան» (Կիր. 171)։ Աղոնք այդ լուծման համար որ եւ է պայման չեն դներ. տկարաց արդէն ճնշեալ մարմինը կարօտ չէր կամաւոր նոր ճնշմանց, այսչափ։ Ընդ հակառակն Ալաւկայ որդին աւելի աններող է։ Սա օրինաց տառը յարգող քան ոգին, վերջին հարկի մէջ միայն թոյլ կու տայ լուծումը. այս ինքն երբ բժիշկը վկայէ՝ թէ հիւանդն «առանց կերակրոյ մեռանի»։ Իսկ երբ առողջանայ, անոր փոխարէն կը հրամայէ պահել չորս եօթնեակ՝ եթէ լուծածը չորեքշաբթի էր. վեց եօթնեակ՝ եթէ ուրբաթ էր. ու Պենտեկոստէից նախընթաց տասն օրերը՝ եթէ աղուհացից օր մ'էր։ Բայց եթէ հիւանդը մեռնէր, այդ սոսկալի եւ անդառնալի հատուցումը պիտի ընէին իր ընտանիքը (կէ)։ Տարօրինակ ուղեղներ եղած են ամէն ժամանակ, որոնք գուցէ հետեւողներ ալ ունեցած են միամիտ ժողովրդեան մէջ։

4. — **Քառասնորդք**։ — Ի հնուց այս անուամբ ծանօթ են մեր մէջ երեք քա-

ռասնօրեայ պահքեր. մին Զատկէն յառաջ, եւ միւս երկուքը՝ նախ քան Վարդավառն ու Ծնունդը։

Ա. Զատկականը, որ ընդհանուր էր բոլոր քրիստոնէից, օրերու թուով անհաւասար էր ի սկզբան։ Ս. Իրանոսի վկայութեամբ՝ Բ դարուն ոմանք կը պահէին մի օր, ոմանք երկու, ոմանք աւելի, եւ ոմանք քառասուն ժամ (Եւս. 399)։ Երկու օրն ըստ Տերտուղիանոսի՝ աւագ ուրբաթն ու շաբաթն էին (Կաբր. Բ, 2139)։ Իսկ Գ դարուն՝ Դիոն. Աղեքսանդրացին եւ «Վարդապ. Առաքելոց՝» մէկ եօթնեակ կը դնեն (անդ, 2140) հաւանօրէն հրէական եօթնօրեայ բաղարջակերաց թուով (Բ Օր. ԺԶ, 3)։ Քառասնօրեայ պահքը կ'երեւի Գ դարուն, նախ Նիկիոյ ժողովին կանոններէն յիշուած (Ե), եւ յետոյ ուրիշ Հայրերէ (Կաբր. Բ, 2141–2)։ Հետեւաբար հայ նորածնեալ եկեղեցին ալ զայն սկսաւ պահել այս վերջին չափով։ Ս. Սահակայ կանոնաց մէջ ակնարկութիւն կը լինի «քառասնորդացն զատկի» (111), զոր Տեսիլն ալ կը յիշէ (46)։ Նաեւ Մանդակունին անտես չի թողուր «զպահս քառասնորդաց» կամ «զերեւելի պահս քառասնորդացն», յարելով՝ թէ ի խորհուրդ Յիսուսի, Մովսեսի եւ Եղիայի քառասնօ-

*րեայ պահեցողութեանց էր այն, եւ թէ «զնոյն քառասունս եւ մեք մերով տկարութեամբս օր ըստ օրէ պահօք կատարեմք»* (35)։

*Բ. Այս պահքն ընդհանրական Եկեղեցւոյ մէջ կը պահուէր՝ հրաժարելով գլխաւորապէս մսէ։ Այնպէս որ ըստ Սոկրատայ՝ շատեր ձուկն եւ ոմանք թռչուն կ'ուտէին, մինչդեռ Անտիոքացիք կը զգուշանային աղոցմէ եւս, ինչպէս կ'աւանդէ Ոսկեբերան։ Տրուղեան ժողովը ջանալով միօրինակութեան վերածել, արգիլեց ձուկն ու կթեղէնը։ Դ. դարու յոյն եւ լատին Հարք կը մերժէին գինին ալ։ Սակայն Է եւ Ը դարերէն սկսեալ՝ արեւմտեայց մէջ թոյլ տրուած են ձուն, կաթը, պանիրը, ձուկն ու գինին (Կարր. Բ,* 2149–51)*. այս ինքն գրեթէ համաձայն Հայոց սովորական պահոց հնագոյն ձեւին (աստ,* 406–9)։

*Բայց մեր քով աւելի խիստ կը գտնենք զայս քան ուրիշ պահքեր. այս պատճառաւ կը կոչուէր «երեւելի պահք» (Մանդ.* 35) *կամ «աւագ պահք» (Յհ. Եզկ. Խրտ. ԺԸ), եւ ի հնուց զայն կ'անցնէին «ուժգին պահօք» (Տես.* 46)։ *Եթէ հարազատ է Մանդակունւոյն մէկ գրուածն «Յաղագս քառասնորդական պահոց՝» որ վաւերական ճառից թուէն դուրս կը մնայ, անոր*

համեմատ արգելուած էին գինի եւ իւղ, ձու, ձուկ, պանիր, կոգի, կաղտի, բածին, շճուկ, կաթ, խեր ու ձկան մորէ։ Ասոցմէ ճաշակելն անկանոն եւ անվայել կը համարի որ եւ է անձի համար։ Բաւական կը դատի ուտել միայն բուսական իրեր, զորս « կամակք » կը կոչէ, այս ինքն ըստ կամս եւ յօժարութեան ուտելիք, ինչպէս էին կանեփհատն, կտաւատ, սամթաջուր, փոխինդ եւ հատ (210), որոց վերջին երկուքը կանխաւ ալ տեսանք (230, 329)։ Ստեփանոս սիւնեցին դատապարտելով ժամանակի Յունաց ձուկ, ձէթ ու գինի անխտիր ուտելու սովորոյթը, կ'իմացնէ՝ թէ Հայոց թոյլ չէր տրուած «ոչ լուր ընկոյզ, ոչ չամիչ, ոչ գինի, ոչ քացախ, եւ զամենայն ինչ ի բերոյ որթոյ մինչեւ ցքին անգամ ոչ ճաշակել» (Թղթ. 334)։ Եւ այս արգելքը կէտ առ կէտ առնուած էր հին կտակարանէն (Թիւք, Զ, 3–4)։ Նոյնը կը կրկնէ մեզ իւր ժամանակակիցը Խոսրովիկ, ընդհանուր կերպով յիշելով հրաժարումն «ի գինոյ եւ յամենայն ցանկալի կերակրոց» (Խսր. քառ.). մինչդեռ Գագիկ Բ Բագրատունի աւելի մանր կը թուէ, ըսելով՝ թէ Եկեղեցւոյ առաջնորդներն «ի բերոյ որթոյ մինչեւ ցկնջիթն որոշեցին, թող թէ ի

գինի կամ ի ձէթ» (Ուռ. 212)․ եւ Մխ. Գոշ կը յիշէ հայ քահանայից զրկումը ձկէն, զոր յոյն եւ վրացի եկեղեցականք կը ճաշակէին անխտիր (Առկ. 120) Լատինաց հետ միասին (Քրզ. ձմր. 603)։ Վերջապէս Ծործորեցին կ'ըսէ՝ թէ պահոց օր լոկ «հաց ու բանճար կու ճաշակեմ» (Ծրծ. գ)։

Ազատ՝ բայց յիշեալներէն աւելի խիստ ձեւ մը կար պահեցողութեան, զոր առաջին անգամ կը գտնենք Ս. Սահակայ Տեսլեան մէջ. հոն հայրապետս դեռ սարկաւագ, աւագ հինգշաբթի օր «հաց եւ ջուր եւ աղ» միայն կը ճաշակէ՝ իբրեւ Նիկիոյ ժողովոյն սահման (Տես. 46)։ Այս չոր սնունդն յատուկ էր քառասնորդաց բոլոր օրերուն, ինչպէս կը վկայէ Ստ. Սիւնեցին՝ թէ «մեր պահք աղ եւ հաց միայն է» (Թղթ. 334)․ և Խոսրովիկ կը կրկնէ՝ թէ «Անլուծանելի եւ անմերձ յամենայն կերակուրս, բայց յաղ եւ ի հաց ըստ Նորին անուանակոչութեան»․ եւ այդ կոչումն էր աղուհացք, որ հին է եւ կայ Տեսլեան մէջ (45), Արշարունւոյն (բ), Կիրակոսի (106) եւ այլոց քով։

Շնորհալին առ Ալեքս թղթին մէջ կը յիշէ սոյն պահոց պահպանութեան երրորդ ոճ մը։ Հայ իշխաններէ եւ զինուորներէ

ոմանք, կ'ըսէ, հին սովորութեան մ'ազդեցութեամբ՝ կը շարունակէին դեռ իւր օրով «ինքնակամ կամօք» ուտել ձուկ, ձէթ ու գինի. Նման ժամանակի Յունաց ու Փրանկաց սովորութեան. մինչդեռ բոլոր եկեղեցականք եւ «բազումք ի ժողովրդոց» ի սպառ կը հրաժարէին «ի կթեղէն կերակրոց եւ ի ձկանց... այլ եւ յամենայն պարարտ կերակրոց եւ յըմպելեաց գինւոյ». եւ անսաստողք խոստովանելով՝ « ծանրագոյն » ապաշխարութեան կ'ենթարկուէին (Ընդհ. 63)։

Գ. Ծոմ եթէ կամաւոր էր սովորական կամ ինքնակամ պահոց մէջ, պարտաւորիչ էր աղուհացից համար՝ ըստ ընդհանուր եւ հնաւանդ սովորութեան։ Այն ժամանակ՝ երբ զատկական պահքը վեց օր միայն էր, ըստ «Վարդապ. Առաքելոց՝» առաջին չորս օրերու ծոմը կը լուծուէր « իններորդ ժամուն՝ աղով եւ հացով ». իսկ ուրբաթ եւ շաբաթ համակ ծոմ կը պահուէր (Կարբ. Բ, 2140)։ Ըստ «Սահմանադր. Առաքելոց՝» չորս օրերու ծոմը կը տեւէր « մինչեւ երեկոյ », ուր կ'ուտէին «հաց, աղ, ընդեղէն եւ ջուր». եւ երկու օրերն անսուաղ կ'անցնէին մինչեւ կիւրակէի հաւախօսը։ Իսկ երբ պահքս քառասնօրեայ եղաւ, կ'երեւին երկու՝ ե-

րեք՝ չորս օր եւ մինչեւ շաբաթ մը ծոմ պահողներ ըստ Եպիփանի, մինչ սովորաբար երեկոյէ երեկոյ կը լուծէին Յոյները. եւ արեւմտեայք ի սկզբան նոյնպէս, ու ստորին դարերուն կը ճաշէին Թ կամ Ջ ժամուն (անդ, 2146–8)։

Մեր մէջ սակայն այդչափ զանազանութիւն չկար։ Մեր նախնեաց ծոմը միօրեայ էր, եւ լուծումն երեկոյին։ Առ այս՝ իբր հնագոյն վկայութիւն ունինք Աշտարակեցւոյն մէկ կանոնը, թէ քառասնորդայ եւ առաջաւորաց մէջ «մի՛ ոք իշխեսցէ լուծանել ըստ սրբոց կանոնաց ցերեկոյ» (Լ)։ Խոսրովիկ յառաջ բերելով սոյն կանոնը, կը զօրացնէ զայն։ Ասողիկ ասոր գործնական օրինակն ալ կու տայ, Խլաձորոյ վանականաց համար պատմելով՝ թէ աղուհացից մէջ «մի անգամ միայն յաւուր» կը ճաշէին (175)։ Եւ զոր երեք դար վերջ կը կրկնէ ՅՀ. Եզնկացին եւս, խրատելով օրը «մի անգամ ուտել» (Խրտ. ԺԷ)։ Այս մի անգամը տակաւին երեկոյին էր միշտ, ինչպէս ճառից Լուծողը կ'աւանդէ, «անսուաղութեամբ մնալ մինչեւ յերեկոյն, եւ ապա ճաշակել հաց եւ աղ եւ ջուր» (Լծ. ՊՀ. Ա), եւ որոյ հետ նոյն է Սսոյ 1342ի ժողովոյն յիշած «իններորդ» ժամն ալ (Տուռ. 387), զոր կը

հաստատէ նաեւ Ծործորեցին (գ)։ Ուշագրաւ է սակայն Լուծողին նշանակած տարբերութիւնը, «շաբաթ եւ կիւրակէն երկիցս անգամ ճաշակել» (անդ), որոյ պատճառը պիտի տեսնենք քիչ վերջ։

Բոլոր յիշեալ վկայութիւնք ցոյց կու տան ծոմապահութեան ընդհանուր եւ անփոփոխ ոճ մը, որ է մի անգամ ուտել եւ երեկոյին։ Բայց մի եւ նոյն ժամանակ կը վկայեն նաեւ աղոր զանցառութեան գոյութեանը, որոյ դէմ ղրուած են այդ կանոններն ու խրատներ։ Անշուշտ կային նաեւ կամաւոր եւ աւելի երկարատեւ ծոմեր եւս՝ ինչպէս միւս պահոց մէջ տեսանք (410–1)։

Դ. Քառասնորդաց ճաշի յարակից յարդարանքներն ալ՝ նման սովորական պահոց՝ կը լինէին անշուք եւ համաձայն սոյն օրերու տխրութեան։ Արշարունին կ'աւանդէ՝ թէ սոյն շրջանը կ'անցնէին «փախուցեալք ի հանդերձից», այս ինքն շքեղներէն, եւ ենթարկուելով «խարազնազգեստուց» խստութեան (Արշ. ժԲ)։ Հետեւաբար նոյն ձեւը կը պահէին նաեւ սեղանի վրայ։ Այսպէս էր գոնէ այդ մեկնըչին ժամանակ։

Ե. «Առաքելական կանոնաց» մէջ կայ հետեւեալ պատուէրը. «Եթէ ոք ժառան-

զաւոր զոցի զօր կիւրակէին պահելով, որոշեցի» (Առք. ԾԹ)։ Այս հրամանը, կրկնուած նաեւ Բ Նիկէական անվաւեր կանոններէն (Նիկ. ԿԸ), ծնունդ է առաջին դարերու մէջ տիրող սովորութեան, որով փրկչական յարութեան զուարթարար յիշատակին հետ պահոց տխրութիւնը չէր խառնուեր[1], նոյն իսկ քառասնորդաց մէջ։ Ասոր համար Հռովմայ եկեղեցին կիւրակէները չէր պահեր, իսկ արեւելք շաբաթներն ալ կը լուծէր[2] աւագէն զատ։ Այս հաշուով՝ կիւրակէն կերողները պահքը կը սկսէին զատկէն վեց եօթնեակ յառաջ, որով կը պահէին երեսուն եւ վեց օր, եւ արեւելք կը սկսէին եօթ եօթնեակ յառաջ, եւ կը պահէին նոյնպէս երեսուն եւ վեց օր (Կարր. Բ, 2142)։ Քառասուն օրը լրացնելու համար՝ Լատինք յետոյ ըստ Ը դարու վկայութեանց աւելցուցին պահոց սկիզբը չորս օր եւս, սկսելով չորեքշաբաթէն՝ ինչպէս դեռ այսօր կ'ընեն[3]։

1. Հրեայք ալ հանդիսական օրեր պահք չէին պահեր. Յուդիթ՝ որ ամբողջ այրութիւնը պահօք անցուց, շաբաթ, ամսամտից ու տարեկանաց օրերուն կը լուծէր (Յդթ. Ը, 6)։ Տեսանք նաեւ վանականաց կերակրափոխութիւնը տօներուն (տես, 290)։

2. Եւագրի առ վանականս մէկ խրատը, եթէ հարազատ է, այդ երկու օրերն ալ պահել կու տայ «մինչեւ ցինն ժամն» (Եւագ. 139)։

3. Տաթեւացին անտեղեակ այդ հաշուին, անտեղի

Իսկ Յոյներն Ե դարէն աւելցուցին պանրակերութեան շաբաթ մը (անդ, 2144), որ թէ իրենցմէ եւ թէ մեր մատենագրերէն պանրուտի կոչուած է։ Այս հաշուով՝ աւագ շաբաթն աղուհացից մասն եղած է միշտ՝ թէ օտարաց եւ թէ մեր քով։

Այս խնդիրը մեր քով կնճռոտութեանց պատճառ դարձաւ այլ եւ այլ դարերու մէջ։ Ի սկզբան Հայերն ալ բոլոր միւս արեւելեայց հետ կը լուծէին մեծ պահոց շաբաթ ու կիւրակէները։ Այս է Ս. Սահակայ կանոնաց յիշատակած «զհաց ապաշխարողացն՝ զորս յաւուրս քառասնորդացն առնեն հանգիստ՝ շաբաթու կամ կիւրակէի» (113)։ Նոյնը կը հաստատէ Մանդակունին ալ, ըսելով՝ թէ կան ոմանք, որ «զկէս ինչ ի շաբաթուցն» կարեւոր կը կոչեն ու պնդութեամբ կը պահեն, եւ միւսներն «ապաղաս[1] անուանեն» ու պահքը կը թուլացնեն, ճաշակելով «ի փափուկ կերակրոց», որուն սակայն ինք կը հակառակի (35), պատուիրելով նոյն աւուրց պահպանութիւնը նաեւ երկբայականի մը մէջ (209). մինչ

կերքով մը կը թշնամանէ Փրանկներն իբր «որովայնամոլ», ըստ որում պահքը երկուշաբթիէն չէին սկսեր (Քրզ. ժմր. 149)։

1. Յուն. ἀπαλός, — λάς, որ է փափուկ։

դեռ Ս. Սահակայ ընծայուած խօսքերուն մէջ անհաւանութեան որ եւ է նշան չըկայ։ Արդ՝ մեզ ահա Ե դարուն իսկ կը տեսնենք լուծման մասին կարծեաց անհամաձայնութիւն մը, որ անընդհատ կը շարունակէ այնուհետեւ եւս։ Արշարունին Է դարուն կը հաստատէ դեռ լուծման տեւողութիւնը, — թէեւ ինք չի հաւանիր (ԺԲ), — եօթնեկին մէջ պահոց «հինգ» օր հաշուելով (ԺԴ, ԺԵ, ԻԹ), եւ քառանորդաց թիւը լրացնելով առաջաւորաց եւ աւագ շաբաթու օրերով (ԼԱ)։ Նոյն դարու վերջերը Տրուդեան ժողովը կը դատապարտէր՝ «Հայոց աշխարհին մէջ եւ ուրիշ տեղեր» նոյն երկու օրեր «ոմանց ձու եւ պանիր ճաշակելը» (կան. ԾԶ). դատապարտութիւն՝ զոր չեմ կրնար հաշտեցնել Յունաց համանման սովորութեան հետ, բայց եթէ ենթադրելով՝ որ իրենք ալ անմիաբան էին իրենց մէջ։

Օձնեցւոյն օրով կը հանդիպինք դեռ նոյն ներհակ սովորութեանց, որոց նկատմամբ հայրապետս անխտիր է բոլորովին, ըսելով. «Երկոքին ընդունելի են առաջի Աստուծոյ եւ յաւանդութեան եկեղեցւոյ Քրիստոսի» (25)։ Ընդ հակառակն անոր ժամանակակիցը Խոսրովիկ կը պայքարի լուծողաց դէմ, զայն արդիւնք համարելով

Հռոմոց տիրապետութեան եւ ազդեցութեան. եւ թէ ժամանակին հայ վարդապետք ստիպուեր են ներել, որպէս զի աղուհացից միւս օրերն հաւատարմութեամբ պահէին, եւ Յոյներէն ալ զատուէին (Խսր. քառ.)։ Այս տեղեկութիւնս՝ որ պատմական հիմ չունի, նկատելով լուծման բարձր հնութիւնը մեր մէջ, նիւթապէս առաւ ու կրկնեց Շնորհալին եւս՝ առ Ալեքս թղթին մէջ (Ընդհ. 63)։ Յանուն Օձնեցւոյն կեղծ գրութիւնը «Սակս ժողովոց՝» երկու օրերուն փափկացումը սոյն հայրապետիս կը վերագրէ, իբրեւ թէ «զանհաւան ազգս մեր» ասով բաժնելու համար քաղկեդոնականներէ (ատ, 248–9)։ Փափկացման նպատակին կողմանէ համաձայն Խոսրովկայ հետ, եւ հեղինակի մասին անմիաբան, անհիմն է այս վկայութիւնս ալ, զոր կը ժխտէ նոյն ինքն Օձնեցին, ըսելով՝ որ պահոց մեր թեթեւացումն ինք չէ հնարեր, այլ գտեր է «յաւանդութեան եկեղեցւոյ», ինչպէս տեսանք։ — Կեղծ Օձնեցին թոյլ կու տայ ճաշակել ձու, ձուկ, ձէթ, թան, իւղ, պանիր ու գինի, եւ զասոնք խտրողները կը նզովէ (Թղթ. 231)։ Մեք հոս առաջին անգամ կը տեսնենք լուծման ուտեստից ուղղակի յիշատակութիւնը, թէեւ ,անուղղակի կերպով

կը թուէ զատոնք Մանդակունին եւս՝ սոյն նիւթոց արգելմամբ (աստ, 415–6)։

Սակայն Խոսրովկայ դարուն փափուկ օրերն աւելի են քան յառաջ։ «Ո՛վ չար վաճառաշահութիւնն, կը ձայնարկէ նա. ուխտել յիսուն օր՝ (որ է եօթ շաբաթ), եւ պահել երկուսն, եւ Աստուծոյ ստել» (քառ.)։ Այս հաշուով կը լուծուէին ոչ միայն առաջին վեց եօթնեկաց երկու օրերը, այլ ես կը հետեւցնեմ՝ թէ ամբողջ աւագ շաբաթն ալ, որով յիրաւի կը մնային պահելի երեսուն օր. թէեւ այս հետեւութիւնս՝ ինչպէս եւ երեսունն՝ անծանօթ են ուրիշ մատենագրաց քով։

Խոսրովիկ կը յայտէ՝ թէ «մեծ քաղաքն Հռովմ», Եփեսոս եւ Աղեքսանդրիա առաքելական աւանդութեամբ անընդհատ կը պահեն մինչեւ Զատկին օրը, Նաղկազարդն ալ միասին. նոյնպէս կ՚ընէին, կ՚ըսէ, յառաջագոյն երուսաղեմացիք եւս, որ ապա թուլացան։ Իւր այս տեղեկութիւնը սակայն օտարաց մասին՝ անմիաբան եւրոպական հնախօսութեան հետ, վերապահութեամբ ընդունելի է։ Մինչ դեռ աւելի դրական է իւր վկայութիւնը, եւ կրնանք անկասկած հաւատալ՝ թէ Հայոց քով փափուկ օրերը պահել՝ «միայն ծանր թուին մարմնասիրաց». իսկ առաքինի այրեր ու

կանայք, կ'ըսէ, «այժմ եւս զերիս յիսներեակսն... անսխալ պահեն»։ Հակառակ այլոց՝ կը պահանջէր երկու օրերու ծոմն ալ մինչեւ «յիններորդ ժամն»։ Եւ նկատելով որ եօթ եօթնեակ անընդհատ պահելով, աղուհացքը քառասուն եւ ութ օր կը լինէր, եւ ընդդիմադրաց ձայնը կը զօրացնէր, ապաւինեցաւ Արշարունւոյն մտաց մէկ խաղին (Արշ. ԺԲ), «ի միում յիսնեբեկի» տեսնելով «երկուց քառասնորդաց» խորհուրդ, որոց մին կը սկսի առաջին երկուշաբթիէն եւ կը տեւէ մինչեւ Ղազարու յարութիւնը. եւ միւսը սկսելով երկրորդ երկուշաբթիէն՝ կը տեւէ մինչեւ Զատիկ. բաժանում՝ որ սակայն դրական հիմ չունի։

Այդ անձուկ պահանջկոտութիւնը մեծ արդիւնք մը չպիտի տար. այնպէս որ ԺԱ դարուն սուտն Դամասկացի դեռ կը տեսնէր՝ թէ ի՛նչպէս Հայք մեծ պահոց շաբաթն ու կիւրակէն կը լուծէին, ուտելով կթեղէն՝ «ոմանք յայտնի եւ ոմանք ի թաքստի» (Լոյս, 1905, էջ 1113)։ Յաջորդ դարուն Ալաւկայ որդին կը փորձէ հաստատել նոյն օրերու պնդութիւնը, թուլացնողները ծանր ապաշխարութեան ենթարկելով (ԿԷ)։ Նոյն հրամանը կը կրկնէ դար մը վերջ Յհ. Տաւուշեցին, որոյ օրով

դեռ «ի տեղիս տեղիս» կը հետեւէին հին դրութեան, կ'ըսէ Կիրակոս, եւ կը համարի թէ նոյն վարդապետին արգելքն «հաստատութիւն կալաւ յամենայն տեղիս» (106)։ Բայց այդ ընդունելութիւնը չափաւոր կամ կարճատեւ եղած է. այնպէս որ ԺԵ դարուն Սիմէոն Արիվանեցին հարկադրեցաւ կրկնել նախորդաց պահանջը. եւ այն ալ միայնակեցաց եւ աշխարհականաց համար միայն (Հյպտ. 570)։ Միով բանիւ՝ անդուլ պայքարն ու յամառութիւնը՝ ոմանց փափուկ բռնելու երկու օրերը եւ ոմանց խստացնելու՝ չեն պակսիր բնաւ մեր մէջ։

5. – Բ եւ Գ Քառասնորդք։ — Ա. Այս պահքերը կը կանխէին Վարդավառն ու Յայտնութիւնը (Ալաւ. ԴԱ. Քրգ. ձմր. 497), յիշուած նաեւ Վանականէն առանց անուան տօներուն (Հրցմ.)։ Բնիկ ազգային կը թուին ասոնք եւ շատ հին են. գոնէ երկրորդը կը յիշուի արդէն Ս. Սահակայ կանոնաց մէջ՝ այս ձեւով. «Տօն սրբոյ Յայտնութեան եւ քառասնորդք նորա» (111)։ Իսկ երկուքին միանգամայն կը պատահինք Ը դարուն Խոսրովկայ քով՝ «զերկս յիսներեակսն» բացատրութեամբ (աստ, 426), եւ յետոյ աւելի ստէպ ալ։ — Տաթեւացին՝ զատկականն «աղուհացից»

եւ այս երկուքն «Եղիային եւ Մովսիսին» կը կոչէ (Քրզ. ձմր. 484), իբր յիշատակ երկու մարգարէից պահեցողութեան։

Բ. Ասոնց ու զատկականին պահպանութեան եղանակին մէջ զգալի տարբերութիւն մը չենք գտներ իմանց քով։ Ալաւկայ որդին երեք պահոց մէջ եւս կ'արգելու միսն ու գինին, եւ կը խրատէ պատուել զանոնք «ծոմաչաց պահիք» (ԴԱ)։ Աւելին կայ. Յհ. Տաւուշեցին «զերիս յիսնակսն անճաշ եւ անջուր կատարէր», կ'ըսէ Վարդան (154). այս ինքն բոլորովին ծոմ, որոյ սակաւագիւտ օրինակները տեսանք եւ այլուր (տես, 411)։ Բայց ժուժկալութեան այս ձեւը կամաւոր էր եւ անհատական. այնպէս որ Վիլլեբրանդ 1212ին տեսեր է Հայոց Ծննդեան պահքը՝ «հրաժարելով ձկէ, գինիէ եւ ձիթէ» միայն (Յուշ. Ա. 117). այս ինքն խիստ պահք առանց ծոմի։ Այս պնդութեան համար երբեմն «ամռան աղուհացք» ալ կոչուած է (Ուռ. 372, 544)։

Սակայն հասարակաց կամ ազգին մեծամասնութեան համար եւ կամ գէթ ամէն ժամանակ այս երկու քառասնորդք զատկականին չափ խիստ չէին։ Այս պատճառաւ Յովհ. Երզնկացին սովորական չորեքշաբաթը կամ ուրբաթը լուծողաց կը

հրամայէ՝ որ «զերկու յինանկսն սրբապահ արասցէ», որոյ սահմանը տեսանք (աստ, 404), եւ «որպէս զաւագ պահսն ծոմով պահեսցէ» (Խրատ. ԺԸ)։ Եթէ ի պատիւ էր պահեցողութեան այս ձեւն յինանկաց մէջ, ուրեմն սովորական չէր։

Գ. Նման մեծ պահոց, այս երկու քառասնորդաց շաբաթուց եւ կիւրակէից լուծումն ալ կար ու խնդրոյ նիւթ էր՝ նոյն իսկ Խոսրովկայ ժամանակէն։ Ասոր վերոյիշեալ (425) վկայութեան մէջ տեսանք՝ թէ ի՛նչպէս ոմանք կը պահէին զանոնք եւ ոմանք ոչ։ Իւրմէ եօթ դար վերջ Սիմ. Այրիվանեցին դեռ նոյնպէս կը գտնէր, ու միայնակեցաց եւ աշխարհականաց կը հրամայէր՝ որ «զերեքս յինանկսն կենայ պահօք շաբաթ եւ կիրակին» (Հյպտ. 570). ուրեմն աշխարհականք փափուկ կ'անցնէին։

Դ. Միջին դարուն փոփոխութիւն մը կը մտնէ երկու քառասնորդաց պահեցողութեան մէջ. ԺԱ դարու սկիզբը Տարօնացին քառասունքը մէկ եօթնեկի վերածուած կը գտնէ, ըսելով՝ թէ Աստուածայայտնութեան տօնէն յառաջ «շաբաթօրեայ մաքրութեամբ եւ պահօք պարկեշտանամք» (Թէոփ. 231)։ ԺԳ դարուն Վիլլերանդ կը տեսնէ Կիլիկիոյ մէջ նոյն պահքն աւելի երկար, «տասներկու օր» (Յուշ. Ա,

118)։ Իսկ Տաթեւացւոյն օրով աշխարհիկ դասը բոլորովին թողեր է երկու պահքերը։ «Կարգաւորք, կ'ըսէ նա, երեք քառասունք պահեն, այլ աշխարհականք՝ միայն զաղուհացիցն պահեն» (Քրզ. ժմր. 148)։ Յայտնի չէ՝ թէ երկու յիսնակաց վերածումն ե՞րբ սկսեր է։ Բայց ծագումը կամայականութեան արդիւնք է, ինչպէս կ'երեւի ձեւերու այդ զգալի զանազանութենէն։

6. — Ճրագալոյցք։ — Զատկի եւ Յայտնութեան քառասնորդները կ'աւարտէին հանդիսական նախատօնակով մը, ինչպէս կը լինի դեռ այսօր, ուր կը սկսէր հոգեւոր ուրախութիւնն առաջիկայ մեծ տօնից, եւ որուն կը յարէին Հայք պահոց թեթեւութիւն մ'ալ երեկոյի ճաշին մէջ, զոր Որբելեան կը կոչէ՝ «առնել ճաշակատիս» (335). բացատրութիւն՝ որ մեզ արդէն ծանօթ է (աստ, 403)։

Ուրիշ ազգաց մէջ չկայ ասոր յիշատակը. ընդ հակառակն ըստ «Սահմանդր. Առաքելոց» ծոմը կը տեւէր մինչեւ կիւրակէի հաւախօսը (աստ, 418), եւ օտարներն յետոյ հակառակ կը կռուէին մեր լուծման։ Հայ սովորութեան հնագոյն յիշատակը գտած եմ Զ դարուն, Աշտարակեցւոյն կանոնաց մէջ, ուր կը գրուի ա-

ւագ շաբաթուն համար՝ թէ «բաճ եւ գինի մի՛ իշխեսցեն ճաշակել ցժամ կատարելոյ սրբոյ Պատարագին» (ԼԱ)․ ուրեմն յետ Պատարագին կ'ուտէին այդ նիւթերը, որոցմէ թանը զանց կ'առնուէր պարզ պահոց մէջ կամաւորապէս, իսկ հօս ստիպողաբար՝ նման գինւոյն (սստ, 406,'16)․ եւ ասոնք միայն էին այդ ժամանակ ճրագալուցի լուծման նիւթ։ Յաջորդ դարուն Արշարունին կը վկայէ նոյնպէս՝ թէ «պահեմք յերեկոյ ճրագալուցին շաբաթու» (ԺԶ), այս ինքն է մինչեւ երեկոյ, ուր կը վերջացնէին պահքը՝ չի յայտներ ի՛նչ ուտեստներով։ Սուտն Դամասկացի կը հաստատէ Հայոց նոյն սովորոյթը՝ թէ պահոց շաբաթ ու կիւրակէ օրերուն պէս կ'ուտէին «նաեւ զմեծն չարաք օր՝․․․ յինններորդ ժամուն լուծեալ զպահսն» (Լոյս, 1906, էջ 1124)․ եւ այդ «յինն ժամու» լուծման դեռ կը վկայէ Զաք․ Ծործորեցին եւս ԺԴ դարու սկիզբը (Ծրծ․ Զ)։ Դամասկացւոյն բացատրութեան մէջ տարբերութիւն չկայ ճրագալուցի եւ միւս երկու օրերուն կերակրափոխութեան եղանակին․ եւ որովհետեւ այլուր կը յիշէ այս զոյգ օրերուն «կիթ» ուտուիլը (սստ, 426), կը հետեւի՝ որ ԺԱ դարուն արդէն ճրագալուցին ալ յատուկ էին կթեղէնք։

Մեր ծանօթ աղբերաց մէջ՝ այս խընդրոյն նկատմամբ առաջին անգամ այդ ասորի գրչին կողմանէ կը հանդիպինք օտարաց հակառակութեան, զոր յետոյ Լատինք եւս կը ժառանգեն։ Ասոնք ըստ Կիրակոսի թագ ղրկելով մեր նորապսակ մեծին Լեւոնի, պահանջեցին ի փոխարէն երեք ծիսական փոփոխութիւններ, որոց մին էր «ոչ լուծանել զճրագալոյցն Ծնընդեան եւ զՅարութեան, բայց միայն ձըկամբք եւ ձիթով». եւ զորս տասներկու եպիսկոպոսներ յանձն առին երդմամբ (75)։ Նոյն պահանջը քանի մը տարի վերջ կը կրկնէր Վրաց Զաքարէ իշխանն ալ, որուն գիջան Լեւոն Բ, Դաւիթ կթղ. եւ իւր կղերը (նոյն, 83)։ Օտարաց ընդդիմութիւնն ուրեմն ձկան ու ձիթոյ դէմ չէր, այլ դարձեալ լռելեայն ակնարկուած կթեղինաց։ Մերոց մասնական զիջողութիւնք սակայն չէին կրնար փոխել ազգին սովորութիւնը, զոր Լատինք կը շարունակէին բամբասել Ա Կոստանդնի օրով ալ (Տուռ. 827)։

Ապարդիւն պիտի մնային նաեւ քանի մ'ազգայնոց հայ սովորութեան հակառակ ջանքերը, որոցմէ երիցագոյնն էր Խոսրովիկ Ը դարուն։ Սա ջատագով յիսնօրեայ յարատեւ ու խիստ պահեցողութեան (տես,

423), կ'ուզէր՝ որ հաւատացեալք նախ Ս. Խորհրդոյն մերձենան Զատկին օրն իսկ, «եւ ապա ճաշակեն ի լուծական կերակուրսն». որով ճրագալուցի լուծումը կը ջնջուէր։ Նոյն գաղափարէն էր եւ Ալաւկայ որդին, որ կը գրէ. «Նոյն եւ ոչ ճաշակել հրաման առաք՝ ոչ միայն ի ճրա(գալոյցսն)», եւ այլն (ԴԱ)։ Աղոնց տեսական համոզումը գործնականի վերածեց Գրիգոր կԹղ. Անաւարզեցին, որ հակամէտ յոյն եւ մանաւանդ լատինական արարողութեանց, «Եդ սահման՝ զի մի՛ լուծցեն զճրագալոյցն յեղ եւ ի քան եւ յոր ինչ առանց մսոյ է» (Որբ. 327)։ Նոյն ինքն առ Հեթում Թղթին մէջ կը յորդորէր հաւանիլ՝ որ «զզատկին շաբաթ օրն պահեմք»։ Ծննդեան ճրագալուցի լուծման չի հակառակիր, թերեւս զի աւագ շաբաթն իբրեւ մասն «աղուհացից՝» աւելի խիստ կը համարուէր։ Անոր նորաձեւութեանց դէմ դարձաւ Սիւնեաց մետրապոլիտ Ստեփանոս պատմիչն իսկ, իւր վիճակի եպիսկոպոսաց ու կղերին հետ, եւ պատասխան մը գրեցին, յորում կը պահանջէին՝ հայ եկեղեցւոյ սովորոյթն անաղարտ պահել, Ճրագալուցին «Նաւակատիս եւ Նախատօնակ» կատարելով, եւ «խթիլ յեղ եւ ի պանիր եւ յոր ինչ ա-

*ռանց մսոյ է»․ վասն զի անպատեհ է, կ՚ըսէին, Ցարութեան ու Ծննդեան նախատօնակը պահոց միւս օրերուն հաւասարեցնել* (*նոյն*, 335–6)։

*Անաւարզեցւոյն ջանքը չափաւոր արդիւնք մ՚ունեցաւ, ընդունուելով Կիլիկիոյ եւ ուրիշ քանի մը թեմերու մէջ միայն։ Այնպէս որ Ստ. Օրբելեանի յաջորդն ու տոհմակիցը Յովհաննէս՝ կը շարունակէր բողոքել անոր դէմ, որուն պատասխանելով Զաք. Ծործորեցին, կը ջատագովէր նոր կարգադրութիւնը* (*Ծրծ.* Զ)։ *Զայս հաստատեցին Սսոյ* 1307*ին եւ Ադանայի* 1316*ին ժողովները, պատուիրելով ձկամբ ու ձիթով միայն լուծել երեք ճրագալոյցներն ալ* (*Պալճ.* 274, ՚95)․ *եւ զոր Սսոյ* 1342*ին ժողովը կը յիշեցնէր Բենեդիկտոս* ԺԲ *պապին* (*Տուռ.* 371)։ *Բայց ազգին յամառութիւնն յաղթանակ տարաւ այդ բոլորին դէմ, եւ* ԺԵ *դարու սկիզբը Տաթեւացին դեռ սովորական կը գտնէր տոհմային հին նաւակատիքը* (*Քրզ. ձմր.* 31, 603․ *Հրց.* 554)։ *Աբգար դպիր* 1564*ին կը գրէր առ Պիոս Դ՝ թէ աւագ շաբաթուն արեւու մտնելէն վերջ «ձուս եւ ձկունս եւեթ ճաշակեմք»* (*Զմչ.* Դ, 522)։ *Իսկ* 1650*ին ի Կ. Պոլիս գրուած տօնացոյց մը սա ճաշացուցակը կու տայ*․

«Նախ լուծի ուտեն եւ կամ այլ ինչ բան-ջար. եւ զկնի ձու՝ ածեալ իւղ մեղրով. քանզի սեղանօրհնէքն այս է երիկունս խթման»։

Որբելեան հինգ նաւակատիք կը հաշուէ, երկու մեծ տօնից յիշեալ ճրագալոյցներէն զատ՝ Աստուածածնի, Խաչի եւ Վարդավառի Նախընթաց օրերն ալ անոնց մէջ դասելով, եւ ըսելով՝ թէ հինգն ալ մի եւ նոյն կերպով կը պահուէին, բաց ի մսէ ամէն բան ուտելով (Հկճ. Է)։

7. — Յինունք։ — Զատկին յաջորդող յիսնօրէից մէջ, փոխանակ Նախընթաց քառասնօրեայ յարատեւ պահոց՝ բոլորովին կը դադրէին չորեքշաբաթու եւ ուրբաթու պահքերը՝ հին սովորութեամբ, որովհետեւ ամէն օր տօն էր։ «Ի զատկէն մինչեւ ցվերացումն Տեառն, կ'ըսէ Մանդակունին, կիւրակէ կոչի» (109). եւ թէ այս պատճառաւ իսկ «օրէն է զուրբաթն եւ զչորեքշաբաթին իբրեւ զկիւրակէն եւ զշաբաթն ուտել» (209)։ Նոյնը կը հաստատէ Արշարունին եւս, ըսելով՝ թէ «Զկնի յարութեանն առանց պահոց քառասնօրեայ վայելմամբ» կ'անցնէին (ԺԳ)։ Եւ յաջորդաբար կը կրկնեն զայս՝ Խոսրովիկ, «Սակս ժողովոց» գրութիւնը (Թղթ. 232), Սամ. Կամրջաձորեցին (Տօն. Ե) եւ ուրիշներ։

Հայք այս կէտին մէջ ալ կը զանազանէին միւս եկեղեցիներէն, եւ Յունաց մեղադրութեան կ'ենթարկուէին. որոց պատասխանելով Տարօնացին, կը յիշէ փրկչական խօսքը՝ թէ փեսային ներկայութեանն առագաստի մանկունք պարտաւոր չեն պահելու. եւ թէ այս յիսնօրեայն՝ Քրիստոսի հոգեւոր փեսայութեան ու մեր վրայ թագաւորութեան ժամանակն է, ուրով եւ առանց պահոց պէտք է անցնել (Թէոփ. 283)։ Գիտաւոր՝ բայց մեզ անբաւական բացատրութիւն մը։ Աւելի բանի դիւրաւ գիջանող Անաւարզեցին՝ այս բանին մէջ եւս ուզեց օտարաց նմանիլ, պահանջելով Հեթմէն՝ որ « գյինանցն ուրբաթուն ի մաէ պնտիմք » (Անաւ.)։ Ուրբաթ միայն կ'ըսէ, զի Լատինք արդէն լուծած էին չորեքշաբաթին եւ շաբաթ կը պահէին։ Բայց կաթողիկոսին այդ ձեռնարկն աւելի բախտաւոր չեղաւ քան իր միւս նորութիւնքը. այնպէս որ Տաթեւացւոյն օրով դեռ հին սովորութիւնը կը յարատեւէր անընդհատ եւ ընդ հանուր (Քրզ. ձմր. 660)։

8. – Շաբաթապահք։ — Տաթեւացին՝ տոհմային սովորութեանց մասին բացարձակ լաւատեսութեամբը կը ջանայ ուրիշ կերպ մեկնել վերոյիշեալ Վարդավառի ու

Ծննդեան քառասնօրէից փոփոխութիւնը, ըսելով՝ թէ որպէս զի ժողովուրդը չձանձրանար երկարատեւ պահեցողութենէն, հայրապետները զանոնք վերածեր են շաբաթապահոց. «եւ է այժմ ծէ շաբաթապահք»։ Ասոնց մէջ կ'իմանայ Ջատկի աղուհացից եօթ շաբաթներն եւ ուրիշ տասն անջատ շաբաթներ, զորս «մեծն Ներսեսի» կանոնները, կ'ըսէ, սահմանած էին՝ «յամենայն ամսամուտս պահել շաբաթ մի, զոր այժմ պահեմք տասն շաբաթ տասն ամսեանն» (Քրզ. ձմր. 144)։ Արդարեւ Ներս. Աշտարակեցւոյն – ոչ պարթեւին – կանոնաց մէջ պատուէր կայ՝ «յամենայն ամսեան պարապիլ խնդրուածոց զաւուրս շաբաթու միոջ» (Աշտ. Լթ)։ Հոս է շաբաթապահոց հնագոյն յիշատակութիւնը, զոր յետոյ Ասողիկ եւս կը կրկնէ (197)։ Գր. Անաւարզեցին կարգեր էր՝ եւ Սսոյ 1307ի ժողովը կը հաստատէր՝ վեցօրեայ պահք մ'ալ նորահաստատ Ծննդեան (25 Դեկ.) տօնէն յառաջ (Պալճ. 276)։

Բայց թէ շաբաթապահք երկու քառասնորդայ վերածումը լինին, կը տարակուսիմ, նկատելով նախ՝ որ այդ քառասնորդք դեռ կան ու կը յիշուին Աշտարակեցիէն շատ վերջ, առանց զանազանու-

թեան պահողաց։ Երկրորդ՝ որ ահա Տա-
թեւացւոյն օրով իսկ կը պահուին տա-
կաւին «կարգաւորաց» կողմանէ՝ շաբա-
թապահոց հետ միասին, որով Նոր կար-
գադրութիւնը ծանրացուցած պիտի լինէր
կղերին լուծը, ինչ որ անտեղի է։ Եր-
րորդ՝ որ Աստուածայայտնութեան պահոց
վերոյիշեալ (429) քմահաճ անմիաբանու-
թեան մէջ կանոնաւոր վերածման մը հետ-
քը չենք տեսներ բնաւ։ Դիւրաւ կը մեկ-
նուի Տաթեւացւոյն վկայութեան ոյժը,
երբ նկատենք՝ թէ իւր ոճն է՝ ամէն բանի
մէջ որ մեզ յատուկ էր՝ գտնել բարեքիկ
բացատրութիւն մը, յաջող կամ անյաջող՝
փոյթ չէ։ Բայց յամենայն դէպս շաբա-
թապահոց գոյութիւնը մեր մէջ՝ ապահով
է Զ դարէն ի վեր։

Աղոնց կերակրոյ կարգը նոյն էր չո-
րեքշաբաթու եւ ուրբաթու հետ, ուստի
եւ մեղմ, ինչպէս տեսանք Ասողկայ վկա-
յութեամբ (աստ, 407)։ Հետեւաբար ա-
ւելորդ է կրկնել այս տեղ։

9. — Առաջաւորք։ — Ա. Ծանօթ էր
Ե–Զ դարէն իսկ (Սահ. 111), սակայն
իւր ծագման մասին հնոց կարծիքներն
հաւասար չեն։ Զենոբ կ'ուզէ՝ որ Նորա-
դարձ Հայք Լուսաւորչի վարդապետու-
թիւնը լսելու համար՝ « հինգ օր » անոր

առջեւ «անսուաղ» մնացած լինին, ուսկից եւ պահքս սկսեր է (23)։ Այս վկայութեան մէջ կ՚ընդունինք Առաջաւորաց չափն ու սահմանը, բայց ոչ եւ ծագումը, մեքենաբար կրկնուած նաեւ մեր հետագայ մատենագրերէն (Թղթ. 496, եւն), որ վարկպարազի կարծիք մ՚է եւ հակառակ Ագաթանգեղոսի՝ որ նորադարձ Հայոց պահքը կը դնէ «վաթսուն եւ վեց» օր, ոչ եթէ հինգ (545)։ Զեներայ կարծիքն ինքնահնար կը թուի, անոր համար անծանօթ է իւր ժամանակակցին՝ Գր. Արշարունւոյ, որ Առաջաւորէն մինչեւ Նոր կիւրակէն տեւող եօթանասուն եւ ութ օրերուն մէջ՝ նահապետաց եւ հին ու նոր կտակարանի անցից խորհուրդները միայն կը տեսնէ (Արշ. ծԲ)։ Սամուէլ կամրջաձորեցին իւր ծանօթ վարդապետներէն շատ եւ իրարու աննման բաներ լսեր ու կարդացեր է. յորս եւ այն՝ թէ հինգօրեայս «ոմանք» Ագաթանգեղոսի աւանդած վաթսուն եւ վեց օրերուն առաջին կամ վերջին մասը կը համարին (Տօն. Դ)։

Բայց աւելի հետաքրքրական է նոյն հօր միւս տեղեկութիւնը՝ թէ «ամենայն կողմն հարաւոյ», որ է Ասորիք եւ Եգիպտոս, մեզմէ աւելի կը պատուեն, կ՚ըսէ, այդ պահքն՝ ի խորհուրդ Նինուէացւոց

ապաշխարութեան եւ անոնց ձեւով, անասնոց ալ ծոմ բռնել տալով (անդ)։ Թէեւ այս տեղեկութիւնս անծանօթ է երիցագոյն մեկնիչին, որ է Արշարունւոյն, բայց ինծ ալ հաւանական կը թուի, նկատելով մանաւանդ մեր պահեցողութեան յար եւ նման ձեւը, եւ Յովհաննու յիշատակաւ աւարտը (անդ)։ Ասոր չի հակառակիր Տաթեւացւոյն ըսածն ալ, թէ յառաջագոյն «եօթանասուն օր» էր մեծ պահքը, որ է Առաջաւորէն սկսեալ՝ տասը շաբաթ, զոր «դեռ եւս պահեն, կ'ըսէ, եւ ունին հաստատ ազգն Խփտի եւ Հապաշի մինչեւ ցայսօր». եւ թէ յետոյ Ս. Հարք «զերկու շաբաթն ի մէջն բարեկենդանացուցին» (Քրզ. ձմր. 146)։ Բարեկենդանի միջամտութեան մասին այս կարծիքը կ'ելնէր մինչեւ Գագիկ Բ արքայ Կարուց (Ուռ. 212), եւ աւելի վեր մինչեւ Կամրջաձորեցւոյն օրերը, ուր թէ եօթանասնօրեայ պահքը եւ թէ անոր այդ վերածումն ոմանցմէ Ս. Կիւրեղ Երուսաղեմացւոյն կ'ընծայուէր (Տօն. Դ)։ Առանց փնտռելու՝ ո՛վ էր իսկապէս ադոր հեղինակը, կրնանք հաւանիլ իւր իրականութեան, եթէ յիրաւի դեռ կը տեսնէր Տաթեւացին եօթանասնօրեայ պահեցողութիւնն այլոց քով, որոյ առաջին շաբաթը կրնար Նինուէի յիշատակին նուիրուած լինել։

Բ. Աւելի կարեւոր է պահեցողութեանց ձեւը։ Զենոբ, ինչպէս տեսանք, «անսուաղ» կ'երեւակայէ նորադարձ Հայոց պահքը։ կրնանք ուրեմն անկասկած հետեւցնել՝ թէ է դարուն այդ ոճով իսկ կը պահուէր Առաջաւորքը։ Զայս արդէն յայտնապէս կը հաստատէ Սիւնեցին ալ դար մը վերջ, ըսելով՝ թէ Հայքս Ս. Գրիգորի սահմանածն ենք պահեր «ծոմաջան եւ անսուաղ՝ մինչեւ յանասունս անգամ» (Թղթ. 333)։ Յունաց անտեղի հակառակութիւնն այս պահոց դէմ, — զոր սուտն Դամասկացի կը համարէր հաստատուած Մանազկերտի ժողովէն՝ ընդդէմ քաղկեդոնականաց (Լոյս, 1905, էջ 1114), եւ ուրիշներ՝ իբր ի պատիւ Սարգիս անուն ցնորական կախարդի մը, որոյ հետ կը շփոթէին նոյն պահոց ծայրը տօնուած մեր Ս. Սարգիսը (Ուռ. 213. Ընդհ. 66, 88), — մեծապէս սաստկացուցեր էր յաչս Հայոց՝ այս պահոց նշանակութիւնը։ «Այնպէս պնդապահս սահմանեցին, կ'ըսէ սուտն Դամասկմացի, որպէս զի անձինք անմեղաց այնպէս երկնչին ի նմանէ՝ որպէս ի բարկութենէն Աստուծոյ» (Լոյս, անդ)։ Տարօնացին այդ ոգւով կը պաշտպանէ զայն Յունաց դէմ, գրելով՝ թէ «Մեզ պարտ է հինգօրեայ պահօք ծոմաջան լինել» (Թէոփ.

275), ինչպէս կ'ընէին ալ։ Եւ Շնորհալին կէս դար վերջ դեռ կը հաստատէ ադոր շարունակութիւնը, թէեւ ոչ ամբողջ հայութենէն, ըսելով՝ թէ «Բազումք ըստ նախնեացն սովորութեան ծոմապահութեամբ զաւուրսն զայնոսիկ անցուցանեն» (Ընդհ. 88)։ Ուրեմն արդէն կամաւոր դարձած էր պահեցողութեան այս ոճը, որ ինչպէս կը տեսնենք՝ բոլոր պահոց մէջ խստագոյնն էր, աղուհացէն ալ աւելի։

10. – *Երախայք*։ — Քրիստոնէութեան նախկին դարերուն՝ երբ չափահաս հաւատացեալք պիտի մկրտուէին, կանխաւ կ'ենթարկուէին կերակրոց ժուժկալութեան։ Ասոր յիշատակութիւնք շատ կան Ս. Հարց գրուածոց մէջ (Կաբր. Բ, 2594, 2602–3)։ Հայ եկեղեցին տարբեր ընթացք չէր կարող ունենալ։ Լուսաւորիչ զՀայս մկրտելէ յառաջ հրամայեց անոնց «ամսօրեայ ժամանակօք ի պահս եւ յաղօթս յամենալ» (Ագաթ. 619)։ Ամիս մը տեւողութիւնդ հետաքրքրական է, մանաւանդ որ այսչափ ճշդուած չէ ուրիշ ազգաց մէջ։ Նմանապէս Ս. Վրթանէս իւր դարձուցած Հայերը դեռ չկնքած՝ «տայր ժամանակ սահմանեալ ապաշխարութեան» (Փաւս. 8). եւ պահքն անբաժան էր ապաշխարութենէն, ինչպէս պիտի տեսնենք քիչ յետոյ։

Այդ հին սովորութեան զօրութեամբ՝ Վարդան վրդ. կը յորդորէ, որ մանկանց մկրտութենէն յառաջ անոնց ընտանիքը «շաբաթ մի պահօք» անցնեն՝ անկարող երախային փոխան (Քրզ.), եւ զոր կը կրկնէ Յովհ. Երզնկացին եւս (Խրտ. Դ)։

11. – Ապաշխարողք։ — Ա. Անոնք որ ծանր մեղաւորութենէ կը դառնային, ժամանակ մը պարտաւոր էին ապաշխարութեամբ քաւել իրենց անցեալը, եւ Աստուծոյ ցասումն ամոքել։ Ասոր մասն էր պինդ պահեցողութիւնն ալ, որ կը ծագի հին կտակարանէն (Թագ. Ա, Է, 6. Գ, ԻԱ, 27), եւ կ'ընդունուի քրիստոնէութենէն (Ֆլեօր. 392)։ Այսպէս եւ Նորադարձ Հայերն ըստ Ագաթանգեղոսի քուրձ զգեցած, եւ մոխրի վրայ նստած, «պահեալ չինէին պահս աւուրս վաթսուն եւ վեց» (545), որ տարբեր էր վերոյիշեալ երախայական երեսնօրեայէն։ Նոր օրէնքը, կ'ըսէ Յաճախապատումը, պղծագործը կ'արտաքսէ եկեղեցիէն, մինչեւ որ գիշեր ու ցերեկ «ի խորգ եւ ի մոխիր պահօք ապաշխարեսցէ» (69)։ Կերակրոց զրկումը, կը յաւելու նոյն գրոց հեղինակը, զմարդիկ ապաշխարութեան եւ ուղղութեան կը բերէ. անոր համար «ըստ խոստովանութեան կարգին հաստատեալ ի պահս՝ լուծանին մեղքն»

(83)․ *որով ապաշխարութեան օրինական մասն էր պահեցողութիւնը, գործադրուած դեռ Տաթեւացւոյն օրով եւս* (*Քրզ. ձմր.* 245)։ *Մանդակունին ալ կը յանձնարարէ մեղաւորաց «զպնդութիւն պահոց... խորգով եւ մոխրով»* (147), *որ յայտնի չէ՝ օրինակա՞ն է թէ կամաւոր։ Բայց հանդերձից այդ խստութիւնը, յատուկ նաեւ ուրիշ պահոց* (*սստ*, 412, '20), *կար Հրէից քով եւս, որոնք իրենց ապաշխարողական պահքերը կ'անցնէին քրձով ու մոխրով* (*Գ Թագ.* ԻԱ, 16, 27․ *Նեեմ.* Թ, 1․ *Ա Մակ.* Գ, 47)։

*Բ. Երբեմն թագաւորի մը մեղաց համար ժողովուրդը պահք կը պահէր։ Երբ Արշակ հիմնեց անօրէն Արշակաւանը, մեծն Ներսէս զայն ապաշխարութեան յորդորեց, ըսելով՝ թէ հրաման տանք բոլոր աշխարհին՝ փոխանակ քեզ « ի պահս եւ ի խնդրուածս լինել»* (*Փաւս.* 111)։ *Այսպէս եւ Յեզաբէլ պահել հրամայեց ժողովրդեան՝ Նաբովթայ վերագրուած սուտ հայհոյութեան համար* (*Գ Թագ.* ԻԱ, 9, 12)։

*Գ. Նախնեաց մէջ յիշուած կան ինչ ինչ ապաշխարողական պահքեր, որոց գործածական լինելուն կը տարակուսիմ։ Այսպէս Աղւակայ որդին կանոնադրած է՝*

որ պղծեալ կերակրէն կամաւորապէս ճաշակող քահանայն երկու տարի ապաշխարէ. մին «սրբապահութեամբ» եւ միւսը «շաբաթապահութեամբ» (ե), որոց բացատրութիւնը տեսանք յառաջագոյն (404)։ Դարձեալ ուրիշ նման մեղաց համար կը պատուիրէ՝ որ երեք շաբաթ «պահօք ապաշխարեսցեն». եւ կամ երեք տարի «սրբապահութեամբ» եկեղեցիէն դուրս, եւ երկու տարի «շաբաթապահութեամբ» ներսն անցնեն (իե, կե)։ Սոյնպիսի պահքեր սահմանած են նաեւ Մխ. Գոշ (Խրատ. Պատ.) եւ Յովհ. Երզնկացին (Խրատ. ժէ)։

12. – Դիւահարք։ — Ասոնց բժշկութեան իբր հնարք ցուցուած է Աւետարանէն՝ աղօթք եւ պահք (Մատթ. ժէ, 20), ծանօթ նաեւ Հրէից մէջ (Տոբ. գ, 10), զոր եկեղեցին ալ կը շարունակէր գործադրել։ «Զի՞նչ են երդմունք դիւաց», կը հարցնէ Մանդակունին, եւ կը պատասխանէ. «Ո՛չ ապաքէն պահք եւ աղօթք հաւատովք» (192)։ Եզնիկ նոյնը կը հաստատէ, ըսելով՝ թէ դիւաց բոլոր գունդերն «ի պահոց եւ յաղօթից փախստական գընան» (85)։ Այդ Հարց հետ կը միաբանի եւ Եղիշէ, ըսելով՝ թէ այդ տանջանաց մատնուած եղկելեաց՝ «ձեռնել ի պահոց պիտի» (298)։ Եւ պահողն էր նոյն ինքն

այսահարը (Մանդ. 193), ոչ թէ ուրիշներ անոր փոխան։

13. – Սգաւորք։ — Սիրելեաց մահուան կամ կորստեան ցաւով ընկճուած սրտերու եւս յատուկ էր՝ մերժել փափուկ կերակուրները. ոչ միայն ի սկզբան՝ երբ բնութիւնն ինքնին կը խորշէր անոնցմէ, այլ յետոյ եւս կամաւորապէս շարունակելով նոյն զրկումը սգոյ ամբողջ շրջանին մէջ։ Ծագումն հին է. Սաւուղի մահուան առթիւ Հրեայք եօթն օր պահեցին եւ Դաւիթ օր մը (Թագ. Ա, ԼԱ, 13. Բ, Ա, 12)։ Իսկ Յուդիթ (Ը, 6) եւ Աննա մարգարէն (Ղկ. Բ, 37) իրենց ամբողջ այրութիւնը պահօք անցուցին։ Նոյնպէս էր մեր քով ալ։ Եղիշէի տիկնայք, որոնցմէ ոմանց ամուսինք ընկած էին պատերազմին մէջ եւ ոմանցն աքսորուած, կէս մը կարօտութեան պատճառաւ եւ կէս մ'ալ կամաւ՝ «իբրեւ այրիք սգաւորք՝» (Եղիշ. 176) հրաժարած ապրեցան իրենց ճաշի սպասաւորներէն, գեղեցիկ սպասներէն, լուացումներէն, օծումներէն եւ ազնիւ հանդերձներէն. անոնց տաճարները բարձի թողի խանգարեցան. եւ իրենց սնունդն էր կորեկահատ, բանջարեղէն ու ջուր միայն (Նոյն, 173-4. Փրպ. 331-2)։ Կէս մը կամաւոր ըսի զայս. եւ արդարեւ երկար

դարերէ վերջ Տաթեւացին դեռ կը վկայէր՝ թէ սգոյ ժամանակ Հայք կ'անցնէին «ի սով եւ ի ծարաւ». կը մերկանան իրենց զգեստները, եւ գլխնուն վրայ հող ցանած կը նստին (Հրց. 670)։ Ու տակաւին ԺԶ դարուն Սիմ. Այրիվանեցին ողբալով Տրդատայ թախթը՝ կ'ըսէր. «պահս կարդացէք՝ պահք արտասուաց» (Այր. 368)։

14. – Հարսանիք։ — Վարդան վրդ. կ'ուզէր՝ որ հարսանեաց խորհրդոյն պատրաստութեան համար՝ փեսային եւ հարսին բոլոր ընտանիքը կանխաւ «շաբաթ մի պահօք» անցնեն բարեպաշտութեամբ։ Եւ այնչափ ծանր կը համարէր այս պէտքը, որ եթէ չպահեն, կ'ըսէ, «կորուսին զպըսակն» (Քրզ.)։ Թերեւս արդէն սովորութիւն էր այդ, կամ թէ պատուիրողին սպառնալիքն իսկ կը թելադրէր պահել այդ հրամանը։

15. – Հասարակաց վտանգներ։ — Թըշնամեաց աւերիչ յարձակմանց դէմ երկնից օգնութիւնը հայցելու համար՝ հաւատացեալք յատուկ պահք կը կարգէին։ Յովսափատ՝ Հրէից արքայն՝ ի լուր Ասորոց գալստեան՝ բոլոր ժողովրդեան պահել հրամայեց (Բ Մնց. ի, 3). եւ Եսթերի օրով երեք օր ծոմ բռնեցին՝ Պարսից ըս-

պառնացած կորստենէն ազատելու համար (Եսթ. Դ, 16)։ Նոյնպէս էր եւ Հայոց մէջ։ Ս. Վրթանեսի ժամանակ երբ Մազքութք սկսան ասպատակել Հայաստանի վրայ, «առնուլին պահս պահել, կ՚ըսէ Փաւստոս, եւ խնդրել յԱստուծոյ՝ զի փըրկեսցէ զնոսա» (16)։ Վարդանանց ապըստամբութեան շրջանին եկեղեցին նոյնպէս պատուէր տուաւ՝ քաղոց ամբողջ ամիսը «պահօք եւ աղօթիւք» Աստուծոյ ապաւինիլ (Եղիշ. 67)։

Կ՚երեւի՝ թէ այսպիսի յանկարծական պահքեր կանխաւ կը ծանուցուէին եկեղեցեաց բեմերէն՝ եպիսկոպոսաց ու քահանայից բերանով (անդ)։ Այս պարագայն աւելի յստակ է Ս. Ներսեսի ընծայուած կանոնաց հետագայ յօդուածին մէջ. «Որք ի բնմի պահս քարոզեն, եւ ոք լուծանէ առանց մարմնական վտանգի, նզովեալ լիցի» (Ներս. ԽԲ)։ Միանգամայն կը տեսնենք այս խօսքերէն՝ որ ժողովուրդն այս կարգի պահոց պարտականութիւնն այլոց չափ ծանր չէր համարեր։

Եւ որովհետեւ այդպիսի առթից մէջ կարելի չէր ամբողջ ժողովրդեան երկարատեւ պահեցողութիւնը, զի գործաւորը պիտի աշխատէր ու զինուորը կռուէր, ուս-

տի պատերազմի ժամանակ կը սահմանուէին յատուկ պահողք, որոց գործն էր այդ միայն, եւ որ հարկաւ բարեպաշտութեան մէջ աւելի ծանօթ անձինք էին։ Այսպէս մինչդեռ Վարդանանք կը յարձակէին պարսկական ամրութեանց վրայ, մի եւ նոյն ժամանակ «աղօթականքն անդադար լինէին յաղօթս իւրեանց, եւ պահողքն պահէին ՚ի պահս իւրեանց» (Եղիշ. 56), ուր յայտնի է դերերու եւ անձանց տարբերութիւնը։

16. — *Յատուկ նպատակներ։* — Փաւստոս կը պատմէ Ս. Գրիգորիսի մասին՝ թէ իւր վիճակին բարեկարգութեան համար երկնային օժանդակութիւնը խնդրելու եւ իւր օրինակաւ ժողովրդեան եռանդն արծարծելու նպատակաւ, «զցայգ եւ զցերեկ պահօք եւ աղօթիւք» կ'անցնէր (13)։

Կիրակոս ճգնաւորը Ս. Թադէոսի նշխարաց յայտնութեան արժանանալու տենչով՝ երեսուն օր անցուց «ի պահս պնդութեան»։ Յետոյ դարձեալ մի եւ նոյն վախճանաւ կրկին կը պահէ չորս ամիս, մարերի ամսէն մինչեւ նաւասարդ (Սոփ. Ը, 89, 92)։

# ՄԱՍՆ ՎԵՑԵՐՈՐԴ

ԽՏՐՈՒԹԻՒՆ ԿԵՐԱԿՐՈՑ. — ՊՂԾԵԱԼՆԵՐ. — Ի ԲՆԷ ՊԻՂԾԵՐ. — ՍՐԲՈՒԹԻՒՆ ՊՂԾԵԼՈՑ

*Մարդկային ստամոքսն ամենակեր եղած է միշտ ի բնէ, եւ փորձեր է ուտել՝ ինչ որ գտեր է բնութեան մէջ ծամքելի եւ հաշտ քմացը հետ։ Իր վայրենութեան շրջանին չէ խորշեր իր նմանիքն անգամ յօշոտել եւ ուտել։ Քաղաքակրթութիւնը բարեկարգեց մարդուն սնունդն ալ. բայց ամենակերութեան հին բնազդը մոխրի տակ ծածկուած կը մնայ միշտ, եւ կը տեսնենք տակաւին անոր զարթնումը սովի տագնապին մէջ։ Կրօնքը, որ քաղաքակրթութեան ռահվիրայն եղաւ, իր ձեռքն առաւ մարդուն սննդեան խնդիրն ալ, արգելլով անոր խառնիխուռն ուտել ամէն բան, եւ զատելով ուտելին զզուշալիէն, որոց առաջինը սուրբ կոչեց, եւ երկրորդը՝ պիղծ։ Այս է մեր հոս քննելի «խր-*

*տրութիւն կերակրոց» ըսուածը (Ոսկ. Մատթ. Ա*, 728. *Ընդհ.* 159. *Լմբր. Ատեն.* 201. *Ծրծ. Գ*)։



## Ա. Ի ԲՆԷ ՊԻՂԾԵՐ

1. – *Ծագումն։ — Ուտելեաց խտրականութիւնն աւելի կամ նուազ չափով կար բոլոր ազգաց մէջ* (*Վիգ. Ա*, 615)։ *Այլուր ցուցած եմ՝ թէ հներէ ոմանց կարծեօք՝ դիւաց ներգործութիւնն էր որ կը պղծէր շատ նիւթեր* (*Երդ.* 182–4)։ *Այս մասին հետաքրքրական է Տաթեւացւոյն մէկ խօսքը, որ մեկնելով սեղանօրհնէից նպատակը, կ'ըսէ. «Ընդ կերակուր կամ ընդ ըմպելի՝ դեւն որ թշնամի է մեր՝ բազում անգամ վնաս խառնէ». եւ թէ կ'օրհնեն՝ «զի փախիցեն դեւք եւ անվնաս կերիցուք»* (*Քրզ. ամր.* 348), *մինչ դեռ Շնորհալին նախամարդոյն մեղօք անիծեալ երկրայնոց մաքրութեան համար կը համարի օրհնութիւնը* (*անդ*, 348–9)։ *Տաթեւացւոյն համոզումը սերտիւ կապուած է դիւաց տարապայման տիրապե-*

տութեան գաղափարին հետ՝ որ կը կաշկանդէր ու կը տանջէր հին Հայուն ուղեղը (Երդ. 214–38)։

Օրհնութիւնն արդարեւ կը սրբէր ուտելի համարուած կերակրները (Ա Տիմ. Դ, 5)։ Բայց կային՝ որ ի բնէ պիղծ ու խոտելի կը նկատուէին, եւ կը պղծէին իրենց մերձեցած ուրիշ նիւթերն ալ. եւ ասոնք գլխաւորապէս անասունք էին ։ Մազդեզանց երկարմատեան դրութեամբ՝ սուրբ կենդանիք բարի արարչի մը, եւ անսուրբք կամ վնասակարք՝ չար արարչի մը գործերն էին (Եզն. 132, '45). այս պատճառաւ՝ գայլ, գորտ, մուկն, մրջիւն, օձ եւ այլ այսպիսիք՝ չար ոգւոց ընդունարան ու զզեստ համարուած էին (Փորթ. 132)։ Մեզ աւելի ծանօթ էին հրէական խտրութիւնք, որոց ծագումն ոմանք նոյն երկարմատեան վարդապետութեան մէջ որոնեցին։ Իսկ ուրիշներ կը դնեն ադոնց մէջ կրկին նպատակ. Եբրայեցիքը հեթանոսաց սեղանակցութենէ ու գայթակղութենէ հեռի պահել, եւ առողջութեան վնասող ուտեստներէ զգուշացնել (Վիգ. Ա, 615–20)։ Մեր հին նախնիք, եւ կրտսերներէ ոմանք անոնց հետեւելով, աւելի լայն տեսութեամբ մը կը նային մովսիսական օրինաց վրայ՝ քան Տաթեւացին

*եւ իւր ժամանակակիցք։ Եզնիկ՝ իմաստասէր միտք, կը մերժէ իսկական անսրբութեան գոյութիւնն արարածոց մէջ։ Ըստ իրեն՝ «չիք ինչ պիղծ ի կերակրոցն». եւ եթէ հրէական օրէնքը զոմանս պիղծ կը կոչէ, «իբր ոչ եթէ պիղծ ինչ բնութեամբ էին, կ'ըսէ, այլ չախորժականսն մտաց մարդկան պիղծս կոչէ». եւ անոր համեմատ օրէնքը դրուեցաւ* (283)։ *Սոյն իմաստուն տեսութիւնը կը կրկնէ եւ Ալաւկայ որդին՝ իւր կանոնաց յառաջաբանին մէջ։ Իսկ Վարդան անսրբութեան գաղափարը ծագած կը համարի երեք պատճառներէ. «վասն զարշ տեսակին, կամ վասն անճոռնի մեծութեանն, եւ վասն անմարսական մսոցն». եւ ինքն ալ կը հաստատէ՝ թէ «ըստ բնութեան չեն պիղծք»* (*Ղեւտ.*)։

*Ինչ ձեւով ալ մեկնուէր հին օրէնքը, այս ստոյգ է՝ որ իւր ազդեցութիւնն ունեցաւ քրիստոնէութեան վրայ, սկսեալ Առաքելոց օրերէն։ Իրաւ է՝ թէ Նոր կրօնքը խափանեց հինը եւ յեղաշրջեց անոր խտրականութիւնքը։ Պաւղոս կ'ուսուցանէր՝ թէ Աստուծոյ բոլոր արարածները բարի են, եւ անոնց մէջ պիղծ բան չկայ* (Ա Տիմ. Դ, 4). *այլ պիղծ են՝ այնպէս համարողին համար միայն* (Հռ. ԺԴ, 14, 20)։ *Եւ լոկ այն ժամանակ կը պահանջէ*

*խօրել՝ երբ ակարամիտ եղբայրներ կըր-նային գայթակղիլ ի տես անխտրութեան* (Ա Կոր. Ը, Ժ. Հռ. ԺԴ, 14–23)։ *Հա-ւանօրէն այս գաղափարով էր՝ որ առա-քելական ժողովն հաւատացելոց պատուի-րեց զգուշանալ զոհեայ, հեղձուցեալ եւ ա-րիւն ուտելէ* (Գործ. ԺԵ, 20, 29)։

*Հրէական ազդեցութիւնն երթալով ա-ւելի զօրացաւ, առաւելապէս Հայոց քան ուրիշ ազգաց մէջ. եւ աւելի զգալի է ըս-տորին քան հին դարերուն։ Այս պատ-ճառաւ մեր խտրականութիւնը պիտի բաժ-նեմ երկու շրջաններու։ Դիտելու ենք եւս՝ որ խտրութեան սահմանն անհաւասար էր ինչպէս հեթանոսաց՝ նոյնպէս քրիստո-նեայ ցեղերու մէջ. այնչափ որ պայքարի պատճառ դարձաւ Հայոց եւ օտարաց մի-ջեւ։*

2. – *Ա Շրջան։ — Հայոց դարձէն ոչ շատ ուշ,* Ե *դարուն իսկ կ'ըսեմ, կը պա-տահինք սուրբ եւ անսուրբ չորքոտանեաց մովսիսական ընդհանուր սահմանին։ Փար-պեցին կը նկարագրէ զԱյրարատ՝ լի «է-րէովքն կճղակաբաժանիւք եւ որոճայնովքն»* (22). *եւ Խորենացին Կարնոյ լեռները հոծ կը տեսնէ նոյնպէս «երէովք կճղակաշա-խիւք եւ որոճայնովք»* (256)։ *Ի՞նչ կը նշ-շանակէ այդ յատկութեանց մասին յի-*

շատակութիւնը, բայց եթէ կարեւոր էին ատոնք՝ իբրեւ որոշիչ ու պայման ուտելի անասնոց, ինչ որ անհրաժեշտ էին Հրէից համար եւս (Ղեւտ. ԺԱ, 3–4)։ Այս կրկին հանգամանք սակայն անբաժան էին անոնց քով, ուր մեր նախնիք նոյնքան խստութեամբ չէին պահանջեր երկուքն ի միասին։ Այսպէս խոզն անորոճ եւ անսուրբ ըստ Հրէից (անդ, 7), Հայոց քով ուտելի էր, եւ Եղիշէի կողմանէ թուուած է սուրբ անասնոց կարգին [1] (43). ու մեր նախարարք երէոց հետ վարազ ալ կ'որսային (Փրպ. 26)։ Անոնց ճաշակելի որսերուն մէջ կար եւ ցիռը (անդ) կամ իշավայրին (Խոր. 138), զոր կրնանք նոյնպէս ուտելի համարիլ, նկատելով Հայոց մէջ ծանօթ բարսեղեան կանոններն ալ, որ հարկադրուեր են արգելուլ «ուտել զմիս ուղտոյ եւ ցռոյ» (ՃՂԱ)։

Ընդ հակառակն սովորաբար կը խըտրէին նախնիք զանոնք՝ որ երկու յատկութեանց եւ ոչ մին ունէին։ Եղիշէ՝ Վարդանանց կողմանէ պաշարուած Սիւնեցւոց համար ըսելով՝ թէ «զէշս եւ զձիս մեռելոտիս առ սովոյն վտանգի անխտիր ուտէին» (67), կը ցուցնէ՝ թէ այդ անա-

1. Ոսկեբերան նոյնպէս ուտելի կը դնէ զխոզենին (Թղթ. Ա, 96)։

սունք իսկ ըստ օրէնի անուտելի էին՝ փար-պեցւոյն եւ Խորենացւոյն վերոյիշեալ սահ-մանին համեմատ, եւ ոչ թէ անոնց սա-տակը միայն։ Հին օրէնքէն զարտուղու-թիւններ կը նշմարուին Թոչնոց մէջ ալ. այսպէս փորձ արգելուած Մովսէսէ (Բ Օր. ԺԴ, 16), կերակուր էր Ե դարու Հայոց (Փրպ. 26)։

Մեռեալ անասնոց առաւելագոյն ան-սրբութիւնն ակներեւ է Փաւստոսի վկա-յութենէն ալ, որ կը պատմէ Ս. Ներսեսի համար՝ թէ կանոն դրաւ «հրաժարել ամենեւին ի մեռելոտոյ եւ յարեան ուտե-լոյ», զորս պիղծ կը համարէր (76)։ Եւ այս պատուէրս՝ որ կը բղխէր հարկաւ վերոյիշեալ առաքելական սահմանէն ու մովսիսականէն միանգամայն (Ղեւտ. ԺԷ, 10–5. Բ Օր. ԺԴ, 21), ցոյց կու տայ եւ զայս՝ թէ Հայք այդ նիւթերէն դեռ չէին խորշեր. այնպէս որ Հարք զգուշացնելու համար զանոնք՝ կը հարկադրէին յաւի-տենական պատիժ սպառնալ։ «Մեռելոտի ուտել եւ զարիւն անասնոց ըմպել, կ՚ըսէ Ցանախապատումը, եղկութիւն եւ թշուա-ռութիւն առաջի կայ» (71)։ Հաւանօրէն իւր ըստծին ինք ալ համոզուած էր։

Այդ շրջանին անսուրբ ուտեստներէն մին ալ էր կոտց գա̈նկալը, զարձեալ հին կտա-

կարանէն (Թիւք, ԻԵ, 2. Բ Օր. ԼԲ, 38) եւ առաքելական հրամանէն։ Յազկերտ իւր դուռը գտուած հայ նախարարները կը փորձէր հրապուրել, որպէս զի գուցէ հաւանին ուտել «զմիս զոհեալ». եւ զոր կը յարէ պատմիչը՝ «ոչ էր երբեք օրէն ուտել քրիստոնէից» (Եղիշ. 17)։ Նմանապէս ուրացեալն Վասակ կը ջանար, կ'ըսէ, «կնքաւոր մարդկանն» բռնի կերցընել «միս յազածոյ» (Նոյն, 53)։ Այս օրինակաց մէջ բռնադատ կրօնափոխութեան խնդիր կար, որով զոհեալ մսին մերժումը բնական էր։ Բայց երբ հեթանոսաց հետ բարեկամաբար պիտի ուտուէր նոյն մսէն, Ս. Հարք ձայնակից էին Պաւղոսի տեսութեանց հետ (աստ, 453)։ Եզնիկ՝ կերակրոց աղօթիւք սրբուելու առաքելական բացատրութիւնն առնելով նաեւ զոհելոց մասին, կ'ըսէ լայնախոհ մտօք. «Իբր ոչ եթէ պիղծ ինչ իցէ եւ սրբիցի. այլ որ նոցա (տկարամտաց) պիղծն կարծէր վասն զոհելոյն», աղօթքը զայն ալ կը սրբէ (284). որով եւ պիտի կարենար ուտուիլ։ Բայց որովհետեւ փոքրոգի գայթակղողներն անպակաս պիտի լինէին միշտ, զարմանալի չէ որ սովորութիւնն ի սպառ խափանէր զոհելոց ճաշակումը թէ մեր եւ թէ Յունաց մէջ (Ոսկ. Թղթ. Ա, 96)։

Քան զայս աւելի մանրամասնութիւն չեմ գտած առաջին շրջանի խտրութեանց մէջ, որոց վրայ բաց ի Ս. Գրոց՝ ընդհանուր քրիստոնէութեան ազդեցութիւնն ալ նշմարելու ենք։ Եւ արդարեւ «Առաքլկ. կանոնք» կ'արգելուն ծանր սպաննալեօք՝ արիւնէն չզատուած միսն ու գազանաբեկը։ Գանգրեայ ժողովը կը յիշէ հաւատացելոց հրաժարումն «յարենէ եւ ի զոհելոյ կոոց»։ Աւրելիանոնի ժողովն Եկեղեցւոյ հաղորդակցութենէն կը զրկէ զոհեալ՝ հեղձուցեալ կամ գազանաբեկ կերողները։ Իսկ Տրուղեան ժողովն՝ արիւն կերող կղերականքը պաշտօնազուրկ կ'ընէ։ Լատին եկեղեցին արիւն եւ հեղձուցիկ ճաշակելու արգելքը պահեց մինչեւ Թ դար, յորում դադրեցուց. ընդ հակառակն Յոյնք եւ ուրիշ արեւելեայք պահեցին մինչեւ վերջ (Վիգ. Ա, 276–7)։

3. – Բ Շրջան։ — Ա. Այս տեղ շատ աւելի բարդ է խտրականութեան սահմանը, եւ շատ աւելի ծանօթ, ըստ որում անով զբաղելու առիթները բազմաթիւ են եղեր, եւ մովսիսական օրինաց ոգին երթալով խորագոյնս թափանցեր է հայ ուղեղին մէջ, ու պղծութեան գաղափարը սաստկապէս տիրապետեր է անոր վրայ։ Այս պարագայն շատ զգալի է հետագայ

քանի մ'օրինակաց մէջ։ Պաւղոս Տարօնացին գայթակղած էր՝ որ Փրանկները «զարչ եւ զմեռելոտի անխտիր ուտեն» (Թէոփ. 178). եւ Տաթեւացին անոնց ու մեր սովորութեանց տարբերութեանց մէջ կը թուէ «զպիղծ կենդանիս ոչ խտրել, եւ զհեղձուցեալսն ուտել» (Հրց. 553)։ Շնորհալին, հեզութեան այդ գերագոյն պատկերը, կ'այլափոխուի՝ կը զայրանայ եւ ծանրապէս կը նախատէ Ասորիները, որոնք թողած էին կերակրոց խտրութիւնքը. եւ անոնց դէմ կը պայքարի՝ յենլով հին ու նոր կտակարանաց վրայ (Ընդհ. 158–9)։

Նշանաւոր Իւանէ իշխանի որդին Աւագ՝ թաթար զօրապետին բանակն երբ գնաց, բերին՝ կ'ըսէ Կիրակոս՝ շատ մսեր «ի սուրբ եւ յանսուրբ անասնոց . . . եւ խրմրգս (որ է շինուկ) ի կաթանէ ձիոց», սկսան ուտել եւ ըմպել։ Աւագ եւ ընկերները սակայն հրաժարեցան ուտելէ, պատասխանելով՝ թէ «Քրիստոնէից ոչ է սովորութիւն ուտել զայս կերակուր եւ ըմպել զայս ըմպելի» (138)։ Նոյն պատմիչը գերեալ անեցւոց համար կ'ըսէ սրտցաւութեամբ՝ թէ անոնք որ կը հաղորդուէին Աստուածորդւոյն պատուական մարմնէն եւ արենէն, «ուտէին զմիս անսուրբ եւ նեղ-

ձուցիկ, եւ ըմպէին ի կարաՆէ ձիոց պղծոց» (140)։ Ապարանեցին ԺԵ դարուն տակաւին կը յիշեցնէ Հայոց փարումը խորականութեանց, դիտելով՝ թէ «դեռ եւս անգիտութեամբ եւ թերահաւատութեամբ են ի ներքոյ օրինականացն» (ԽԵ, ԼԸ)։

Բ. Այդ շրջանի խորհրդոց մէջ ուրեմն պահուած էին միշտ հիներն ընդհանրապէս։ Այսպիսի է հեղձուցիկը՝ զոր տեսանք սա վերոյիշեալ վկայութեանց մէջ, եւ որոյ հետ նոյն կը թուի Տարօնացւոյն մեռելոտին, դատելով Շնորհալւոյն այս բացատրութենէն, «զհեղձուցիկ մեռելոտին» (Ընդհ. 159)․ զի հաւանական չէ՝ թէ բուն սատակն ուտէին Ասորիք կամ ուրիշներ։ Մովսէս Եզնկացին նոյնպէս անսուրբ կը դատի «զմեռելոտին» (Մվ. Եզկ.), իւր հայրենակցին հետ՝ որ կ'ըսէ. «զմեռելոտին՝ որ է մնոտոտան» (Կր. Եզկ.)։ Տարօնացին հին ու նոր կտակարանաց կ'ապաւինի՝ հաստատելու համար՝ թէ չմորթուած անասնոց «պիղծ է միսն», եւ զայն գազանք ուտելու են՝ եւ ոչ մարդիկ (Թէոփ. 179–83)։ Այս կարգէն էր, եւ Ալաւկայ որդին անուտելի կը քարոզէ նեռահար կամ գբի մէջ բռնուած որսն ալ՝ որոյ շունչն ելած է (Թ)։ Նոյնչափ խորշելի էր նաեւ զազանաբեկը (Մվ. Եզկ.),

*որ համաձայն էր մովսիսական օրինաց (Ղեւտ, ԻԲ, 30)։*

*Այդպիսի մսոց անսրբութեան պատճառն արիւնն էր՝ որ անոնց մէջ կը մնար։ Շնորհալին զատկական գառին արեան ճաշակումն արգիլելու ժամանակ կ'ըսէ՝ թէ արիւնը կերողը մեռելոտի կերած կը համարուի. «զի արիւնն առնէ պիղծ զմեռելոտին եւ անուտելի՝ որ ի նմին մնայ եւ ոչ ելանէ». եւ կը յիշեցնէ աստուածային պատուէրն առ Նոյ՝ միսն արեամբ չուտելու (Ընդհ. 160)։*

*Բոլոր ընտանի կամ վայրենի անասունք, որոնք չէին ուտուիր հին օրինաց մէջ, արգելուած էին նաեւ Հայոց համար։ Վերոյիշեալ վկայութեանց մէջ անսուրբ էր ձիոյ կաթը, որովհետեւ նոյն կենդանին իսկ «պիղծ» էր, ինչպէս տեսանք։ Այսպէս նաեւ Վանական վրդ. իւր աշակերտօք գերի տարուելով Թաթարաց, երբ առաջարկեցին իրենց նոյն անասնոյն մսէն, ասոնք մերժեցին՝ ըսելով. «Մեք ձիոյ միս ոչ ուտեմք» (Կիր. 133)։ — Իշոյ հին խտրութիւնն ալ կը պահուի դեռ՝ կատուի հետ միասին, զորս առ հարկի կերան Սսեցիք իրենց 1375ի պաշարման առթիւ (Սիս. 228)։ — Խոզը, երբեմն ուտելի, այս շրջանին դեռ նոյնպէս է Շնոր-*

հալւոյն (Ընդհ. 156) եւ առ հասարակ Հայոց համար (Ապար. ԾԵ, Է. Ծրծ. Գ), մինչդեռ Տարօնացին անսուրբ կը համարի զայն (Թէոփ. 279), եւ Սսոյ 1307ի ժողովին գործոց համեմատ՝ բարձր Հայոց վանականներէ ոմանք կը խորշէին անկից, որպէս թէ անոր ճաշակումը պիտի խափանէր դիւաց հալածումն այսահարներէ, որոց դեւերը խոզերու մէջ յղեց Յիսուս (Տուռ. 370)։ — Պիղծ էին նաեւ շունը (Ընդհ. 158), եւ բոլոր գազանք, ինչպէս գայլը (անդ, 159, '58), արջը (աստ, 459) եւ այլք։

Երկպառակութիւն կար, կ'ըսէ Ալաւկայ որդին, նապաստակի նկատմամբ։ Ըստ իւր համոզման՝ որ հրէականն էր (Ղեւտ. ԺԱ, 5), «մեռելոտոյ եւ նապաստականի ոչ գոյ բաժանումն, վասն զի մի են նոքա անմաքրութեամբ»։ Ընդ հակառակն ուրիշներ չէին ընդունիր այդ սահմանը, այնչափ՝ մինչեւ խնդրոյս պատճառաւ «օգտեալ բաժանել զմիաբանութիւն եկեղեցւոյ ի չար աղանդ հերձուածողացն» (Ալաւ. ՂԵ)։ Ծործորեցւոյն օրով ալ դեռ խորշելի էր այն (Գ). եւ Ապարանեցւոյն ժամանակակիցք ձիոյ միսի հաւասար կը համարէին (ԽԵ, ՂԸ), զոր Բարսղի ընծայուած կանոնք ալ կը դատապարտեն

(ՃԴԱ)։ — Հաւասարապէս անսուրբ էին եւ սողունք, ինչպէս օձ, գորտ, մողէս, մուկն եւ այլք (Ընդհ. 158), համաձայն հին օրինաց (Ղեւտ. ԺԱ, 30)։ — Նոյն արհամարհութեան արժանացած էին ջրային զեռունք եւս (Մագ. 214. Լմբր. Ատեն. 201)։ — Վերջապէս Ալաւկայ որդին հրէական ոգւով (Ղեւտ. ԺԹ, 19) պիղծ կը համարի նաեւ այն ուտելի անասունքը՝ որ զուգուած էին իրենց աննմանից հետ, եւ կը հրամայէ անոնց միսը շներու ձգել կամ այլազգեաց վաճառել (ԿԵ)։

Գ. Այդ սահմանը սակայն բացարձակ չէր ամէն Հայոց համար։ Մեր վարդապետաց հրէական պատուիրանաց առջեւ բոլորն ալ միահամուռ չպիտի խոնարհէին. մանաւանդ անոնք՝ որ արեւմտեայց հետ աւելի կամ նուազ մերձաւոր յարաբերութեան մէջ գտնուելով, թօթափած էին տոհմային նախապաշարումները, եւ ընտելացած անոնց անխտրականութեան հետ։ Ասոնցմէ էր Թոռնիկ մամիկոնեան ԺԱ դարուն, որ քաղկեդոնական լինելով՝ չէր ակնածեր ուտել ծովային զեռունները, «զխէչս եւ զքառաձետս եւ զօձաասանդղս եւ զկրայակիրս, եւ զայլ զբիւրս ի բզզոց անզարդ զեռունս», ինչպէս կը դիտէր անոր Գր. Մագիստրոս (214)։ Լամբրոնա-

ցին նոյնպէս կը պարսաւէր այդ նիւթոց տոհմային խտրութիւնը, եւ կ'ըսէր թէ « ոչ պղծէ զնա (մարդը) ծովային զեռունքն» (Առեն. 201)։ Աւելի վերջն ալ Ապարանեցին դեռ կը տեսնէր մեծ Հայոց ծովափանց վրայ ազգային վաճառականներ, որոնք «ժողովէին՝ կ'ըսէ՝ զեռունս եւ ուտէին» հում կամ եփած (ԾԵ, Է)։ Կը տեսնէր նաեւ գազանաբեկն ուտողներ (ԾԵ, Թ)։ Նմանապէս կ'աւանդէ՝ թէ Կաֆայի հայ հաւորսներն իրենց բռնած թռչունները « ոչ զենուին սրով, այլ սատուածամորթ արարեալ ուտէին» (ԾԵ, Է)։ Ինքն իսկ տեղեկատուս հակառակ էր մեր ընդհանուր խտրութեանց, որոց դէմ ուղղած է ճարտարաբար իւր աշխատութեան ամբողջ ԾԵ գլուխը։

Կիլիկեցի հայութիւնն իւր հիւսիսային եղբայրներէն շատ լայնախոհ էր այս մասին։ Եւ իւր ամենէն զարգացեալ մտքերէն մին՝ Լամբրոնացին՝ կը տրտնջէր, որ «աշխարհականք ուսան ի նոցանէ (յաբեւմտեայց) զանխտրութիւն կերակրոց» , բայց ոչ անոնց լաւութիւնքը (Պտր. 323)։ Ասով կը բամբասէ ոչ առաջին մասն՝ այլ երկրորդը. զի ինքն իսկ արհամարհող մ'էր խտրութեանց առ հասարակ. եւ ուրիշ տեղ մը կ'ըսէ ի նպաստ Փրանկաց՝

*թէ «խորեցաք զարարածս Աստուծոյ հրէա-
բար, զորս նոքա աղօթիւքն սրբեն»* (*անդ*, 554)*. ու մեր այդ վարմունքը նախատինք կը համարի Աստուծոյ եկեղեցւոյն դէմ* (*Առեն.* 201)*: — Կիլիկեցի չէր, բայց գաղափարակից էր անոնց Ջաք. Ծործորեցին, որ Սիւնեաց եպիսկոպոսին խըստրական պահանջանաց դէմ կը կռուի, ցուցնելով ի Ս. Գրոց՝ թէ իսկական պիղծ բան չկայ ուտելեաց մէջ եւ ամէն պղծեալ կրնայ սրբուիլ օրհնութեամբ. այլ պէտք է կ'ըսէ՝ զատել միայն օգտակարը վնասակարէն* (*Ծրծ. Գ*)*: Այսպէս հին ու նոր վարդապետաց տեսական անխտրութիւնը զոր տեսանք* (453)*, միջին դարու այդ հայորդիքը գործնականի կը վերածէին համարձակօրէն: Լուսոյ առջեւ մութը տակաւ տեղի կու տայ:*



## Բ. ՊԼԾԵԱԼՆԵՐ

1. — *Պղծողք: — Վերոյիշեալ անասունք ոչ միայն իրենք անսուրբ էին յաչս խտրողաց, այլ իրենց պղծութիւնը կը հաղորդէին նաեւ այն ամէն կերակրոց եւ*

ըմպելեաց՝ որոց կը մերձենային որ եւ է ձեւով։ Այս գաղափարս փոխառութիւն էր Մովսիսէ (Ղեւտ. ԺԱ, 34–5), որ համառօտ եւ ընդհանուր կերպով միայն կը խօսի, մինչ Հայոց քով աւելի մանրամասն է։ Այսպէս գայլառ կամ շնառ, այս ինքն այդ անասնոց բերանէն յափշտակուած կենդանիք, կ՚ըսէ Ալաւկայ որդին, եթէ ողջ են՝ կրնան մորթուիլ եւ ուտուիլ, «բայց յեկեղեցականաց... եւ ի հաղորդականաց» (Թ), որոնք սրբութեանց մօտ լինելով՝ աւելի զգուշութեան կը կարօտէին։ Ընդ հակառակն Մովսէս Եզնկացին նոյն արգելքը կը կրկնէ անխտիր ամենուն համար, ըսելով՝ «զշնառ մի՛ ոք կերիցէ». ինչպէս նաեւ «զշնլակն» եւ «զկատուլակն» (Մվ. Եզկ.), որ է ջուր կամ որ եւ է ըմպելի՝ ուսկից լակած էին անոնք։ Բարսղի կանոններն ալ նզովիւք չափ կը դատապարտեն շան կամ մկան «յազեալէն» կերողները (ՃՁԹ)։

Հարկ էր ուրեմն այդ անասնոց մերձեցած ու պղծած մասը բաժնել։ Այսպէս Ալաւկայ որդին կը կանոնէ՝ որ եթէ կատուն մորթաղի մէջ պահուած նիւթէն կերծէ, կէս լիտր պէտք է կտրել ձգել, մաս մ՚աղքատաց տալ, եւ մնացածն ուտելի է. ըստ որում աղոր դպած չէր անա-

սունը։ Բայց եթէ չուն կամ կատու սատկած գտուէին բանջարի մը ներքեւ, ամբողջովին պղծուած էր այս, թէեւ երկու դիակաց պղծութիւնն հաւասար չլինէր (Զ)։ Նոյնպէս եթէ անօթով կերակրոյ մէջ պիղծ կենդանի մ'ընկնի, «պղծեսցի բոլորն», կ'ըսէ Տաթեւացին (Քրզ. ձմր. 134)։ Այդ պարագային զեռուն մ'ալ կրնար ապականել՝ Շնորհալւոյն այս բացատրութեան համեմատ. «զմեռելոտի զեռնովք պղծեալ կերակուրսն եւ զըմպելիսն» (Ընդհ. 157), ըստ որում բոլոր զեռունք անսուրբ էին հին օրինօք (Ղեւտ. ԺԱ, 42)։ Բայց Ալաւկայ որդին անվնաս կը համարի աղոցմէ զոմանս, ինչպէս մողէզ, օձասանդր, ականջամուտ եւ ուրիշ անարիւն բզէզներ, որոնք ընկնելով՝ կ'ըսէ՝ գինւոյ, կաթի կամ ձիթոյ մէջ՝ չեն պղծեր. ով կարող է՝ թող ուտէ (Ը)։

Տաթեւացւոյն երեւակայութիւնը սեղանօրհնէից նպատակին մէջ անգամ կ'ուզէ նշմարել պղծութեան գաղափարը. որպէս թէ կերակուրք կ'օրհնուին, որ եթէ կալի կամ հնձանի մէջ «աղտեղութիւն ինչ» խառնուի, եւ կամ որովհետեւ անսուրբ անասնոյ մը «ձարով» կը մաղուի ալիւրը, աղօթիւք սրբուին (Քրզ. ամր. 348)։

2. – Մկնապիղծ։ — Բոլոր անասնոց

մէջ սակայն քան զամէնը պղծագոյն եւ ապականիչ, ու դժբախտաբար Հայուն մառանին կամ խոհանոցին ամենէն մերձաւոր դարանակալն էր մուկն, որ բոլորէն աւելի զբաղեցուցեր եւ յոգնեցուցեր է անոր միտքն ու գրիչը։ Այս անասնիկը ճշմարիտ սարսափն էր մեր նախապաշարեալ հարց, մանաւանդ իւր սատակը։ «Առաւել մահուամբ սպանեալ քան կենդանութեամբ», կ'ըսէ Ալաւկայ որդին, անոր մեծագոյն թշնամին. «վասն այնորիկ, կը յարէ, երկնչիմք առաւել ի մահուանէ նորա» (Բ)։ Հրէական օրէնքն անգամ այդքան ուժգին չէր դատապարտեր զայն (Ղեւտ. ԺԱ, 30–2)։ Այս պատերազմը մկան դէմ բաւական հին է մեր քով. Ս. Ներսեսի ընծայուած կանոնաց մէջ արդէն արգելուած է «մկնանկ գինի» ըմպել (Ներս. ԼԲ)։ Շնորհալին եւս կը յանդիմանէր Ասորիները՝ թէ «ընդէ՞ր զպղծեալ կերակուրն մկամբք ուտէք անխտիր» (Ընդհ. 158)։ Եւ Մովսէս ու Կիրակոս Եզնկացիք խորշելի կը դաւանին միշտ «զմկնընկէցն» (Մվ. Եզկ. Կր. Եզկ.)։

Բայց անասնոյս խտրութիւններն աւելի մանր կը թուէ Ալաւկայ որդին, որոյ տեսութիւնքը յառաջ կը բերեմ համառօտիւ։ — Եթէ անոր դիակն աղի վրայ

գտուի, կ'ըսէ, թէ «գոճի» կամ աղակոյտի մը վրայ է՝ պէտք է նոյն կտորը նետել, եւ մնացորդը լուանալով գործածել. իսկ եթէ «լեսածի» մէջ գտուի, որ միանգամայն «ցամաք» լինի, թէ չորս կամ հինգ լիտր է՝ պէտք է ամբողջովին թափել. իսկ թէ աւելի, նոյնչափը թափել ու մնացածը գործածել. բայց եթէ «թացեալ» է աղը, բոլորովին խոտելի է, զի պղծութիւնը մէջն է թափանցած։ Եւ որովհետեւ ամէն հաւատացեալ բաւական չէր այսպիսի մանր զննողութեան, անոր համար գիւղին կամ քաղաքին մէջ կային վարժ անձինք՝ որ կը կոչուէին այդ գործին համար. «Այս, կ'ըսէ, ի գիտնականաց քննեսցի եւ ճշգրտեսցեն». եւ զորս կրնանք թէ եկեղեցական եւ թէ աշխարհական ենթադրել (Գ)։ Ի՛նչ աղու տեսարան, նկատել Հայոց իմաստուն վեղարաւորները կամ երիցունքը հաւաքուած աղամանի մը շուրջ. եւ օրինագիրքն ու Մաշտոցն ի ձեռին, — որոց դերն յետոյ պիտի տեսնենք, — կնճռոտ ճակատներով զբաղած զննելու՝ թէ մկնիկը, մարդկութեան այդ ահաւոր թշնամին, աղին ո՛ր գղձին վրայ փչած է իւր շունչը. թէ ո՛րչափ է աղին զանգուածն ու չորութեան աստիճանը. ճշդել ու վտարել՝ նախանձայոյզ

*վրէժխնդրութեամբ մը՝ մարմնոյ եւ հոգւոյ ազատեղութեան այդ փորձանքը։*

*Ալաւկայ որդին յառաջ կը տանի։ Եթէ պղծուած աղն անգիտաբար կերակրոյ մէջ ձգուի, եւ յետոյ իմացուի, կերակուրը պէտք է թափել (անդ)։ Դիակը «չոր մասի» վրայ գտնուելով, հարկ է անկից երկու կամ երեք «փերթ» կտրել ձգել, ու մնացորդը լուանալ։ Իսկ եթէ ալիւրի կամ ցորենի մէջ, սրբելի է զանոնք՝ լեսած աղին ոճով (անդ)։ Նմանապէս «մորթաղի» մէջ պահուած չոր նիւթի մէջ գտնուելով սատակը, կը պատուիրէ նոյն կողմէն երեք լտեր չափ թափել, եւ մնացածն ուտել՝ «բայց յեկեղեցականաց»։ Ընկուզի վրայ ընկած դիակը չի պղծեր, եթէ խեճեպով է. իսկ եթէ հանուած է խեճեպէն, աղին կամ ցորենին պէս վարուելու է։ Բայց «ծեծածոյ կամ գելասի» վրայ ընկածը կ'ապականէ բոլորը (Դ)։*

*3. — Պղծումն անօթոց։ — Անսուրբ անասնոց մեռելոտին ոչ միայն կերակրները, այլ անոնց անօթներն ալ կը պղծէր. եւ թէ ի՛նչպէս վարուելու է անոնց հետ, յատուկ հրահանգներ կան։ Կիրակոս Եզնկացին կը պատուիրէ՝ որ մկնանկ կամ շան լակած անօթն եթէ փայտեղէն է, դուրս ձգեն, եւ պղնձեղէնը նոր կլայե-*

կեն. իսկ կատուլակն իբր նուազ պիղծ քան միւսները, կը խրատէ «եօթն ջրով լուանալ եւ խաչ հանել տալ», եւ ապա կընայ գործածուիլ (Կր. Եզկ.)։

Ալաւկայ որդին սակայն կը գերազանցէ մանրամասնութեանց մէջ։ Բուն իսկ իւր յիշած «գիտնականներէն» է նա, որ հետեւեալ կերպով կը ցուցադրէ մեզ իւր հմտութիւնը։ Մկնապիղծ չոր աղի ամանը կը սահմանէ «ցամաք անօթ» ընել. այս ինքն ցամաք նիւթոց միայն գործածել. իսկ եթէ աղը թաց է, ամանն ալ կատարելապէս պղծուած է, եւ պէտք է դուրս ձգել։ Անպիտան է եւ այն պոյտն՝ որոյ մէջ պիղծ աղով կերակուր եփուած է. եւ այն անօթներ՝ ուր մտած է այն՝ խորտակելի են։ Մուկն եթէ կարասի վըրայ ընկած է, ամանն եւ անոր բովանդակածը մաքուր կը մնան։ Եթէ դատարկ ու չոր կարասի մէջ ընկաւ, ցամաք նիւթոց անօթ ընելու է զայն. իսկ եթէ թաց էր, խորտակելի է (Գ)։ Եթէ մկան դին գտուի «ի կործ» դրուած տաշտի կամ թափուրի կամ ուրիշ որ եւ է անօթի վրայ, փայտեղէնը պէտք է քերել, եւ խեցեղէնը կոտրել. իսկ մետաղեայն տաք ջրով խաշել միայն, եւ այնուհետեւ սուրբ է։ Եթէ գտուի քրձի կամ մորթաղի վրայ,

որոց մէջ ուտելիք կայ, քուրձը միայն կը լուացուի։ Իսկ եթէ աղոնց մէջ գտնուի, եւ բովանդակութիւնը չոր է, ասոր մէկ մասը մաքուր կը մնայ՝ ըստ վերոյիշեալ հաշուին (աստ, 469). ապա թէ թաց է, մորթաղն ու քուրձն ալ անպիտան են (Դ)։ Մկնապիղծ թաց հնձանը նոյնպէս խորտակելի է. եւ չորն ուրիշ ծառայութեան գործածելի (Է)։ Մի եւ նոյն խրտրութիւնքը կը պատուիրէ՝ եթէ կատուն զմուկը բռնէ եւ ուտէ յիշեալ անօթոց վրայ։ Ընդ հակառակն ողջ մուկն որ անօթի մէջ մտնէ, չի պղծեր, եւ «անխոտելի է ամանն» (Զ)։

Մկնապղծի պէս կը հրամայէ վարուիլ շան կրծածին կամ լակածին հետ եւս (Ե). հետեւաբար անշուշտ նաեւ ասոնց անօթոց հետ։ — Եթէ կատուն կամ շունը ծնանին ամանի մը մէջ, «խոտեալ անարգեսցին ամենեւին»։ Եթէ իրենց բնական կարիքն ընեն անոր վրայ, չեն պղծեր. իսկ անոր ներսն ընելով, եթէ փոքր է՝ պէտք է կոտրել. եւ եթէ կարաս, ցամաք նիւթոց անօթ ընելու է (Զ)։

Նոյն վարդապետը բաւական կը զբաղի թոնրով եւս։ Մկան դիակն եթէ մարած թոնրի մէջ գտնուի, շինութեան դժուարութեան պատճառաւ թող չքակուի, կ՚ըսէ.

իսկ եթէ վառած ժամանակ ընկնի, նոյն օրն հաց եփելու չէ անոր մէջ. եւ եթէ ընկնելու պահուն հացը մէջն է, զայն շներու տալու է։ Եթէ սակայն ուրիշ կենդանի ընկնի եւ սատկի, սուրբ թէ անսուրբ, թոնիրն ի հիմանց պէտք է քակել ու նոր շինել։ Ընդ հակառակն թոնդրուքի մէջ կամ ակութի քով գտուած դիակը չի պղծեր զանոնք եւ անոնց վրայ դրուած անօթները (Գ). զի կերակուրն ադոնց հետ անմիջական հաղորդակցութիւն չունի։ Թոնրի այս խտրականութիւնը լոկ Ալաւկայ որդւոյն քով չի մնար. այլ իւրմէ երեք դար վերջ դեռ խնդրոյ նիւթ էր Հայոց մէջ ըստ Ապարանեցւոյն (ԽԵ, ԼԸ)։

Կահուց պղծութեան գաղափարիս աղբիւրը դարձեալ հին օրէնքն էր, թէեւ քան զհայը շատ համառօտ։ Ըստ Մովսիսի՝ անսուրբ անասնոց դիակին դպած փայտեղէն, մաշկեղէն կամ քրձեղէն անօթները մինչեւ երեկոյ ջրի մէջ պիտի մնային, եւ անով կը սրբուէին. իսկ խեցեղէնք խորտակուելու էին, եւ թոնիրք ու կասկարայք քակուելու (Ղեւտ. ԺԱ, 32–5)։ Այսքան միայն, եւ աւելի բան չկայ։

4. — Ուրիշ պղծումներ։ — Հետաքրքրական է հետեւեալն ալ։ Եթէ մէկը դիպուածով ընկնի ծառէ մը եւ մեռնի, եւ

կամ կախուի, տունկը մեղաւոր չէ, կ'ըսէ Ալաւկայ որդին. բայց լաւագոյն կը համարի կտրել ծառը, որպէս զի պտղէն չուտեն. իսկ եթէ արմատէն նոր ծառ բուսնի, անոր պտուղն ուտելի է։ «Զայս, կը յարէ, հաստատապէս ըստ օրինացն, նոյնպէս եւ եկեղեցի ընդունի» (ԴԷ)։ Ո՛ր օրէնք է այդ, ինծ անծանօթ է։

Տարօրինակ է իր մէկ խորութիւնն ալ, թէ քահանայից եւ կանանց որսացած անասունը շան ձգելու է իբրեւ պիղծ. բայց անոնց որսացած ձուկն ընդունելի է (Թ). հաւանօրէն հիմնուած այն սկզբան վրայ՝ թէ աղոնց ներելի չէր արիւն թափել (աստ, 333), մինչ ձուկն անարիւն էր։ Արդէն որսորդութիւնն առ հասարակ արգելուած էր եկեղեցականաց (աստ, 239. Կիր. 172)։ Վաստակոց գրոց թարգմանիչն ալ ինքնակամ յաւելուածով մը կ'ըսէ՝ թէ «կին մարդ բնաւ ոչ է պարտ մերձենալ ի կոխն (խաղողի), այլ յետ կալ ի հնձանէն» (85–6), որոյ պատճառ համարելի է գուցէ իր «անպատեհացեալ» վիճակը կամ դաշտանաւորութիւնը (անդ, 93), որոյ ժամանակ պիղծ էր կինը եւ անոր մերձեցած իրերը նաեւ ըստ Հրէից (Ղեւտ. ԺԵ, 19–28)։ Այս զգուշութեանց մէջ թերեւս Բարսղի համարուած կանո-

նաց ազդեցութիւնն ալ կայ, որ քահանայից եւ կանանց կ'արգելուն մորթել կամ որսալ, եւ կանանց՝ նաեւ հնձան հարկանել (ճԻԷ, ճԼՁ)։

5. – Այլազգեաց ու մեղաւորաց կերակուրք։ — Տեսանք յառաջագոյն՝ որ Հայք սկիզբէն ի վեր կը խորշէին հեթանոսաց, հերձուածողաց, ուրացողաց ու մեղաւորաց հաշակցութենէն (աստ, 144–6)։ Պիղծ կամ անսուրբք եւ ապականիչ էին աղոնց կերակըրները (անդ), եւ «առիթ յաւիտենական տանջանաց» (Մանդ. 154)։ Այս տեղ անսուրբ կը համարուի ոչ միայն ուտելն ինքնին այդ կարգի մարդոց հետ, որոց չար օրինակը կրնար խոտորեցնել բարեպաշտները, այլ պիղծ էր անոնց պատրաստած հաշն իսկ, ինչպէս կը խորհըրդածէ Մանդակունին՝ ըսելով. «Զի թէ մատուցողն պիղծ է, առաւել զոհն նորա պիղծ է. եւ որոց վարքն անսուրբ է, անսուրբ են եւ կերակուրք նոցա». եւ այս անոր համար մանաւանդ՝ «քանզի յանօրէնութեանց են կերակուրք յափշտակողաց եւ գողոց» (անդ)։

Միջին դարը չափաւորելով հին խտրելեաց թիւը, աւելի կը սաստկացնէ աստիճանը։ Ըստ Ալաւկայ որդւոյն՝ անսուրբ են այլազգւոյն – բայց ոչ եւս քրիստոնեայ

*մեղաւորաց — դպած հացը եւ անոր «թերըմբռեալ» գինին, ջուրը, կաթն ու թանն անգամ։ Իսկ մսոյ, պանրի եւ նոյնպիսեաց «զըմբռնեալն՝» այս ինքն բռնած մասը՝ կտրեն ձգեն, կ'ըսէ, եւ մնացորդը լուալով ուտեն։ Այս բոլորը քրիստոնէից պատրաստածներն են։ Իսկ գալով բուն իսկ այլազգեաց ունեցածներուն, զանոնք բոլորովին անուտելի կը քարոզէ, ի բաց առեալ փեճեկաւոր պտուղները, ընկոյզ, նուռն եւ այլք, ու դեղորայքը (ԺԱ)։ Անոնց կոխած գինին բոլորովին խորշելի է. իսկ եթէ խաղողը միայն քաղած են եւ կամ կիսակեր ողկոյզ մը ձգած անոր մէջ, այդ գինիէն քահանայք խմելու չեն, եւ ոչ պատարագին գործածելի (ԺԲ)։ Կարելի է անոցմէ ցորեան գնել, բայց ալիւր ոչ, բաց ի ստիպող հարկէ (ԺԳ)։ — Այս արգելմանց մէջ եւս անմասն չեն Բարսղի հայածին կանոնք, որ անօրէն մարդոց «յագեալ» կամ կիսակեր կերակուրը կը հրամայեն շներու ձգել (ՃՁԳ)։*

*Վերջապէս պիղծ էին այլազգեաց անօթներն ալ։ Անոնց գործածած ամանը մեր ծառայութեան առնուլ՝ «ամենեւին ոչ է մարթ», կ'ըսէ Ալաւկայ որդին։ Նոյնպէս մեր ամանն՝ ուր անոնց կերակրէն մտած է, «խոտելի է ամենեւին»։ Եթէ*

*անոնք, կը յարէ, մի անգամ միայն ճաշակեն մեր անօթէն, լուացուելով կրնայ գործածուիլ. իսկ շատ անգամ ճաշակածը մերժելի է (ԺԳ)։ Այս խտրութիւնք ընդունուած էին ազգէն եւ դեռ կը մնային* ԺԵ *դարուն, ուր քահանայք վրէժխնդիր կը լինէին, կ'ըսէ Ապարանեցին, եթէ մէկը «Պարսից ամանով ջուր է ըմբեալ, եւ միով ամանով ընդ նոսա կերեալ»* (ԽԵ, ԼԸ)։



## Գ. ՍՐԲՈՒԹԻՒՆ ՊՂԾԵԼՈՑ

*Կերակուրն ու անօթը, որ կը պղծուէին անսուրբ իրերէ, բնական էր՝ որ պղծէին իրենցմէ ճաշակողն ալ։ Դարձեալ շատ աւելի ենթակայ էին այս անսրբութեան՝ Ս. Սեղանոյն պաշտօնեայք քան լոկ հաւատացեալք։ Այս պղծութենէն մաքրուելու երկու եղանակ կար, ապաշխարութիւն եւ աղօթք։*

1. — *Ապաշխարութիւն։* — *Ս. Ներսեսի կանոնք կը սահմանեն՝ որ մկնանկ գինի խմողը՝ — յայտնի չէ՝ ակամայ թէ կամաւ — քառասուն օր պահք պահէ (Ներս.*

ԼԱ)։ Աւելի խիստ է Պարտաւայ ժողովին սահմանը, որով այլակրօններէ գերեալք եթէ քաղցէն ստիպուած եւ կամ բռնադատուելով՝ ուտեն «յանսուրբ եւ ի պիղծ մսոյ», թէեւ ադոր մէջ որ եւ մեղք չունին, սակայն եւ այնպէս ի դարձին տարի մը պիտի ապաշխարեն «արտասուօք՝ պահօք եւ աղօթիւք արտաքոյ եկեղեցւոյ» (Պրտ. ԻԳ)։ Տարապայման պատիժ, որ չի հաշտուիր մեր Հայրերէն պղծութեան տրուած իմաստուն բացատրութեան հետ (աստ, 453)։

Ալաւկայ որդին փոքր ինչ կը վերածէ այդ սահմանը։ Մկնապիղծ աղով պականուած կերակրոց համար կը կանոնէ՝ որ եթէ յանգէտս կերած է զայն քահանայն, ընտանեօք հանդերձ երեսուն օր Ս. Խորհրդէն հեռի պիտի մնայ. իսկ աշխարհականք պիտի ապաշխարեն հինգ օր, որուն մէջ հարիւր ծունր կրկնելով։ Բայց եթէ հաւատացեալը գիտութեամբ կերաւ, քառասուն օր պիտի պահք բռնէ՝ օրական հարիւր ծնրադրութեամբ։ Եւ եթէ աղախին մը տիկնոջը երկիւղէն գործէ այդ պղծութիւնը, քսան օր պիտի պահք պահէ (Գ)։ Դարձեալ խօսելով ուրիշ պղծեալ կերակրոց եւ ըմպելեաց մասին, անոցմէ անգիտութեամբ ճաշակող քահանային կը

սահմանէ ութ օր հեռացումն եկեղեցիէն, եւ աշխարհականաց՝ հինգ օր եւ հարիւր ծունր։ Իսկ գիտակցաբար կերող քահանայն կարգալոյծ կ'ընէ, բայց այս պատիժը մարդասիրութեան համար երկամեայ ապաշխարութեան վերածելով. մին սրբապահութեամբ, եւ միւսը շաբաթապահութեամբ. պահքեր՝ որոց ակնարկեցինք կանխաւ (445)։ Իսկ աշխարհականին կը սահմանէ տարի մը շաբաթապահութիւն։ Ու շան կրծածէն կամ լակածէն կերողը կ'ենթարկէ մկնապղծին ապաշխարութեան (Ե)։

Վերջապէս յանգէտս մեռելոտի կամ նապաստակ ուտող աշխարհականին կը կարգէ քառասնօրեայ պահք մը. եւ քահանային՝ երկու երեսնեակ եկեղեցիէն հեռացումն ։ Իսկ գիտակցաբար կերողաց՝ միոյն երկու տարի, եւ միւսին հինգ՝ նոյն կերպով (ԴԵ)։ Պատիժներ են ասոնք՝ որ կը հակասեն այս վարդապետին լայնարձակ տեսութեան՝ որուն ակնարկեցինք յառաջագոյն (453)։ Կ'երեւի թէ իւր ըզգացումն ու տիրող նանրահաւատութիւնք աւելի զօրաւոր էին քան միտքը։ Ապարանեցւոյն օրով քահանայք տակաւին կը շարունակէին պատժել պղծեալները, Հաղորդութենէ զրկելով. ինչպէս՝ Պարսից

ամանը գործածողները, ձիոյ կամ նապաստակի միս կամ մկնապիղծ կերողները (Խե, ԼԸ)։

2. — Աղօթք։ — Պաշտօն մ'ալ կը կատարէին պիղծ կերակրէ ճաշակողաց վրայ, հաւանօրէն ապաշխարութենէն վերջ քան յառաջ. եւ այս՝ փոխան Հրէից զոհին՝ զոր կը մատուցանէր ակամայ պղծեալը (Ղեւտ. Դ), ուր կամաւորապէս ճաշակողը կը սպանուէր (անդ, Է, 19–27)։ — Հին մաշտոցք, սկսեալ Ս. Ղազարու երիցագոյն օրինակէն (ԺԱ դարու), աղօթից երկու ձեւ ունին, որոց բովանդակութենէն կ'իմացուի՝ թէ մին պատահաբար եւ յանգէտս պղծելոց համար է, եւ միւսը՝ հեթանոսաց գերութեան մէջ առ հարկի եւ գիտութեամբ անմաքուր կերակուր կերողաց համար։ Համեմատութիւն մը սոյն աղօթից՝ յոյն Եւքոլոգիոնի հետ, ըստ հրատարակութեան Գոյարի, ցոյց տուաւ ինձ՝ որ երկուքն ալ յունարէնէ թարգմանուած են (Գոյ. 534–5)։

Առաջնոյն վերնագիրն է՝ «Աղաւթք որ պիղծ ինչ կերեալ է». եւ բովանդակութիւնն է այս. «Տր. Աճ. մեր՝ որ ի սուրբս ես հանգուցեալ, եւ գովեալ յԻղէ. (յիսրայեղէ), խոնարհեցոյ եւ այժմ զունկն քո եւ լուր մեզ. եւ պարգեւեա զթողու֊

թիւն ծառայի քում պղծակացելում\եւ ճաշակողի զանմաքուրս ոչ կամաւորաբար։ Եւ արժանաւորեայ զսա մաքրութեամբ հոգով եւ մարմնով հաղորդել անարատապես մարմնո եւ արեան Քի. քո։ Եւ փրկեա զսա յայսմ հետէ յանմաքուր կերակրոց եւ յըմպելեաց, եւ եւս ի գործոց չարեաց, որպէս (զի) փափկանալով ածայնոյ քում խորհրդով, վայելելով ի սուրբ եւ յահաւոր սեղան Քի. քո, ընդ մեզ մտեալ ի կաթողիկե եկեղեցի, հաղորդեսցի մարմնոյ եւ արեանն Տն. Նորոգեսցի եւ հանցէ զաւրհնութիւն եւ զփառս Հաւր եւ Որդոյ» եւն։ — Աղօթքիս սա բացատրութեան մէջ, «ընդ մեզ մտեալ ի կաթողիկէ եկեղեցի՝ հաղորդեսցի» եւն, ակներեւ է՝ թէ ի՛նչպէս այդ «ոչ կամաւորապէս» պղծեալը պահ մը զրկուած կը մնար սրբավայրէն ու խորհրդէն, ինչպէս տեսանք վերեւ։ Որով Ալաւկայ որդւոյն կանոնները քմածին բաներ չէին, այլ դրուած ըստ սովորութեան ժամանակին։

Երկրորդ աղօթքին վերնագիրն է՝ «Որ ի կերակուրս միայն պղծի». եւ բնագիրն է հետեւեալը. «Տր. Աճ. մեր, որ գլխաւորի առաքելոյն Պետրոսի ի ձեռն տեսլեանն ձայնիւ աւրինադրեցեր մի՛ զոք պիղծ եւ անսուրբ ասել զառ ի քէն ա-

ընթեալ կերակուր մարդկան, եւ ի ձեռն անաւթոյն Պաւղոսի ընդրելոյն զամենայն ինչ սուրբ սրբոց քարոզեցեր, դու եւ այժմ որ ի բարբարոսաց հարկս անկաւ, ոչ ըստ յաւժարութեան անսուրբ ինչ որպէս կարծեցին՝ ճաշակելով որոգայթեցան, ըզ-խիղճ մտաց մաքրեայ, եւ զքո պատուի-րանդ հաստատեա ի սոսա առանց աղտոյ, եւ Հոգւոյդ սրբոյ պատրաստեայ առ յըն-դունել անարատ եւ կենդանարար խոր-հրրդոյ։ Քանզի աւրհնի եւ փառաւորի ա-մենապատիւ եւ մեծ անուն Հաւր եւ Որ-դւոյ» եւն։ Հոս ալ յայտնի է պղծելոյն զրկումը Ս. Խորհրդէն, եւ այս հոգեւոր պաշտօնով վերստին մերձենալն անոր։

3. – Սրբումն ուտելեաց։ — Խտրակա-նութեան հրատապ շրջանին ինչ որ պըղ-ծուած էր՝ կերակրեղէն կամ սպաս, նե-տուելու էր՝ այն կանոնով զոր տեսանք։ Ուրիշ ազգեր ընդ հակառակն կը սրբէին զանոնք օրհնութեամբ։ Տարօնացին կը մրմռայ՝ որ «Ասորիքն եւ Հոռոմքն զմրկ-նօրհնէքն արարին». եւ կը յարէ՝ թէ Հայք «զմկնօրհնէքն ատեցին» (Թէոփ. 306–7)։ Ինք ասով ոչ թէ մկնապղծին, այլ բուն իսկ մկան օրհնութիւնն ու ճաշակումը կ'իմանայ (անդ, 300, '1), ինչ որ սա-կայն մեր ցասկոտ ընդդիմախօսին Թիւրի-

մացութեան արդիւնք կը թուի։ Զի արդարեւ Եւքոլոգիոնն ալ ունի երկու համառօտ աղօթքներ, բայց պղծեալ անօթոց եւ արմտեաց համար է (Գոյ. 482)։ Ասոր փոխարէն տեսանք վերեւ (471) Կիր. Երզնկացւոյն կախարդախառն մէկ արարողութիւնը նոյնպիսի անօթոց վրայ։

Սակայն Նոր Հայաստանը կամ Կիլիկիայն՝ ինչպէս բարեփոխեց պղծութեան գաղափարը, գտաւ կամ առաւ Յոյներէն նաեւ պղծելոց սրբութեան պաշտօն մը, որուն կը հանդիպինք Վենետկոյ 1345ի մաշտոցին մէջ, գրուած ի Սիս, եւ որ սահմանուած է սրբելու այն ձէթը կամ գինին՝ որոյ մէջ կենդանի մը կ'ընկնի ու կը խեղդուի, բայց դեռ չէ նեխած կամ երկար մնացած։ Կ'առնուն, կ'ըսէ, մեռեալը եւ կը նետեն. կը լուան ուրիշ աման մը, եւ քահանայն խնկելով՝ կ'առնու եւ անոր մէջ կը դնէ Սբ. Յայտնութեան ջրէն՝ խաչանիշ ձեւով. ապա հոն կը լեցնէ պղծուած գինին կամ ձէթը, երկու մոմ կը վառեն անօթին քով, եւ կը սկսին պաշտել Ծ սաղմոսն ու քարոզ մը. յետոյ քահանայն կը մատուցանէ յատուկ աղօթք մը՝ որով կը խնդրէ օրհնել ու սրբել իւղը կամ գինին։ Ապա կը ձգէ անոր մէջ Յայտնութեան ջրէն՝ ըսելով. « Աւրհնեսցի եւ

սրբեսցի գինիս այս յանուն Հաւր եւ Որդոյ եւ Հոգւոյն սրբոյ, այժմ եւ միշտ» եւն։ Դարձեալ կը յարէ երկրորդ աղօթք մը, որով կը խնդրէ սրբել այդ նիւթը «յամենայն չարութենէ դիւաց եւ յամենայն գազանային դարժանութենէ, եւ յամենայն չար դեղատութենէ» եւ այլն։

Իսկ մեք՝ այսքան սնոտեօք պաշարուած մեր հարց ականջին հծծենք՝ հեթանոսաց Առաքելոյն յեղյեղած եւ անոնց չհասկացած լուսաւոր խօսքերը՝ թէ «Ամենայն արարածք Աստուծոյ բարի են, եւ չիք ինչ խոտան» անոնց մէջ (Ա Տիմ. Դ, 4)։ Եւ թէ հրէական խտրութիւնքը մեզ՝ Աւետարանի աշակերտացս չտրուեցան, այլ Իսրայելի զաւակաց միայն. վասն զի «Ամենայն ինչ սուրբ է սրբոց» (Տիտ. Ա, 15)։



# ՎԵՐՋԱԲԱՆ

Համառօտ է վերջաբանս։ Գիտեմ՝ թէ այս հատորիս մէջ քանդեցի աշտարակներ որ կային, եւ շինեցի աշտարակներ որ չկային. եւ թէ երկու պարագայից մէջ ես պիտի հանդիպիմ պատուական ընթերցողացս ոմանց ընդվզող զգացմանց, որոնք՝ կը խոստովանիմ՝ իմս ալ էին երբեմն, երբ հայ անցեալը կը ճանաչէի դպրոցէն միայն. հոն՝ ուր կ'ուսանինք լոկ մեծն ու գեղեցիկը տեսնել նախնեաց քով։ Բայց դիտել պիտի տամ՝ թէ այն ձեռքը, որ Շիրակի մէջ (111) զետեղեց զմայլելին «Անդորրանք Անւոյ», քսան տարի վերջ Հայապատումին մէջ (514) կը հիւսէր անոր կործանման պարսաւագիր նկարագիրը Ջահկեցիէն։ Գիտութեան ասպարիզին մէջ համոզումն ի վերջոյ կը զօրանայ ու կը տիրէ զգացման վրայ. հոգեբանական անխուսափելի օրէնք մ'է այս։

Անցած դարուն սովոր էինք տոհմային հին պատմութիւնը կշռել ազգասիրութեան նժարներով, կախուած երեւակայութեան

*լծակէն ։ Քսաներորդ դարու եւրոպեան գրականութիւնն ուղղեց մեր այդ սխալը, ուսուցանելով՝ հինը հնոց տալ ու նորը մեզ, եւ այնպէս դատել իւրաքանչիւրը. կամ թէ նկատել անցեալն այնպէս՝ ինչպէս որ է, եւ ոչ ինչպէս ախորժելի է մեզ տեսնել․՝ զի գեղեցիկ՝ ճշմարիտն է միայն։ Ով որ կ'ըմբռնէ այս պահանջը՝ որուն հպատակեցայ ես, չեմ տարակուսիր՝ թէ պիտի ըմբռնէ եւ իմ աշխատութիւնս ։*



# ՍՂԱԳՐՈՒԹԻՒՆՔ ԱՂԲԵՐԱՑՍ

Ագթ. — Ագաթանգեղեայ Պատմութիւն. խմբ. Ե դարու. Վենետիկ, 1862։
Ազգ. — Ազգագրական Հանդէս. Տփղիս։
Ալաւ. — Դաւիթ վրդ. Ալաւկայ որդւոյն՝ կանոնք. ԺԲ դար. գրչգր. Վենետկոյ։
Աղէքս. — C. Alexandre, Diction. Grec–Français. Paris, 1867.
Այր. — Հ. Ղ. Ալիշան՝ Այրարատ. Վենետիկ, 1890։
Անաւ. — Գրիգ. Անաւարզեցւոյ՝ Նամակ առ Հեթում. ԺԳ դար. գրչ. Վենետկոյ։
Աշղ. — Հայ աշուղներ, հաւաք. Տրդատ եպս. Պալեան. Զմիւռնիա, 1911։
Աշտ. — Ներս. Աշտարակեցւոյ, կամ Դունայ Բ ժողովի կանոնք. ամ 527. գրչ. Վենետկոյ։
Ապար. — Մխիթ. Ապարանեցւոյ՝ Գիրք տրամաբանութեան ուղղափառաց. ԺԵ դար. գրչ. Վենետկոյ։
Առք. — Առաքելական կանոնք, կարգով տարբեր յոյնէն. գրչ. Վենետկոյ։
Ասող. — Ստեփ. Ասողկան՝ Պատմ. տիեզերական. Ժ դար. Պետերբուրգ, 1885։
Արծ. — Թովմ. Արծրունւոյ՝ Պատմ. տանն Արծրունեաց. Թ դար. Կ. պոլիս, 1852։
Արշ. — Գրիգ. Արշարունւոյ՝ Մեկնութիւն ընթերցուածոց. Ը դար. գրչ. Վենետկոյ։
Արրտ. — Արարատ ամսագիր Ս. Էջմիածնի։
Աւգ. — Հ. Յար. Աւգերեան՝ Բացատր. չափոց եւ կշռոց. Վենետիկ, 1821։
Բազմվ. — Բազմավէպ Հանդիսարան. Վենետիկ։
Բրս. Արք. — Ս. Բարսղի Զարթեցողաց. Դ դար. գրչ. Վենետկոյ։
» կանոնք անհարազատք. գրչ. Վենետկոյ։
Գ. Դպ. — Գեւ. Դպիր Տէր Յովհաննէսեան, Բառարան Պարսկերէն, Կ. պոլիս, 1826։
Գեւ. — Գեւորգայ Երզնկացւոյ՝ Խրատ վասն Պատկի. ԺԴ դար. գրչ. Վենետկոյ։

Գոյ. — J. Goar, Εὐχολόγιον, sive Rituale Græc. Venetiis, 1730.

Գոշ՝ Առկ. — Մխիթ. Գոշի՝ Առակք. ԺԲ դար. Վենետիկ, 1854։

» Դատ. — Դատաստանագիրք. Վաղարշապատ, 1880։

» Խր. ոգ. — Խրատ ոգեշահ մանկանց եկեղ. գրչ. Վենետկոյ։

» Խր. Պտր. — Խրատ վս. զգուշ. սպասաւորել մարմնոյ եւ արեան Տեառն. գրչ. Վենետկոյ։

Գր. Վրդ. Ողբ. — Գրիգոր վարդապետի Ողբ. գրչ. Վենետկոյ։

Դար. — Daremberg et Saglio, Diction. des Antiquités Grec. et Romaines. Paris.

Դարդ. — Յովհ. Դարդելի Ժամանակագր. Հայոց. ԺԴ դար. Պետերբուրգ, 1891։

Դաւ. — Դաւիթ Անյաղթի՝ Մատենագրութիւնք. Ե դար. ընդ կոր։

Եզն. — Եզնկայ Կողբացւոյ՝ Եղծ աղանդոց. Ե դար. Վենետիկ, 1826։

Եղիշ. — Եղիշէի Մատենագրութիւնք. Ե դար. Վենետիկ, 1838։

Եմես. — Սեբեր. Եմեսացւոյ՝ Ճառք. Դ–Ե դար. Վենետիկ, 1830։

Երդ. — Հ. Վ. Հացունի՝ Երդումն հին Հայոց մէջ. Վենետիկ, 1910։

Եւագ. — Եւագրի Մատենագրութիւնք. Դ դար. Վենետիկ, 1907։

Եւս. — Եւսեբիոսի՝ Պատմութ. Եկեղեցւոյ. Դ դար. Վենետիկ, 1877։

Զաք. խաչ. — Զաքարիա կթղ. ի սբ. խաչն. Թ դար. գրչ. Վենետկոյ։

Զեն. — Զենոբ Գլակ, Պատմ. Տարօնոյ. Է դար. Վենետիկ, 1832։

Ընդհ. — Ներս. Շնորհալւոյ Թուղթ ընդհանրական. ԺԲ դար. Կ. պոլիս, 1825։

Թաքլոյ խրատ. Ե դար. ի Սոփ. ԺԱ։

Թէոդ. — Թէոդիկ, Ամենուն Տարեցոյցը. Կ. պոլիս, 1912։

Թղթ. — Գիրք թղթոց, հաւաքածոյ նախնեաց. Տփղիս, 1901։

Իլ. — Հոմերի Իլիական. Վենետիկ, 1864։

Ինճ. — Հ. Ղ. Ինճիճեան, Հնախօս. Հայաստանեայց. 3 հտր. Վենետիկ, 1835։

Իրաշ. — Յովհ. Տէրոյենց՝ Իրաշախոհ. Կ. պոլիս, 1868։
Լաստ. — Արիստ. Լաստիվերտցի, Պատմ. ԺԱ դար. Վենետիկ, 1844։
Լծ. Բրս. — տես Լծ. Պհ։
» Երան. — Լուծումն բնն երանուր. ճառի Նիւսաց-ւոյն. գրչ. Վենետկոյ՝ 1314ի։
» Հես. — Լուծ. Հեսանց ճառին Փիլոնի. նոյն գրչ։
» Հյր. — Լուծ. Հայր մերի մեկն. Նիւսացւոյն. նոյն գրչ։
» Հրց. — Լուծ. Հարցողաց գրոց Բարսղի. նոյն գրչ։
» Պհ. — Լուծ. Պահոց ճառին Բարսղի. նոյն գրչ։
» Վեց. — Լուծ. Վեցօրեայ ճառից Բարսղի. նոյն գրչ։
Լմբր. Աստն. — Ներս. Լամբրոնացւոյ՝ Աստնաբանու-թիւն. ԺԲ դար. ընդ Տղ։
» Դսպ. — Դեսպանութիւն ի Կ. պոլիս, անհարա-զատ. Կ. պոլիս, 1757։
» Թղթ. — Թուղթ առ Լեւոն. ընդ Տղ։
» Պտր. — Մեկնութիւն Պատարագի. Վենետիկ, 1847։
Լնր. — Lenormant, Hist. ancienne de l'Orient. Paris. 1882.
Լոյս. — Շաբաթաթերթ, Կ. պոլիս։
Խոր. — Մովս. Խորենացւոյ Մատենագրութիւնք. Ե դար. Վենետիկ, 1865։
Խոսր. — Խոսրովու Անձեւացւոյ՝ յիշտկրն. ԺԱ դար. ի Հյպտ. 289։
Խսր. քառ. — Խոսրովկայ՝ Յղգս. քառասնորդացն. իբր Ը դար. գրչ. Վենետկոյ։
Ծրծ. — Զաքարիա Ծործորեցի՝ Թուղթ առ Յովհ. սիւ-նեցի. ԺԴ դար. գրչ. Վենետկոյ։
Կաբր. — Cabrol, Diction. d'Archéologie Chrét. Paris.
Կաղ. — Մովս. Կաղանկայտուացւոյ՝ Պատմ. Աղուա-նից. Է դար. Մոսկուա, 1860։
Կիր. — Կիրակոս Գանձակեցւոյ՝ Պատմ. ԺԳ դար. Վենետիկ, 1865։
Կոն. — Կոնիբիր, յօդ. ի Revue de l'Hist. des Re-ligions, 1901, էջ 108։
» Ծիս. — Rituale Armenorum, Oxford, 1905.
Կոս. — Կոստանդին Եզնկացի. ԺԴ դար. Վենետիկ, 1905։

Կոր. — Կորեան՝ Պատմ. Ս. Մեսրոպայ. Ե դար. Վենետիկ, 1833։

Կոր. Վրդ. — Կորիւն վրդ. եւ նորին թարգմ. ի Նորայր Բիւզանդացւոյ։ Տփղիս, 1900։

Կր. Եզկ. — Կիրակոս Եզնկացւոյ Խրատ. ԺԳ դար. գրչ. Վենետկոյ։

Հայբուս. — Հ. Ղ. Ալիշանի՝ Հայբուսակ. Վենետիկ, 1895։

Հին Հաւ. — Նորին՝ Հին հաւատք Հայոց. Վենետիկ, 1895։

Հին Մնց. — Հին թարգմ. Մնացորդաց. հրատ. Գր. Խալաթեանց. Մոսկուա, 1899։

Հիւբշ. — Hübschmann, Armenische Grammatik. Leipzig, 1897.

Հկճ. — Ստեփ. Օրբէլեան՝ Հակաճառութիւնք. ԺԴ դար. գրչ. Վենետկոյ։

Հյկզ. — Բառգիրք Հայկազեան լեզուի. Վենետիկ, 1835։

Հյպտ. — Հ. Ղ. Ալիշանի՝ Հայապատում. Վենետիկ, 1901։

Հրց. — Գր. Տաթեւացւոյ Գիրք Հարցմանց. 1397 ամ. Կ. պոլիս, 1729։

Ղեւ. — Ղեւոնդեայ Վրդ. Պատմ. Ը դար. Պետերբուրգ, 1887։

Մագ. — Գր. Մագիստրոսի Թղթերը. ԺԱ դար. Ալեքսանդրապոլ, 1910։

Մամ. — Յովհ. Մամիկոնեան՝ Պատմ. Տարօնոյ. Է դար. Վենետիկ, 1832։

Մամբ. — Մամբրէի՝ Ճառք. Ե դար. ընդ Կոր։

Մանդ. — Յովհ. Մանդակունւոյ՝ Ճառք. Ե դար. Վենետիկ, 1860։

Մատ. — Մատթէոս Վրդ. Գիրք ուր խորհրդոց մեղաց. ԺԱ դար. Կ. պոլիս, 1750։

Մարտ. — Martigny, Diction. des Antiquités Chrét. Paris. 1889.

Մեսր. — Մեսրոպ երէց՝ Պատմ. Ժ դար. ի Սոփ. Զ։

Մծբ. — Յակոբ Մծբնացւոյ՝ Ջգօն. Դ դար. Կ. պոլիս, 1824։

Մնզ. — Յովհ. Մանազկերտացւոյ Կանոնք. Ը դար. գրչ. Վենետկոյ։

Մորգան. — J. de Morgan. Mission au Caucase. Paris, 1889.

Մվ. Եզկ. — Մովսէս Եզնկացւոյ՝ Խրատք. ԺԳ դար. գրչ. Վենետկոյ։

Յհ. Եզկ. Խրտ. — Յովհ. Եզնկացւոյ Խրատ ԺԷ գլուխ. ԺԳ-ԺԴ դար. գրչ. Վենետկոյ։
» Ճռ. ԻԴ. — Հատուած ի ԻԴ ճառընտրի Վենետկոյ։
» Մտթ. — Մեկնութիւն Մատթէի ընդ Շնորհալւոյն Կ. պոլիս, 1825։
» Ներբ. — Ներբողեան ի Լուսաւորիչն. ի Սոփ. Ե։
» Վս. սգ. — Վասն ոչ առնելոյ սուգ մեռելոց. գրչ. Վենետկոյ։
Յհ. կթղ. — Յովհ. կաթողիկոսի՝ Պատմ. Ժ դար. Երուսաղէմ, 1867։
Յճխ. — Յաճախապատում ճառք. Ե դար. Վենետիկ, 1838։
Յուշ. — Յուշիկք Հայրենեաց Հայոց՝ Հ. Ղ. Ալիշանի. 2 հտր. Վենետիկ, 1869։
Նար. — Գր. Նարեկացւոյ՝ Մատենագրութիւնք. Ժ դար. Վենետիկ, 1840։
» Կարգ աղ. — Կարգ եւ կանոն աղօթից. տպ. ընդ Մեկն. Ժմգ. Խոսրովու։
Ներս. — Մեծին Ներսիսի կամ Աշտիշատու ժող. կանոնք. գրչ. Վենետկոյ։
Նիկ. — Ի Նիկէական կանոնք. գրչ. Վենետկոյ։
Նիւս. Երան. — Գր. Նիւսացւոյ՝ Մեկն. ինն երանութեանց. Դ դար. գրչ. Վենետկոյ։
» Ժող. — Մեկնութիւն Ժողովողին. գրչ. Վենետկոյ։
» Հյր. — Մեկնութիւն Հայր մերի. գրչ. Վենետկոյ։
Շենկլ. — C. Schenkl, Vocabolario Greco-Italiano. Vienna, 1865.
Շին. — Ներսէս Շինողի կամ Դունայ Ե ժողովի կանոնք. 645 ամ. գրչ. Վենետկոյ։
Շիր. — Շիրակ Հ. Ղ. Ալիշանի. Վենետիկ, 1881։
Շհպ. — Շահապիվանու ժողովին կանոնք. 447 ամ. գրչ. Վենետկոյ։
Շնր. Եդս. — Ներս. Շնորհալւոյ Ողբ Եդեսիոյ. ԺԲ դար. Տփղիս, 1829։
Շրք. — Անձոյ շարք. կազմեց Ն. Մառ. Պետերբուրգ, պր. Ա 1906, Գ 1910։
Ոսկ. Ես. — Յովհ. Ոսկեբերանի՝ Մեկն. Եսայեայ. Դ դար. Վենետիկ, 1880։
» Թղթ. — Մեկն. թղթոցն Պաւղոսի, 2 հտր. Վենետիկ, 1862։
» Մտթ. — Յաւետարանագիրն Մատթէոս, 2 հտր. Վենետիկ, 1826։

Որբ. — Ստ. Որբելեան՝ Պատմ. տանն Սիսական. ԺԳ դար. Մոսկուա, 1861։

Ուռ. — Մատթէոս Ուռհայեցի՝ Պատմ. ԺԲ դար. Երուսաղէմ, 1869։

Չմչ. — Հ. Մ. Չամչեան, Պատմ. Հայոց, 3 հտր. Վենետիկ, 1754։

Պալճ. — Աղեք. վ. Պալճեան, Պատմ. կաթողիկէ վարդապ. ի Հայս. Վիեննա, 1878։

Պլտ. — Պլուտարքոսի Զուգակշիռք. Ա դար. Վենետիկ, 1834։

Պտմ. Աղ. — Պատմ. Աղեքս. Մակեդոնացւոյ. Վենետիկ, 1842։

Պրտ. — Պարտաւայ ժողովին կանոնք. 768 ամ. գրչ. Վենետկոյ։

Սահ. — Ս. Սահակայ կանոնք. Ե-Զ դար. ի Սոփ. Բ։

Սաս. — Մխիթար Սասնեցի, ընդդէմ խմորոյ և ջրոյ. ԺԳ դար. գրչ. Վենետկոյ։

Սեբ. — Սեբէոսի՝ Պատմ. ի Հերակլ. Է դար. Կ. պոլիս, 1851։

Սիս. — Սիսուան՝ Հ. Ղ. Ալիշանի. Վենետիկ, 1885։

Սիւն. — Առաքել Սիւնեցւոյ՝ Խրատք աշխ. քահանայից. ԺԵ դար. գրչ. Վենետկոյ։

Սոփ. — Սոփերք Հայկականք. հաւաքածոյ նախնեաց, 22 հտր. Վենետիկ։

Ստր. — Strabon, Géographie, 3 հտր. Ա դար. Թրգ. A. Tardieu. Paris, 1873.

Սրգ. — Սարգիս Վրդ. Մեկն. եօթն թղթոց կաթողիկեից. ԺԲ դար. Կ. պոլիս, 1744։

Վաստ. — Գիրք վաստակոց. Վենետիկ, 1877։

Վարք Հրց. — Վարք Հարանց, 2 հտր. Վենետիկ, 1855։

Վ. դ. Խր. — Վարդան աբեղայի Խրատ. ԺԳ դար. գրչ. Վենետկոյ։

Վեցօր. — Բարսղի Ճառք վասն վեցօրէայ արարչութեան. Դ դար. Վենետիկ, 1830։

Վեմ. — Յակ. Նալեան՝ Վեմ հաւատոյ. Կ. պոլիս, 1733։

Վիգ. — Vigouroux, Diction. de la Bible. Paris.

Վկայ. — Վկայաբանութիւնք սրբոց, 2 հտր. Վենետիկ, 1874։

Վղշ. — Վաղարշապատու ժողովին կանոնք, 426 ամ. գրչ. Վենետկոյ։

Վնկ. Հրց. — Վանական Վր. Հարցմունք. ԺԳ դար. գրչ. Վենետկոյ։

Վրդ. — Վարդանայ Վր. Հաւաքումն պատմութեան. ԺԳ դար. Վենետիկ, 1862։

» Ղեւտ. Ելից. Բ Օր. Թւոց. — Մեկն. Հնգամատենին. գրչ. Վենետկոյ։

Տաթ. Յոբ. — Գր. Տաթեւացւոյ Մեկն. Յոբայ. 1407 ամ. գրչ. Վենետկոյ։

» Յովհ. — Մեկն. Յովհաննու աւետ. գրչ. Վենետկոյ։

Տար. Թէոփ. — Պաւղ. Տարօնացւոյ Թուղթ առ Թէոփիստէ. ԺԱ դար. Կ. պոլիս, 1752։

» Վերլծ. — Վերլուծ. կարգաց եկեղ. գրչ. Վենետկոյ։

Տեղ. — Հ. Ներս. Սարգիսեան՝ Տեղագր. ի Հայս. Վենետիկ, 1864։

Տես. — Տեսիլ Ս. Սահակայ. ի Սոփ. Բ։

Տղ. — Գր. կաթող. Տղայի՝ Նամականի. ԺԲ դար. Վենետիկ, 1865։

Տուռ. — Tournebize, Hist. Politique et Religieuse de l'Arménie. Paris.

Տօն. — Տօնապատճառ Սամ. Կամրջաձորեցւոյ. Ժ դար. գրչ. Վենետկոյ։

Փաւս. — Փաւստոսի Բուզ. Պատմ. Հայոց, խմբ. Ե դարու. Վենետիկ, 1832։

Փիլ. Ճառ. — Փիլոնի Եբրայեցւոյ Ճառք. Ա դար. Վենետիկ, 1892։

» Մն. — Մնացորդք ի Հայս. Վենետիկ, 1826։

Փորթ. — Մխք. Փորթուգալ՝ Քննադատ. Եղիշէի. Վենետիկ, 1903։

Փրպ. — Ղազ. Փարպեցւոյ՝ Պատմ. Ե դար. Վենետիկ, 1873։

Քսեն. — Xénophon, Œuvres compl. 2 հատ. Դ դար ն. ք. թրգ. E. Talbot. Paris, 1859։

Քրզ. ամր. եւ ձմր. — Գր. Տաթեւացւոյ՝ Գիրք քարոզութեանց. 2 հատ. ամարան եւ ձմերան. Կ. պոլիս, 1740։

Քրոն. — Եւսեբիոսի Քրոնիկոն. Դ դար. Վենետիկ, 1818։

Օձն. — Յովհ. Օձնեցւոյ՝ Մատենագրութիւնք. Ը դար. Վենետիկ, 1833։

Ֆլեօր. — Կղ. Ֆլեօրեայ՝ Կենցաղ իսրայ. եւ Քրիստոնէից. Վենետիկ, 1843։

*Զանց կ՛ընեմ ցուցակէս Աստուածաշնչի սղագրութիւնքը, որ յայտնի են իրենց գլխով ու համարով։ Չեմ նշանակեր նաեւ առանց սղագրութեան յիշած աղբիւրներս. ինչպէս Խլաթեցին, սուտ Դամասկացին, Յովսէփ, Կիրակոս գործակից Վկայասէրի, Ստեփանոս և Առաքել Սիւնեցիք, Ան. Շիրակացին, Սիմ. Այրեվանեցին, Ն. Մառի տեղեկ. Անւոյ հնութեանց վրայ, գրչ. ու տպ. ժամագրեր, գրչ. Աւետարաններ, գրչ. Մաշտոցներ, արձանագրեր եւ այլ շատեր։*



# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ ԵՒ ՆԻՒԹՈՑ

# ՈՒՂՂԵԼԻՔ

| Էջ | տող | վրիպակ | ուղիղ |
|---|---|---|---|
| 66 | 13 | (*Եղիշ.* 171) | (*Եղիշ.* 174) |
| 94 | 18 | *Ս. Բարսղի* | *Նիւսացւոյն* |
| » | 19 | (*Բրս. Արբ.*) | (*Նիւս. Հյր. ԺԲ*) |
| 119 | 23 | *նկրտութեան* | *մկրտութեան* |
| » | » | *առիթմերով* | *առիթներով* |
| 143 | 1 | *անհաճ* | *անճահ* |
| 211 | 21 | 1374 | 1274 |
| 320 | 21 | *փախադրուեցաւ* | *փոխադրուեցաւ* |
| 359 | 21 | *զմատուցողոք* | *զմատուցողքս* |
| 382 | 11 | *իրենք* | *իրենց* |
| 440 | 7 | *Յովհանու* | *Յովնանու* |
| 448 | 14 | *քանահայից* | *քահանայից* |

